# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

# ԹԱՆԳԱՐԱՆ



## ՀԱՅԿԱԿԱՆ

## ԻՆ ԵՒ ՆՈՐ ԴՊՐՈՒԹԵԱՆՑ

Է




ԻՍԻՔԻՈՍԻ

ՐԻՑՈՒ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑՒՈՑ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈԲԱՅ






ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ Ս. ՂԱԶԱՐՈՒ
1913

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Թէպէտեւ բազմահարուստ իցէ մատենագրութիւն մեր մեկնութեամբք աստուածաշունչ գրոց, բայց որ ածաւն ցարդ ի լոյս՝ խուն ինչ է առ որովք ծածկեալ պահին դեռ եւս ի խորշս գրադարանաց, մինչ զի մասըն մի կարեւոր ի գանձուց անտի նախնեաց մերոց անծանօթք մնան դեռ յուսումնասիրաց մերոց եւ յօտարաց։ Մի ի սոցանէ էր եւ մեկնութիւն Յոբայ՝ արարեալ յԻսիքիոսէ երիցուէ Երուսաղեմացւոյ, որոյ յոյն բնագիր ցարդ անգիտ՝ կիսով չափ եւեթ կայ պահի ի հայ թարգմանութեան. այլ հանդերձ այսու ոչ երկմտիմք շահաւէտ յոյժ լինել հրատարակութեամբս գիտնականաց ազգիս եւ եւրոպացւոց։ Ցաւ է մեզ դարձեալ՝ զի մի եւեթ գրչագիր օրինակ ունելով մեր ի մերում մատենադարանի, ոչ անթերի ինչ է մեկնութիւնս. վասն որոյ ուր մարթ էր լրացուցանել ի հաւաքածոյ մեկնութենէ Վանական Վ.ի ոչ զանց արարաք։

Կամ եղեւ մեզ ընդ մեկնութեան Յոբայ հանել ի լոյս եւ զայլ եւս վաստակս Իսիքիոսի զտեալս ի հայ թարգմանութեան. վասն որոյ եդաք ի վերջ գըրոցս զհատակոտոր մեկնութիւնս Կաթողիկէ թղթոցն եւ զճառ նորին ի սուրբ Աստուածածինն։ Ոչ աւելորդ ինչ վարկաք կցել եւ գլուխ մի առ ի ճաշակ, ի մեկնութենէն ընծայելոյ Դաւթի Քոբայրեցւոյ, որ որպէս կարծեմք եւ ունիմք հաստատել ի ներածութեան անդ

մերում չէ այլ ինչ բայց մնացորդ եւ մասն մեկնութեան Իսիքիոսի։

Դարձեալ եւ յաւելաք, քաղելով ի հաւաքմանէ Վանականի, զհատակոտոր բանս մեկնութեան Ստեփանոսի Սիւնեցւոյ, զոր համարիմք թարգմանիչ մեկնութեան Ողիմպիոդորի կամ որ լաւ եւսն է Պոլիխռոնիոսի։

Ցանկ բանից աստուածաշունչ գրոց յիշելոց յԻսիքիոսէ եւ ներածութիւն համառօտ՝ ուր բանք լինին զԻսիքիոսէ եւ զնորին մեկնութենէ, բոլորեն զայս մեր վաստակ, զոր նուիրեմք հրահանգելոց ի միանձնական վարս, եւ առհասարակ ամենայն սիրողաց զուսումն աստուածաշունչ մատենի։

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

## Ա.

1. *Իսիքիոս երէց Երուսաղեմացի եւ իր գրուածները յն եւ լատին մատենագրութեան մէջ — 2. Հայերէն տուածներ կաթողիկեայ թղթոց մեկնութենէն — 3. Ճառ. ն յանձնատուրք Աստուածածինն*[1]։

*Հայ մատենագրութեան մէջ հին դարերէն մնացած թարգմանածոյ մեկնողական նշխարներէն մին է Իսիքիոսի Յոբայ մեկնութիւնը, որ արժանի է իր մոռացութեան գերեզմանէն ելլելու, ոչ միայն իր մէջ խտացած գաղափարներուն խորութեան ու ոճին վսեմութեանը պատճառաւ, այլ գլխաւորապէս նախկին բնագիրը կորսուած ըլլալուն, եւ անոր համար ալ որ հայկական թարգմանութիւնը հնութեան կնիք մ'ունի իր վրայ, որ կրնայ մինչեւ Է — Զ դար բարձրանալ։*

1. *Ջանանք նախ ծանօթացնել անձը՝ որուն վարքին եւ գրուածներուն վրայ ունեցած տեղեկութիւնիս այնքան տարակուսական է՝ որ ստէպ իրեն անուանակից մատենագիրներուն հետ. կը շփոթուի։ Իսիքիոս անունը որ Հիւսիքոս ալ կ'ըսուի, կը գրուի նաեւ Սիւքիոս կամ Եւսիւքիոս, Իսիքոս, Իսիւքիոս, Իւսիգոս, Եւսիք եւ Սիւքիանոս, ինչպէս որ յաճախ հայ գրչագիրներու մէջ կը գտնենք, եւ նոյն կը կարծուի Աւգերեանէ Սիւքիաս անուան հետ որ ճանդարտ կը նշանակէ*[2]։ *Ազգային մատենագրութեան մէջ բաց ի Երուսաղեմացի երէցէն՝ կը յիշուին Ի-*

1. Ինչ որ 1909ին Բազմավէպի մայիսի պրակին մէջ Իսիքիոսի նկատմամբ գրեցինք, հարկ կը համարինք կարեւոր փոփոխութիւններով և յաւելուածներով կրկնել գրքիս հրատարակութեան սկիզբը։
2. Հմմտ. Վարք Սրբոց, Հտ. Ը. էջ 483, ծն. 1։ Հաւանօրէն նոյն է Յուսիկ անունն ալ։

սիքիոս Միլեսացին՝ հեղինակ Բիւզանդիոն քաղքի պատմութեան, ուսկից օգտուած կը համարուի Փարպեցին[1]. ուրիշ մը դպիր եւ ատենակալ՝ հեղինակ նման գրուածքի մը. իսկ յոյն եւ լատին պատմիչներէ կը յիշատակուին Իսիքիոս Աղեքսանդրացին՝ Դ դարու մէջ ապրող ուսեալ անձնաւորութիւն մը, Իսիքիոս Եգիպտացի եպիսկոպոսը եւ վկայն զոր գովէ Եւսեբիոս[2], եւ դեռ ուրիշներ։ Իսկ մեր Երուսաղեմացի երէցը ըստ Թէոփանեայ ծաղկած է փոքր Թէոդոսի ատեն, 407ի միջոցները, եւ մեռած նոյն կայսեր 26երորդ տարին, շուրջ 433ին[3]։ Կիւրեղ Սկիւթապոլսեցին, Եւթիմիոսի վարքին մէջ զԻսիքիոս աստուածային կը կոչէ, եւ իբր նշանաւոր երէց մը կը նկարագրէ Յոբնաղ պատրիարքին ընթերակայներէն[4]. իսկ յունական Յայսմաւուրներու մէջ (28 մարտի) կը գովուի իր անբաւ իմաստութիւնը որով մեկնաբանած է սուրբ Գիրքը, եւ սովորաբար աստուածաբան անունը կը տրուի իրեն, երկրորդ՝ յետ Գրիգորի աստուածաբանի՝ որուն աշակերտած կը համարուի. հայ գրչագիրներ երբեմն սուրբ ալ կոչած են։ Անտարակուսելի է թէ Իսիքիոս միանձնական կեանք անցուցած եւ իր գրուածներէն մէկ քանին իր եղբայրակից կրօնաւորաց համար գրած ըլլայ։ Կը յիշուի թէ իր կամքին հակառակ քահանայ ձեռնադրուած ըլլայ Կ. Պոլսոյ Պատրիարքէն եւ կեանքին մնացած մասը նոյն քաղքին մէջ անցուցած[5]. ընդհակառակն Մէրքաթի կ՚ապացուցանէ անոր Երուսաղեմայ Մեծագոյն ըսուած դրան մօտ թաղուիլը, եւ իր անուամբ վկայարանի մը գոյութիւնը[6]։

Իսիքիոսի գրական ժառանգութիւնը, որ, ինչպէս կը թուի, շատ աննշան ալ չէ, կարօտ է դեռ որոշուելու եւ սահմանաւորուելու։ Շատ բաներ որ իր անուամբ հրատարակուած են, կը գրէ Պարտէնհէվէր[7], հետագայ համա-

1. Հմմտ. Մատ. Հայկ. Թրգմ. էջ 487։
2. Պատմ. Եկ. էջ 650։
3. Ըստ ոմանց 430ի և 439ի մէջ, իսկ 450էն վերջ՝ ըստ P. Vailhéի, Echos d'Orient, 1906 էջ 214։
4. Vita Euthymii C. 42. Patr. Grec. CXIV 629 B.
5. Nouvelle Biographie générale, Vol. XXII, Paris, 1858։
6. Հմմտ. Revue Biblique, 1907 էջ 79։
7. Patr. իտ. Թարգ. Հտ. Բ. էջ 184։

նուն մատենագիրներու կը պատկանին. շատեր ալ, որ առաւելագոյն իրաւամբ իր սեպհականութիւնը պէտք էին ըլլալ, մասամբ կորսուած են, ինչպէս եկեղեցական պատմութիւնը[1], մաս մ'ալ դեռ գրչագիրներու մէջ ծածկուած են։ Մինեը (Patr. gr. ՂԳ) Իսիքիոսի անուան տակ կը զետեղէ ընդարձակ, սաստկապէս այլաբանական մեկնութիւն մը Ղեւտականի գրոց վրայ, եօթը գրքի բաժնուած, որ ի լատինն միայն պահուած է. կը յաջորդեն ապա յունարէն հատակոտորներ Սաղմոսաց վրայ եւ քանի մը մեկնութիւններ ԺԲ. փոքր մարգարէից, Եսայեայ[2], Եզեկիելի, Դանիէլի, Գործոց Առաքելոց, Յակոբայ, Յուդայի և Պետրոսի Ա. Թղթոց, քաղուած յունական շղթաներէն։ Յետոյ կը յարէ Մինեը նոյն հատորին մէջ հաւաքածոյ մը Առարկութեանց և Լուծմանց, որ հարցուպատասխանիի ձեւով կը մեկնէ 61 դժուարութիւններ աւետարանական համաբարբառէն, նման և աւելի կանոնաւոր քան զայն որ Վանական Վարդապետ առ Հեթում թագաւոր գրած է[3]։

Բացի մեկնութիւններէ ունի Իսիքիոս քանի մը ճառեր ալ, զորս միայն յիշենք ի ծանօթութեան[4], անոնցմէ մէ—

1. Զատկական ժամանակագրութիւնը կը յիշէ զԻսիքիոս՝ Սոկրատայ և Սոզոմենոսի հետ, իբր պատմիչ մը որ ուժով կռուած է Թէոդոր Մոպսուեստացւոյ դէմ. և ստուգիւ Կ. Պոլսոյ ժողովոյն (553ին) Գործոց մէջ պատառիկ մը կը գտնուի ինքնակոչ «եկեղեցական պատմութեան» մը, յորում Իսիքիոս ամենադառն բառերով Թէոդորի դէմ կը յարձակի (Mansi հտ. Թ. էջ 248)։

2. Faulhaber հրատարակեց փոքր մարգարէներէն Աբդիու եւ Զաքարիայ մեկնութեանց նոր պատառիկներ Die Prophetenkatenen nach römischen Handschriften, Ֆրիպուրկ, 1899։ Եւ ամբողջական բնագիրը Եսայեայ մեկնութեան Hesychii Hierosolymitani intepretatio Isaiæ prophetæ. Անդ, 1900։ Իսկ ի Թերթին Théol. Quartalschr. 1901 էջ 218 — 232, ապացուցուց G. Mercatiի հետ (Note di letteratura biblica e cristiana antica, Roma, 1901) թէ Իսիքիոսի է այն Սաղմոսաց մեկնութիւնը զոր Մինեը Ս. Աթանասի գրուածոց մէջ դրած է (Patr. gr. XXVII, 649—1344)։

3. Տես Արարատ ամսագիր, 1869 էջ 52։

4. Ա. Ի Ծնունդն Քրիստոսի. — Բ. Վասն ժամոյն յորում խաչեցաւ Տէրն. — Գ. Վասն Զատկին կամ յարութեանն Տեառն — Դ. Ի սուրբ Աստուածածինն Մարիամ. — Ե. Ի նոյն. — Զ. Ի Տեառնընդառաջ. — Է. Ներբող ի սուրբ Թովմաս. — Ը. Ի Յակոբոս եղբայր Տեառն եւ յԱստուածահայրն Դաւիթ։

կուն հայերէն հին թարգմանութեան մասին քիչ վերջ խօսելու առիթն ունենալով։ Դարձեալ իրեն են կրկին հարիւրեակներ հոգեւոր կենաց առածներու Յաղագս ժուժկալութեան եւ առաքինութեանց կամ խրատք վասն մարտընչելոյ եւ աղօթից անուան տակ. եւ հուսկ Վկայաբանութիւն մը Ղունկիանոսի հարիւրապետին, որ մեր Յայսմաւուրաց մէջ ալ կը յիշուի[1]. եւ Աւգերեան իր Սրբոց վարուց շարքին մէջ (Հտ. Է. 319—361) առնելով յոյն բնագրէն՝ բառ առ բառ նոր կը թարգմանէ Իսիքիոսի այս վկայաբանութիւնը, եւ իր ծանօթութեանց մէջ հմտօրէն կ'ուղղէ Բոլլանտեանց լատին թարգմանութեան անճշտութիւնները։ Հոն կը ծանուցանէ թէ մեր հին ճառընտիրներու մէջ կայ երկրորդ վկայաբանութիւն մ'ալ, նոյնպէս թարգմանուած յունարէնէ, որուն համեմատ է 1850ի հրատարակութիւնը[2]։

Ահա ինչ որ Իսիքիոսի գրուածներէն պահած է յոյն եւ լատին մատենագրութիւնը։ Հայկականն ալ առանց անոր կեանքին վրայ նոր լոյս մը սփռելու, կու գայ վաւերացընել արդէն իսկ ըստ բաւականի հարուստ Իսիքիոսեան գրադարանը։

2. Ուզելով սկսիլ Իսիքիոսի այն գրուածներէն՝ որ բաց ի յունէ հայկական թարգմանութեամբ ալ մեզ հասած են, յիշատակենք նախ Կաթողիկէ թղթոց մեկնութեան այն վեց պատառիկները զորս կը հրատարակենք ի վերջ գրքիս, հանելով Շնորհալւոյ անուամբ մեզի հասած համանուն հաւաքումէն։ Մինեի հրատարակած պատառիկներն ալ եօթն են թուով[3], որոնց երկուքին վաւերականութեան վրայ իրաւամբ կասկած կը յայտնէ ստորեւ զետեղած ծանօթութեան մէջ. հայկական հատուածներէն հինգը ճիշդ նոյն կտորներն են զոր յիշած է Մինեը, եւ այս զուգադիպութիւնը տարակուսել կու տայ մեզի որ

1. Սոյն անդրադարձութիւնը կը պարտիմ Տ. Նորայրին, որ հաճեցաւ ցոյց տալ ինծ Տաշեանի գրչագրաց ցուցակին մէջ հետեւեալը. «Իսկ երանելին Սուքիաս քահանայ Երուսաղեմի եգիտ ի դրապահտան սուրբ յարութեանն, գրեալ զպատմութիւն սրբոյն Ղունկիանոսի» (էջ 30, 587)։

2. Վարք եւ վկայաբանութիւն Հտ. Ա. 740։

3. Յակ. Ա. 14։ — Բ. 15։ — Գ. 8։ — Դ. 10։ — Ե. 1։ — Ա. Պետր. Գ. 10։ — Յուդ. 6։

մի եւ նոյն աղբիւրն ունեցած ըլլան Շնորհալի՝ իր կազ-մած կամ թարգմանած չղթային համար, եւ Մինէր՝ իր գործածած հաւաքածոյին՝ ուսկից հանած է այդ պատա-ռիկները։ Ուրիշ առիթի կը թողունք քննել թէ արդեօք սաուգիւ Շնորհալւո՞յ ընծայելի է Ս. Հարց խօսքերով ձե-ւացած այդ մեկնութիւնը, քանի որ մեր ձեռքն եղած 1198ի ձեռագիրը չունի հեղինակի անուն, յիշատակարա-նի մէջ քերթուած ըլլալուն համար, եւ կամ կը գտնուի՞ դեռ անոր յոյն բնագիրը։ Այսքան միայն ըսենք թէ, յոյն մատենագրութեան մէջ կը յիշուին երեք մեկնիչներ կա-թողիկէ թղթոց. Եկումենիոս բիւզանդացի աստուա-ծաբանը, ապրած Ժ. դարու վերջերը, խմբագրող կաթո-ղիկէ թղթոց մեկնութեան Ս. Հարց խօսքերով՝ չղթայի ոճով. Թէոփիլակտ քաջ մեկնիչը՝ մեռած 1107ին, և Եւ-թիմիոս միանձը՝ ապրած ի սկիզբն ԺԲ դարուն, որուն կաթ. թղթոց մեկնութիւնը դեռ անտիպ է։

3. Անցնինք այժմ Խոսքիոսի աւելի մէկ կարեւոր գը-րուածքին հայերէն թարգմանութեան, այն է՝ «յամենա-սուրբ Աստուածածինն» ճառին, որու նկատմամբ կ'ար-ժէ երկու խօսք ըսել, թէ ձեռագրին և թէ թարգմանու-թեան հետաքրքրական կէտեր ընծայելնուն համար։ Սոյն ճառը, որ խորագիր ունի «Հիսիքոսի քահանայի Երուսա-ղեմի յամենասուրբ Աստուածածինն եւ ի միշտ կոյսն Մա-րիամ», կը գտնուի մեր մատենադարանի Լ Ճառընտրի 24–28 էջերուն մէջ։ Մեր ձեռքն հասածը լոկ հատուած մ'է վիթխարի ամբողջութեան մը, կազմուած մեծադիր եռասիւն էջերէ 67 × 53 մեծութեամբ, մագաղաթեայ, մի-ջին երկաթագիր տառերով. ամէն թերթ բաղկացած է ութ թղթէ, եւ իւրաքանչիւր էջ ունի 45 տող. նոր թուա-գրեալ 16երորդ էջին ստորեւ նշանակուած է Ը, ուսկից կարելի է ենթադրել թէ մեր ձեռքի կտորն ութերորդ թերթն է. իսկ յաջորդը պակասաւոր է սկզբան, որովհետեւ 16րդ. էջին շարունակութիւն չի կազմեր, կամ թէ իններորդ թերթը չէ։ Այս մեծղի ձեռագրին վերջին երեսը դրուած 60 տող յիշատակարանէն կտոր մը միայն մնացած է, յե-տագայ անգութ ձեռքէ մը քերուած և նորոգ գրուած ըլ-լալուն. և ուսկից կարելի է իմանալ՝ թէ գրչագիրս գըր-ուած է ԺԳ. դարու սկիզբը, քանի որ մէջը յիշուած Յով-

համնէս Միջնաղբերցին[1] ապրած է նոյն ժամանակին։

Ինչ որ հաւանական է, Իսիքիոսի այս ճառին թարգմանութիւնը շատ աւելի հնութիւն ունի քան գթուական գրչութեան ձեռագրիս, ուր բաց ի թարգմանութեան՝ ընդօրինակութեան սխալներ ալ չեն պակսիր։ Յունարէն բնագրին հետ ըրած համեմատութիւննիս յայտնեցին թէ ընդհանրապէս բառացի եւ նիւթական թարգմանութիւն մ'է, զուցէ յունարէն լեզուի ոչ շատ վարժ թարգմանչի մը գործ, որ չի կրնար իմաստներուն ոգին ըմբռնել եւ ճկուն հայերէնով գաղափարը բացատրել։ Իսիքիոսի այս ճառին սխալ ընդօրինակութիւնքը ուղղելու եւ բնագիրը որչափ կարելի էր վերականգնելու համար, բաց ի յունարէնէ՝ մեզ օգնութեան հասան մատենադարանիս Գ և ԻԹ ձառընտիրները, զորս մեր այս հրատարակութեան մէջ Ա և Բ օրինակ անուանած ենք. ուր փոխանակ Իսիքիոսի՝ Պրոկղի ընծայուած է ճառս տարբեր սկզբնաւորութեամբ, ինչպէս ի ծանօթութեան յիշած ենք իր տեղը. հետեւաբար Հայկազեան բառգրքին չառաւեղացուցանել բառին իբր օրինակ տրուած Պրոկղի խօսքը պէտք է ուղղել՝ Իսիքիոսի ընծայելով։ Նման սրբագրութիւն մ'ալ կատարել հարկ է Հայկ. թարգմ. Մատենադարանի մէջ (663) Պրոկղի ընծայուած «Այսօր արեգակն արդարութեան» խորագրով ճառին, որ նոյն գրքի մէջ (376) Գրիգոր Աքանչելագործի նուիրուած է արդէն։

Իսիքիոսի վերոյիշեալ ճառը՝ որ կիսատ կը թուի՝ խօսուած է անշուշտ հաւատացեալ բազմութեան մ'առջեւ, Ծննդեան տօնին առիթով, ինչպէս իմաստէն կարելի է հետեւցնել. սկզբնաւորութիւնը կը յիշեցնէ իր Յոբայ մեկնութեան ամէն մէկ ճառի սկիզբը դրուած նախաբաններէն մէկ քանին (հմմտ. էջ 558, 601, 667). ոճի նմանութիւնը բաւական զգալի է։ Կը ներբողէ նախ հրեշտակապետին գալուստը յաւետումն Կուսին, յետոյ կ'անցնի աստուածորդւոյն սքանչելի ծննդեան եւ մոգուց երկրպագութեան վրայ. եւ խօսքն առ Հրեայս ուղղելով կ'ըմբերանէ անոնց խստասրտութիւնը բուռն զայրութով։ Իր ըսածներուն հաստատութեան համար աւելի Սաղմոսէն եւ Մարգարէներէն

1. Յովհաննէս Միջնաղբերցիի և մանաւանդ գրչագրիս վրայ մանրամասն տեղեկութիւն՝ տես Հյպտմ. էջ 449—51.

վկայութիւն կ'առնու քան թէ Նոր Կտակարանէն, եւ այս մասամբ ճառս հետաքրքրական կը դառնայ։ Երուսաղէմացի երէցը արդեօք պատճառ մ'ունէ՞ր այսպիսի ոճ եւ լեզու մը գործածելու. արդեօք քրիստոնեայ հասարակութենէն զատ Հրեայ ունկնդիրնե՞ր ալ ունէր. մեզ անծանօթ է. այս կէտը Իսիքիոսի յատուկ է իր Յոբայ մեկնութեան մէջ ալ[1]։

## Բ

### Յոբայ մեկնութիւն Իսիքիոսի

1. Հարազատութիւնը — 2. Պատճառ գրութեան — 3. Ոճ մեկնութեան եւ գրական արժէք — 4. Վարդապետութիւն։

1. Իսիքիոսի անձին եւ գրուածներուն վրայ ընդհանուր այս ակնարկը տալէն վերջ կը մնայ արդ մեզ խօսիլ իր Յոբայ մեկնութեան վրայ։ Բնական է թէ առաջին մտածութիւնը որ մեզ կը ներկայանայ՝ սա տարակոյսն է, թէ արդեօք ստուգիւ Իսիքիոսի՞ է Յոբայ մեկնութիւնը զոր հայ գրչագիրք իրեն կ'ընծայեն. քանի որ այդ մեկնութեան մնացորդք անծանօթ են դեռ յոյն կամ լատին լեզուի մէջ, և քանի որ հին մատենագիրներ չեն յիշեր իր այս գործը։ Հաստատելու համար թէ Յոբայ մեկնութիւնը ստուգիւ Իսիքիոսի կը պատկանի՝ կարեւոր են ներքին եւ արտաքին ապացոյցներ։

Հոս միջանկեալ ուղղենք նախ ինչ որ հայ մատենագրութեան մէջ անոր հարազատութեան դէմ սխալներ սպրդած են։

Իսիքիոսի այս կարեւոր և գեղեցիկ աշխատութիւնը՝ անշուշտ սխալ ընթերցմամբ կամ գրչութեամբ մը՝ Էջմիածնի մատենադարանին 1405 թիւ ձեռագիրը կ'ընծա-

1. Իսիքիոսի տեղագրական ակնարկութեանց մասին՝ Պաղեստինու և մանաւանդ Երուսաղէմի վրայ, որ այլազգ կարելի չէր մեկնել եթէ ոչ Երուսաղէմի մէջ ապրելով. տես Revue Biblique IX (1900) 478—479։

յէ Եւսեբիոսի Երուսաղեմացւոյ երիցու[1]։ Մեր այս կարծիքը կը հաստատէ նման սխալ ընթերցում մ՚ալ զոր ըրած է Հ. Զարբ. Հայկական Հին դպրութեան պատմութեան մէջ (էջ 712), ըսելով թէ «Վանական վարդապետի Յովբայ մեկնութեան լուսանցիցը մէջ կը յիշատակուին Ստեփանոսի, Եփրեմի, Եւսեբի և այլոց ոմանց հեղինակաց անուանք», մինչ ծանօթ է, և ինչպէս յետոյ պիտի ըսենք, թէ Վանական հաւաքած է Իսիքիոսի համանուն երկասիրութենէն[2]։

Արդ Յոբայ մեկնութեան հարազատութեան իբր առաջին և գլխաւոր ապացոյց կրնայ համարուիլ նախ Մինեի յիշածը ի ծանօթութեան Իսիքիոսի գրուածոց (Հտ. Դգ. 781) առնելով Փաբրիկիոսէ. «Laudantur et ejus Scholia in Ezechielem ac Jobum». Հոս թէպէտեւ միայն Յոբայ հատակոտորք կը յիշուին, սակայն ենթադրել կու տան նաև ամբողջական մեկնութիւնը։ Փոքր փաստ չէ նաեւ յոյն Ցայսմաւուրքներու՝ վկայութիւնը թէ, «մեկնած է Իսիքիոս և պայծառ կերպով լուսաբանած ամբողջ Ս. Գիրքը». վկայութիւն մը՝ որ հետզհետէ կը ստուգուի, երբ փոխանակ հատուածներու ամբողջական մեկնութիւններն երեւան կու գան, ինչպէս ցարդ Սաղմոսաց, Եսայեայ և փոքր մարգարէից, եթէ չուզենք կրկին յիշել Ղեւտականը՝ լատին թարգմանութեան մէջ միայն պահուած։ Սակայն եթէ այս ապացոյցները չունենայինք ալ ձեռքեր-

1. Հմմտ. Զարբ. Մատնդրն Հայկ. Թարգմ. էջ 433։ Մինչ Մեսրոպ եպիսկոպոս առ իս գրած թղթին մէջ (5 մարտ 1909), Իսիքիոսի կու տայ. ահա իր թուղթը. « .... Նայեցի հ. 1441 (= 1405). Թղ. 63ա — 70բ պարունակում է չոկ համառօտութիւն Իսիքիոսի մեկնութեան, հետեւապէս այս օրինակն էլ Ձեզ գոհացնել եւ Ձեր չունեցածը լրացնել չէ կարող։ Համեմատեցի Պատճառաց գրքին բնկորի հետ. համառօտութիւնը համարեա անճանաչելի է։ Ձեռ. գրուած է անկանոն բոլորագրով, սղումներով եւ խիտ առ խիտ մանր գրերով, հաստ մոմած եւ յղկած թղթի վրայ ԺԴ–ԺԵ դարում։ Սկսուածք. «Արթոյն Եւսիքիոսի Եմ.ցոյ երիցու ի յոբա մեկնու... »։ Եւ դարձեալ ուրիշ մէկ թղթով. «Էջմիածնի հ. 1650 Գիրք Պատճառացն թուղթ 66ա — 67բ ունի մի հատուած Սկիզբն եւ Պատճառ գրոցն Յոբայ. Հեւսիքոսի է» ...։

2. Նոյնպէս Ղեւտական գրոց մեկնութեան խմբագիր հատուածներն ալ որ Եւսեբի եպ.ի Երուսաղեմացւոյ կ՚ընծայուին ի Մատ. Հայկ. Թարգ. (էջ 433), հարկ է ուղղել Եմեսացւոյ։

նիս, պիտի բաւէր միայն հայկական թարգմանութեան վկայութիւնը իր պատկառելի հնութեամբ, և որու հաւատարմութեան կասկածելու պատճառ մը չունինք։ Բաց ի վերոյիշեալ արտաքին փաստերէն, ներքին ապացոյցն ալ իր հարազատութեան՝ իր ոճին մէջ կը գտնենք. բաւ է համեմատել Յոբայ եւ Ղեւտական գրքի մեկնութիւնները, անոնց այլաբանական ձեւը, տունէ տուն անցքերու կապակցութեանց նմանութիւնը կը յայտնեն թէ ապահով նոյն հեղինակի գրչէն ելած են։

2. Անծանօթ է մեզի թէ ինչ շարժառիթով գրած է Իսիքիոս իր միւս մեկնութիւնները. սակայն, թէ Յոբայ մեկնութեան պատճառ իրեն նման միանձունք եղած ըլլան՝ շատ որոշ կը յայտնուի տուած յորդորներէն, այնպէս որ թոյլ կու տայ մեզ կարծել թէ հաւանօրէն վանահայր եղած ըլլայ կրօնաւորներու, որոնց իբրեւ հոգեւոր հայր մը պատշաճ խրատը, խրախոյսը և սպառնալիքը վարդապետօրէն կը բաժնէ։ Կարծէք ահա իր շուրջը հաւաքուած են միանձունք և ինքը կը խօսի. «Սուտ է փառքը, ըստուերն է աշխարհիս. թեթև տերեւ մ'է կամ սարդիոստայն որ ընդունայն հոս հոն կը ծփի, որ աշխարհի դիպուածներուն համեմատ կը գլորի, և կը թօթափի հովերէ։ Եկէք ոտնակոխենք փութով ցանկութիւնքը, և բոլորովին պարապինք հոգւով, և միաբանինք հոգւոյն օրինաց, թշնամի ըլլանք աշխարհիս շրջանակաց, և ինչ որ անոր մէջ որոգայթներ կան. թող թշնամի ըլլայ մեզ աշխարհս, որպէս զի Աստուծոյ սէրը շահինք» (290)։

Որո՞ւ աւելի պիտի յարմարէր մեծութեան, ընչից և աշխարհական վայելքներու ընդունայնութեան վրայ հետեւեալ յորդորակը. «Զընդունայն մեծութենէս բազմաց է փոյթ, և վասն պատուոյ, փառաց և երկրային հարստութեանցս ամենայն մարդկանս է հոգ, որոց անուանքն բարւոք են, բայց իրքն ոչ ամենեւին, որոց ստացուածքն աւելորդ են և վայելքն ապականացու, զոր ժողովել աշխատութեամբ է, և պահել անհնարին, որոյ ծաղիկն գեղեցիկ է, այլ ընդ շօշափելն թառամի. որոյ օրհնութիւն բանիւք է իսկ իրօք անէծք։ Իսկ արդարք զայսմանէ ոչ փոյթ առնեն և ոչ հոգ տանին. այլ թէ զիա՞րդ ինքեանք զօրականք եղիցին արարչին, և կամ թէ զիա՞րդ խառնեսցին

ընդ գունդս հրեշտակաց, և կամ զիա՞րդ ի ձմեռնային կենացս հասցեն ի նաւահանգիստն խաղաղութեան, կամ թէ զիա՞րդ յաղթիցեն որ ազգի ազգի ախտիւք մարտընչի ընդ նմա։ Որոց եկայք և մեք ամենայն փութով նմանեսցուք, և համբերութեամբ փշրեսցուք զամենայն հընարագիտութիւն աներեւոյթ թշնամւոյն. թէպէտ եւ ոք վարձկան եղեալ նորա, կամեսցի նախատել զմեզ իբրև զմեղաւորս, մեք երկայնմտութեամբ անսասցուք նոցա, նմանեալք Յովբայ»(736--7)։

Ուրիշ տեղ կուսութեան, աղքատութեան և աղօթասիրութեան ներբողեանը կ'ընէ, իբր միանձնական վիճակի յատուկ առաքինութիւններ. «Պայծառ է պարկեշտութիւն ամուսնութեամբ, բայց առաւել պայծառագոյն է ստացուածըն կուսութեան. սքանչելի է մեծութեամբ արդարութիւն, այլ անստացուածութեան պսակն ունի մեծապէս առաւելութիւն. բարձր է աշտարակ պահոց, բայց պիտոյ են նմա և աղօթք հանդերձ ողորմածութեամբ» (667)։

Ի հաստատութիւն մեր կարծիքին՝ թէ իր ընթերցող միանձանց կատարելութեան համար յօրինուած է մեկնութիւնս, բերենք վերջին օրինակ մ'ալ, ուր Իսիքիոս կը խրատէ թէ պէտք չէ մտազբաղ ըլլալ սաղմոսերգութեանց միջոց, չզրկուելու համար անոնց քաղցր ճաշակէն. «Վասն է՞ր և մինչեւ ցե՞րբ իսկ մեք առ անմիտ պատիւս և փառս, և առ ընդունայն և անհաւատալի, առ սուտ և առ փախչող մեծութիւնս փութամք. մինչեւ ցե՞րբ ապականիչ եւ եղծանելի ցանկութեամբքս վայելչանամք. մինչեւ ցե՞րբ յաշխարհական երազս՝ իբրեւ ի ճշմարիտս հայիմք ...։ Իսկ (թէ) զականջս մեր մատուցանեմք կարգի սաղմոսացըն և քաղցրաձայն բարբառոցն, բայց ոչ ի միտս մեր մտանեն ասացեալքն, այլ հեռի առ ի նոցանէն օգտիցն բաջաղին միտքս մեր, և իբրեւ հարեւանցի հայիմք ի միտս աստուածաշունչ գրոց. բայց ոչ ինչ իսկ օգնեն մեզ պատմագրութիւնքս որ ի հոգեւոր մատանցն գրեալք են. քանզի պակշոտեալ եմք ի յընդունայնութեան աշխարհիս» (189 — 90)։

Ատուգիւ կարելի չէր քան զՅովբ լաւագոյն օրինակ մը գտնել յորդորելու համար համբերութեան եւ մեռելութեան. նա որ ընչաւէտ եւ դիւրակեաց կեանքէ յետին տառապանքի մատնուեցաւ, կրնար լռեցնել որ եւ իցէ տրտունջ, միանձնական եւ խստակեաց վիճակի դժուա-

բատար պայմաններուն մէջ։ Իսիքիոս, անշուշտ ինքնին սակաւապէտ ճգնաւոր մը, Յոբայ եւ սրբոց օրինակներով կը խրախուսէ յուսալ յաւիտենական եւ անթառամ պսակներու, աներկիւղ փշրելով սատանային որոգայթները, ինչ վստահութեամբ որ ըմբիշ մը մրցանքին մէջ կը կռուի[1]։

Ուստի կ'ուզենք կնքել մի եւ նոյն խօսքով ինչ որ Մէրքաթի Սաղմոսաց մեկնութեան համար ըսած է. «Թէ հեղինակը կրօնաւոր մը եղած եւ կրօնաւորներու համար գրած ըլլայ, ըստ բաւականի կը տեսնուի ի ծանօթութեան յիշատակուած անցքերէն»։ Եւ քիչ վերջ, «Բաւ է ինծի ըսել՝ թէ շատ լաւ կը հասկցուի բնադրոշմը, երբ գիտցուի թէ գրուած է ի Պաղեստին, որոգինեան կեդրոնի մը մէջ, միանձէ մը՝ միանձանց համար[2]»։

3. Ստո՞յգ է թէ աղեքսանդրեան դպրոցի կը պատկանի Իսիքիոս, կամ այլաբանական իմաստը չափազանցող որոգինեա՞ն մ'է, կամ թէ ի՞նչ բնադրոշմ ունի իր մեկնութիւնը։

Իսիքիոս ինչպէս իր միւս գրքերուն՝ այսպէս ալ Յոբայ մեկնութեան մէջ այլաբանութեան հետեւող է գլխաւորապէս, առանց երբեք որոգինեան մոլորութեան մէջ սահելու։ Թէպէտ այլաբանութիւնը գրքին գլխաւոր գոյնը կը մնայ, սակայն զանց չըներ բառական մեկնութիւնն ալ։ Տուն մը շատ անգամ պարզաբանուած է երկու երեք տեսակ մեկնութեամբ։ Այնչափ կարեւորութիւն կու տայ բառական իմաստին՝ որ յաճախ հարկ կը տեսնայ համեմատութեամբ Թէոդիտոնի, Ակիւղասայ և Սիւմաքոսի թարգմանութիւններուն[3] (էջ 226 եւն.) աւելի լուսաբանել իր բնագիրը, որ Եօթանասնիցն է, եւ որոյ մէջ Հոգւոյն սրբոյ ներշնչումը կը դնէ (226). յիշեալ երեք թարգմանութիւններուն մէջ Սիւմաքոսինը աւելի ստէպ կը յիշուի։ Իր տուած բացատրութիւններուն ուժը աւելցնելու նպատակով յաճախ Սաղմոսէն վկայութիւններ կը բերէ, զորս կը մեկնէ անուղղակի. շատ անգամ բառ մը մտքին մէջ կ'արթնցնէ աստուածաշունչի մէկ խօսքը, եւ մէջ կը բերուի հանդերձ իր մեկնութեամբ։ Յաջորդ օրինակին

1. Հմմտ. էջ 354, 384, 650 եւն.
2. Note di let. biblica e crist. antica.
3. Ոսկեբերան եւս իր Յոբայ մեկնութեան մէջ երեք այս թարգմանութիւնները կը յիշատակէ։

մէջ դիւրին է գտնել այս յատկութիւններէն մէկ քանին. «Կորիցէ օրն այն՝ յորում ես ծնայ ի նմա, եւ գիշերն՝ յորում ասացին եթէ ահա արու»: Վասն է՞ր իսկ սգայք զայսմանէ՝ զորոյ ես սկիզբնն անգոսնեմ, զորոյ զմուտն ատեամ և զառընթեր անցանելն ոչ կամիմ: «Կորիցէ օրն յորում ծնայ»: Ոչ յորում ստեղծայն, այլ յորում ծնայն, այսինքն է յորում ծնեալն եղէ. քանզի այսպէս եդին ի հեբրայեցւոց անտի այլ թարգմանքն. «Կորիցէ այսուհետեւ օրն յորում ծնեալն եղէ»: Վասն զի Աստուած ի բարիս էստեղծ զիս, իսկ Եւայ պատուիրանազանց եղեալ՝ ի տրտմութիւնս ծնաւ: Եւ Դաւիթ իսկ ոչ էր այսմ անտեղեակ, այլ ուսեալ ի Հոգւոյն ի մարգարէական սաղմոսն եդ, և ասէ՝ թէ «ահաւասիկ անօրէնութեամբք յղացաւ և ի մեղս ծնաւ զիս մայր իմ»: Ըստ որո՞ւմ օրինակի: Այլ թերեւս յետ ի դրախտին յանցանաց, եւ յետ պատուիրանազանցութեան չուառական փայտին կերակրոյ՝ սկսաւ ծնանել Եւայ: Վասն այսորիկ զօր ծնընդեան՝ գիշեր կոչէ. զի ժամանակն եւ զայս որոշէ. քանզի տիւն թերեւս գիշեր է, յորում իւրաքանչիւր ոք ծնանի: Այլ զօր զայն էառ, յորում Եւայ յանցուցեալ՝ լուաւ, եթէ «բազմացուցանելով բազմացուցից զտրտմութիւնս քո և զհեծութիւնս քո, և ցաւովք և հեծութեամբ որդիս ծնցիս»: Իսկ տիւ կոչէ զնա վասն ժամանակին, և գիշեր անուանէ վասն անիծիցն՝ որ եղեն ի նմանէ: Ի նմա ասացին իմանալի սպասաւորքն փարաւոնի՝ եթէ «ահա արու». որք զարուսն սպանանել կամին, յայտ է թէ զբարի խորհուրդսն. իսկ ապրեցուցանել զէգսն՝ յայտ է թէ զցանկութեան կամսն (էջ 298—300):

Ո՛րքան որոշ է այլաբանական խիստ գոյնը վերջին տողերուն մէջ. ահա ուրիշ օրինակ մ՚ալ՝ ուր բառական մեկնութեան կը յաջորդէ այլաբանութիւնը. «Մի՛ եթէ տարապարտո՞ւց ինչ խանչիցէ էշ ի վայրի, բայց եթէ կերակուր խնդրիցէ. կամ թէ գոչիցէ՞ եզն առ մսուր՝ յորժամ ունիցի զկերակուր»: Մի՛ եթէ դսրովիցէ՞ ոք զէշ ի վայրի, յորժամ սովեալ խանչիցէ. կամ իցէ՞ ուրեք եթէ յագեալ՝ արձակիցէ զբարբառ. կամ եթէ եզն զքաղցելոյ բարբառ արձակիցէ՞, յորժամ կայցէ առաջի նորա կերակուր: Մի՛ եթէ հեծիցէ՞ արդար, քանզի նա է էշ վայրենի. քանզի ազատ է յամենայն չար քաղաքավարութենէ մարդկան. դոյն եւ եզն է, որպէս զի գործէ զագարակն առաքինու-

թեանց։ Մի՛ եթէ հեծիցէ՞ երբեք, բայց եթէ առ ի չգոյէ կերակրոյն. իսկ կերակուր արդարոցն է դատաստանք Աստուծոյ. քանզի այնու կերակրեալք, առ ի յաշխատութիւնս եւ ի ցաւս վասն օրինացն եւ պատուիրանացն յօժարք են[1] (էջ 416—7)։

Ծանօթ է Իսիքիոսի սուրբ Գրքի ամէն էջ, ինչպէս յաճախակի գործածած իր յարմար օրինակները կ'ապացուցանեն, զորս ամփոփած ենք ցանկի ոճով ի վերջ հատորիս. հմուտ է եբրայաբանութեանց, ինչպէս կ'երեւայ հետեւեալ իմաստին բացատրութենէն. «յերեսս օրհնեսցէ զքեզ». այսինքն է անամօթեալ հայհոյեսցէ զքեզ։ Կ'ախորժի շատ անգամ մեկնողական մանրամասնութեանց իջնալ, բարոյական խրատ մը հանելու համար, որ իր մեկնութեան նպատակն է։ Դիտելի է մեկնութեան մէջ տունէ տուն անցած միջոց դրած կապակցութիւնը որ միակերպութիւնը կը կոտրեն իրենց զանազանութեամբ[2] եւ կապակցեալ ամբողջութիւն մը կը կազմեն։ Պակաս չեն ակնարկութիւններ ժամանակի սովորութեանց եւ բարուց. օրինակ իմն լալկան կանանց (702), գեղեցկաշէն գերեզմաններու (660), յաղթանակի նշան՝ գլուխը սպիտակ պըսակ կապելու (212), կամ ընդհակառակն պատերազմի մէջ զարնուածներուն կամ փախստականներուն՝ վահանը ուսերնին զարնելնին (661), իր ժամանակի ապականութեան (716) եւն.։ Իսիքիոս կը սիրէ այլաբանութիւնը ոչ միայն իմաստներու՝ այլ եւ բառերու մէջ. իրեն յատուկ բացատրութիւններ են՝ ագարակ աղօթից (138), ագարակ պատուիրանաց (231), ագարակ առաքինութեան (349,417), ագարակ արգանդի (254), գոհացողութեան գոհարան (137), գոհացողութեան արմտիք (138), չտեմարան ականջաց (349), աման մտաց (349), ոստայն կենաց (427), յորձանք բանից (650), սահանք փառաց (142), եւն.։

Աւելորդ պիտի չըլլայ ի հաստատութիւն մեր ըսածին յիշել հօս Հ. Բ. Վ. Սարգիսեանի կարծիքը, որ վաղուց Իսիքիոսի Յոբայ մեկնութեան վրայ ամփոփ ուսումնասիրութիւն մը կատարած է իտալերէն լեզուով, ի Ֆրիպուրկ

1. Հմմտ. էջ 468—9, 677, 680, 744—5 եւն.։

2. Օրինակ իմն. «Որ այժմս ասելոցս եմ» (423), «Իսկ մեզ զլեզուս մեր եւ զմիտս յայն դարձուցուք՝ և որ ի կարգիս կայ» (277), «Վասն որոյ՝ նա ի վերայ էած» (760) եւն.։

գումարուած գիտական չորրորդ համաժողովի առիթով[1]։

«Ցատուկ եզականութիւն մը կը նշմարենք, կ'ըսէ, Ցոբայ մեկնութիւնը կարդալով։ Հեղինակին բացատրութիւնները, ինչպէս նաեւ բառերը, ստէպ այլաբանական են եւ կենդանի պատկերներով։ Թեւաւորեալ եւ բոլորովին արեւելեան երեւակայութիւնք որ գաղափարի յստակութեան մէջ առաջ կը բերուին մէկ կողմանէ, եւ միւս կողմէն խորութիւնը աստուածաշնչական բարոյական եւ բնական վարդապետութեանց՝ կը յայտնեն հեղինակը միանգամայն բանաստեղծ, գիտական եւ բարոյախօս։ Կատարելապէս տէր է նա իր նիւթին, զոր կ'ուզէ մեկնել, ոչ ուրիշի կարօտ է եւ ոչ ալ վկայութեան կը կոչէ — ամբողջ գրուածքին մէջ — նախորդ սուրբ Հայրերէն մէկը։ Ինքնին նշանաւոր հեղինակութիւն մ'է...։ Իսիքիոս մեկնիչ կը նմանի Եփրեմ ասորւոյն։ Իր քսանըչորս ճառերէն իւրաքանչիւրը կ'սկսի նախաբանով մը՝ ընկերացած խոր եւ ճարտասան խորհրդածութիւններով, որոնք մէն մի ներբողեաններ են այդ արդար մարդուն առաքինութեանց, եւ մի եւ նոյն՝ ատեն բնադրոշմ եւ նպատակ ունին ընթերցողը առաջնորդելու ճշմարիտ զոհողութեան եւ աշխարհի ունայնութեանց արհամարհանքին. բայց գլխաւորապէս Դ ճառին մէջ ըրած նկարագրութիւններով Ցոբայ կնոջ անզգամութեան, արդարոյն կռիւներուն եւ զարմանալի յաղթութիւններուն ընդդէմ սատանայի, եւ ասոր համր քարանալուն Բարձրելոյն գահոյից առջեւ, հեղինակը բազմիցս ապացոյց կուտայ մեզ՝ ակն յայտնի՝ մեծ իմաստասիրի եւ բնութեան խորունկ գիտնականի։ Ոճը կորովի է եւ լեզուն շատ ծաղկեալ։

Մեր հեղինակի համեմատ, Ցոբ ստուգիւ պատմական անձնաւորութիւն մ'եղած է։ Նա մարգարէ էր, եւ իր գիրքը ճշմարիտ մարգարէութիւն է բառացի իմաստով եւ այլաբանօրէն։ Իր նեղութիւնք կը պատկերեն մեզ Ցիսուսի չարչարանքները։ Չեմ յիշեր Իսիքիոսի նման ուրիշ Ցոբայ մեկնիչ կարդացած ըլլալս, որ այսպէս լաւ ըմբռնած ըլլայ այդ յստակ նկարագրուած տիպարը, համեմատելով հին կտակարանի տեղիքը նորոյն հետ, միաձայնեցնելով

1. Dei tesori Patristici e Biblici conservati nella letteratura Armena. Ս. Ղազար, 1897.

նաեւ գաղափարներ, Սաղմոսերգուին աստուածային քնարին միջոցաւ, նախախնամ տեսչութեան սքանչելի յաղթական նուագի մը։

Իսիքիոսի ուրիշ առաւելութիւն մը որ իր մեկնողական երկասիրութեանը յարգը կը բարձրացնէ, Աստուածաշնչի զանազան թարգմանութիւններուն, ինչպէս նաեւ եբրայական բնագրին կատարեալ ծանօթութիւնն է. որոնցմէ ըստէպ բառեր եւ բացատրութիւններ մէջ կը բերէ, կամ Իօթանասնից իմաստը, զոր կը մեկնէ, աւելի պարզելու համար, եւ կամ՝ որովհետեւ աւելի յարմար կը նկատէ իր մեկնութիւններուն, եւ կամ հակառակը։

Իսիքիոս թէուր թէ աւելի աղեքսանդրեան դպրոցին կը վերաբերի, որովհետեւ բնագրին բառական զուգցուածքները եւ խօսքերը այլաբանական իմաստով կ'առնէ. սակայն հարկ է ըսել՝ թէ զայս ըստ քմաց չըներ, այլ սուրբ Գրոց վկայութիւններուն համաձայն, որոնք գրեթէ նման իմաստ մը կը յայտնեն իրեն ընտրածին։ Հեղինակին այս ջանքին պատճառը կրնայ ըլլալ Յոբայ բնագրին այլաբանական բացատրութիւնները։ Յամենայն դէպս յատկանիչ մ'է այս, որ բնագրին շատ ու շատ անցքեր, մինչ մեծն Գրիգոր եւ այլ մեկնիչներ՝ կամ Յոբայ անձին համար կը հասկնան եւ կամ բարոյական խորհրդածութիւններ անոնցմէ կը հանեն, ընդհակառակն Իսիքիոս կը վերագրէ զայնս Յիսուսի, ապագայ զաղտնեաց եւ Եկեղեցւոյ խորհրդոց, սուր եւ բոլորովին նոր անդրադարձութիւններով»։

Իսիքիոսի Յոբայ մեկնութեան գրական գեղեցկութեան վրայ կրկին պիտի չուզեմ դառնալ, քանի որ Բազմավէպի մէջ ընդարձակ օրինակներով փորձեցի ճաշակ մը տալ[1]։

4. Ինչպէս յիշեցինք, Իսիքիոս իր ժամանակակիցներէն «աստուածաբան» եւ «աստուածայինն» կոչուած է նմանութեամբ Ս. Գրիգորի աստուածաբանի. Յոբայ մեկնութիւնը զուտ վարդապետական գրուածք մը չըլլալով, յայտնի է թէ հոն նոյն նիւթոց վրայ ճառօրէն խօսուած պէտք չէ փնտռենք. այնու հանդերձ շատ կէտերու վրայ անցողակի յիշատակութիւններ եղածատեն, կը յայտնուի

1. Բազմավէպ 1912, էջ 399—408։

*Իսիքիոսի ուղիղ վարդապետութիւնը նրբին աստուածաբանութեան հետ։*

*Երրորդութեան խորհրդոյն վրայ գլխաւորապէս երկու տեղ յիշատակութիւն կը գտնենք, բայց դժբաղդաբար երկուքն ալ պակասաւոր՝ գրչագրին հնութեան պատճառաւ* (167, 204). *սակայն Իսիքիոս ընդհանրապէս իր ճառերը կը վերջացնէ փառաւորութեամբ առ Ս. Երրորդութիւնն։*

*Նախախնամութիւնը գեղեցիկ նմանութեամբ մը ներկայացուած է. «Զիմ՞րդ իբրեւ ձեռամբ պատեալ ունի զամենայն ինչ խնամովք իւրովք, եւ ըստ նմանութեան կառավարաց ուղղէ իբրեւ երասանակօք զտարերս աշխարհիս կամօք իւրո՜վք»* (517). *հետեւաբար իմաստուն անձը չիշխեր Աստուծոյ դատաստաններն անգոսնել, որովհետեւ արդար է նա միանգամայն եւ հզօր, որ թոյլ կու տայ չարիքը, թէպէտեւ կրնայ արգիլել* (516), *եւ երբեմն՝ «թողացուցանէ Աստուած չարչարիլ արդարոց ի մեղաւորաց, ըստ ուժոյ իւրեանց, զի ըստ իւրաքանչիւր չափու փորձեալք, եւ երեւեալք եթէ վասն առաքինութեան ճգնեցան՝ պսակեսցին»* (659)։ *Այս պատճառաւ շատ պարզ է Իսիքիոսի իմաստասիրելու ձեւը. «Եթէ զնորա ձեռանէ եւ զօրութենէ ամենայն ինչ կախեալ է, զչարել աւելի է եւ դժուարանալն յիմարութիւն է. զի որ ինչ կամքն Աստուծոյ են՝ բարւոք են կամքն, առ ի յօգուտ հաճոյ է, առ ի բարիս եւ ի պիտանացուս յօրինի»* (211)։

*Աստուծոյ յառաջգիտութիւնը հետեւեալ բաղդատութեամբ կ'ապացուցանէ. «Քանզի մարդկան կեանքս ի վերայ երկրի են, իսկ դու ի բարձանց հայիս. մեր աւուրքս ժամանակեանք են, բայց դու յաւիտենական եւ յաւիտեանս գիտես. վասն այսորիկ զամենայն գիտես»*(542)։ *Եւ այս վարդապետութեան բացատրութիւնը կու տայ այլուր. «Վասն Աստուծոյ՝ հանդերձեալքն իբրեւ գեղեալ եւ զանցեալ համարեալ են»* (635)։

*Թողլով աստուածային միւս ստորոգելեաց վրայ իր յայտնած կարծիքը, յիշենք միայն Իմաստութեան նկատմամբ ըսածը. «ԶԱստուծոյ զիմաստութիւնն եւ զմեծ զօրութիւն ցուցանեն երեւելի տարերցս գեղեցկութիւնք»* (583)։ *Եւ այլուր. «Զիմաստութիւն նորա առանց ամենայն երկբայութեան ցուցանեն պայծառութիւնք արարածոցս, յարմարանք եւ կարգաւորութիւն. բայց ոչ յուսմանէ*

*ունի, այլ զի ինքն բնութեամբն իմաստութիւն է»* (498)։ *Մենք, կ'ըսէ, ուսմամբ կը հասնինք իմաստութեան, իսկ Աստուած ո՛չ այսպէս, վասն զի ինքն իսկ իմաստութիւն է* (583)։

*Մեկնութեանս մէջ ստէպ կը հանդիպինք հրեշտակներու մատուցած ծառայութեան առ մարդիկ. անոնք բնութեամբ վերագոյն են քան զմեզ* (370), *ոչ թէ միայն Աստուծոյ առջեւ կը կենան եւ կը պաշտեն զնա* (165, 223), *այլ եւ իբրեւ հաւատարիմ ծառաներ եւ որդիք* (224) *զանազան սպասաւորութիւններ եւ տնտեսութիւններ կ'ընդունին Արարչէն* (167 *ա*). *ո՞վ էր Դանիէլի ճաշ տանողը. մի՛թէ Միքայէլ չէ՞ր Հրէից համար կռուողը. հրեշտակ մը չէ՞ր զՊետրոս բանտէն հանողը, եւն* (166)։

*Մանրամասնութեանց կ'իջնէ մարդուս ստեղծման, այն է մարմնոյն եւ հոգւոյն ծագման վրայ խօսելով. թէ մեր մարմինը՝ զոր «զգեստ հոգւոյ» կը կոչէ* (220), *միայն ծնողաց չէ որ կը պարտինք, ինչպիսի՛ յստակութեամբ կը սորվեցնէ. «Մի՛ միայն զհասարակաց ծնունդն առնուր յուշ, այլ եւ զիւրաքանչիւր, զի ոչ եթէ քան զԱդամայ զարմանալի արարչութիւնն՝ կրտսերագոյն ինչ իցէ ի վերայ մեր իւրաքանչիւր արարչութեանս՝ որ եղեն նախախնամութիւնքս»։ Եւ ի՜նչպէս. «Յայտ է եթէ ի մարմնոյ ծնողիցն ժողովեցեր զծննդական սերմունսն, եւ մածուցեր զիս յարգանդի մօրն՝ իբրեւ զպանիր ի տիկս». բայց «քանզի ոչ էր բաւական հայրենի սերմն տալ մարմնոյս զգոյութիւն՝ առանց քոյոյ նախախնամութեան . . . յայսմանէ յայտ է թէ ոչ ի նիւթոյն, այլ ի քո զօրութենէ արարչութեանդ գործէ մարմինս, զի գոյացուցանէ զնիւթսըն եւ ի փոքունց անտի առնէ մեծամեծս»։ Իսկ հոգի՞ն. «յայտ է, եթէ այն է՝ յորժամ ստեղծեալն զիս՝ փչեցերն յիս որ է շունչ հոգւոյս. եւ յետ այսորիկ (անշուշտ յետ մկրտութեան) հոգի իմաստութեան, արքայութեան եւ որդեգրութեան, հոգի՝ որ առնէ զերկրաւորս երկնաւոր»* (547 - 8)։ *Եւ անոնց մէջ հաստատուած կապը ոչ ոք կրնայ խզել, «եթէ ոչ որ կապեացն եւ լուծցէ, զի դարձեալ կապեսցէ. ոչ իւիք քակի հոգին ի մարմնոյն*[1]*»* (691)։

*Իսկ այդ հոգին՝ Աստուծոյ պատկերը, դեռ չարատաւորուած սկզբնական մեղքով, ինչպիսի՛ բարձրութեան եւ*

1. *Համաձայն Շնորհալւոյ շարականին. «յորմէ կապեալք եւ արձակիմք եւ վերստին անլոյծ կապիմք»։*

պատուոյ կը հասցնէր զմարդ (377)։ Կը համարի Իսիքիոս թէ Ադամ երիտասարդութեան մէջ ճաշակած ըլլայ արգիլեալ պտղէն. «Դոյնպէս եդ ի վերայ իւրաքանչիւր ումեք զմեղս մանկութեան Ադամայ, քանզի դեռ եւս յերիտասարդութեան էր յորժամ ճաշակեաց ի դժնեայ կերակրոյն» (619)։ Կը վարդապետէ թէ մարդս ուղիղ ստեղծուած էր, եւ Եւա պատուիրանազանց ըլլալով ի տրտմութիւնս զմեզ ծընաւ (299)։ Եւ մեկնելով Դաւթի «անօրէնութեամբք յըղացաւ եւ ի մեղս ծնաւ զիս մայր իմ» խօսքը, կը հարցընէ. «Ըստ որո՞ւմ օրինակի։ Այլ թերեւս յետ ի դրախտին յանցանաց, եւ յետ պատուիրանազանցութեան չուառական փայտին կերակրոյ՝ սկսաւ ծնանել Եւայ» (299). Հերքելով որոգինեան կարծիքը, որ արգիլեալ պտղոյն մէջ այլաբանական նշանակութիւն միայն կ'ուզէր տեսնել։ Թէ Ադամայ մեղքը ի՛նչ կերպով տեղի ունեցաւ (260), եւ ինչպիսի՛ բարիքներէ զմեզ մերկացուց՝ գեղեցիկ նմանութեամբ մը կը նկարագրէ Իսիքիոս. «Լերին եւ վիմի եւ հաստատուն քարանց առակեաց զմարդոյն ի դրախտին կալ։ Բայց զփըլուծս լերին, եւ զհնութիւն վիմի, եւ զողողանս ջրոց, եւ զողորկանս քարանց, զԱդամայ պատահեալ գայթակղուծս անուանեաց, եւ կարի յիրաւի նմանեցոյց։ Քանզի լեառն, ասաց, թէ որպէս մեծապէս ունի զփլուծս, դոյնպէս եւ Ադամ մեծապէս ընկալաւ զգայթակղուծս։ Եւ դարձեալ, լեառն փչրէ զոր ի ներքոյն ունի, որպէս եւ Ադամ զըլորեալ մանրեաց զներքոյսն իւր. քանզի կարի տկարագոյն արար քան զինքն զարարածս. ուստի եւ Պաւղոս յիրաւի ողբալով երգէր զդէմս նորա իբրեւ հեծելով։ Եւ վէմ հընացեալ՝ դիւրաքակ եւ բեկտու լինի. այս եւ Ադամայ պատահեաց հնացելոյն մեղօք։ Վէմ հնացեալ՝ անվայելուչ լինի շինուածոյ, մինչեւ պատահեսցէ արուեստագիտի որ գիտիցէ շինողական գործով ընտրել եւ ի բաց որոշել զանպիտանն։ Դոյնպէս եւ Ադամ՝ անկեալ ի դրախտէն, ոչ էր վայելուչ հոգեւոր շինուածոյն, մինչ պատահեաց Քրիստոսի՝ որ իւրով նախախնամութեամբքն ի բաց որոշեաց զտկարութիւնս հին մարդոյն։ Եւ քարինք ողորկեալք բազում ջրովք փոխեն զդէմս իւրեանց. որպէս Ադամ եւ Եւա ողորկեալք՝ յայտ է թէ քակտեալք չար մեղաց ջրոմն... զառաջինն մաքուր դէմս մերոյ ստեղծուածոյս՝ յայտ է թէ զպատկերն Աստուծոյ ստուերացուցեալ

փոխեցին ըստ բազում մասանց[1]»... (641 -2)։

Իսիքիոս չգոհանալով մարդուս անկումին լոկ պատճառը քննել, կ'ուզէ փնտռել թէ ինչու փրկութեան արժանացաւ նա, մինչ դեւք յաւիտենական պատժոց սահմանուած են. «Ամբարիշտդ բնական անուն բանսարկուին է. քանզի նա է հայր ամբարշտութեան. նորա կործանումն չար է, վասն զի ծնկեալ ի մերոց բարեացս, ընկրկեաց ի մեղս զնախաստեղծ մարդն, եւ անդրէն յերկիր դարձոյց։ Այլ ի նմին երկրէ յոր զնայն դարձոյց, այլ նոր Ադամ անդրէն Քրիստոս նորոգեաց ի ձեռն իւրոյ մարմնաւորութեանն։ իսկ նմա՝ կործանումն, կատարած եւ խաւար արտաքին զգեհենն ետ, վասն զի իբրեւ բարերար եւ արդար եւ մարդասէր՝ ոչ ի բաց ընկէց զառանց չարութեանն զպատրեալն յայլմէ. վասն զի ոչ էր արժանի նմա պատրիլ, քանզի պարտ էր նմա միշտ ունել զմիտս իւր ի պատուիրանս Աստուծոյ։ Բայց սակայն ողորմելով՝ զտկարն անդրէն եստեղծ, եւ զանկեալն վերստին ստացաւ։ իսկ մարդոյն յանմեղութենէ եւ ի պարզմտութենէ յանցուցեալ, թողութիւն շնորհեաց» (480–1)։

Սատանան ոչ թէ միայն բանսարկու կամ ամբարիշտ կը կոչուի, կամ իժ եւ գազան (224), այլ եւ՝ նա որ հրեշտակ էր կարգաւ եւ պատուով, իյնալէն վերջ մատնիչ կոչուեցաւ եւ վիշապ անուանեցաւ, եւ մատնութեան անունը իր չարութեան համար ստացաւ (166ա)։ Իսկ նախկին ունեցած կարգն ու պատիւն՝ «էր զօրավար եւ յառաջակայ հրեշտակական զօրութեանցն» (661)։ Կ'ընդունի Իսիքիոս թէ սատանան թեւեր ունի, բայց յորմէ հետէ իր հրեշտակական թեւերը կորոյս, չի կրնար ոչ բարձր եւ ոչ ալ երկար թռչիլ. եւ զանի ճնճղուկներու նման գետնաթռիչ կ'անուանէ (170–1)։ Հպարտութիւնը եղած է պատճառ իր անկման (181), «քանզի ինքն զինքն քարավէժ ընկէց ընդ բազում խորաձորս, վասն յոյժ իւրոյ ամբարտաւանութեանն (224, 370, 499)։ Եւ չի բաւեր երկընքէն գահավիժիլը, որովհետեւ երկրիս վրայ ալ դեռ կը հալածուի (499), ոչ մէկ կարողութիւն ունի տարերքներու վրայ եթէ ոչ Աստուծոյ թոյլ տալով (200). մեծ է իր թըշնամութիւնը առ արարածս, «բայց առաւել եւս առ մարդն յերեւելի արարածոցս» (606), եւ դեռ բովանդակ իր պատիժը առած չէ, ինչպէս կը վարդապետէ մեկնիչս հար-

1. Հմմտ. նաեւ էջ 533, 537, 549–550, 628–9 եւն.։

*ցընելով. «Բայց ե՞րբ հասցէ նոցա արդար եւ ճշմարտութեամբ կորուստն եւ բովանդակ բարկութիւնն». եւ կը պատասխանէ. «յորժամ վախճանեսցին երեւելիքս»* (502)։

*Խօսելով անցողաբար Մարդեղութեան խորհրդոյն վրայ, կ'ուզէ հաստատել թէ անըմբռնելի է մեր մտքին. «Գիտել ո՞ բաւեաց եթէ զիա՞րդ մարդ էր կամ զիա՞րդ Աստուած էր»* (510). *եւ անքնին են կ'ըսէ, «վասն զի վերագոյնք են քան զմարդկեղէն մտաց հասանելոյ»* (507). *եւ այդ խորհրդոյն մէջ կը դիտէ Աստուծոյ անպատում սէրը առ մարդիկ. «Որչափ է փոյթ Աստուծոյ վասն մարդկան, զի խոնարհեցուցեալ զերկինս՝ ինքն գայ առ մեզ. Բանն մարմին եղեալ, զի ի ձեռն մերոյ ազգակցութեան զօրացուսցէ զօրաւորն զմեր տկարութիւնս»* (442–3)։ *Կը վարդապետէ թէ մարդեղութիւնը ծածկուած էր մասամբ ի դիւէն* (304), *որպէս զի չկարենար վերահասու ըլլալ Քրիստոսի կատարելիք խորհուրդներուն։ Կ'ընդունի ի Քրիստոս կըրկին բնութիւն՝ հետեւեալ պատճառաբանութեամբ. «Ընդէ՞ր միջնորդ ասի Քրիստոս. վասն զի զմարդոյ եւ զԱստուծոյ զկերպարանս ունի. զի պարտ է միջնորդին որ կարիցէ զթշնամիս ի հաշտութիւն ածել, առնուլ զդէմս երկոցունց, զի այնպէս կարէ միաբանել եւ հաշտեցուցանել։ Եւ վասն զի ընդ Հօրն իւրում զմարդ կամի հաշտեցուցանել, զի Աստուած է եւ մարդ եղեւ, եւ այսպէս ունի զկերպարանս երկոցունց*[1]» (537)։ *Խօսելով Քրիստոսի չարչարանաց վրայ, այս զանազանութիւնը կը դնէ կամքի. «Ինքն իսկ Միածինն կամէր զայս կամօք Հօր», եւ քիչ վար, «ոչ միայն իւրով կամօք, այլ եւ Հօր». եւ թէ կամաւոր էին իր կրած չարչարանքները. «վասն մերոյ փրկութեան չարչարէր եւ ոչ հարկաւորէր ի մարդկեղէն զօրութենէն»* (676)։

*Եկեղեցւոյ նկատմամբ տուած յաջորդ յորդորով կը խրատէ Իսիքիոս, որ ժողովուրդը իր հովուէն եւ երկուքը միասին անբաժան ըլլան Եկեղեցիէն. «Ոչ է պարտ ոչխարաց կալ արտաքոյ բակի, յայտ է թէ ժողովրդեան՝ առանց պահպանութեան. այլ եւ զբակն ունելով ընդ հո-*

1. *Հմմտ. նաեւ* 204, *ուր քանի մը խուղթք կը պակսին, գուցէ կամօք։ Հօր եւ յէջն* 321 *յիշատակութիւն կը գտնենք աղանդաւորաց, եւ ի մասնաւորի Մանիքեցւոց՝ որ երկու սկիզբ կը դնէին, հոգին՝ Աստուծմէ եւ մարմինը՝ սատանայէն։*

վանեաւ վիմին, յայտ է եթէ ընդ եկեղեցւով. քանզի այնպէս ոչ կարէ վնասել գալուստ հրոյն այնորիկ, զորմէ Քրիստոս ասէր, եթէ «տեսի զսատանայ զի անկանէր իբրեւ զփայլակն յերկնից». իսկ եթէ ի հովանւոյ իմանալի վիմի անտի ելանիցէ, միանգամայն իսկ հանդերձ հովուօքն հրով հատեալ ապականին. վասն զի առհասարակ ժողովրդեան եւ առաջնորդացն զայս վարդապետութիւն պատմեաց Հոգին» (201)։

Մկրտութիւնը կը ջնջէ սկզբնական մեղքի աղտը (537, 629) եւ «Վասն շնորհի մկրտութեան ունիմք զյոյս յարութեանն» (633). եւ Յիսուսի մկրտութեան տօնն ալ Եկեղեցին ի սկզբանէ կը կատարէ (308)։ Ապաշխարութեան խորհուրդը կամ աւազանը՝ մեղաւորաց համար կը բանայ փրկութեան նաւահանգիստը (267, 634), եւ Աստուած մեր ակամայ մեղքերը առանձին կը նշանակէ, որպէս զի կամաւորապէս գործուածներուն պէս հաշիւ չպահանջէ (640). ամենուս յայտնի է Աստուծոյ դատաստանը բնական օրինաց ձեռքով, եւ որոնք որ ասոր հակառակ կը գործեն՝ պատասխան պիտի չկարենան տալ ահաւոր դատաւորին (716)։ Մեղքը կը ջնջուի արցունքով՝ որ թագաւորը ի վշտակցութիւն կը շարժէ. «Քանզի արտասուքն լուացիչ լինին ոգւոց և մարմնոց, զամենայն աղտ ողողէ, և զամենայն ներկուածս սրբէ, եւ սպիտակագոյն քան զձիւն ցուցանէ զարտասուօղն» (689)։ Հաղորդութեան խորհրդոյն համար յիշենք հետեւեալ գեղեցիկ վկայութիւնը. «Ոչ կարէին ունել զմարմինն Քրիստոսի, եթէ ոչ նորա կամօք զիւր մարմինն իբրեւ թէ եփեալ այնու բանիւք՝ զոր բարբառեցաւ յորժամ զխորհրդական ընթրիսն կատարէր ի Սիոն, օրհնեաց եւ ետ ի կերակուր որ ուտէն զնա։ Որ կամիցի ճշմարտութեամբ վայելել եւ հաղորդ լինել թագաւորական ընթրեացն եւ խորհրդոյ հարսանեացըն, եւ համարձակութեամբ փափկանալ, հալեսցեն ըզմարմինս իւրեանց եւ մեռեալք եղիցին աշխարհիս այսորիկ, եւ մատուսցեն զմարմին իւրեանց կենդանի պատարագս, սուրբս եւ հաճոյս Աստուծոյ, եւ յամենայն չար ցանկութեանց անազդելիք եղիցին[1]» (734–5)։ Պատարագի խորհուրդն ալ ամենօրեայ կը դնէ Իսիքիոս. «Ուստի եւ հրամայեցի օր ըստ օրէ կատարել հաւատարմաց

1. Հմմտ. 267—8, 744։

## ԻԸ

գխորհուրդն առ ի յիշատակ իմոց չարչարանաց» (747)։

Ջուզելով երկարել ինչ որ առաքինութեանց[1] կամ ընդհակառակն մեղաց[2] նկատմամբ գրած է, ինչպէս նաև մահուան[3], դատաստանի[4], դժոխքի[5] եւ արքայութեան[6] կամ հատուցմանց[7] վրայ ըսածները մի առ մի յիշատակել, կ'ուզեմ միայն մէջ բերել Իսիքիոսի կարծիքը յարութեան մասին. վասն զի մինչ Ս. Ոսկեբերան կ'ըսէ Ցոբայ համար՝ թէ «չէր քաջահմուտ արքայութեան երկնից եւ յարութեան[8]», Իսիքիոս կը հաստատէ Որոգինեսի, Կիւրղի Երուսաղեմացւոյ, Եպիփանու եւ ուրիշ լատին Հարց հետ, թէ ծանօթ էին Ցոբայ հանդերձեալ կեանք. ահա իր մեկնութիւնը. «Սպասեցից մինչ միւսանգամ լինիցիմ»։ Զյարութիւնն միւսանգամ լինելութիւն կոչեաց[9] (638)։

Գուցէ այս միակ կէտն է յորում Ոսկեբերանի եւ Իսիքիոսի կարծիք կը զանազանին իրարմէ։

1. Համա. 667. — Բարեպաշտութիւն 601. — Համբերութիւն 135, 408—9, 668—9. — Զգուշութիւն լեզուի 597, 648. — Աղօթք 135—6, 682 եւն.
2. Արբեցութիւն 149—150. — Ամբարտաւանութիւն 456 եւ.
3. Յիշատակ մահու 701. — Պատրաստութիւն 690—1. — Անգիտութիւն ժամանակի մահու 339, 630.
4. Համա. 220, 350, 749. — Պատուհաս ամբարշտաց 713.
5. Համա. 555.
6. Համա. 377.
7. Համա. 185.
8. Մեկն. Մաթ. հտ. Բ. էջ 515.
9. Յարութեան մասին համա. 631, 5, 6.

# Գ.

## Յոբայ մեկնիչք

1. *Օտար մեկնութիւններ — 2. Առնչութիւն Ոսկեբերանի և Իսիքիոսի մեկնութեանց — 3. Ազգային մեկնութիւններ. Ստեփանոս Սիւնեցի — 4. Դաւիթ Քոբայրեցի — 5. Վանական վարդապետ — 6. Գրիգոր Տաթեւացի — 7. Համամ Արեւելցի — 8. Գրիգոր Նարեկացի։*

1. Խօսեցանք Յոբայ մեկնիչներէն Իսիքիոսի մեկնութեան ոճին վրայ. սակայն նախկին դարերու մէջ եղած են բաւական թուով մեկնիչներ այդ խրթին և խորհրդաւոր գրքին՝ որ Յոբայ անունը կը կրէ, և հարկ է ակնարկ մը տալ անոնց վրայ, ճանչնալու համար թէ ինչ աստիճան ազդեցութիւն ունեցած են, կամ ինչ կապակցութիւն ունին Իսիքիոսի մեկնութեան հետ։

Յոյն Հայրերէն ամբողջական ոչ մի մեկնութիւն հասած է ձեռքերնիս[1]. կան հատակոտորներ միայն քսան և չորս վարդապետաց՝[2] հաւաքուած ԺԱ դարուն վերջը Նիկետաս Հերակլիոյ եպիսկոպոսէն[3] և հրատարակուած նախ

1. Vigouroux, Dict. de la Bible, ի բառն Job.— Հմմտ. Cornely, Manuel d'Introduc. հտ. Բ. 24։

2. Որոնց թիւը, կարգը եւ անունը կը զանազանին ըստ ձեռագրաց. եւ են 1. Դիոնեսիոս Արիոպ. 2. Կղեմէս. 3. Որոգինէս. 4. Դիդիմոս. 5. Եւագրիոս. 6. Բարսեղ. 7. Գրիգոր Նազ. 8. Աթանաս. 9. Ոսկեբերան. 10. Կիւրեղ Աղեքս. 11. Մեթոդիոս Սիդոն. 12. Ապողինար Լաւոդիկ. 13. Թէոփիլոս Աղեքս. 14. Իսիդորոս Պեղուս. 15. Եւսեբիոս Կես. 16. Պոլիքրոնիոս Ապամիացի. 17. Եփրեմ. 18. Նեղոս. 19. Աղեքսանդր Կապադովկ. 20. Յուլիոս. 21. Յոբիանոս սրկզ. Անտիոքացի. 22. Սեւերիոս Անտ. 23. Սեբերիանոս. 24. Ողիմպիոդոր սրկզ. Աղեքս.։

3. Նիկետաս Սեռրոն, կոչուած նաեւ Հերակլիացի, 1070ի միջոցները ծաղկած է, նախ Կ. Պոլսոյ Եկեղեցւոյն սարկաւագ, յե-

*լատիներէն թարգմանութիւնը*[1] *և յետոյ յունարէն և լատիներէն*[2]*։ Այս հատակտորներէն մեծ մասը առանձինն հրատարակած է նաև Մինեը, Ս. Աթանասի*[3]*, Դիդիմոսի*[4]*, Ոսկեբերանի*[5]*, Որիգենեսի*[6] *և Ողիմպիոդորի*[7] *անուններուն տակ։ Վերջինոյս շատ կտորներ Պոլիխրոնիոսի կը պատկանին, և իր ամբողջութեան մէջ Ողիմպիոդորի գործ չէ*[8]*, ինչպէս որ կարծած է անոր լատին թարգմանիչը* P. Comitolus*։ Ասոնց վրայ հարկ է աւելցնել սոյն Որիգենեսի մեկնութիւնը Յոբայ երեք առաջին գլուխներու վրայ*[9]*։ Պարտէնհէվէր անհարազատ կը համարի Արիս-*

*տոյ կը կարծուի թէ եպիսկոպոս եղած ըլլայ Սեղրոնի՝ ի Մակեդոնիա. յետոյ Հերակլիոյ՝ ի Թրակիա։ Իր շատ մը գրուածները հրատարակուեցան յետոյ, ի միջի այլոց Յոյն Հայրերու սոյն շղթայն ի Յոբ։*

1. **Catena in Beatissimum Job absolutissima, e XXIV Græciæ doctorum explanationibus contexta, a Paulo Comitolo, S. J.** *Լիոն* 1586, *Վենետիկ* 1587։

2. **Patricius Junius, Catena Græcorum Patrum in beatum Job,** *Լոնտրա* 1637, *Վենետիկ* 1792։

3. Հտ. Իէ. *հմմտ.* **Pitra,** 1888։

4. Հտ. Լթ։

5. Հտ. ԿԳ. *սակայն, ըստ Պարտէնհէվէրի* (*հտ.* Բ. 120), *հարազատութիւնը պէտք ունի նորոգ ուսումնասիրութեան։* **Haidacher** *կրցաւ մէկ մասը նոյնացնել Ոսկ.ի ճառերու քաղուածներուն հետ, մնացածը Յոբայ մեկնութեան մէջ հարկ է փնտռել ըսելով,* (**Studi intorno a S. G. Crisostomo,** *հտ.* Ա. 217-234, *Հռոմ*, 1908)։ *Վերջերս գտնուեցաւ Ֆլորէնցէի մէջ Յոբայ ամբողջական մեկնութեան յոյն բնագիրը* (**Revue d'Hist. Ecc.** 1912 *էջ* 640—658)։ *Մատենադարանիս* Է *Ճառընտրին մէջ* (Թ. 822) *կայ Ոսկեբերանի անուամբ «Ով է դա»ի համառօտ մեկնութիւն մը որ բոլորովին օտար է իր ոճէն։ Նոյնպէս* Ժ *Հաւաքման մէջ* (Թ. 346) *յիշուած գրեթէ էջ մը մեկնութիւնը «Այր մի էր յԱւսիտ աշխարհէ», Վանական իր հաւաքման մէջ Սիւնեցիին կ՚ընծայէ։*

6. Հտ. ԺԲ. *Որիգենեսի* 22 *ճառերն ի Յոբ թարգմանուած էին Իլարիոնի ձեռքով ի լատիներէն. սակայն այդ թարգմանութենէն երկու փոքր պատառիկներ միայն կը մնան. իսկ յոյն բնագրէն հատակտորներ միայն կը գտնուին շղթայից մէջ։ Հմմտ. նաև* **Pitra Analecta II, III**։

7. *Տես հտ.* ՂԳ. 13—469։

8. *Հմմտ.* **Vigouroux Dict.** *և* **Bardenhewer** *հտ.* Գ. 53։

9. **Usener** *ապացուցուց թէ Որիգենեայ ընծայուած Յոբայ այս մեկնութիւնը Յուլիանոս Ալիկառնացւոյն գործն է։ Այս մասին հմմտ.*

պագացւոյ անուամբ շղթայից մէջ պահուած հատակոտորներն (հտ. Ա. 192). և կորսուած Բարսղինը (հտ. Բ. 54)։

Միւս արևելեան Հայրերէն յիշուելու արժանի են Ս. Եփրեմ[1] և Բարհեբրէոս, որոցմէ նոյնպէս ամբողջական մեկնութիւն մը դեռ չունինք։

Լատին Հայրերու մէջ, բացի Իլարիոնի պատառիկներէն՝ որ ըստ Յերոնիմոսի՝ Որոգինեայ մեկնութեան թարգմանութիւնն է, և զոր քիչ առաջ ի ծանօթութեան յիշեցինք, կայ Ս. Օգոստինոսի գիրք մը ի Յոբ[2], որ կը բովանդակէ լուսանցքի նօթեր՝ հանուած Յոբայ գրքի բնագրին վրայէն և 400ի մօտերը տգիտի մը ձեռքով հաւաքուած. իսկ Յերոնիմեայ գրուածոց մէջ տպուած կրկին մեկնութիւնները[3] իրենը չեն, վերջինը կ'ընծայուի Յերոնիմոսի աշակերտին՝ Փիլիպպոս քահանայի։ Ընդարձակ գործ մ'է Գրիգոր Մեծի մեկնութիւնը[4], զոր սկսած է ի Պոլիս Տիբերիոս կայսեր արքունիքին դեսպան եղած ատեն (578ին) և աւարտած իր քահանայապետութեան օրով։ Ընծայականին համեմատ առ Լէանդր արքեպիսկոպոս Սիվիլիոյ, հեղինակը մտադրած է մեկնել գիրքը երեք կերպով, պատմական, խորհրդանշական (typique) և բարոյական։ Պատմական մեկնութիւնը համեմատաբար խեղճ է և անբաւական, խորհրդանշականը քիչ մ'աւելի ընդարձակ, իսկ բարոյականը լայնօրէն ճառուած է ամէն մասամբ, այնպէս որ ամբողջութիւնը բարոյական աստուածաբանութեան շտեմարան մը կրնայ կազմել[5]։ Գրիգոր իր վերոյիշեալ թղթին մէջ առ Լէանդր ինքզինքը Յոբայ առաջին մեկնիչը կը համարի, ուսկից կարելի է հետևցնել թէ իրեն ծանօթ չէին նախկին յոյն մեկնիչները։

Հ. Պ. Ֆէրհատ **Der Jobsprolog** ուր կը հրատարակէ Յոբայ հայերէն նախադրութիւնը հանդերձ լատին թարգմանութեամբ։

1. Հատակոտորք մեկնութեան հրատարակուած են ի Հռոմ 1740 հտ. Բ. 1—20։ Իսկ հայկական թարգմանութեան մնացորդներուն համար տես Վանականի հաւաքումը։ Հմմտ. Հնդ. Ամս. 1912, էջ 666—674, ուր Հ. Ա. Վարդանեան հանելով Պատճառաց Գրքէն հրատարակած է սկիզբէն կարեւոր մաս մը։

2. **Annotationes in Jobum**, հտ. ԼԴ։

3. **Migne** հտ. ԻԳ, ԻԴ։

4. **Expositio in librum Job sive Moralium libri XXXV**. տպ. Վենետիկ 1744։

5. Պարտէնհէվէր, հտ. Գ. 160։

2. Արդ այսչափ մեկնիչներէն որո՞ւ հետ առնչութիւն ունի մեր Երուսաղեմացի մեկնիչը, կրա՞ծ է արդեօք իր այս մեկնութեան մէջ իրմէ նախընթաց Հարց ազդեցութիւնը, օգտուա՞ծ է, կամ հետևա՞ծ է մէկու մը։

Ինչպէս կանխաւ՝ Իսիքիոսի մեկնութեան ոճը վերլուծած միջոցնիս՝ ըսինք, թէ նա իր ամբողջ գրուածքին մէջ նախորդ սուրբ Հայրերէն ոչ մէկը վկայութեան կը կոչէ, և առանձին հեղինակութիւն մը կը կազմէ, սակայն այնու հանդերձ աղեքսանդրեան դպրոցի հետևող մ'ըլլալը կ'ընդնշմարուի. այսպէս ալ կարելի չէ Յոբայ մեկնութեան մէջ ուղղակի հետևողութիւն մը գտնալ Նախկին Ս. Հայրերէն մէկուն, մանաւանդ որ անոնցմէ դեռ ամբողջական մեկնութիւն մը չունինք ձեռքերնիս։ Որքան ալ կ'ըսենք թէ Իսիքիոս ինքնուրոյն մեկնիչ մ'է, որովհետև յունական Հարց շղթաներով կազմուած Յոբայ մեկնութեան վրայ մեր ըրած քննութիւնը նոյն արդիւնքը հաստատեցին, և որովհետև իր գաղափարները և մեկնելու ոճը ընդհանրապէս կը տարբերի միւս Հայրերու կերպէն, սակայն կարելի չէ հեռաւոր գէթ նմանութիւն մը չտեսնել Ոսկեբերանի ոճին։

Իսիքիոս՝ որ կ'ըսուի թէ Կ. Պոլսոյ մեծահռչակ հայրապետին վարքն ալ շարագրած ըլլայ, պէտք է որ ունեցած ըլլայ իր առջևը անոր մեկնութիւնները, և հետևաբար կրած է անոնց ազդեցութիւնը։ Յիշեցինք առաջ որ Իսիքիոս ալ նման Ոսկեբերանի՝ իր մեկնած բնագիրը կ'ուզէ ճշդել համեմատութեամբ Ակիւղասայ, Սիմաքոսի և Թէոդիտոնի թարգմանութիւններուն. ասիկա թէպէտ երկրորդական կէտ մը համարուի, կամ մանաւանդ աստուածաշունչը ուսումնասիրելու դարուն ոգին, սակայն ցոյց կու տայ միանգամայն՝ որ մեր երկու մեկնիչները մի և նոյն դպրոցի աշակերտներ են։ Դարձեալ, ինչպէս Ոսկեբերան՝ այսպէս Իսիքիոս մի և նոյն լեզուն կը գործածեն դրուատելու համար զՅոբ, նոյն առաքինութիւնները կը տեսնան երանելւոյն վրայ, նոյն հետևանքները կը հանեն իրենց ընթերցողները յորդորելու համար. և Ոսկեբերանի յԱնդրիականացն ճառերը, ուր կ'աշխատի Յոբայ օրինակով ժողովուրդը համբերութեան յորդորելու, ամփոփումն են կարծես Իսիքիոսի մեկնութեան։ Ըսածնիս բացատրենք քանի մը օրինակներով.

Divina autem scriptura eum definit esse hominem, qui id, quod Dei similitudinem imitatur, custodivit... Solus ille verus est homo, qui conservata imagine, a Deo concessam pulchritudinem minime obscuravit. (Cat. gr. էջ 51)

Իսկ մարդ հաստատութեամբ այն կոչի՝ որ բերէ զպատկերն Աստուծոյ, որ պահէ զբանաւորական պատիւն։ (Իսիք մեկն. էջ 139)

A regione quoque illius ducitur laus: ut id quoque tibi admirationem faciat, quod ex spinis huiusmodi rosa extiterit. (Cat. gr. 50)

Խուժադուժ էր աշխարհն, այլ ընտանի էր տունկն. անապատ էր ագարակն, այլ պայծառ ցուցաւ վարդն։ (Իսիք. մեկն. էջ 140)

Nec enim post boum, asinorum, ac camelorum greges abactos, neque post eversam domum, neque post obrutos liberos, machinam hanc ille adhibet, sed interim filet, et quiescit oculis in unum athletam coniectis.
(Cat. gr. էջ 114)

Յետ մեծութեանն ապականելոյ, յետ բազում որդւոց կորստեան, յետ մարմնաքանց հարուածոց մարմնոյն, զվերջին հնարագիտութիւն, եւ որպէս կարծէր եթէ քան զամենայն բռնագոյն՝ էած ի վերայ նորա զկինն։ (Իսիք. մեկն. էջ 249–50)

Si enim ex paradiso, inquit, eum mulieris ope exturbavi, multo magis in stercoris acervo evertere potero.
(Cat. gr. էջ 114)

Իսկ եթէ զնա ի ձեռն կնոջն կարացի կործանել, թերեւս եւ ոչ սա կարասցէ ուժել, մարտնչելով ընդ սըմա կնոջն։ (Իսիք մեկն. էջ 251)

Այլ սակայն՝ յորժամ եւ զամենայն իսկ զմեքենայսն շարժեաց մերձեցոյց ի նա, եւ զմեծատունն աղքատ առադրեաց. եւ որ սոսկալին

Բայց քանզի յամենայն պատերազմունսն յաղթահարեալ էր մատնիչն, եւ վրիպեալ էր ամենայն փորձանօքն... եւ յամենայն մե-

***

*մեզ թուի քան զամենայնն, զբազմորդին անզաւակ կացոյց. յորժամ ողջոյն զմարմին նորա հարեալ կեղեքեաց . . . որպէս բերանք որդանցն վատնեալ ծախեցին զանդամս նորա... յորժամ եւ ոչ ի քաղաքէ անտի միայն եւ ի տանէն մերժեաց զնա եւ ի քաղաք օտար վըտարեաց, այլ զաղբիւսն նմա տուն յարդարեաց միանգամայն եւ քաղաք*[1]*...:* (*Ոսկ. Ճառք. Թարգ. Հ. Եղիա, Վենետիկ* 1818, *հտ. Բ. էջ* 303)

*քենայից մերկացեալ էր, յետ մեծութեանն ապականելոյ, յետ բազում որդւոց կորըստեան, յետ մարմնաքանց հարուածոց մարմնոյն.. յորժամ զմարմինսն սկսան պատառել զառաջին որդունքն, յորժամ քաղաքացիքն փախչէին ի նմանէ եւ հալածէին զնա հանդերձ ազգակցօքն, յորժամ նստաւ յաղբեւսն, փոխանակ թագաւորական անկողնայցն...:* (*Իսիք. մեկ. էջ* 249‒250)

*Ցիշեալ օրինակներուն մէջ եթէ չենք գտներ բառացի նմանութիւն, ուղղակի հետեւողութիւն մը համարելու չափ, սակայն գաղափարներու նմանակցութիւնը և նոյն իսկ անոնց յաջորդութեան կարգը զմեզ կը հաւոզեն ընդունելու ազդեցութիւն մը և առընչութիւն մը Իսիքիոսի և Ոսկեբերանի մեկնութիւններուն. և գուցէ աւելի ստուգուի կարծիքնիս, երբ Ոսկեբերանի Ցոբայ մեկնութեան նորագիւտ յունարէն բնագիրը հրատարակուի. կամ լաւ ևս, երբ անոր հայերէն թարգմանութիւնն ալ յայտնուի, որ ապահովապէս միւս մեկնութեանց բաղդին արժանացած է:*

*Անցնինք այժմ ակնարկ մ'ալ տալու Ցոբայ գրքին ազգային մեկնիչներուն, որոնց քով Իսիքիոսի գրուածքը իր արժանաւոր յարգը վայլած է:*

3. *Ցոբայ գրքին զուտ հայկական կամ թարգմանածոյ մեկնութեան յիշատակութիւն մը գտնելու համար մինչև ութերորդ դար պէտք է որ իջնանք: Մեր մատենագրութեան մէջ յիշուած Ցոբայ անդրանիկ մեկնիչն է Ստեփանոս Սիւնեցի, որու համար կը վկայէ Կիրակոս պատմիչ* (*էջ* 17), *թէ «Բազում մեկնութիւնս եթող սուրբ Գրոց՝*

1. *Հմմտ. Նախ. անդ էջ* 150, 158, 164, 165 *եւն., Մեկն. Մտթ. հտ. Բ. էջ* 514—8 *եւն.:*

*Յոբայ և Աւետարանացն, այլ և Դանիէլի և Եզեկիէլի». նոյնպէս կը գրէ նաև Ուռպելեան. «Մեկնեաց և զբեանս բազումս, զԱռակացն, զՅոբն, զԵզեկիէլն, և այլ բազումս, որոյ բանքն նշանաւոր ի մէջ այլոց մեկնչացն՝ փայլին որպէս ջահ պայծառ»*[1]*։ Սակայն դժբաղդաբար հատակոտորներ միայն մնացած են Ստեփանոսի այս Յոբայ մեկնութենէն՝ Վանականի հաւաքածոյին մէջ. եւ անոնց կրճատուած ձևին մէջ կարելի չէր եղած ցարդ ճանչնալ թէ յունական հայրերէն որո՞ւն մեկնութեան թարգմանութիւնն է։ Մեր ըրած քննութենէն և համեմատութենէն յոյն Հարց մեկնութիւններով կազմուած շղթային հետ, մի քանի տեղ նմանութիւններ գտանք Ողիմպիոդորի ընծայուած՝ սակայն իրօք Պոլիխռոնիոսի հատուածներուն հետ, ինչպէս հետևեալ օրինակին մէջ կը տեսնուի, ուր խնդիր կ'ըլլայ թէ ինչ միջոցաւ Աստուած կը խօսի սատանային հետ. հատուածիս հեղինակը կը համարի թէ հրեշտակներու միջնորդութեամբ կը կատարուի, և վկայութիւն կը կոչէ Զաքարիայ մարգարէութենէ և Կաթողիկէ թղթէն. ճիշտ նոյն խնդրոյ մէջ Սիւնեցւոյն մեկնութիւնն ալ նոյն օրինակները կը բերէ. ահա երկու բնագիրները.*

Angelos cum diabolo disceptando sermocinari, tum ex iis quae apud Zachariam leguntur, perspicuum fieri potest: Sic enim angelus diabolo, *Imperet tibi qui elegit Hierusalem:* tum ex epistolis catholicis, ubi est his verbis, *cum Michael contenderet de Moysis corpore cum diabolo, non est ausus iudicium inferre blasphemiae: sed dixit, imperet tibi Dominus...* Ergo per sanctos Angelos Deus loquitur diabolo. (Cat. gr. *էջ* 68)

*Կարծիք (են) եթէ ի ձեռն հրեշտակի լինէր հարցումն, որպէս ի Զաքարիա մարգարէ, որ ասէ հրեշտակն ցսատանայ. Սաստեսցէ ի քեզ որ ընտրեացն զԵրուսաղէմ։ Նոյնպէս ի Կաթողիկէն, յաղագս մովսեսեան մարմնոյն ասէր Միքայէլ ցսատանայ. Սաստեսցէ ի քեզ Տէր. նոյնպէս եւ աստ իմանալի է։ Եւ լինի հարցումն եւ պատասխանի ոչ մարդկային ձայնիւ, այլ որպէս պարտ է անմարմնոյ ընդ անմարմինս խօսել, այսինքն իմանալեօք։ (Գրչ. Թ.* 1627, *Վանականի հաւաք. էջ* 11–2)

1. *Հմմտ. Հայապատում ՄԱ։*

*Ուրիշ երկու օրինակներ ալ, ուր ընդ աղօտ կը նշմարուին հետքեր մի և նոյն Ողիմպիոդորի տրուած մեկնութենէն.*

« Lapis tenebrae, et umbra mortis »...
Lapides, inquit, qui in sodiendo quaeruntur, sunt in profundo abstrusi, in ipsaque mortis umbra delitescunt, idest, in partibus terrae imis, atque in alta obscuritate: illa vero terra, ex qua, cum perpurgata fuerit, ferrum, aliave metalli materies existit, sub torrente, arenaque latet.
(Cat. gr. *էջ* 387)

*«Զքար եւ զխաւար եւ զստուերս մահու...* (ԻԸ. 4)։
*Քար՝ ակն պատուական. խաւար՝ մարգարիտ, զի ի ծածուկ կայ որպէս ի խաւարի, զի ի խորս երկրի թաքուցեալ են. իսկ ի խրամէ հատ ոսկէքար, եւ ժողովեալ փոշէհող, արկեալ ի քրեա, աւելորդն հալմամբ հրոյն իջանէ որպէս հեղեղ։* (*Անդ էջ* 119*ա*)

« Terra, exipsa egredietur panis »...
... quae quidem semina postquam suo calore, quasi igne quodam dissoluit, et vi seminis multiplicem ex illis fetu extulit...
(Cat. gr. *էջ* 387)

*«Երկիր՝ եւ ի նմանէ ելցէ հաց»...* (ԻԸ. 5)։
*Իսկ հուրն զգարնանային ջերմութիւնն՝ որով ընձիւղին բոյսք...։* (*Անդ*, *էջ* 119*բ*)

*Յաջորդ օրինակներուն մէջ աւելի որոշ կը տեսնուին նմանութիւնք.*

« Super congregatione lapidum dormiet»...
De impio, ut de planta aliqua in mediis lapidibus, silicibusque sata, quae nec semper manere potest, et corrupta flaccescit...
(Cat. gr. *էջ* 204)

*«Ի վերայ կարկառի քարանց ննջեսցէ»...* (Ը. 17)։
*Որպէս սերմն անկեալ ի ժողով քարանց հեղձնու, եւ կամ բուսեալ վաղվաղակի չորանայ, այնպէս եւ կեանք ամբարշտաց։* (*Անդ*, *էջ* 49*բ*)

Sagitae piratarum ejus...
... Quod si ad diabolum referantur haec ipsa, piratas ejus daemones dicit, qui ejus ministri sunt, et satellites. (Cat. gr. էջ 288)

«Նետք հինից նորա»... (ԺԶ. 10)։
Նետք՝ հարուածքն, եւ հէնք աւազակաց՝ դեւք բանսարկուին։ (Անդ, էջ 81բ)

« Qui circumdabant alima in sonante ».
Symmachus autem, Vellicantes cortices plantarum. Alima herba est quaedam, ut aiunt, quae celeriter explet comedentem, gignitque satietatem. *In sonante* autem, idest, in vallibus, locisque saxosis. Eiusmodi enim loca apte personant loquentibusque respondent. Aut adeo nemoribus consitum locum, qui ventis perflatur, sonantem dicit. (Cat. gr. 410–1)

«Որք պատէին խարշափուն բանջարով»... (Լ. 4)։
Զխարշափունն այլք աղիմայ թարգմանեցին և կէսք գերիոն. և է սա բանջար աղէհամ, որ յուտելն լցուցանէ զտեղի հացի. և այսպէս կային ի տնկուտ վայրս թաքուցեալ, որ ի սաստիկ հընչմանէ հողմոյ ձայն արձակիւր ի յոստոցն, և ապա ելանէին ի խնդիր այնմ բանջարոյ։ (Անդ, էջ 127բ)

« Frater sum factus sirenum »...
Struthiones... animalia sunt quae solitudinem amant. (Cat. gr. էջ 416)

«Եղբայր եղէ համբարուաց» (Լ. 29)։
«Ցուչկապարիկ՝ կամ հաւ է քաղցրաձայն անապատասէր։ (Անդ, էջ 131ա)

« Quod si in innumerabilibus »...
... Quamvis enim divino munere dives erat, immoderatam cupiditatem tamen amputabat.
(Cat. gr. էջ 426)

«Եթէ ի վերայ անթուոց եդի զձեռն իմ» (ԼԱ. 25)։
Թէպէտ մեծատուն էր արդարն, սակայն զանթիւ եւ զանչափ ցանկութիւն հալածէր ի գործոց իւրոց։ (Անդ, էջ 133բ)

Արդ այս նմանութիւններով կը համարինք գտած ըլլալ Ստեփանոս Սիւնեցիին թարգմանած Յոբայ մեկնութեան յոյն բնագիրը, որ մեծ մասամբ կորսուած ըլլալով, շատ կարեւոր և հետաքրքրական պիտի ըլլար եթէ գէթ թարգմանութեանը մէջ ապրած ըլլար ժամանակի աւերիչ ճիրաններէն[1]։ Վանական եթէ իր առջև դեռ ունէր Սիւնեցիին թարգմանած այդ մեկնութեան ամբողջութիւնը, չէ՞նք կրնար յուսալ որ օր մը յայտնուի ութերորդ դարու այս գնահատելի աշխատութիւնը։

4. Վանականի հաւաքման մէջ կը յիշուի Ստեփանոսէ զատ Դաւիթ Քոբայրեցին[2], որմէ կոչումներ կ'ըլլան ստէպ ճիշտ երբ Իսիքիոսինները կը վերջանան, այնպէս որ կասկածիլ կու տան որ Դաւիթ շարունակող մը եղած ըլլայ Իսիքիոսի, քանի որ Վանականի կոչումներուն մէջ չեն գտնուիր Դաւթէն պատառիկներ Յոբայ նախորդ գլուխներուն մեկնութեան։ Մեր ձեռքը եղած Վանականի հաւաքման հնագոյն գրչագիրը[3], երբ Յոբայ Ի. երորդ գլխուն մեկնութիւնը կ'աւարտի, կ'ըսէ. «Վճարեցաւ Եւսիւքին, և այժմ Դաւիթ վարդապետին որ Քոբայրեցի կոչիւր»։ Հաստատուած այս վկայութեան վրայ կը համարուէր ցարդ թէ ստուգիւ Դաւիթ Քոբայրեցի Յոբայ մեկնութիւն մը գրած ըլլայ, որ ամբողջութեամբ հասած չէ մեր ձեռքը. և այդ մեկնութեան ծանօթութիւնը մի միայն Վանականի այս յիշատակութեան կը պարտէինք։ Այսպէս կարծած են Սոմալեան[4], Զարբհանալեան[5] և ուրիշներ։ Բայց աստի մեր հրատարակած Իսիքիոսի Յոբայ մեկնութեան ձեռագիրը մինչև քսաներորդ գլուխը հասնելով աւարտե-

1. Պատճառաց Գրոց մէջ կը յիշուի Ստեփանոս Փիլիսոփայի Մեկնութիւն եւ սկիզբն Յոբայ (Թղ. 40բ – 41բ)։ Հմմտ. Հնդ. Ամս. 1907 էջ 233։ Այս հատուածը՝ զոր տես ի վերջ հատորիս, մեր խնդրանքին վրայ, ազնուութեամբ ղրկեց մեզ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան, որուն հրապարակաւ կը յայտնենք շնորհակալութիւննիս։

2. Դաւիթ Վ. Քոբայրեցիի մասին տես Հանդէս Ամսօրեայ 1908, էջ 139—147։

3. Թիւ 1627, գրուած 1415ին «յերկրին Արծրունեաց ի Վանս Կոճերաց, որ է Ծովահայեաց Աստուածածին»։

4. **Quadro della storia letteraria di Armenia**, Վենետիկ 1829, էջ 102, 108։

5. Պատմ. հայկ. հին Դպր. էջ 702, 734։

*լուն, և անոր յիշատակարանը գրողին անստոյգ տեղեկութիւնը, «Այլ վասն թերութեան տառիս յայտ լիցի ընթերցողաց, զի բանքս Խիքիոսի մինչև ցա՞յս վայր սպառեցան, և թէ այս մինչև ցա՞յս վայր միայն եղև քննեալ ի նմանէ, և թէ ի թարգմանութենէ թերին մնացեա՞լ եղև, չէ յայտ», և Վանականի ալ անծանօթ ըլլալը Խիքիոսի Յոբայ մեկնութեան քսաներորդ գլխէն անդին գոյութիւն ունենալուն, զմեզ համոզած էին թէ այդ մեկնութիւնը կա՛մ հեղինակէն և կամ թարգմանչէն չարունակուած չէր, եթէ չէր անյայտացած յետ թարգմանութեան։ Սակայն մանր քննելով Քոբայրեցիի անուամբ մեր առջև գտնուած կրճատուած մեկնութիւնը, կը համարինք գտած ըլլալ անոր մէջ Խիքիոսի մեկնութեան չարունակութիւնը, հետևաբար ոչ թէ Դաւթի՝ այլ Երուսաղեմացի երիցու գրչէն ելած. և այս մեր կարծիքը կը յուսանք ստուգուի, երբ օր մը փոխանակ համառօտ մեկնութեան և հատուածներու՝ ամբողջական մեկնութիւնը երևան գայ, նոյն իսկ հոգ չէ թէ Դաւթի անուամբ, վասն զի ոճը պիտի մատնէ մինչև քսաներորդ գլուխ մեկնող Խիքիոսին պատկանիլը։ Բայց թէ ինչո՞ւ Դաւթի անունը կը կրէ Յոբայ մեկնութեան այս յաջորդութիւնը. արդեօք Վանական խաբուա՞ծ էր իր առջև եղող անունը խարդախուած գրչագրէ մը, քանի որ չենք կրնար համարիլ զՔոբայրեցին թարգմանիչ Խիքիոսի մեկնութեան, որով չենք կրնար ըսել թէ չփոթուած է երկրորդ մասին մէջ մեկնութեան հեղինակը անոր թարգմանչին հետ, եթէ դիպուածով, գրքին երկարութեան պատճառաւ, երկու հատորի մէջ ամփոփուած ըլլար սա։*

*Բայց ջանանք ապացուցանել Խիքիոսի մեկնութեան և Քոբայրեցւոյն կարծուած չարունակութեան մէջ գտնուող ոճի նոյնութիւնը և սերտ աղերսը։*

*ա. Ստուգիւ Քոբայրեցիի ընծայուած մեկնութեան մէջ կան բացատրութիւններ որ Խիքիոսի յատուկ են և չատ ընտանի. օրինակ իմն. «Եւ այս թշնամւոյ է յաւէտ քան բարեկամի» (98 ա). «Զայս ոչ տրտնջելով ասէ» (116 բ). «Զայս ի դէմս իւր և նախաստեղծին առնու» (108 բ) ևն։*

*բ. Քոբայրեցիի համարուած մեկնութիւնը որչափ ալ կտրատուած ըլլայ Վանականի ձեռքին տակ, սակայն կարելի չէ չանդրադառնալ, մանաւանդ ուր հատուածները*

քիչ մ'աւելի երկայն են, լեզուական նմանութիւններ․ այնպէս որ Հայկազեան բառգիրքը հետեւեալ և դեռ ուրիշ օրինակներ Իսիքիոսի կու տայ փոխանակ Վանականի, կամ Քոբայրեցւոյն. «Մինչ ի մեծութեան էր Յոբ, բարեկամք նորա էին. և յաւուրս տուայտանացն[1] այսպէս բարբառէին»։ Չենք կարծեր որ Հայկազեանը խմբագրողները Իսիքիոսի մեկնութեան ամբողջական ձեռագիր մ'ունեցած ըլլան իրենց առջեւ։

գ. Ինչպէս որ Իսիքիոս ամէն մէկ ճառ փոքր նախաբանով մը կը սկսի և ամփոփ յորդորականով մը կը վերջացնէ, նոյնը կը տեսնենք Դաւթի պատառիկներուն մէջ. յայտնի է վերջնոյս քով ամենահամառօտ, իբր ի մանրանկարի։

դ. Ինչպէս Իսիքիոսի քով Ակիւղասայ, Թէոդիտոնի եւ Սիմմաքոսի թարգմանութիւններուն յիշատակութեանց կը հանդիպինք, նոյնը Քոբայրեցւոյն կարծուած մեկնութեան մէջ ալ կը գտնենք (164բ, 165ա)։

ե. Իսիքիոս իր մեկնութեան մէջ տունէ տուն անցած ատեն յատուկ բացատրութիւններ ունի, որոնց Դաւթի քով ալ կը հանդիպինք։

զ. Իսիքիոս ստէպ Աստուածաշունչի միւս գիրքերու վըկայութիւնները կը գործածէ, նոյնպէս նաեւ Դաւիթ իր մեկնութեան մէջ։

է. Իսիքիոսի շատ անգամ Յիսուսի չարչարանքներու վրայ յարմարցուցած նախընթաց գլուխներու մեկնութիւնը (674, 726 եւն.) հոս ալ նոյնպէս կը շարունակուի (116բ եւն)։

ը. Երուսաղեմացի երիցուն մեկնութեան մէջ շատ անգամ կը հանդիպինք Հրէից դէմ մեղադրանքի, եւ հասկընալի է ապրած դարուն եւ միջավայրին պատճառաւ, բայց անյարմար պիտի ըլլար նոյն ոգին Դաւթի Քոբայրեցւոյն գրչին տակ (110բ, 109ա, 111բ եւն)։

թ. Դաւթի ընծայուած մեկնութեան մէջ շատ անգամ ակնարկութիւններ կան նախընթաց գլուխներու մէջ տրուած լուծման, որ համաձայն է Իսիքիոսի տուածին։

Արդ այս ամէն փաստերը, զորս օրինակներով աւելորդ համարեցանք ծանրաբեռնել, զմեզ կը համոզեն ընդունելու, 1. թէ Իսիքիոսի Յոբայ մեկնութիւնը ի սկզբան ամբողջապէս թարգմանուած էր. 2. թէ Վանական իր առջեւ

1. Վանական 103ա։

ունեցած եւ համառօտած է ամբողջ մեկնութիւնը, սակայն Ի․ երրորդ գլխէն վերջ փոխանակ Իսիքիոսի՝ Դաւթի անունով. 3. Թէ Դաւիթ Քոբայրեցին առանձին մեկնութիւն գրած չէ։

5. Ստեփանոս Սիւնեցւոյն եւ Դաւթի Քոբայրեցւոյն մեկնութիւններուն վրայ խօսելէ վերջ, շատ բան չի մնար մեզ ըսելիք Վանական վարդապետի[1] հաւաքման վրայ, որ թէպէտ յինքեան արժէք մը չունի, շատ տեղ անկապ կերպով կտրատած ու համառօտած ըլլալուն իր առջեւ ունեցած ընդարձակ մեկնութիւնները, սակայն մեծ կարեւորութիւն կը ստանայ՝ իբր չղթայ Յոբայ մեկնութեանց՝ այնպիսի պատառիկներ բովանդակելուն Եփրեմէ, Սիւնեցիէ, որոնց չենք հանդիպիր այլուր, ամբողջական մեկնութիւնները կորսուած ըլլալուն. բաց աստի, մեծ մասամբ համառօտած ըլլալով Իսիքիոսի մեկնութիւնը, մեր հրատարակութեան իբր երկրորդ օրինակ ծառայեց, ի մասնաւորի մեր գրչագրին այն կէտերուն՝ ուր խանգարում կար բառերու եւ իմաստներու։ Վանական, ինչպէս կը տեսնուի իր գործին ընթացքէն, համառօտած է Իսիքիոսի գրուածքը մինչեւ ուր որ ան կը հասնէր, ագուցանելով տեղ տեղ հատուածներ Եփրեմէ, Սիւնեցիէ եւ երրորդէ մը զոր չի յիշեր անուամբ. շարունակելով յետոյ ՝օգտուիլ՝ գործին մնացած մասին համար՝ գլխաւորապէս Քոբայրեցիի ընծայուած մեկնութենէն, եւ համառօտելով զայն ինչպէս որ վարուած էր Իսիքիոսինին հետ։

Իր կոչումներուն մէջ, որ ստէպ է գործոյն սկիզբը եւ ցանցառ վերջերը, ըստ մեր գրչագրին մօտ վաթսուն անգամ կը հանդիպինք անանուն մեկնչին՝ զոր Այլ կը կոչէ լուսանցքին մէջ. ըրած քննութիւններնէս կարելի չեղաւ գուշակել թէ ո՞վ ծածկուած էր այդ անանունին ետեւը։ Իրեն տրուած կոչումներուն մէջ կան սուրբ Գրքի վկայութիւններ ալ, գուցէ առանձին մեկնութեան մ'ալ մասեր չըլլան, այլ ըստ պարագային ասկէ անկէ ժողուած եւ յարմարցուած։ Քսան եւ եօթն են Եփրեմէն եղած կոչումները, որոնցմէ ոմանք, մանաւանդ սկիզբը, բաւական

1. Յովհաննէս Վանական ծնած Արցախու Տաւուշ գաւառի մէջ ի սկիզբն ԺԳ դարու։ Հմմտ. Հայապատում ՑԻԱ—Գ.

*երկար, եւ մեծանուն սուրբ Հօր ոճը ճանչցուելու չափ ամբողջ. կան երբեմն հատուածներ որոնց առջեւ, լուսանցքին մէջ, կը պակսի Եփր. համառօտագրութիւնը։ Ստեփանոս Սիւնեցիէն եղած կոչումները քսան եւ վեց են, բայց ոչ միշտ դիւրաւ զանազանելի. ի վերջ հատորիս դրած ենք զանոնք որչափ որ կարելի էր ստուգել։ Իսիքիոսի եւ Դաւթի անուններն ալ ստէպ լուսանցքին մէջ կը տեսնուին, բայց աւելորդ է դառնալ ասոնց վրայ, քանի որ անգամ մը ըսինք թէ Վանականի գործոյն ամբողջ մարմինը կը կազմեն, եւ Վանական անձնական ուրիշ աշխատութիւն չէ ունեցած՝ բայց միայն ագուցանել վերոյիշեալ Անանունի, Ստեփանոսի եւ Եփրեմի հատուածները։ Բացի այդ կոչումներէն կան սակաւաթիւ կոչումներ ալ մի քանի անուններու. Շապ. որ գուցէ Շապուհ Բագրատունին նշանակէ, Դաւիթ փիլիսոփայ =(Դթի փլ.), Եպիփան =(Եպ.) եւ յաջորդ համառօտագրութիւնները Արծ ք. Ակ. եւ ասոնք ամէնքը մի մի անգամ կ'երեւան ամբողջ մեկնութեան մէջ։ Վանական անշուշտ ինքզինքը կ'ուզէ նշանակել երբ մեկնութեան կէսէն վերջ Վան. համառօտագրութեամբ ինը տեղ կը յիշատակուի[1]։*

*Եփրեմի, Ստեփանոսի եւ Անանունի կոչումները որովհետեւ մինչեւ Յոբայ ԼԲ գլուխը կը հասնին եւ կը դադրին, չենք կրնար եզրակացնել թէ Վանականի գործած մեկնութիւնները ամբողջական չէին, այլ թէ մեր գրչագիրը մինչեւ 142 էջ կը հասցնէ լուսանցքի մէջ նշանակել իր կոչումները. հաւանական է որ հնագոյն գրչագիր մը անդրագոյն կոչումներ ալ պարունակէ։*

6. *Ուղղակի Վանականի ազդեցութեան տակ կազմած է Գրիգոր Տաթեւացի իր «Յոբայ լուծմունք»ը. թէպէտ Իսիքիոսի մեկնութեան է որ այդ գրուածքի մէջ կը հանդիպինք, սակայն Վանականի միջնորդութեամբ ճանչցած. նոյնը կ'անդրադառնանք նաեւ մեր նախնեաց ԺԵ — ԺԶ դարերու կազմած սուրբ Գրքի համառօտ բառարաններուն մէջ։ Ուստի կարելի է նոյն իսկ հետեւցնել թէ Իսիքիոսի մեկնութիւնը առ մեզ սահմանափակ շրջանի մը մէջ միայն*

1. Էջ 123, *երիցս*՝ 124՝ *կարմիր մելանով*, 129, 131՝ *երկիցս*, 134, 139։

ճանչցուած ըլլայ. Վանական է որ զայն համառօտելով, կերպով մը ժողովրդականացուցած է։ Եւ իրօք, ԺԳ դարէն վերջ ինչ որ Յոբայ դժուարիմաց գրքին եւ խրթին բառերուն վրայ լուսաբանութիւն կամ տեղեկութիւն ունին մեր նախնիք, ամբողջ Վանականի՝ եւ իրմով Իսիքիոսի կը պարտին։

Մեծ է Տաթեւացւոյն անձնական աշխատութիւնը իր այս գրուածքին մէջ, որովհետեւ համառօտութեանը մէջ խտացուցած է զանազանութիւն կարծիքի, թէպէտ շատ տեղ բառգրքի երեւոյթն ունի, կամ հարց ու պատասխանիով կը պարզէ. այնու հանդերձ իմաստ մը իր բազմակողմանի մեկնութիւնը կ'ընդունի, հիւսուած երբեմն առասպելներով կամ սեփական խորհրդածութեամբ։

Թէ ի՛նչպէս եւ ու՛ր կատարած է այս մեկնութիւնը, կը պատմէ ինքնին Տաթեւացի ի վերջ մեկնութեան. «Ժողովողն մեկնութեանս է Վանական վարդապետ, աշակերտ Մխիթար վարդապետի որ Գոշ անուանի, եւ է սա վարդապետն Վարդանայ, եւ Վարդան՝ Ներսէսի, եւ նա Եսայեայ վարդապետին, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի ամէն։

Արդ ես վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ Գրիգոր մականուն խնդրող բանի, որ ի վաղուց հետէ փափագէի բոլոր մեկնութեան Յոբայ, եւ ի թուականութեանս Հայոց ՊԾԷ յամի, եկեալ մեր յաշխարհս Քաջբերունի, եւ ձմեռեալ ի հրեշտակաբնակ վանքս Մեծոփոյ ի սպասու դամբարանաց վարդապետացն սրբոց, եւ ընթերցմամբ հաւաքեցի զդժուարալոյծ բանս Յոբայ եւ զմեկնչաց նորա[1]»։...

Ինչպէս կը տեսնենք՝ Տաթեւացին յանուանէ միայն զՎանական կը ճանչնայ, թէպէտեւ Իսիքիոսի մեկնութիւնը համառօտէ. չեն պակսիր մեզի օրինակներ, հատ մը միայն մէջ բերենք։ «Հց. Կարէ՞ն դեւք զտարերս փոխել կամ հուր իջուցանել։ Պխ. Ոչ կարեն դեւք զտարերս փոխել եւ հուր իջուցանել, եւ ոչ չանթս եւ ոչ այլ ինչ ի տարերացս առնել, որպէս կարծեն ոմանք։ Այլ ինքեանք լինին հողմ եւ հուր, զի հրեշտակ լուսոյ կերպարանին, որպէս ասէ առաքեալ, առ ի վնասել մարդկան, որպէս ի վերայ տանն Յոբայ արարին[2]»։

1. Տաթ. Լուծ. Յոբայ, գրչագիր թ. 1301 էջ 70։
2. Տաթ. Լուծ. էջ 3. Հմմտ. Իսիք. էջ 200։

7. Յոբայ մեկնիչներու շարքին մէջ կարելի է դասել նաեւ նոյն գրքին 38 եւ 39երորդ գլխոց՝ «Ով է դա» ընթերցուածին մեկնութիւնը գրողները. որոնք սոյն հատուածին մեկնութեան ձեռնարկած են անշուշտ պարզաբանելու համար արարչութեան խորհուրդը՝ զոր Եկեղեցին կ'ուզէր սորվեցնել կամ յիշեցնել գլխաւորապէս երախայից, ապաշխարողաց եւ նոյն իսկ ընդհանուր հաւատացելոց Զատկի պատրաստութեան օրերուն մէջ։

Առաջինն այս մեկնիչներէն կը յիշուի Համամ Արեւելցին, ապրած իններորդ դարու մէջ. որ ըստ Ասողկայ «Զվերլուծութիւն Առակացն գրեաց, եւ զՅովբայ զՈվ է դայն թարգմանեաց, եւ զօրհնութիւնսն որ ի գլուխս Սաղմոսացն ասացեալ գիրս մի, եւ զԱմբիծսն գիրս մի, եւ վերլուծութիւն քերականին[1]»։ Կ. Կոստանեանց[2] կ'ախորժի հաստատել Մխիթար Այրիվանեցիի վկայութեամբ, թէ Համամ յետ վարդապետութեան առած ըլլայ Յովհաննէս անունը, եւ թէ Բագրատունեաց ցեղէն էր։ Էջմիածնայ թ. 1138 գրչագրի համաձայն Համամ իմաստուն ալ կը կը կոչուի. «Մեկնութիւն Առակաց Սողոմոնի, զոր արարեալ է Համամայ ուրումն իմաստնոյ»։ Սակայն ամփոփելով խօսքերնիս Յովբայ գրքին վրայ եղած աշխատութեան, ի՞նչ պէտք ենք հասկնալ Ասողկայ ըսածէն. թարգմանութի՞ւն մը յունական Հարց միոյն մեկնութեան, թէ «թարգմանեաց»ը «մեկնեաց» իմաստով հարկ է առնունք Կոստանեանցի հետ։ Մատենադարանիս թ. 1244 գրչագիրը՝ գրուած 1307ին, Վարդան պատմչի գործերու հետ, 762—782 էջերուն մէջ ունի Համամայ «Ով է դա»ի մեկնութիւնը, զոր քննելով նոյն գտանք Վանականի հաւաքածոյին մէջ եղած նոյն գլուխներուն մեկնութեան հետ, մանաւանդ թէ վերջինս շատ աւելի ամբողջական եւ ընդարձակ. հետեւաբար պիտի ըսենք, թէ կամ մեր գրչագիրը սխալմամբ Համամայ կ'ընծայէ այդ հատուածը, որ Վանականի գրուածքին վրայէն եղած համառօտութիւն մ'է՝ պզտիկ յաւելուածով, եւ կամ Համամ Արեւելցի եւ Վանական վարդապետ իրենց ձեռքը մի եւ նոյն աղբիւրը ունեցած են, այսինքն Իսիքիոսի մեկնութեան այդ գլուխներուն թարգմանութիւնը, ուսկից համառօտած են։

1. Ստեփ. Ասող. Գ. 2։ Հմմտ. Վարդան Պատմիչ, էջ 86։
2. Համամ Արեւելցի, Վաղարշապատ 1896։

Եթէ Ասողիկի վկայութեան վրայ ուզենանք յենուլ եւ ստուգիւ Համամ Արեւելցին մեկնիչ կամ թարգմանիչ ընդունիլ «Ով է դա»ի մեկնութեան մը, պէտք է որ ուրիշ գրուածք մը փնտռենք քան ինչ որ Մատենադարանիս վերոյիշեալ գրչագիրը մեզ կը ներկայացնէ, որպէս զի իր «իմաստուն» կոչման արժանաւոր ըլլայ։

8. Երկրորդ մեկնիչ «Ով է դա»ի կը յիշուի Գրիգոր Նարեկացի, եւ Կոստանեանց չունենալով իր առջեւ Համամայ եւ Նարեկացւոյ մեկնութիւնները, զանոնք կ'ուզէ նոյնացնել՝ մէկի վերածելով[1]։ Նարեկացւոյ համարուած այս գրուածքին միակ օրինակը կը գտնուի Խոսրով Ցորայ մեկնութեան գրչագրին հետ, գրուած 1299ին։ Թերի է սկիզբը, սակայն բարեբաղդաբար սկզբնաճակատը՝ փոքրր թղթիկ մը՝ գրքին կողքերուն մէջ գտնուելով, մածուցուած է մեր հարց ձեռքով, եւ այդ պատառիկին վրայ կը կարդացուի «Գրիգորի Նարեկա(ցւոյ)»։ Ուրիշ յիշատակութեան մ'ալ կը հանդիպինք նոյն գրչագրի յիշատակարանին մէջ՝ Խոսրովի մեկնութեան վերջը. «Այլ զՆարեկացւոյն Գրիգորի բանսն որ յՈվ է դայն է խաւսեալ...»։ Հ. Գ. Զարբ. ոճի տարբերութիւն նկատելով եւ պատմիչներէն յիշատակուած չըլլալուն համար, հակառակ Սոմալեանի եւ Հայկազեանի՝ կը համարի թէ յաջորդ դարերու Գրիգոր անուամբ մէկու մը գրութիւնն ըլլայ։ Հ. Բ. Սարգիսեան Նարեկացւոյ ընծայուած այս գործը կը չփոթի Վանականի հաւաքմանը հետ, երբ կ'ըսէ թէ «Նարեկացին Խոսրովի գրքէն հատուածներ վկայութիւն կը բերէ, որոնք ի գլխէն անդին չեն անցնիր[2]»։

Պիտի ախորժէի ես Համամ Վ.ի ձեռքով թարգմանուած «Ով է դա»ի մեկնութիւնը նոյն իսկ այս գրուածքը համարել, ասով Ասողիկի վկայութիւնն ալ հաստատել։ Որովհետեւ հաւանական է որ Ցորայ ԼԸ—ԼԹ գլուխներուն մեկնութիւնը պարունակող այս գրուածքը Նարեկացւոյ գործ չըլլայ, այլ իրեն՝ կամ լաւ եւս յաջորդ դարուն թարգմանուած շատ հետաքրքրական մեկնութիւն մը, որ ճարտար գրչի մը հանդիպելով լաւ հայացուցած է յունարէն

1, Անդ, էջ 26։
2. Dei tesori Patr. Վենետիկ, 1897, էջ 28։

բնագիրը, ճոխ բարդութիւններով[1] եւ ընտիր հայկաբանութեամբ. ճաշակ մը տալու համար յիշենք օրինակ իմն այն կէտը ուր Մովսէսի համար առնելով Յոբայ «եղի նմա զմէգ ի հանդերձ, եւ զմառախուղ ի խանձարուր» խօսքը, կը մեկնէ հետեւեալ ոճով. «Ի ջրոցն առեալ օրէնսդիր մարգարէն, մտանէր ի յամպն, անցանէր ընդ հուրն եւ ընդ մէգն եւ ընդ մառախուղն, զարհուրեալ եւ դողացեալ ի չանթաձիգ նետիցն հրեղինաց, յահաւոր բոբոքմանէ անբաւութեան հրոյն, որ ծախէր զլեառնն, եւ որոտագոչ փողոցն հնչմանն. զի առաջի փառացն Տեառն մտեալ զարհուրանօք ասէր, եթէ զահի հարեալ եմ եւ դողամ, զի այնպէս ահագին էր տեսիլն. եւ զգեցեալ երեսաց նորա զփառս անմարմնոցն, եւ լուսաւորեալ դիմօք իջանէր յաստուածաբնակ լեռնէ, ահեղ տեսակաւ աստուածային լուսով փառաւորեալ, զտախտակսն կտակարանաց գրկաբերեալ աստուածագիծ օրինացն տպաւորութեամբ, եւ քողածածուկ առագաստիւ ծածկեալ զփառս աստուածազարդ երեսաց լուսոյ. զի ոչ կարէին հայել աչք անարժանիցն տեսանել զփառս երեսաց արդարոյն»։ Այսպիսի լեզուով հիւսուած մեկնութեան մը մէջ ստուգիւ դժուարին է նախնական բնագիրը տեսնալ, սակայն մեզ կասկածիլ կու տան հոն գտնուող Աղեքսանդրոս, Ոմերիտ անուններու յունական վերջաւորութիւնքը, ինչպէս նաեւ ընդհանուր մեկնութեան ոճը. ակնարկութիւններ ալ Արաբացւոց եւ Սկիւթացւոց արշաւանքները նկարագրող, կրնան ծառայել մեկնութեան ժամանակը ստուգելու։ Մէջ բերենք պատմական այդ կէտը, զոր հաւասարապէս մեր աշխարհին համար ալ կարելի է իմանալ. «Գանձս կարկտի է իմանալ դարձեալ զազգն Իսմայելի, զանողորմ եւ զժպիրհ որդիսն Հագարու, որ հրամանաւ ցասմամբ Աստուծոյ, իբրեւ զկարկուտս բարկաճայթս սփռեցան ահագին գոչմամբ, եւ արիւնախանձ ժանեօք՝ սրամտեալ իբրեւ զգազանս գիշակերս եւ անյագս՝ կերան եւ ցամաքեցուցին զարիւն ամենայն կենդանեաց, եւ աւարեալ կործանեցին զազգս ամենայն...։ Դարձեալ չարագոյն եւ խիստ եւ անզգամ կարկուտ է իմանալ զհիւսիսային ազգացն բազմութիւն, զորս ծովարգելն արար Աղեքսանդրոս Մակեդոնացին, եւ ի ժա-

1. Զօր. դանբանագէշ պղծութիւն, ծաղկախիթ, արտաշիկագոյն, աղաւնակերպիլ, ևն։

մանակս յետինս հրամանաւն Աստուծոյ ելանեն իբրեւ զկարկուտ եւ զմարախ բազմութեամբ, եւ իբրեւ զգազանս սրտմտեալ գոչելով եւ մռնչելով յափշտակեն եւ կոխեալ կործանեն զերկիր, եւ պղծեալ զարշեցուցանեն զազրակերութեամբն իւրեանց»...։

Հաւանական է որ Սկիւթացին ըլլայ հիւսիսային այդ ազգը որուն արշաւանքը մեծն Աղեքսանդր արգիլեր է ծովով, եւ մեկնութիւնս գրողին շատ մօտ ժամանակները կրկին խուժեր են իր աշխարհը, կոտրելով իրենց առջեւ կառուցուած թումբը։ Բիւզանդացի հեղինակները մանր չէին քններ թէ Սկիւթացւոց տեղ ուրիշ ցեղեր էին որ Սկիւթիան գրաւած էին։ Ղուրանի ԺԸ գլխուն մէջ ալ կը պատմուի որ Մեծն Աղեքսանդր թէպէտ յաջողեցաւ վանել այդ ահաւոր ազգը, բայց Աստուծմէ բաւական միջոց ստացած չըլլալով բոլորովին բնաջինջ ընելու համար զանոնք, որպէս զի անոնց ապագայ արշաւանքին առջեւն առնէ, իր տէրութեան սահմանագլուխը հրաշէկ երկաթէ պարիսպ մը շինեց՝ ուսկից պիտի չկարենային այլ եւս անցնիլ։ Այդ պարիսպէն մինչեւ այսօր մնացորդներ կը տեսնուին Կասպից ծովուն հարաւային արեւելեան եզերքները։ Սէտտ իսքէնտէր «պարիսպ Աղեքսանդրի» կը կոչուին, եւ մանրամասն նկարագիրը կարելի է կարդալ Մուրավիէվի Reise durch Turkomanien եւ Վամպերիի Reise in Mittelasien գրոց մէջ, որոնց նկարագրածէն կը հաստատուի թէ այդ պարիսպը փոխանակ հրաշէկ երկաթի՝ հասարակ աղիւսով շինուած էր, սակայն մեծղի պարիսպ մը, որովհետեւ մնացած կտորը, ծովէն նայողէն, բնական բլուր մը կը կարծուի։

Դառնալով սակայն մեր «Ով է դա»ի մեկնութեան, յայտնի է որ Նարեկացւոյ ընծայուած այս գրութիւնը բաւական ընդարձակ եւ կանոնաւոր գործ է։ Սկիզբը պակասաւոր ըլլալուն պատճառաւ, մեր գրչագրին մէջ մեկնութիւնը կը սկսի եօթներորդ համարէն «ամենայն հրեշտակք աստեղաց օրհնեցին զիս» խօսքէն. եւ կ՚աւարտի ձեռագրին 133 էջը, առանց հաշուելու սկիզբը դրուած երեք թըղթերը. մէջէն կը պակսին երկու թուղթ միայն. սակայն ընդհանուր բրդզզած ըլլալուն պատճառաւ կարելի չէ որ հրատարակութեան ծառայէ՝ առանց երկրորդ օրինակի մը օգնութեան։ Մեկնութիւնը կը հասնի Յոբայ ԼԹ գլխու 30երորդ համարը «ուր ուրեք իցէ գէշ՝ անդ վաղվաղակի

գտանին»։ Որմէ վերջ իբրեւ վերջաբան կը ծառայէ հրաւէր եւ ներբող մը Ս. Հաղորդութեան։

Սոմալեան եւ Հայկազեանի յառաջաբանը գրողը կը համարին որ մեկնութեանս մէջ ձեռք խառնուած ըլլայ. ուրովհետեւ մեկնելով Ցոբայ «Եթէ կամիցի՞ քեզ միեղջերուն ծառայել» տողը, կը պատմէ նախ հին վարդապետաց ոմանց կարծիքը, թէ սոյն կենդանին «այնչափ զօրաւոր է որ զփիղն ահագին գազան յեղջիւրսն առնու եւ արածէ». եւ յետոյ խորհրդական մեկնութիւնը կու տայ, Քրիստոսի մարդեղութեան յարմարցնելով. հոս հեղինակը կամ թարգմանիչը, յաւելուածով մը, երկուց բնութեանց վարդապետութեան դէմ կը կռուի։

Վանական իր հաւաքմանը մէջ կը համառօտէ Նարեկացւոյ կարծուած այս մեկնութիւնն ալ, առանց անուան յիշատակութեան. բերենք օրինակ մը ուսկից կրնանք գաղափար մ'առնուլ.

«Եթէ յղասցի ասիդն եւ նեէշսայն, զի արկցէ ընդ հողով զձուս իւր»։ Զայս խորհուրդ բանի մեծ վարդապետն Սեբերիանոս ասէ, թէ ասիդն գազան է ի փղշտացւոց աշխարհին, եւ արկանէ ձու ընդ բերանն եւ հատանի ործ ի բերանոյն, եւ յործոյն ծնանի նեէշսայն։ (Նար. յՈվէդ)

«Ցղասցի ասիդն»։ Ակեղաս բազէ ասէ. բայց զարմանալի է թէ բազէ զձուն յերկիր արկանէ...։ Սողուն է ասիդն սեւագոյն յաշխարհըն փղշտացւոց, եւ արկանէ ձու ընդ բերանն փսխել, եւ բուսանի ծառ ոսկեգոյն, ոսկէթել, տորմակերպ, այսինքն է խառնագոյն, եւ կոչի ծառն նեէշսայ. աստուստ թագաւորական հանդերձք գործին, յայս ծառ կենդանակերպի ասիդն։ (Վանական 165ա)

Ինչպէս կը տեսնուի, «Ով է դա»ի մեկնութեան հեղինակը, եթէ Նարեկացին ըլլայ եւ եթէ այլ ոք, իրմէ նախընթաց Հայրերուն վարդապետութեան և կարծիքին ծանօթութիւն ունի. բայց արդեօք Իսիքիոսի մեկնութիւնն ալ իրեն ծանօթ եղա՞ծ է, չենք կրնար հաստատել, քանի որ հետքն անգամ չի նշմարուիր ամբողջ գրուածքին մէջ։

*Ուրեմն մեր յիշատակած ազգային մեկնիչներէն Վանականն է միայն եւ առաջինը որ ճանչցած է Խոսքիոսի մեկնութիւնը իր թարգմանութեան մէջ եւ զայն համառօտած. աւելի հնագոյն վկայութիւն մը գտնելու համար հարկ է պրպտել տոհմային մատենագրութիւններս։*

*Չենք գիտեր թէ ի՛նչ ըսել կ'ուզէ Լամբրոնացի, երբ Առակաց մեկնութեան յիշատակարանին մէջ կը պատմէ իր Կոստանդնուպոլիս երթը, եւ հոն յունաց պատրիարքէն իրենց քով եղած Առակաց եւ Յոբայ մեկնութիւններն ընդունիլը, եւ կարդալով հրճուիլը որ իր մեկնութիւնն ալ անոնցմէ վար չէր մնար[1]։ Եթէ հոս յիշուած ըլլար միայն Առակաց գիրքը, մեզի զարմանք պիտի չպատճառէր, որովհետեւ անոր մեկնութեամբ պարապած էր Լամբրոնացին, մինչ ընդհակառակն ոչ մէկ տեղ յիշուած է Յոբայ մեկնութեան ձեռք զարնելը. արդ ի՞նչ էր չարժառիթը կամ ի՞նչ արդիւնք ունեցաւ Յոբայ մեկնութեան իր ընթերցումը, կամ յոյն Հայրերէն որո՞ւն մեկնութիւնն էր նոյն ատեն (1197ին) իրեն ներկայացուածը, մեզի անծանօթ են, որովհետեւ յիշատակութիւն մը մնացած չէ անկից։ Նթէ Խոսքիոսի մեկնութեան թարգմանութիւնը մինչեւ Լամբրոնացի կարենայինք յետաձգել, պիտի երկմտէինք թէ զուցէ գտած ըլլանք անոր թարգմանիչը. սակայն լեզուն մեզի իրաւունք կու տայ մինչեւ Զ դար բարձրանալ, եւ տեսնենք թէ ի՛նչպէս։*

1. Հայապատում 39։

# Դ

*1. Յոբայ բնագրին թարգմանութեան տարբերութիւնք — 2. Իսիքիոսի մեկնութեան հայերէն թարգմանութեան լեզուն եւ ժամանակը — 3. Ուղղագրական դիտողութիւններ — 4. Հրատարակութեանս վրայ քանի մը ծանօթութիւններ։*

1. Կարեւոր է, Յոբայ մեկնութեան հայերէն թարգմանութեան վրայ չխօսած, դիտել տալ որ հայ թարգմանիչը տեղ տեղ թէ Յոբայ եւ թէ մէջը յիշուած աստուածաշունչի միւս գրքերուն պաշտօնական թարգմանութենէն կը խոտորի. այս կէտը կրնայ մեզի փաստ մ՚ընծայել մեկնութեան հայ թարգմանութեան ժամանակը մերձաւորապէս ստուգելու։ Իրաւ է որ աստուածաշունչի մէջ ալ ունինք մի եւ նոյն կէտերու կրկին թարգմանութիւններ[1] իրարմէ շատ ալ զանազան, եւ ծանօթ է որ Եփրեմի, Ոսկեբերանի եւ այլ մեկնութեանց թարգմանիչներն ալ ընդհանրապէս աստուածաշունչի հայ թարգմանութեան հետեւած չեն, եւ թէ ասիկա սովորական երեւոյթն է մեր հինգերորդ դարու մատենագրութեան. սակայն Իսիքիոսի մեկնութեան մէջ գործածուած Յոբայ գրքին հայ բնագիրը եզական այս յատկութիւնն ունի, որ իր ներկայացուցած տարբերութիւններուն մէկ մասն արդէն ընդունուած են աստուածաշունչի մեր գրչագիրներու լուսանցքին եւ կամ նոյն իսկ բնագրին մէջ. օրինակ իմն, ուր կ՚ըսուի «եւ խաղացեալ էք ի վերայ բարեկամի ձերոյ» (Յոբ Զ. 27), Իսիքիոսի թարգմանիչը կը դնէ «ոտն հարկանէք ի վերայ...» (էջ 408). եւ Զօհրապեան իր հրատարակութեան մէջ կը վկայէ. «Ի լուսանցսն ի վերայ՝ խաղացեալ էք, նշանակի, ոտն հարկանէք»։ Դարձեալ, ուր կը դնէ «եւ եկեսցեն յիս խնդրուածք իմ» (Զ. 8),

1. Երեմ. ԾԲ=Դ. Թագ. ԻԴ. 18 ; Սղմ. ՃԷ=Բ. Թագ. ԻԲ։

*Իսիքիոսի թարգմանիչը ունի «եւ եկեսցեն ինձ խնդրուածք իմ» (էջ 405), որու համար կ'ըսէ Զօհրապեան. «Ի շուռանցն. եւ եկեսցեն ինձ խնդր. համաձայն ումանց ի բնաբ.»։*

*Արդ կրնանք հետեւցնել այս երեւոյթէն թէ, գրչագիրներու լուսանցքի մէջ նշանակուած տարբերութիւնք մնացորդ են հնագոյն թարգմանութեան մը՝ զոր Իսիքիոսի Յոբայ մեկնութեան թարգմանիչը գործածեր է իր ժամանակին. եւ այս եղելութիւնը ոչ թէ միայն մեկնութեան ի հնուց թարգմանուելուն ապացոյց մը կրնայ ըլլալ, այլ եւ Յոբայ գրքին հայկական թարգմանութիւնը ուսումնասիրելու մեծ ծառայութիւն կրնայ մատուցանել։*

*Մեկնութեանս մէջ Յոբայ գրքին այնպիսի ընթերցուածներ կան, որոնցմով գուցէ կարելի ըլլայ Յոբայ բնագիրըն ուղղել, մինչեւ մեկնութեան հեղինակը բարձրանալուն եւ նոյն ատենուան ընթերցուածը մեզ ցոյց տալուն համար. օրինակ իմն, Իսիքիոս մեկնելով Յոբայ սա խօսքը. «ընդէ՞ր դիպեցան ինձ ծունգք» (Յոբ. Գ. 12), կը պարզաբանէ. «Այսինքն է. եթէ ընդէ՞ր դիպեցայ մանկութեան սննդին, կաթամբ ստեանցն սնանելով եւ կամ ծնկաց սողելոյ» (326). մինչ հայ թարգմանութիւնը հակառակ եօթանասնից եւ եբրայականին՝ նոյն կէտը կը կարդայ «ընդէ՞ր դիպեցան ինձ ծնունդք[1]»։*

2. *Ուրեմն Յոբայ բնագրին թարգմանութեան այս եզականութիւնը իրաւունք կու տայ մեզ մեկնութեան թարգմանութիւնն ալ հին համարելու. արդէն հոն գործածուած լեզուն բաւական զօրաւոր կռուան մ'է վեցերորդ դարէն շատ հեռու չփնտռելու անոր թարգմանիչը։ Հայկազեանի յառաջաբանին հեղինակը «հին թարգմանութիւն ընտիր» կ'անուանէ զայն. եւ Հ. Բ. Սարգիսեան յեցած անշուշտ այս հեղինակաւոր վկայութեան վրայ, աւելի որոշել ուզելով ժամանակը, հաւանական կը համարի որ Զ–Է դարու գործ ըլլայ թարգմանութիւնս, եւ ապացոյց կ'առնու հոն գործածուած հայկական լեզուին մաքրութիւնը, «որ դասականին շատ կը մօտենայ», կ'ըսէ։*

1. *Հմմտ. նաեւ Եսայեայ սա խօսքը, «Եթէ իցեն մեղքն ձեր իբրեւ զգոյն արմաւու, իբրեւ զձիւն»...* (էջ 613) *եւն, եւն։*

*Դիւրին պիտի ըլլար թարգմանութեան ժամանակն որոշել եթէ մեր մատենագիրներու քով Իսիքիոսէն յիշատակութիւններ յաջողէինք գտնալ, որ եթէ չէ անհնարին, սակայն հաւանօրէն խիստ ցանցառ պիտի ըլլայ, Ցոբայ մեկնութեան թարգմանութիւնը՝ մեր կարծիքով՝ շատ սահմանափակ շրջանակի մը մէջ ճանչցուած ըլլալուն. այնպէս որ Ը դարուն՝ Սիւնեցին հարկ կը տեսնէ Ցոբայ մեկնութեան մը, եւ բաղդատմամբ երկրորդակարգ գրուածքի մը թարգմանութեան ձեռք կը զարնէ։*

*Տարակոյս չի վերցըներ որ Իսիքիոս յունարէն գրած է, եւ յունարէնի վրայէն եղած է հայկական թարգմանութիւնը. նոյն իսկ մնացած են տեղ տեղ այնպիսի խոր հետքեր՝ որ ըստ բաւականի իմաստը կը մթնցնեն, եւ հայ լեզուի կանոններուն դէմ մեղանչուած ըլլալը կը յայտնեն։ Ցունարէնով կը մեկնուի գետնաթռչութիւն* (χαμαιπέτια) *բառը, ինչպէս նաեւ հետեւեալ բացատրութիւնները. «արբեցութեամբ զայլայլեալս առնէ»* (150), *«մի՛ կուրանալ ի ժամանակի լոյս»* (289), *արդարագործութիւնս առնել, կերպարանս կոել, վարձել զպսակս, յաղթութիւն կոչել ի կռիւն, եւն։*

*Իսիքիոսի թարգմանիչը ունի իրեն յատուկ քանի մը բառեր եւ դարձուածներ, որոնք իր ոճը կ'որակեն. այսպէս տարացոյց բառը՝ օրինակ նշանակութեամբ, որ ստէպ կը հանդիպի*[1], *քաղաքաւորութիւն, յառաջացեալ, իմաստասիրութիւն* (134, 337), *եւ կանգնել արձան բացատրութիւնը, որ մեկնութեան սկզբնաւորութիւնը կը լուսաբանէ. «Բազում ինչ մեզ Աստուած արձանս առ յօգտակար տեսիլս կանգնեաց»* (134), *եւ համեմատէ ասոր «Քրիստոս կանգնեաց մեզ իբրեւ արձանս զվարսն իւր»* (456), *«տարացոյց առ զՑոբ իբրեւ զանանց արձանի»* (702), *«արձան կանգնեցէ զիս այնմիկ»...* (725)։ *Թարգմանչին ճարտարութիւնը յայտնի կը տեսնուի մեկնութեան տունէ տուն անցքերու ատեն կապակցութեանց զանազան ձեւերուն մէջ. դնենք մէկ քանին. «որ ի կարգին (կամ ի կարգիս) գայ, եցոյց ըստ կարգիս, ըստ կարգիս միտ դիցուք, զայս կարգ ի վերայ էած, ցուցանի մեզ ի կարգիս, ըստ կարգիս ասէ, եդ ի կարգի աստ, զոցես ի կարգի*

1. *էջ* 134, 146, 173, 224, 585, 631, 702.

ատ, գիտասցուք հայելով ի կարգս, և որ ի կարգիս կայ, ըստ կարգիս ի վերայ ածէ, այսպէս յօրինէ և կարգէ ըզ-բանս, յոյժ յիրաւի առ նմին կարգեաց», եւն. դարձեալ. «զի՞նչ ածէ ի վերայ ասացելոցս, զի՞նչ յաւել ի վերայ այսոցիկ, որպիսմ ինչ ի վերայ ածէ, ուսիր. զի՞նչ յա-րեաց ի վերայ այսոցիկ, միտ դիր զի՞նչ ասէ, զի՞նչ իսկ եղ առընթեր, յայտնագոյն ցուցանին յետ այսորիկ, լուր որպիսի ինչ ասէր», եւն։

Դարձեալ թարգմանչին միայն յատուկ բառեր կարելի է համարիլ հետեւեալները.

ա. Զգուշակեաւ (166). Վանական նոյն տեղը «առաջնոր-դել» կ'ըսէ. Հայկազեան՝ զգուշութեամբ առաջնորդել. Առ-ձեռն՝ զուշակել։

բ. Արբեցութեամբ զայլայլեալս առնէ (150). Վանա-կան կը մեկնէ. «զի բազմակերութիւն և զմայլումն արբե-ցութեան գիտէ այլայլութիւն գործել»։

գ. Սփարիւ (177, 297, 593). Հայկազեան մէջ կը բե-րէ երեք օրինակներն ալ, ուղղելով գրչագրին «զերկրա-ւորս = (զերկրաւս) սփարին», մենք Հայկազեանէ անկախ կերպով փոխած էինք յերկրաւորս։

դ. Մտախորհրդութիւն (134). նոյն ընդ մտախոհութեան։

ե. Հրովն (181), անշուշտ հրակն։

զ. Մարմնաքանց հարուած (250), որ է մարմինը ըը-զըքտող։

է. Բեկտու (641), այսինքն բեկանուտ կամ դիւրաբեկ։

ը. Ճգնադիր (384), նահատակադիր իմաստով։

թ. Բարձրաբանս խօսիլ (575), այն է մեծաբանս։

Հետեւեալ երկու զարտուղի ձեւերը՝ զոյգք (603). կա-րենայ (579), թարգմանչի՞ն թէ գրչագիրը օրինակողին վե-րագրելու է, չենք կրնար գուշակել։

Կան նաեւ քանի մը մութ կամ սխալ կէտեր՝ որոնք հաւասարապէս թագմանչին կամ գրչագրին կրնան ըն-ծայուիլ.

ա. Կարծեօք իմաստունն աւելի զգոյշն զտանի (էջ 150). զուցէ հարկ ըլլայ սրբագրել՝ անզգոյշ գտանի։

բ. Վասն առ ի բարեպաշտութեանց ձգանցն գրկընդ-խառն լինիցուք (էջ 160). կարելի՞ է ուղղել. վասն որոյ բարեպաշտութեանց...։

գ. Զպատմու(ճանն) յաւելոյր եւ զձեռսն (իսկ ի բաց) դնէր (էջ 207). լաւ է կարդալ. զպատմուճանն ընկենոյր եւ զհերսն եւս ի բաց դնէր։

դ. Ոչ ինքն շարժեցաւ (էջ 213). թերեւս ուղղելի՝ ոչ ինչ շարժեցաւ։

ե. Պարտաւո՞ր(ից)էր (282). յօրինակին՝ պարտաւորիցէ՞ր, որ ի նախնեաց գործածական ձեւ մ'է, ըստ Տ. Նորայրի։

զ. Մի՛ կուրանայ ի ժամանակի լոյս (էջ 289). այսինքն՝ ի լոյս ժամանակի, կամ ի լոյս աշխարհիս։

է. Ուրախացեալ եղիցի օրն այն (էջ 319). եթէ վանկանի հետ չուզենանք սկիզբը յաւելուլ ոչ, կարելի է կարդալ՝ ուրացեալ։

ը. Յարգի ընթերցեալս (էջ 419). հարկ է ուղղել գըրչագրին սխալը եւ կարդալ՝ յարդի։

թ. Յաստնոցս (էջ 434). այսինքն՝ յաստեացս։

ժ. Մարտնչէին ընդ նորա (էջ 558). ուղղել՝ ընդ նմա։

ժա. Բարիոք համարէ ինքնընթաց կենացս (էջ 630). անշուշտ՝ ինքն զընթաց կենացս։

ժբ. Վասն զի ինքն որդիքն (էջ 729). հաւանօրէն ինքնին որդիքն։

Դիտելի է դարձեալ որ թարգմանչիս յատուկ է աւելորդ կրկնութիւններ ս, դ, ն դիմորոշ յօդերու՝ բառերու եւ բայերու վերջը, այսպէս. «Ջոր արարն ամենակալն» (563), «զիա՞րդ նայն պատասխանէր» (563), «մարմինսս» (610), «լերինսս» (500), «բանսս» (513), «ասացեալսս» (514) եւն։

3. Այսչափ թարգմանութեան մասին. քանի մը խօսք ալ գրչագրին ուղղագրական յատկութիւններուն վրայ ըսել աւելորդ չենք համարիր, մանաւանդ՝ հայերէն լեզուի ուսումնասիրութեան պարապողաց համար կարեւոր։

Հրատարակութեանս մէջ թէպէտեւ սովորական ընդունուած ձեւն անցուցած ենք ընդհանրապէս, սակայն գրչագիրը շատ տեղ ունի

ե փոխանակ է ի

այգէգործ, բարէբախտիկ, բարէգործութիւն, բարէխօսութիւն, բարէծնութիւն, բարէկամ, բարէկամութիւն, բարէհամբաւութիւն, բարէպաշտ, բարէպաշտութիւն, գերէվար, որդէծնութիւն, որդէսէր, օթէգանամ։

գ փոխանակ կ ի

անգանիմ, ընգալաւ, ընգենում, ընգրկեմ, մանգութիւն։

ընդհակառակն կ փոխանակ գ ի

անկամ, անկոսնեմ, ժառանկորդ, հանկեայ, ստունկանել։

*ի փոխանակ ւ ի*
*բարիոք, ի թշնամիոյ, ի հովանիոյ, ոգիովք, որդիոցն։*
*ի փոխանակ և ի*
*ամենիքեան, բիւրիղ, իւթանասունք, Իսայի։*
*ընդհակառակն և փոխանակ ի ի*
*աղբեւրս, առեւծ, բեւրք, երկեւղ։*
*աւ փոխանակ ոի կամ ուի*
*անաւր, աւսոխ, արաւսեակ։*

*Կը գտնուին դեռ ուրիշ զարտուղի ձեւեր ալ որոնք ընհանուր կանոնի մը չեն հետեւիր, եւ քիչ անգամ կը պատահին, այսպէս. (ը=ի) ընքեան, գըրկընդխառն, (ե=է) կետ, ընկեց. անիծուք, ի գինոյ, ի տեղոջէ, ինքնէն, բարբաջեմ, քաղաքաւորութիւն, ճանջ, մենքանայ, ի կանաց, թագուրհի, պարհոց, ամպարտաւանութիւն, ամպաստանութիւն, ասպարէս, Եղիփաս, վաթարք, ընդիմանալ, ընդիմացող, զնդդէմս, այպնել, հրշտակ, եւն, եւն։*

*Ցայտնի է թէ ուղղագրական այս զարտուղութիւններէն մեծ մասը յատուկ էին այն հին գրչագրին՝ որու վրայէն ընդօրինակուած է այժմեանը, որովհետեւ երբ 539 էջով գրչութիւնը կը փոխուի եւ աւելի խիտ կը դառնան տողերը, նոյն կը մնան վերոյիշեալ զարտուղի ձեւերը, ի բաց առեալ քանի մը աննշան տարբերութիւններ, զոր. երկրորդ գրիչը կը գրէ այղ, Դանիէղ, թոյղ, եւ տողադարձներուն հայցական նախդիրը զը, մինչ առաջինը խոյս տուած է տողադարձէ։*

*4. Իսիքիոսի Ցոբայ մեկնութեան վրայ ցարդ ըսածներէս դիւրին պիտի ըլլայ անշուշտ հետեւցնել, թէ ստուգիւ գրական գանձու մը վրայ է որ կ'ուզեմ ուսումնասիրաց ուշադրութիւնը հրաւիրել։ Մի եւ նոյն ատեն կը ցաւիմ՝ որ ըրած հետախուզութիւններս չունեցան ամբողջական օրինակ մը երեւան հանելու արդիւնքը, վերականգնելու եւ լրացնելու համար Մատենադարանիս միակ ու հին գրչագրին թերի մասերը[1]։ Այնու հանդերձ զանց չեմ ըրած հրատարակութեանս մէջ, այդ թերի կտորները նուազ զգալի ընելու դիտումով, Վանական Վ.ի հաւա֊*

1. *Գլխաւորապէս Բ. Գ. եւ Թ—Ժ ճառերէն, բաց աստի քանի մը տողեր ու բառեր։*

քումով ամբողջացնել, եւ տեղ տեղ նոյն իսկ բնագիրս ուղղել, յիշելով միշտ ծանօթութեան մէջ այդ կէտերը։ Բաց աստի, գրչագիրս մերթ բրդզգած ըլլալով, պակաս կամ անընթեռնլի բառերը կամ գիրերը ենթադրութեամբ ըստ իմաստին լրացուցած եմ, ուր որ հնարաւոր էր, փակագծի մէջ առնելով զանոնք. իսկ ուր կարող եղած չեմ գուշակել, կէտերով նոյնքան տեղ թողած եմ որքան տառ կրնային պակսիլ։

Ներածութեանս մէջ Իսիքիոսի Յոբայ մեկնութեան կոչումները կը կատարեմ ձեռագրին էջին համեմատ, զոր լուսանցքի մէջ նշանակել զանց ըրած չեմ, ուսումնասիրաց առաւել դիւրութեան համար։

Դարձեալ ի դիւրութիւն քննողաց, գրքիս աջակողմը իւրաքանչիւր էջի վրայ դրած եմ Յոբայ բնագրին գլուխները եւ համարները, որ ամէն մէկ ճառի մէջ կը մեկնուին։

Հուսկ կը խնդրեմ ընթերցողներուս ներողամտութիւնը հրատարակութեանս մէջ յակամայս սպրդած սխալներուն համար, որոնց ցանկը պիտի գտնեն ի վերջ մատենիս. ինչպէս նաեւ Ներածութեանս մէջ առ ի նպաստ քննադատութեան յայտնած կարծիքներուս թերութեան։

15 փետրուար 1913

Հ. ՔԵՐՈԲԷ Ա. ՉՐԱՔԵԱՆ

# ԻՍԻՔԻՈՍԻ

## ԵՐԻՑՈՒ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑԻՈՑ

### (Ի ՍԿԻԶԲՆ ՅՈՎԲԱՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ)

### Ա.

ՅԱՋՈՒՄ *ինչ մեզ Աստուած արձանս առ յօգ-* 134
*տակար տեսիլս կանգնեաց, բազում և մեծամեծ ի-*
*մաստասիրութեան եւ տարացոյցս, բազումս այլ և*
*պայծառս զարդարև բարեկենդանութեան կերպա-*
*րանս կռեաց. զի առ նոսա զաչս մտախորհրդու-*
*թեան ունելով, անմոլար ակնկալութիւն քաղաքա-*
*վարութեան ստասցուք, և զճանապարհս կենացս*
*համբերութեամբ մեղաւորքս ընթասցուք. տեսանելով*
*զարդարս առ պսակս և ի յաղթութիւն ի ձեռն այ-*
*սորիկ յառաջացելոյս*[1]*, ի նեղ և ի նուրբ ճանապարհ*
*փոխեսցուք: Քանզի համբերութիւնն (կարէ)*[2] *փըր-* 135
*կել միայն, կատարել զփ(ութայլին, որով զարդա)-*
*րութիւն անձին և խորհրդոց ուղղեսցուք: Վասն զի*
*փակակալ արքայութեանն երկնից է սա, սոյն և*
*դռնապան է կարգեալ, ըստ այնմ, ըստ Պաւղոսի*
*բարբառոյս. «Գործովք ճգնեսցուք, յամենայն ժամ*
*ցնծասցուք*[3]*, անպակաս աղօթեցէք, յամենայնի գո-*
*հացարուք»:*

1. յՕր. *յառաջասացելոյ:*
2. յՕր. *մաշեալ էին փակագծեալքն. եղաք ըստ Վանականին:*
3. յՕր. *ցնծասցէք. եղաք ըստ Վ.:*

*Եւ մի՛ ասեր եթէ զի՞նչ շահք ինձ յաղօթից են և
կամ զի՞նչ ի գոհանալոյ պտուղ. քանզի բազումք բա-
րերախտիկք են ոչ աղօթելով, իսկ ես թէպէտ և
զաղօթս կերակուր ունելով, չարչարեալ եմ. բազումք
հայհոյելով են ի լիութեան, իսկ ես բազում շնոր-
136 հակալութեամբք՝ տառապիմ, նոցա (մեծու)թիւնք ի
վերայ մեծութեանց սահին, (իսկ) ինձ աղքատութիւն
ի վերայ աղքատութեան յաւելու. նոցա ըստ կամաց
վարին կեանքս, ըստ ակնկալութեան պահին և ըն-
թանան առաջիկայքս, իսկ ինձ այս նոյն խիստ յա-
մենայն կողմանց նեղութիւն, բազում ինձ անուղիղ
յամենայն կողմանց տեսանեմ զի կան որոգայթք։
Բայց զի մի՛ զայս ասասցուք, և մի՛ մատնեսցուք
զհամբերութիւն, և մի՛ վաստակեսցուք անձամբք առ
ի մարտն, այլ և յաղթութիւն կոչեսցուք ի կռիւն, զի
և վարձեսցուք զպսակս, ճգնող մեզ ուսուցիկ էած ի
137 մէջ Աստուած զՅովբ. զայսպիսին և զայսչափ,
զճշմարիտն, զանարատն, զարդարն, զաստուածա-
պաշտն, զմեկնեալն յամենայն իրաց չարաց, որ
զամենայն աւուրս զպատարագն աղօթից մատուցա-
նէր, որ զգոհացողութեանն զգոհարանն անպակաս
բորբոքէր, որ ընդ բազում ախտիցն էր մարտուցեալ,
զմերկացեալն յորդւոց, զկողոպտեալն ի ստացուա-
ծոց, զվիրաւորեալն մարմնով, զծաղրն ի բարեկամաց
և ի թշնամեաց եղեալ։ Այլ որպէս ծանեար զառա-
ջինն, իմացիր և զերկրորդն. քանզի վերջինքս ծած-
կեն զառաջինսն։ Իսկ զի՞նչ են այսք. վկայութիւն
138 յԱստուծոյ, արդարութիւն յերկնից, կրկնակի բա-
րիքն, ն(ախատինքն) անզոսնեալք, և որք ծաղր
առնէին, աղօթիւք ծաղր եղելոյն ապրեցան։ Մի՛ ե-
թէ արդեւք անպտո՞ւղ իցէ ագարակն աղօթից. մի՛
եթէ ստիցե՞ն գոհացողութեանն արմտիք։ Իսկ այ-
սուհետև բուռն հարցուք զգրոցս զսկզբանէ։
«Այր ոմն էր յԱւսիտ աշխարհէ, որում անուն
էր Յովբ»։ Տեսանե՞ս, որպիսի գովութիւն զՅովբայ
ի սկզբան գրոցս կարգեաց Հոգին Աստուծոյ։ Այր*

ոմն էր. Նուազագիւտ է, ասէ, ինչքն, առ սակաւ ստա-
ցուածն, և մեծութիւնն դժուարագիւտ. քանզի բա-
զումք ասին արք, բայց ոչ են ճշմարտիւ. քանզի
ոմանք ըստ անասնական վարուց կեան, իսկ ոմանք 139
(ըստ) սովորութեան սողնոց վարին, աճեցուցանեն
զսրտմտութիւն ըստ գազանացն պատշաճի. վասն
որոյ և Դաւիթ իսկ ասէ. «Մարդ ի պատուի էր և
ոչ իմացաւ, հաւասարեաց անասնոց անմտից և նը-
մանեցաւ նոցա»: Այլ և Ամբակում եւս. «Արասցես
զմարդիկ իբրև զձուկն ծովու և իբրև զսողունս որք
ոչ ունին առաջնորդ». և դարձեալ, «Սրտմտութիւն
նոցա ըստ նմանութեան օձին»: Իսկ մարդ հաս-
տատութեամբ այն կոչի՝ որ բերէ զպատկերն Աս-
տուծոյ, որ պահէ զբանաւորական պատիւն, որ ու-
նի զբարւոյ և զչարի ընտրութիւն, որ տայ ա-
րարչին պարծել, խրախանալ և զուա(րճանալ ի վե- 140
ր)այ անձին իւրոյ: Այսպիս(ի էր մա)րդն յԱւսիտ
աշխարհէ: Խուժադուժ էր աշխարհն, այլ ընտա-
նի էր տունկն. անապատ էր ագարակն, այլ պայ-
ծառ ցուցաւ վարդն. անծանօթ է(ր) գաւառն, այլ
վասն որ ի նմանէն էր՝ քան զամենայն երևելի:
Բայց այժմ բարիոք առընթեր եդ, «որում անուն
էր Յովբ». քանզի զարդարոցն և զանուանս գիտել
բարւոք է, իսկ զմեղաւորաց՝ և յիշելոյ ոչ արժանի:
«Եւ էր այրն այն ճշմարիտ, անարատ, արդար,
աստուածապաշտ, որոշեալ յամենայն իրաց չարաց»:
Անպակաս ի բարեաց էր գանձանակն, լի ոսկւովք 141
էր կթոց երկրագործին. ճշմարիտ էր իբրև ճշմարիտ
արարած, վասն զի առաքինութեամբք վարէր առ
ի ճշմարտութիւն, քանզի առանց կեղծաւորութեան
ընդ Աստուծոյ պատուիրանն ճգնէր. անարատ, վասն
զի և ի հօտոյն մեղաց խորշէր, ի չարութեան և
ի փոքր կարծեացն խոտորէր. և ոչ զրպարտութեամբ
պատճառս տայր նախանձորդաց: Յայսմանէ արդար
էր, առողջ ունելով զբնական օրինացն զուղղութիւն.
վասն որոյ և յիրաւի անուանեցաւ նա աստուածա-

պաշտ. քանզի որ (ան)պակաս արդարութեամբ ճգնի,
142 սա է աստուածապաշտ առ ճշմարտութիւնն, վասն զի
այնպէս պաշտէ զԱստուած որպէս ինքն Աստուած
պաշտիլ կամի։ Քանզի արդար է տէր և զարդա֊
րութիւն սիրեաց, զուղղութիւն տեսին երեսք նորա.
իսկ ուղղութիւն, և ոչ փոքր մի զչարութեան ունի
զխառնուած։ Այլ պահանջէ իսկ զկնի կարգն. «ո֊
րոշեալ յամենայն իրաց չարաց»։ Յամենայնէ ու֊
րեմն միանգամայն ի չարեաց որոշէր Յովբ, զամե֊
նայն արութիւնս ի չարութեան աղտոյն սուրբ պա֊
հէր. մեծութիւն յանիրաւութեանց ոչ ժողովէր, ընդ
ցանկութիւնս անօրէնութեան ոչ զուարթանայր, ըզ֊
սահմանս փառաց ոչ որսայր, ոչ եղծանէր զիրաւունս,
ոչ ի դատել և ոչ ի դատիլ։ Յաղագս որոյ և այն֊
143 չափ և այնպիսի վկայութիւն ստացեալ, առ որ և
հասարակաց թշնամին վիրաւորիւր. ի փորձանացն
ի հանդէս ելանէր, և ի ձեռն չարչարանացն ընդ֊
դիմանալ ի թշնամւոյն կրթէր։ Իսկ դու միտ դիր
ըստ կարգին, քանզի ամենայն ինչ Յովբայ մեծա֊
մեծ է, ամենայն՝ սքանչմանց արժանիք։
«Եղեն նորա ուստերք եւթն և դստերք երեք. և
էին նորա խաշինք՝ եւթն հազար ոչխար, ուղտք ե֊
րեք հազարք, լուծք եզանց հինգ հարիւր, և էշք
մատակք արօտականք հինգ հարիւր. և սպասաւո֊
րութիւն բազում յոյժ»։ Ասէ իսկ զծառայից և ըզ֊
վարձկանաց, որք զեզինս և զուղտս և զէշս և ըզ֊
144 բազմութիւն հազարաց հօտիցն արածէին, և կամ
եթէ այլ ինչ հարկաւորութիւնս մատուցանէին։ Իսկ
այսուհետև տեսանես զարտաքին բազում մեծու֊
թիւնս, այլ ներքինն ևս մեծագոյն էր. պայծառ էին
երևելիքն, այլ պայծառագոյն ևս էին իմանալիքն.
քանզի այս մնայ, իսկ միւսն մաշի ծերանայ և թա֊
ռամի, յապականութիւն միանգամայն և ի սատա֊
կումն չարաչար հանապազորդէ անկեալ։ Իսկ ասի֊
ցես եթէ անդրէն դարձաւ։ Այլ վասն իմանալւոյն
և զգալիս էառ. եթէ ոչ զներքին մեծութիւնն ու֊

նէր, որ յոգւոյն էր թաքուցեալ, արտաքինն ոչ էր
դատնալոց։ Իսկ զինչ էր յոգւոյն մեծութիւն, 145
յայտնապէս (ի) կարգի ցուցանի։
«Եւ գործք մեծամեծք էին նորա ի վերայ եր֊
կրի»։ Կարծեմ եթէ զառաքինութիւնս և զուղղու֊
թիւնս մեծամեծս ասէ. զարդարութիւն և զերկայն֊
մտութիւն, զողորմածութիւն, զնախախնամութիւն
այրեաց, զորբոց ձեռընկալութիւն, և զզրպարտելոց
զվրէժխնդրութիւն, և այլ որ նման սոցին են, զոր
ինքն իսկ ըստ կարգի թուեաց. «Աչք էի կուրաց, և
ոտք էի կաղաց, ես էի հայր տկարաց. դատաստան
զոր ոչ գիտէի՝ քննէի. փշրեցի զժանիս անիրաւաց
և ի միջոյ ատամանց նոցա թափեցի զյափշտակեալն»։
Այս է արդարև մեծամեծ. քանզի ոչ իսկ սպակա֊
նի։ Ոչ ի վերայ այսոցիկ իշխեաց թշնամին գումա֊ 146
րել զձեռն իւր, այլ զուստերս և զդստերս սպանանէ,
զլուծս եզանց և զէշս մատակս և զուղտս տարաւ ի
գերութիւն, և զտուարածականսն սրով սպականեալ,
հրով մաշեաց զոչխարս։ Բայց վասն գործոցն զոր
լուար, եթէ «էին նորա գործք մեծամեծք ի վերայ
երկրի», ոչ է գրեալ. քանզի իմանալի էր. զոր ա֊
պականելն իսկ կամէր, այլ ոչ կարէր։ Իսկ մեք և
որ ըստ կարգի բանն է՝ փութով բուռն հարցուք։
Որչափ Յոբ իմանալի մեծութեամբն էր մեծացեալ,
պայծառագոյն և մեծամեծ զտարացոյցս ունելով։
«Եւ էր այրն այն ազնուական քան զամենայն ա֊
րևելեայս»։ Յորմէ հետէ՝ ասէ՝ լոյս արեգական ծա֊ 147
գեաց, սա ցուցաւ ազնուական առաքինութեամբք.
սուրբ պահելով զմարդկան ազգականութիւն,, բա֊
զում առաւելութիւն ունելով ըստ իւրաքանչիւր ար֊
դարոցն։ Ազնուական էր Աբէլ, այլ առ սակաւ ինչ
կալաւ զճգնութիւն և զմրցմունս համառօտս։ Ազ֊
նուական էր Ենովք, իբրև հաճոյ եղեալ Աստուծոյ,
պատահեցաւ փոփոխմանն. այլ զայսչափ զմարտ նո֊
րա առ թշնամին ոչ գիտացաք։ Ազնուական էր Նոյ
ի մէջ ջրհեղեղին եղեալ, այլ ուստերք և դստերք նո֊

*րա ողջ էին, և ոչ այսչափ ինչ ծախս յիւրոց բա֊
148 տացուածոցն եհաս կրել. այլ բովանդակ նմա ի ձեռն
տապանին ստացուածք աշխարհս եղև։ Ազնուական
էր Աբրահամ, այլ զմի որդին ի պատարագել մա֊
տոյց, իսկ Յովբ զբազումս. Նա զՍառայ գործակից
ունէր, իսկ ճգնողս նենգէր կինն։ Յամենայն ստա֊
ցուածոցն մերկ եղև, յերկար ընկալաւ զճգունսն,
զկռիւն բազմաժամանակեան. ընդ այլոց ստացուա֊
ծոցն մաշեցաւ և մարմինն։ Յայսմանէ յիրաւի ազ֊
նուական քան զամենայն արևելեայս կոչեցաւ. բայց
գուշակէ զնորա ազնուականութիւն և որ ի կարգիս
կայ։*

*«Միաբանեալ գային որդիքն նորա առ միմեանս,
առնէին ուրախութիւն զօրհանապազ, առեալ ընդ
149 ինքեանս միանգամայն զերեսին քորսն իւրեանց, ու֊
տել և ըմպել ընդ նոսա։ Եւ ի կատարել աւուրց
ուրախութեանն առաքէր Յովբ և սրբէր զնոսա»։
Լսե՞ս թէ որպէս ընթրեացն պիտոյ է սրբութիւն. և
պարտ են պատարագք՝ ուրախութեանց. և բարւոք
Եկղեսիաստէս խրատելով զմեզ ասէր. «Լաւ է եր֊
թալ ի տուն սգոյ, քան ի տուն գինարբուաց»։
Քանզի զմայլումն թանձրացուցանէ զմիտս, զմար֊
մին կայտառեցուցանէ ընդդէմ ոգւոյ, և տայ ցանկալ
մարմնոյ զընդդէմս անձին, յերկուս բաժանէ զմին,
պատերազմ ընտանի յարուցանէ, զզէնս կողոպտէ,
150 որ պահոց և աղօթից է պիտանացու, արբեցութեամբ
զայլայլեալս առնէ, մերձ ի մոլորութիւն հասուցա֊
նէ, և զհեզն՝ բարկացող գործէ, և զյոյժ պինդն՝
մեղկ առնէ, շատխօս՝ զհանդարտաբանն, առանցեալ՝
զիմաստունն, ցանկացող՝ զպարկեշտն. կարծեօք ի֊
մաստունն աւելի զգոյշն գտանի։ Յայսմանէ և Յովբ
յետ ընթրեացն ոչ անփոյթ առնէր զորդւոցն, այլ
զսեղանն՝ ի պատարագս ընդունէր, աղօթք՝ զկերա֊
կուրսն, և սրբութիւնք՝ զխորտիկսն. քանզի առաքէր
և սրբէր զնոսա։ Ըստ որո՞ւմ օրինակի և լուր։*

*«Յարուցեալ ընդ առաւօտս՝ մատուցանէր պատա֊*

*րագս վասն Նոցա ըստ թուոյն Նոցա, և զուարակ մի* 151
*վասն մեղաց անձանց Նոցա»: Բազում ինչ պատմէ*
*ճառս զբարեպաշտութիւնն Յովբայ. քանզի բազումք*
*ի մարդկանէ առ ի յերկրիս զբաղանս կանխել սո֊*
*վոր են. և որչափ ինչ խորհեցան ի գիշերի, վասն*
*ժողովելոյ զմեծութիւն, կամ զփառաց կամ զպա֊*
*տուոյ կամ զմեծութենէ, զայս ի ծագել տուընջեանն*
*փութապէս ի կիր արկանէին: Քանզի զի՞նչ պարտ է*
*զնոցանէն ասել, զորս և մարգարէն յերգ արկեալ*
*ողբալով ասէ այսպէս բանիւք. «Որք խորհէին ըզ֊*
*չարիս յանկողինս իւրեանց, և ի հասանել[1] տուըն֊*
*ջեանն. զնոյն կատարէին»: Իսկ Յովբ ոչ այսպէս.*
*այլ ընդ ծագել լուսոյն և ընդ պատահել, սպասա֊* 152
*ւորութիւն մատուցանէր՝ որ ծագեաց զլոյսն. պա֊*
*տարագս ըստ թուոյ ուստերաց և դստերացն մա֊*
*տուցանէր: Իսկ քանի՞ էին սոքա. տասն էին ըստ*
*թուոյ: Իսկ ապա ընդ զգալի պատարագացս, զիմա֊*
*Նալիսն ի միտ առ, և զճգնողին զփոյթ բարեպաշ֊*
*տութեանն իմացիր ըստ օրինացն տասն պատուիրա֊*
*Նացն: Քանզի պատարագ ճշմարտութեան է օրինացն*
*պահպանութիւն և վա(րումն) առաքինութեանց. և*
*այսուցիկ քեզ օրինակ լիցի Պաւղոսի թղթոյն առ Հե֊*
*բրայեցիս ասացուածքս. «Զբարեգործութիւն և ըզ֊*
*հաւասարութիւն[2] մի՛ մոռանայք. քանզի ընդ այս֊*
*պիսի պատարագս հաճի Աստուած»: Իսկ և զուա֊* 153
*րակ մի մատուցանէր ըստ Քրիստոսի քաղաքավա֊*
*րութեանն, որ ըստ Նմանութեան զուարակի վասն*
*մեղաց մերոց զենաւ: Ըստ օրինաց և ըստ աւետա֊*
*րանի կեայր, զդոյն իսկ և յորդւոցն պահանջէր, ոչ*
*միայն զնոսա ի գործոյն չարեաց, այլ և ի բանից,*
*ի խորհրդոց սրբել կամէր: Բայց ունի վկայութիւն*
*զայսր բաւական և որ ի կարգին գայ:*
*«Քանզի ասէր Յովբ, թէ գուցէ որդիքն իմ ի*

1. Վ. Ի *ծագել տուընջեան զնոյն առնէին*:
2. Վ. Զ*հաւատարմութիւն*:

սիրտս իւրեանց իմացան չարութիւն զԱստուծոյ»:
Պայծառ է Յովբայ արդարութիւնն. աւարտեալ ի
նմանէ բարեացն ուղղութիւնք. սա Հայր իմաստուն,
սա վարդապետ հմուտ, սա կառավար մտաւոր և
154 քաջ ուղղիչ[1], որ առասանօք՝ հանդերձ արտաքնովքն
և զներքինսն պահէ: Քանզի ասէր, թէ գուցէ երբեք
չարութիւն իմացան ի սրտի իւրեանց. ոչ միայն զայս
սաղմոսէր Դաւիթ, «զյանցանս իւր ո՛վ առցէ ի միտ,
ի գաղտնեաց իմոց սուրբ արա զիս». այլ և զաւետա-
րանական իսկ զպատուիրանն գործովք կատարէր:
Քանզի ըստ օրինաց և ըստ շնորհաց ասացաք զնա
քաղաքավարիլ. իսկ աւետարանական պատուիրանն,
եթէ որ զբանս սրտի սուրբ ունի, ոչ ընդ փոքր ինչ է
համարեալ: Քանզի Յովհաննէս աստուածաբան այս-
155 պէս իսկ գրեաց. և առաջի նորա հաւանեցուսցուք
զսիրտս մեր, զի եթէ պարսաւեսցէ զմեզ սիրտ մեր,
վասն զի մեծագոյն է Աստուած քան զսիրտս մեր
և գիտէ զամենայն. «Սիրելիք, եթէ սիրտք մեր
(զմեզ)[2] ոչ պարսաւեսցեն, համարձակութիւն ունիմք
առ Աստուած»: Ինքն իսկ Տէր ասաց, եթէ «Ի սըր-
տէ ելանեն խորհուրդք չարք, սպանութիւնք, պոռ-
նկութիւնք, շնութիւնք, գողութիւնք, հայհոյու-
թիւնք, սուտ վկայութիւնք, և որ նման է սոցին՝
այս է որ պղծէ զմարդ»: Յորոց գործոց սրբեսցուք
և մեք. ժողովեսցուք զարմտիս ոգւոց մերոց զամե-
նայն աւուրս. քանզի վասն ճշմարտին և անարատի
աւասիկ և զայս գրեալ է:
156 «Այսպէս առնէր Յովբ զամենայն աւուրս»: Բայց
թէ զի՞րդ, յառաջագոյն իսկ լուար, զի և ի չար
խորհրդոց զորդիսն իւր սրբել կամէր. յայնմանէ՝ և
ճշմարիտ կոչեցաւ. յայնմանէ՝ եղև նմա և գործով
կատարել զամբծութիւն. վասն որոյ և մեք մի՛ թող-
ցուք փշաբեր զներքին և զարտաքին զանդաստանս

1. Վ. Քաջուղիղ:
2. Յաւելաք ըստ Վ:

մեր, այլ վարդ անթառամ Աստուծոյ համարեսցուք.
փոխանակ որոման՝ ցորեան ընկալցի ագարակս. եր-
կիցուք ի հրոյն որ որոմանն սպառնացաւ. ցանկա-
ցուք շտեմարանացն յորում ի ներքս Քրիստոս ըղ-
ցորեանն իմանալի ժողովել խոստացաւ: Փոքր են
մեր կեանքս, ժամանակս դոյզն, առժամանակեայ է 157
աշխատութիւն, այլ վարձք յաւիտենական, հատու-
ցումն հանապազորդ, անսպառ՝ բարիքն խոստա-
ցեալք ի Հօրէ և յՈրդւոյ և ի Հոգւոյն սրբոյ, ո-
րում փառք յաւիտեանս յաւիտենից:

## Բ

«Եւ եղև իբրև զօրս զայս, և ահաւասիկ եկին
հրեշտակք Աստուծոյ կալ առաջի Տեառն. և սատա-
նայ եկն ընդ նոսա՝ շրջեալ ընդ երկիրս և յածեալ
ի ներքոյ երկնի: Եւ ասէ Տէր ցսատանայ. Ուստի՞
գաս: Պատասխանի ետ սատանայ և ասէ ցՏէր.
Շրջեալ ի յերկրի և յածեալ ի ներքոյ երկնի՝ կամ
աւասիկ: Եւ ասէ ցնա Տէր. Նայեցա՞ր միտք քովք
ընդ ծառայ իմ Յովբ, զի ոչ գոյ մարդ նման նմա ի 158
վերայ երկրի, այր անարատ՝ արդար՝ ճշմարիտ՝ աս-
տուածապաշտ՝ որոշեալ յամենայն իրաց չարաց:
Պատասխանի ետ մատնիչն և ասէ առաջի Տեառն.
Մի եթէ ձրի՞ պաշտէ Յովբ զՏէր. ո՞չ դու ամրա-
ցուցեր զներքին և զարտաքին տան նորա, և որ ինչ
միանգամ արտաքոյ շուրջ զնովաւ են. և զգործս ձե-
ռաց նորա օրհնեցեր, և զանասուն նորա բազմա-
ցուցեր ի վերայ երկրի: Բայց ո՛չ, աղէ առաքեա
դու զձեռն քո և արկ ի վերայ ամենայնի. եթէ ոչ
յերեսս իսկ օրհնեսցէ զքեզ: Եւ ասէ Տէր ցսատա-
նայ. Ահա զամենայն որ ինչ են նորա՝ ի ձեռս քո 159
ետու, բայց ի նա մի՛ մերձենար»:

Գեղեցիկ է բարեպաշտաց պատերազմ. պայծառ,
այլ և յոյժ օգտակար հոգևորական ճգանցն տեսիլ:

Ոտն արկանեն թշնամիքն և ինքեանք գլորին. նեն֊
գեն՝ բայց ինքեանք իւրեանց նենգութեամբքն ըմ֊
բռնին. նետս ձգեն ուժգնաբար, այլ եթէ համբե֊
րեսցուք, ի վերայ անձանց իւրեանց դարձցին նետք
իւրեանց, և յինքեանս առցեն զվէրսն, և դարձեալ
ի նոսին կրկնեսցին սուրք իւրեանց։ Բայց զի մի
միայն ամենևին ի ճգունսն անկազմ գտցուք և մի
անպատրաստք ի մարտին լիցուք, այլ միշտ պընդա֊
160 կազմք եղիցուք ընդդէմ իմանալի նենգութեանցն,
վասն առ ի բարեպաշտութեանց ճգանցն գրկընդ֊
խառն լիցուք։ Քանզի ոչ իսկ գիտեմք՝ եթէ յո՞րժամ
պատրաստեսցէ հանդիսատեսն զտեսիլ մրցանաց մե֊
րոց, կամ եթէ յո՞րժամ խնդրեսցէ բռնաւորն զզօ֊
րականն յախոյեան. իսկ նա հրամայէ ելանել, զի
մի յամօթ արասցէ զգունդն ինքեան։ Յայսմանէ և
Դաւիթ գոչելով ասէր. «Պատրաստեցայ և ոչ խռո֊
վեցայ». ոչ եթէ բանիւք ինչ պարծել կամեցեալ, որ֊
չափ եթէ զմեզ յորդորեսցէ ի պատրաստութիւն.
այսինքն է նիւթ անձանց ժողովել, զէնս կռել, հա֊
սանել ի ժամանակն, և զայն պատրաստել[1] . . .

. . . . . . . . . . . . . . . . . .

163 մատնիչ. ակն ունէր թէ և ի վերայ նորա յարիցէ
մատնութեամբք, և զամենայն աւուրս արդարագոր֊
ծութեամբ ոչ դադարէր. և ոչ երբեք թէ վասն աշ֊
խատութեանց՝ զառաքինութենէն անփոյթ առնէր.
իսկ ապա յարձակեալ թշնամւոյն, ոչ անպատրաստ
եգիտ զճգնողն, ուսուցեն զքեզ և որ վասն նորա
պատմութեանց բանքս գրեցան։

«Եւ եղև իբրև զօրս զայս, և եկին հրեշտակք
Աստուծոյ կալ առաջի Տեառն. և սատանայ եկն ընդ
նոսա, շրջեալ ընդ երկիր և յածեալ ի ներքոյ եր֊
կնի»։ Զորմէ՞ օրէ ասիցէ լինել հոգին. այլ զայս իսկ,
յորում աւուր Յովբ ընդ մատնչին մերկանայր ի պա֊
164 տերազմ, խնդրելով նորա առ ի մրցումն ընդ ին֊

1. Պակասի աստ թուղթ մի 161–162։

քեան։ Իսկ լինել ասէ զօրն, նախ զի պայծառա-
գոյն զնա ցուցանէ քան զբազում աւուրս. քանզի
զիա՞րդ ոչ էր երևելի քան զայլսն, յորում որ զա-
մենայն երկիր շարժել բարբառնջէր և ասէր. «Շարժե-
ցից զքաղաքս բնակեալս և զտիեզերս ամենայն հա-
սեալ ի բուռն կալայց[1], և արկից զձեռն իմ իբրև
ի բոյն, և բարձից իբրև զձուս թողեալս, և ոչ ոք
իցէ որ ապրեսցէ յինէն և կամ ընդդէմ դառնայցէ»։
Սա յաղթեալ ի միջէ մարդոյ՝ մնայ ամօթով։ Ապա
լինել զօրն զայն Ոգին ասէ։ Ի ձեռն այնորիկ ու-
սուցանէ զքեզ՝ զի ամենայն օր՝ Աստուծոյ արարած
է, և սահմանելով արարչին գայ ի մէջ. քանզի ե- 165
թէ ոչ հրամայէ՝ արեգակն ոչ ծագէ, և ոչ արևելք
զգիշեր տարածանեն և ոչ զտիւ գործեն։ Յայտնէ
իսկ Յովբ զբանս զայսոսիկ. «Որ ասէ արեգական և
ոչ ծագէ, և կնքէ զաստեղս»։ Ասէ իսկ և Երեմիայ.
«Որ առաքէ զլոյս և ընթանայ, կոչեաց զնա և լուաւ
նմա դողութեամբ»։ Այլ զի՞նչ յաւել յայսոսիկ պատ-
մութիւնս։

«Եւ ահաւասիկ եկին հրեշտակք Աստուծոյ կալ
առաջի Տեառն»։ Քանզի ո՞ր ժամ իցէ զի հրեշ-
տակք առաջի Աստուծոյ ոչ կան. ո՞չ վասն նոցա գը-
րեալ է, եթէ հազարք հազարաց պաշտեն զնա, և
բիւրք բիւրուց կան առաջի նորա. այլ զայս զգալ
հրեշտակացս, կարծեմք, որք ի նմանէն առաքեալ 166
ուրեք էին ի սպասաւորութիւն մարդկան։ Քանզի
ասէ Պաւղոս. «Ո՞չ ամենեքին հոգիք հարկաւորք
են, առ ի սպասաւորութիւն մարդկան առաքեալք,
վասն այնոցիկ որք ժառանգելոցն իցեն զփրկու-
թիւն»։ Ո՞չ զճաշն Դանիէլի՝ հրեշտակին յափշտա-
կեալ զԱմբակում տարաւ ի Բաբելոն. ո՞չ Միքայէլ
վասն ժողովրդեան Հրէից մարտնչէր. ո՞չ դարձեալ
հրեշտակ զտեսիլսն Դանիէլի յայտնեաց։ Իսկ զի՞նչ.
ո՞չ զՊետրոս հրեշտակն եհան ի բանդէն։ Իսկ Պաւ-

1. Վ. Հասեալ կալայց։ յՕր. ի բռնկալաց։

դռախ, ո՞չ հրեշտակն մինչև ի Հռովմ զճանապարհն
զգուշակեաց[1]։ Ապա ուրեմն այս հրեշտակք առ ի
167 յայսպիսի սպասաւորութիւն եղեալք, եկին կալ ա֊
ռաջի Աստուծոյ, կատարել զայն՝ յոր և առաքե֊
ցանն։ Այլ զի՞նչ ասէ. «Եկին հրեշտակքն Աստուծոյ
կալ առաջի Տեառն». եւ պարտ էր ասել կալ առա֊
ջի Նորա։ Ոչ այսպէս ասէ. այլ յաւել եթէ «Տեառն»։
Վասն զի ի սկզբանէ իսկ կամին ցուցանել մեզ գիրք
զդէմս[2] Երրորդութեանն. և ոչ միայն այս է.. ժա֊
մանակեանս գուշակէ,.. հրեշտակք Աստուծոյ Հօր,
կալ առաջի Տեառն Որդւոյ. կամ հրեշտակք Ա֊
ստուծոյ Որդւոյ, կալ առաջի Տեառն Հօր, կամ թէ
ամենեւին Հոգւոյ։ Քանզի ոչ մի ինչ է ընտրութիւն
ի մէջ Աստուծոյ և Տեառն, ոչ ինչ է ընդ մէջ Հօր
և Որդւոյ, նոյնպէս և Հոգւոյ։ Այլ և հրեշտակացն
ա166 եկելոց զի զիւրեանց սպասաւորութիւնսն յանձնեա֊
ցեն, մատնիչն եկն ընդ նոսա, քանզի և նա հրեշ֊
տակ էր կարգաւ և պատուով, իսկ անկեալ՝ մատ֊
նիչ կոչեցաւ և վիշապ անուանեցաւ, և զանուանս
մատնութեանն իւրով չարութեամբն վիճակեցաւ։
Իսկ թէ եկն ընդ հրեշտակսն, այլ ըստ իւրում կար֊
գի. քանզի և զայր ի սկզբան ի ստուգութեամբ մի՛
անցանէր[3], որպէս և ասաց վասն հրեշտակաց՝ եթէ
«եկին հրեշտակք Աստուծոյ կալ առաջի Տեառն». իսկ
վասն մատնչին, եթէ «եկն ընդ նոսա», բայց ոչ եւս
յաւել զնմանէ, եթէ «կալ առաջի Տեառն», վասն զի
ի կալոյն առաջի Աստուծոյ մի անգամ անկեալ յայն֊
ա167 մանէ, ոչ եւս արժանի էր կալ առաջի Նորա։ Քան֊
զի սոքա կային իբրև զհրեշտակս Աստուծոյ. քանզի

1. Վ. Առաջնորդեաց։

2. Վ. Զդէմս Երրորդութեանն՝ Աստուծոյ հօր կալ առաջի Տեառն որդւոյ. կամ Աստուծոյ որդւոյ կալ առաջի Տեառն հօր. կամ ամենեւին հոգւոյ. զի ոչ ինչ ընտրութիւն է մէջ հօր և որդւոյ՝ բաց յանծնելութենէն և ի ծնելութենէն։

3. Վ. Բայց ըստ իւրում կարգին՝ մի՛ անցանէր զբանին ստու֊գութիւն։

քաւական էր նոցա այս առ ի պատիւ, իբրև զպաշ-
տօնեայս արարչին, և իբրև ծառայք հաւատարիմք,
իբրև տնտեսութիւնս և սպասաւորութիւնս ոչ սա-
կաւս յարարչէն ընկալեալ, որք տային նոցա պա-
տուով կալ առընթեր։ Իսկ մատնիչն կայր իբրև ըզ-
մատնիչ. (ոչ իբր ծ)առայ, այլ ապստամբ. բայց ոչ
ընդ նոսա կայր, այլ հեռի ի կարգէն հրեշտակաց.
ոչ վայելելով ի թագաւորականն դիմաց, յորմէ հը-
րեշտակքն վայելէին որչափ և արժան էր նոցա։
Բայց գալ իսկ ընդ հրեշտակսն՝ թոյլ տուեալ, զի
ուսցի ուստի՞ անկաւ, զորպիսի՞ ամօթ ընկալաւ, 168
փոխանակ այնպէս փառաց։ Բայց և այլ ևս պատ-
ճառքն որ զհրեշտակսն ածէին կալ առաջի Աստու-
ծոյ, նոյն պահանջէր և զմատնչին գալուստն. բայց
ոչ ի նոյն կամս, այլ յընդդէմսն։ Քանզի հրեշտակք
զիւրեանց սպասաւորութիւն եկին մատուցանել, զոր
կատարէին վասն մարդկան. իսկ մատնչին թոյլ
տուեալ գալ իբրև (զթշն)ամի և զչարախօս, զի պայ-
ծառագոյն ևս լիցին հրեշտակացն սպասաւորութիւնք,
և վասն արդարոցն վկայութիւնք, թշնամւոյն՝ առ-
ընթեր կալով և ոչ ինչ ընդդէմ ասելով։ Իսկ դու
մի՛ զարմանար եթէ ճառս վկայեաց զառընթերն 169
կալ թշնամւոյն, և ոչ ի հրեշտակացն կարգի. որ ոչ
ի թագաւորական դիմացն վայելել։ Վասն զի և ի
ծառայս իսկ որ պատուականագոյնքն են՝ առըն-
թերակացք են տեառն. իսկ զոչ պատուականսն և
զանարգսն կալ հեռագոյն, և ոչ ամենևին թողեալ
տեսանեմք վայելել ի դէմս տերունեացն. այլ և ձայ-
նի տերունեացն լսելով, և (առ նո)սա ինչ խօսել
յորժամ հրամայեսցի նոցա, որ և ի լսելիս տերանց
հասանէ. բայց ոչ ևս լեալ արժանի դիմաց նորա։
Իսկ եկն յածեալ ընդ երկիր, և որոնել ուր ի նմա
են դարանք, արածել զապականութիւն և լիզել ըզ-
հող, որոճալ անդրէն որ ի նմա չարութեանց էին 170
վէրք. շրջեալ ի նմա և ոչ լոկ գնացեալ, այլ յա-
ծեալ, որպէս իւր ասացեալ ի կարգի աստ գտանի.

*իբրև եթէ թաթաւեալ և յղփութեամբ[1] շրջեալ, և քա-
ղաքավարութեամբ ըստ նմանութեան խոզաց աղմի
կամօք լուացեալ չարութեամբք երկրիս: Քանզի
զայս ցուցանէ «յածեալն», միանգամայն իսկ զնմանէն
և շրջելն յերկրի: Վասն այսորիկ գրեցաւ Հոգւով
(առ ի)ցոյցս, զի և ի հրեշտակական թևոցն հատաւ.
քանզի են նորա թևք, այլ գետնաթռիչք. են նորա
թևք, քանզի ի նմանէն ի զգուշանալ քեզ հրամայէ
Եկղեսիաստէս և օրինադրելով ասէր. «Խորհրդովք
171 քովք զթագաւորս մի անիծաներ, և յըշտեմարանս
սենեկաց քոց մի նզովեսցես զմեծատունն. զի թըռ-
չուն երկնի հասուսցէ զբարբառն և թևաւորն պատ-
մեսցէ զբան քո»: Այլ զթևսն բարձրաթռիչս ոչ ու-
նի, և ոչ ևս յերկինս բարձրանալ և համբառնալ կա-
րէ, յորմէ հետէ միանգամ նա անկաւ. վասն որոյ ի
ձագ իսկ առակեալ է, ըստ այսմ բանի: Քանզի ա-
սէ Աստուած ցՅովբ. «Խաղասցես նովաւ իբրև հա-
ւու, կամ կապեսցես զնա իբրև մանուկ՝ զձագ, և
իբրև զառիւծ՝ թշնամին»: Ոչ թէ վասն քաջութեան
անուանեցաւ, այլ վասն սպանողութեան: Քանզի
ասէ Պետրոս. «Արթուն կացէք և զուարթուն լե-
172 րուք, զի հակառակորդն ձեր սատանայ իբրև զա-
ռիւծ մռնչելով շրջի և խնդրէ կլանել»: Գոյնպէս և
ճնճղուկ, ոչ իբրև զկատարեալ, այլ ի գետնաթըռ-
չութենէն բարւոք անուանեցաւ ճնճղուկ. ոչ ունի
բարձր զթռիչս, այլ և ոչ յերկար, այլ սակաւ ինչ
թռչի, և դարձեալ յերկիր իջանէ. այսպէս և սատա-
նիչն ամբառնայ յօդս, բայց ոչ ևս կարէ անտի
բարձրանալ յերկինս. այլ իբրև զտկարացեալ յեր-
կիր զարկանի:*

*«Եւ ասաց Տէր ցմատնիչն. Ուստի՞ եկիր»: Ոչ
անգիտութեամբ Աստուած հարցանէ ցմատնիչն, այլ
գիտելով. և ուստի՛ և կամ զի՛ մատնել փութայր, և*

1. Վ. Թափառեալ յղփութեամբ կամօք՝ ըստ նմանութեան խո-
զից ի աղմի երկրին: յՕր. յղութեամբ:

*Ո՛ր արդարու(թիւն) զնոյն տրտմեցուցանէր, և ո՛ր* 173
*բարեպաշտութիւն զնա խռովեցուցանէր, և ո՛ նմա*
*խաղաղանալն ոչ տայր, և յորմէ բովանդակ յաղ-*
*թեալ լինէր ամօթով։ Եւ կամեցեալ պատճառս տալ*
*չարին բանիւք վասն Յոբայ, զի թէպէտ և վիշապ*
*և ապստամբ և բանաւոր էր, այլ սակայն ոչինչ ա-*
*մենևին ի լսելիս Աստուծոյ իշխէր հասուցանել,*
*մինչև առեալ (էր) հրաման խօսելոյ։ Բայց յայտնի է*
*այսոցիկ տարացոյց որ ի կարգիս կայ։*
*«Եւ պատասխանի ետ մատնիչն Տեառն և ասէ.*
*Շրջեալ ի յերկրի և յածեալ ի ներքոյ երկնի՝ կամ ա-*
*ւասիկ»։ Ոչինչ, ասէ, առանց քննութեան յերկրէ և*
*ոչ ի ծովէ թողի, այլ զամենայն ներքին արարածս*
*փութապէս զննեցի, և ի մեղաւորս զմայլեցայ, և զար-* 174
*դարս արգելի յարդարութենէ. գիտեմ զինչ վարք*
*սոցա իցեն և կամ զինչ նոցա. հարց այսուհետև վասն*
*որոց կամիս, և ես քեզ ցուցանեմ զգործս ամենեցուն,*
*և առաջի ունիմ իբրև զամենեցունց թշնամի։*
*«Եւ ասէ ցնա Տէր. Նայեցա՞ր մտօք քովք ընդ*
*ծառայն իմ Յոբ, զի ոչ գոյ մարդ նման նմա ի*
*վերայ երկրի. այր անարատ՝ արդար՝ ճշմարիտ՝ աս-*
*տուածապաշտ՝ որոշեալ յամենայն իրաց չարաց»։*
*Թշնամութիւն ունել մատնչին ընդ Յոբայ, ցուցա-*
*նէ Աստուած ի սկզբան բանից իւրոց, և վասն այ-*
*սորիկ ոչ ասէ թէ նայեցա՞ր ի ծառայ իմ Յոբ, այլ* 175
*թէ ընդդէմ ծառայի իմոյ Յոբայ։ Բայց միանգա-*
*մայն իսկ, զի մատնիչն ընդ որս նայի՝ չարութեամբ*
*նայի. ի մեղաւորս վասն կորստի, իսկ յարդարս նեն-*
*գութեամբ։ Վասն նորա ասէ Դաւիթ. «Եթէ տեսա-*
*նես դու զցաւս և զարտմտութիւն», և դարձեալ, ե-*
*թէ «Դարանանայ ի գաղտնիս իբրև առիւծ ի մո-*
*րիոջ իւրում, դարանանայ յափշտակել զաղքատն»։*
*Վասն այսորիկ ասէ. եթէ «հայեցա՞ր մտօք քովք ընդ-*
*դէմ ծառայի իմոյ Յոբայ»։ Եւ ոչ միայն զայս առ*
*ն(ոս)ա ասելով, մի՛ եթէ իբրև ի հարևանցի՞ ինչ հայե-*
*ցար ընդ մեծ ճգնողն, մի՛ եթէ իբրև զո՞նց առնե-*

*լով յականեցեր զնա. մտօքդ հայեցա՞ր, փոյթ առ-*
176 *նելով տեսե՞ր; ստուգութեամբ խնդրեցե՞ր. զի ոչ ոք*
*գոյ իբրև զնա ի վերայ երկրի։ Քանզի են իսկ բա-*
*զում արդարք, այլ Յոբ առաւելագոյն. են բազում*
*արդարք, այլ ոչ են ի վերայ երկրի՝ յորմէ դու սար-*
*սեցեր*[1]*. ոչ են ի վերայ երկրի, վասն զի յոյժ քան*
*զերկիր զքաղաքաւորութիւն բարձրագոյն ստացեալ*
*ունին։ Տեսե՞ր որչափ մարմնաւորն քան զանմարմինդ*
*ընտրեցաւ, որ են յերկրէ քան որ էիրդ յառաջ յեր-*
*կինս։ Յոբ անարատ, իսկ դու զամենայն պարսա-*
*ւանս ի վերայ անձինդ կուտեցեր. Յոբ ճշմարիտ,*
*իսկ դու հայր ստութեան. Յոբ աստուածապաշտ,*
*իսկ դու աստուածամարտ և հայհոյիչ. Յոբ որոշեալ*
177 *յամենայն իրաց չարաց, իսկ դու խնդաս ընդ ամե-*
*նայն չարիս. փափկութիւն (ան)նիւթ և փառս զչա-*
*րութիւնդ ես ստացեալ, ճանջ ես յանցանաց, և ըստ*
*նմանութեան անգեղց՝ ի վերայ մեռեալ գործոց ան-*
*կանիս և զնովիմբք սփարիս։*

*«Պատասխանի ետ մատնիչն ընդդէմ Տեառն և ա-*
*սէ»։ Բարիոք է ընդդէմն և ըստ կարգի կայ։ Վասն*
*զի որչափ արդարոց ընդդէմ (կայ՝ և) ընդդէմ Ա-*
*տուծոյ ասի. և որչափ յ(անարգու)թիւն սրբոց ասի,*
*զայն ի թշն(ամանս) անձին՝ սուրբն սրբոց համարի.*
*վասն այսորիկ և այժմ ասացաւ եթէ ընդդէմ Տեառն*
*ասաց մատնիչն. վասն զի զորմէ Աստուած այսչափ*
*զարմացաւ, նա անգոսնել և բամբասել սկսաւ։*

*«Մի եթէ ձրի՞ պաշտէ Յոբ զՏէր. ո՞չ դու ամ-*
178 *րացուցեր զներքին և զարտաքին զտան նորա. և որ*
*ինչ միանգամ արտաքոյ շուրջ զնովաւ և զգործս*
*ձեռաց նորա օրհնեցեր, և զանասուն նորա բազմա-*
*ցուցեր ի վերայ երկրի։ Բայց ոչ, աղէ առաքեա դու*
*զձեռն քո և արկ ի վերայ ամենայնի, եթէ ոչ յե-*

1. Վ. *Յորոց դու սարսեցեր, ոչ է նա երկնաւոր. ի վերայ երկրի է, այլ առաքինութիւն բարձրագոյն ստացեալ է մարմնաւորն քան զանմարմինդ, որ ի յերկրի՝ քան զոր ի յերկինս էիր.*

րեսս իսկ օրհնեսցէ զքեզ»։ Ընդէ՞ր զՅովբայ, ասէ,
զարմանաս. ընդէ՞ր զմեծամեծս վասն արդարոյն ա-
սես. քանզի դու զնորա արդարութիւնն պնդեալ ու-
նիս, վասն քո պարգեւացն յայնչափ մեծութիւն ա-
ռաքինութեանցն եհաս։ Ամենայնիւ լցեալ է, յամե-
նայն կողմանց յղփացեալ է. ոչ ինչ զնա նեղէ, ոչ
ինչ զնա մեղանչել հարկաւորէ. տունն բարեշէն է,
վաճառովք լի է. ագարակքն ամենայն լի են օրհնու- 179
թեամբ. որդիքն ըստ նմանութեան պսակի շուրջ
զնովաւ բոլորեալ են. վասն որո՞յ ոչ իցէ Յովբ ճըշ-
մարիտ, ընդէ՞ր աստուածապաշտ առաւել եւս ոչ լինի,
զորո՞վ պատուիրանօք զանց առնել հարկաւորի։ Քան-
զի որ ոչն աղքատանայ՝ զիա՞րդ գողասցի. ընդէ՞ր
պոռնկի՝ քանզի կին է նորա, եւ ընդ կնաւն եւ հարճք
եւս առընթեր են նորա. ընդէ՞ր ատէ՝ որ ոչն յումեքէ
երկնչի. զի՞նչ զնա տրտմեցուսցէ, որ էն յուրախու-
թեան, եւ որդիս խնդութեան ժառանգորդս իւր ու-
նի. ոչ ունի զարմացումն այսուհետեւ Յովբայ արդա-
րութիւնն. քանզի բարիս՝ է ինչ որ ունի ի քէն, եւ
է ինչ որում ակն ունի առնուլ. վասն այսորիկ փու- 180
թայէս առաքինութեամբք վարի. ոչ յումեքէ է կա-
րօտ, յիրաւի ոչ հրապուրի մեղանչել։ Զայս առակէ
մատնիչն յասացեալ բանսն առ Աստուած։ Իսկ Աս-
տուած դեռ ոչ եւս յանդիմանէր զչարն. այլ գոր-
ծովքն զնա յանդիմանել կամեցեալ, բանիւքն ոչ բե-
րէ զյանդիմանութիւնն. ոչ ասաց ցնա. եթէ Յովբ
յագեալ է լիութեամբ, եւ վասն այսորիկ գործէ զար-
դարութիւն, իսկ դու ո՞չ էիր ի լիութեան, ո՞չ յա-
մենայն կողմանց սահէին զքեւ բարիքն, ո՞չ պսակ գե-
ղեցկութեան էիր, ո՞չ կնիք նմանութեան, ո՞չ ի դը-
րախտին փափկութեան Աստուծոյ էիր, ո՞չ ի մէջ
հրեղէն կայծականցն էիր, ո՞չ սարդիոնն զգեցեալ 181
էիր, եւ զմրուխտ եւ զտպազիոնն, զակատ եւ զհրոկն,
եւ զշափիղայն եւ զասպիսն, եւ զոսկէքարն եւ զե-
ղունգնն եւ զբիւրեղն. եւ զիա՞րդ հպարտացար ընդդէմ
արարչին, զիա՞րդ ի լիութենէ անկար յամբարտաւա-

նութիւն, զիա՞րդ ընկեցար յերկնից և եղեր ծաղր
յերկրի։ Իսկ զայս ամենայն թողեալ Աստուծոյ,
բայց զեռ ևս ասել հրաման ետ չարին որչափ և կա-
մէր ասել. յինքեան բանիցն իսկ զանիրաւ լեզուն
դատապարտել կամեցեալ։ Իսկ զի՞նչ էր այսուհետև
կատարած բանիցն։

«Բայց ոչ, աղէ առաքեա դու զձեռն քո և արկ ի
182 վերայ ամենայնի, եթէ ոչ յերեսս իսկ օրհնեսցէ ըզ-
քեզ»։ Մերկացո՛ զՅովբ ի բարեացն և լիցի իբրև
զիս. և գտցես հայհոյիչ՝ զբարեպաշտն, և մտերիմն
հարկաւորեալ տառապանօքն՝ յանչնորհակալութիւնն
փոխեսցի. «յերեսս օրհնեսցէ զքեզ», այսինքն է անա-
մօթեալ հայհոյեսցէ զքեզ, և անյուսութեամբ ի լըր-
բութիւն և յանդգնութիւն փոխեսցէ զբարեպաշտու-
թիւնն։ Արկ զձեռն քո ի վերայ ամենայնի զոր ու-
նի. մի՛ եթէ ի սակաւ ինչ, այլ յամենայն. եթէ
կամիս եթէ մերկացայց ընդ նմա ի մարտ, մերկացո՛
զճգնողն և մտանեմ ընդ նմա ի հանդէս։
183 «Յայնժամ ասէ Տէր ցսատանայ. Ահա զամենայն
ինչս նորա ի ձեռս քո տուեալ. բայց ի նա մի՛ մեր-
ձենար»։ Զի՞ ասես ինձ՝ եթէ առաքեա զձեռն քո և
արկ ի վերայ ամենայնի զոր ունի։ Ես յիմոց ծա-
ռայից զոր ինչ յինէն առեալ ունին, անդրէն հանել
ոչ եմ սովոր. բայց վասն զի կամիս, եթէ փորձես-
ցի արդարն, և զզօրականն խնդրես յախոյեան, որ-
չափ ինչ է նորա՝ զամենայն տամ ի ձեռս քո, զիարդ
կամիս և արա, ըստ որում օրինակի կամիս և գոր-
ծեա։ Մի՛ երբեք յաղթահարեալ՝ ասիցես, թէ խնա-
մելով մատոյց Աստուած զՅովբ ի փորձութիւն, ոչ
այնպէս ջեռոյց զարդարն, իբրև թէ ջեռուցեալ յան-
184 դիմանեսցի։ Վասն այսորիկ որչափ ինչ է նորա՝ տամ
ի ձեռս քո. այլ ի նա մի՛ մերձենար։ Հանդերձ ըն-
չիւքն ունիս և զստացուածսն, ընդ մեծութեանն
միանգամայն և զորդիսն, հանդերձ ուստերօքն և
զդստերսն, արտաքնովքն հանդերձ և զներքինսն, զա-
մենայն զնիւթսն տամ ցքեզ, որովք կարծեցերն

զարդարութիւն գործել արդարոյն. այլ ի Նա մի
մերձենար. քանզի կամիմ զմարտն բաժանել, զճը-
գունումն որոշել. կամիմ զքեզ եթէ յետ առաջին յաղ-
թութեանն՝ յերկրորդ հանդէս խնդրեցես զարդարն,
զի բազում անգամ յաղթահարեալ, բազում անգամ 185
ամաչեցես. իսկ Յովբ բազում անգամ ճգնեալ, բա-
զում անգամ պսակեցի. քանզի իւրաքանչիւր ոք
առնու զվարձս ըստ իւրոցն աշխատութեանց. ըստ
թուոյ հանդիսիցն շնորհէ զպսակն արդար հանդի-
սատեսն. Նմա փառք այժմ և միշտ և յաւիտեանս
յաւիտենից՝ ամէն։

## Գ.

«Եւ ել սատանայ յերեսաց Տեառն. և եղև իբրև
զօրս զայս, և ուստերքն և դստերքն Յովբայ ուտէին
և ըմպէին գինի ի տան երիցու եղբօրն իւրեանց։
Եւ ահա հրեշտակ եկն առ Յովբ և ասէ ցնա. Հար-
կիք եզանցն վարէին, և էշքն մատակք արածէին
առ նոքօք. և եկեալ գերեվարք, գերեցին զնոսա, և 186
զմանկտին կոտորեցին ի սուր սուսերի իւրեանց, և
ես միայն ապրեցայ և եկի պատմել քեզ։ Մինչդեռ
Նա զայն խօսէր, այլ հրեշտակ եկն առ Յովբ՝ և ա-
սաց ցնա. Հուր անկաւ յերկնից յերկիր և այրեաց
զհօտսն, և զհովիւսն եկեր նոյնպէս, և մնացի ես
միայն և եկի պատմել քեզ։ Մինչդեռ ևս Նա զայս
խօսէր, այլ հրեշտակ հասանէր առ Յովբ և ասէ
ցնա. Ասպատակաւորք արարին ի մեզ երիս առաջս,
և պատեցան զուղտուքն և գերեցին զնոսա, և ըզ-
մանկտին սպանին սրով, և ապրեցայ ես միայն եւ 187
եկի պատմել քեզ։ Մինչդեռ Նա զայն խօսէր, այլ
հրեշտակ հասանէր առ Յովբ և ասէ. Ուստերքն քո
և դստերքն քո մինչդեռ ուտէին և ըմպէին առ որդ-
ւոյն քո՝ եղբօրն իւրեանց երիցու, յանկարծակի
հողմն սաստիկ եկն յանապատէ, և բախեաց զչորս

անկիւնս ապարանիցն, և անկան ապարանքն ի վե-
րայ որդւոցն քոց և մեռան, և ես միայն ապրեցայ
և եկի պատմել քեզ։ Այսպէս լուեալ Յովբայ, յա-
րուցեալ պատառէր զպատմուճան իւր, և կտրեաց զհեր
գլխոյ իւրոյ, հող ի գլուխ լինէր և անկեալ յերկիր
երկիր եպագ Տեառն և ասաց. Մերկ եկի յորովայ-
188 նէ մօր իմոյ, մերկ և անդրէն դարձայց. Տէր ետ
և Տէր էառ. որպէս Տեառն կամք եղեն՝ այնպէս և
կատարեցաւ, եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւի-
տեանս։ Ի վերայ այսր ամենայնի պատահեցելոց
նմա՝ ոչ մեղաւ Յոբ առաջի Տեառն և ոչ մի ինչ
շրթամբք իւրօք, և ոչ ետ անզգամութիւն Աստուծոյ»։
Դուզնաքեայ է մեր կենացս ժամանակ. բայց ըզ-
գաստութիւն ոչ սակաւ ինչ, այլ բազում և յոյժ ա-
ռաւել պիտոյ է ի սմա. զի մի զսահմանեալ մեզ
ժամանակն ի գործ՝ առանց շահի զանցուսցուք, և
մի բեռինս անձանց մերոց կուտեսցուք, զոր բառ-
նալն ծանր է և ունելն ողորմելի, և թողուլն ի վե-
189 րայ մկանանց՝ երիցս եղկելի. յոր հրոյն գեհեննի հո-
տոտեալ ձգէ առժա(մայն) զբարձօղն. այլ և որդնն
դահի(ճ) յարձակի ի բարձօղն, ուտէ նովաւ, մաշէ և
պատառէ զբեռնակիրն։ Վասն է՞ր և մինչև ցե՞րբ
իսկ մեք առ անմիտ պատիւս և փառս, և առ ընդու-
նայն և անհաւատալի, առ սուտ և առ փախչող մե-
ծութիւնս փութամք. մինչև ցե՞րբ ապականիչ և եղ-
ծանելի ցանկութեամբքս վայելչանամք. մինչև ցե՞րբ
յաշխարհական երազս՝ իբրև ի ճշմարիտս հայիմք.
մինչև յե՞րբ Դաւիթ իսկ զամենայն աւուրս սաղմոսէ.
«Նիրհեցին ամենեքեան ոյք հեծեալ էին ի ձիս.
ննջեցին զքունս իւրեանց և ոչ ինչ ոչ գտին. ամե-
190 նայն (արք) ի մեծութեան ձեռաց իւրեանց»։ Իսկ (թէ)
զականջս մեր մատուցանեմք կարդի սաղմոսացն և
քաղցրաձայն բարբառոցն, բայց ոչ ի միտս մեր մը-
տանեն ասացեալքն. այլ հեռի առ ի նոցանէն օգ-
տիցն բաջաղին միտքս մեր, և իբրև հարևանցի
հայիմք ի միտս աստուածաշունչ գրոց. բայց ոչ ինչ

Իսկ օգնեն մեզ պատմագրութիւնքս որ ի հոգևոր
մատանցն գրեալք են. քանզի պակշոտեալ եմք ի
յընդունայնութեան աշխարհիս։ Զի՞նչ պակասէր
Յովբայ ի մարդկանէս, ի փառաց եթէ ի պատուոյ,
եթէ յազգէ, եթէ ի պարծանաց, և եթէ ի մեծու-
թենէ. որոյ ազգն էր պայծառ քան զամենայն ա-
րևելեայս. բազմութիւն խաշանց այնչափ (զի) և 191
թիւն զարմացուցանէր զա(մեն)այն լսելիս. սպասա-
ւորացն և ոչ թիւն է գրեալ, վասն յոյժ բազմու-
թեանցն. դաս որդւոցն իբրև պսակ յօրինեալ կայր
շուրջ զնովաւ։ Բայց սակայն յանկարծակի ամենայն
հեռացաւ ի նմանէն, չնչեցին մրրիկք և բեռինքն ան-
երևոյթ եղեն, և ամենայնն ընդ հեծութեամբ ան-
կաւ, և տունն նաւակոծութեամբ լցաւ։ Եթէ ոչ մե-
ծութիւն իմանալի ունէր Յովբ, ոչ ինչ կարէր օգ-
նել նմա երևելի մեծութիւնս. բայց վասն զի ունէր
զիմանալին, աղքատանալովն առաւել ևս մեծանայր,
և մերկութեամբն ոչ ամաչէր. (ի հիւ)անդութեան 192
դնէր, այլ ահա զ(օ)ս առողջացն երևէր. նստելով
յաղբևսն՝ զմխան թագաւորականս ոչ նուաղեցոյց, և
ի պատել որդանցն զնովաւ՝ առ ոչինչ համարէր, և
դիւացն իբրև որդանց սաստէր։ Այնչափ արհամար-
հէր զթշնամին, մինչև ի դատ ընդ Աստուծոյ կա-
մէր մտանել, ոչ արհամարհելով զՏէրն, այլ երկե-
ցուցանելով զբռնաւորն. ոչ զհանդիսադիրն բարկա-
ցուցանելով, այլ ամաչեցուցանել զթշնամին. և թըշ-
նամեացն ի սկզբան մարտիցն էարկ վհատութիւն,
զի ընկալցին իբրև զքաջ ճգնող որ համարձակու-
թեամբ մատչի առ հանդիսատեսն։ Եւ զի՞նչ (պարտ) 193
է ասել ցքեզ. բազում ինչ։ Այն(չափ) առաւելութիւն
էր Յովբայ ի վերայ նախանձաւոր պատերազմողին,
մինչ զի ինքն հանապազ առընթերակաց Աստուծոյ
էր, իսկ մատնիչն ոչ այնպէս. այլ և եթէ հրաման
առնոյր դուզնաքեայ կալ առաջի, նոյնժամայն ելա-
նէր ամօթով։ Կամ եթէ պատմութիւնս որ վասն
Յովբայ է, զայս զոր ասէս ո՞չ լուար՝ եթէ «ել ա-

*տանայ յերեսաց Տեառն». Կացի՞ն արդեւք հրեշ-
տակքն առաջի Տեառն. զի եւ մատնիչն. և եթէ
վասն է՞ր, զայն ուսիր։*

*«Եւ եղև իբրև զօրս զայս»։ Ո՞ր օր. երևելիս,*
194 *նշանաւորս, յիշելոյ արժանիս, այնր նման (վաս)ն
որոյ ասէրն Դաւիթ. «Այս օր է զոր արար Տէր.
ցնծասցուք և ուրախ լիցուք ի սմա»։ Քանզի արդարոց
ճգունք պատճառք են խնդութեան և սկիզբն ցնծու-
թեան, յորժամ մերկանան ի ճգնելն և իջանեն ի
մրցելն, յորում Աստուած է հանդիսատես, և ճըգ-
նողացն գյաղթութիւն մարտին դնէ առաջի. յայն-
ժամ յոյժ բերկրին՝ յորժամ ըստ թուոյ վիրացն և
զպսակսն առնուն։ Այլ առաւել ևս արժան է մտա-
դիր լինել որ ըստ կարգիս կայ։*

*«Ուստերքն և դստերքն Յովբայ ուտէին և ըմ-
պէին գինի ի տան երիցու եղբօրն իւրեանց»։ Եւ
զայս Հոգին վասն է՞ր յաւել ի պատմութեանն. զի*
195 *ուսցուք եթէ այն ժամանակ պատ(եհ է) թշնամւոյն
առ ի փորձել որք ի (նման)էն էին փորձելոց. հան-
գիստ և հեղգութիւն և փափկութիւն. քանզի յայն-
ժամ առանց աշխատութեանց փորձ(իչն) մարտնչի և
ոչ աշխատի. տայ վէրս և ինքն ոչ առնու։ Եթէ ոչ
յըմպել տեսանէր զորդիսն Յովբայ՝ այլ ի սաղմոս,
և կամ թէ ոչ ի հեղգութեան՝ այլ յաղօթել, և եթէ
ոչ ի բազմածախ յընթրիս՝ այլ առ մօրն առաքինու-
թեանց՝ բաւականութեամբ՝ վարել զինքեանս, սա-
կայն և յայնժամ փախչել ոչ կարէին ի մահուանէ.
քանզի թոյլ տալով թշնամւոյն՝ արդարոցն խնայէր։*
196 *Բայց սակայն առանց փառաց ոչ ան(կան)էին, և ոչ
ևս լինէր տունն դիր նոցա. և ոչ ևս կործա-
նեալ անկանէին ի վերայ սեղանոյն ամենեքին. և
ոչ ևս ի հասարակաց օրինացն զրկեալ լինէին՝ որ
լինի ի վերայ մեռելոց. այլ մեռանէին թերևս իբրև
զառաքեալս և զմարգարէս և զմարտիրոս(ս), որոց ճը-
գունքն օրհնին և հանդէսքն երանին, և մահն է փա-
ռաւոր քան զկենդանութիւն։ Այլ որդիքն Յովբայ*

ընթրէին. իսկ մանկտին որչափ և կամ որպիսի ըն-
թրիս ինքեան պատրաստէր, լուր։
«Եւ ահա հրեշտակ եկն առ Յովբ և ասէ ցնա.
Հարկիք եզանց վարէին, և էշքն մատակք արածէին
առ նոքօք. և եկեալ գերեվարք, գերեցին զնոսա, 197
և զմանկտին կոտորեցին ի սուր սուսերի իւրեանց.
և ես միայն ապրեցայ և եկի պատմել քեզ»։ Ոչ ևս
ապրէիր և ոչ դու, եթէ ոչ չարին պահեալ[1] էր ըզ-
քեզ, հրեշտակ վշտաց. եթէ ոչ ի ձեռն քո ակն ունէր
ձգել նետս ի յանելիսն Յովբայ։ Բայց ոչ եմուտ նետն
և ոչ վէրս ընկալաւ զօրականն Աստուծոյ յայնչափ չա-
րաչար գուժիցն. վասն զի անվթար զգեցեալ էր զը-
րահսն համբերութեան։ Քանզի և երկրորդ նետ ձը-
գել կամեցաւ ի նա պատերազմողն։ Այլ մեք զաս-
ցեալս ի խրատ ընկալցուք, և շահք պատմութ(եանս)
(լիցի) մեզ առ ի յօգուտ, և ուսեալք զպատճառսն՝ 198
զգուշասցուք (որ)ովք թշնամին մեզ յարձակի։ Յոր-
ժամ գործիցեն հարկիք եզանցն, էշքն մատակքն մօտ
առ նոսա մի արածեսցին, իբրև թէ այսինքն է առ
գործօղս պատուիրանացն. քանզի զեզինան յայս ա-
ռակեսցես. և կանայք ցանկասէրք մի փափկասցին,
զի մի ժամանակ յարձակման գտցէ թշնամին, և
զեզանցն և զիշոցն ըստ ցանկութեանցն գործեսցէ
զգերութիւն։ Բայց սպանանել զմանկունս սրով,
յայտ է թէ բանիւք չարօք. քանզի որդիք մարդ-
կան՝ ատամունք նոցա զէն և նետք են, և լեզուք 199
նոցա (սուսեր)[2] սրեալ, ապականելով զան(հասն) կամ
մտօք և կամ ախովք, յորդորելով զնոսա ի ցանկու-
թիւնս անարժանս։ Աստացէ բանս քաղցունս և հա-
ւանականս, յորմէ ցուցանէ արածել զցանկասէր կա-
նայս առ կարծեցեալսն գործել զպատուիրանսն. ուս-
տի և պատմութիւնս ցուցանէ. յառաջ(ն)ումն գերեալ
զէշսն հանդերձ եզամբք, և ապա կոտորել սրով ըզ-

1. յՕր. պատահեալ։
2. Բրդզգեալ էին յՕր. փակագծեալքն, եդաք ըստ Վ.։

մանկունսն։ Բայց եկ խսկ և զերկրորդ չարութիւն
թշնամւոյն քննեսցուք։
«Մինչդեռ նա զայն խօսէր, այլ հրեշտակ եկն առ
Յովբ՝ և ասաց ցնա. Հուր անկաւ յերկնից և այ-
200 րեաց զհօտսն, և զհովիւսն եկեր նոյնպէս, և մնացի
ես միայն և եկի պատմել քեզ»։ Զի՞նչ է հուր. ինքն
թշնամին, վասն որոյ Եսայի[1] ասէր՝ թէ «Արկցես
ի վերայ նոցա կայծակունս հրոյ»։ Քանզի ոչ չանթս
հրեղէնս ընկենուլ և ոչ փայլատակունս շողացուցա-
նել, և ոչ ինչ ի տարերացս կարէր ի գործ արկա-
նել, որպէս և կարծի ոմանց։ Բայց ինքն ըստ նմա-
նութեան հրոյ անկաւ ի վերայ հօտիցն, և այսու
կամեցեալ զՅովբ հաւանեցուցանել առ ի հայհոյել
զԱստուած, իբրև (թէ)[2] նա յերկնից արկանիցէ ըզ-
հարուածսն ի վերայ ստացուածոց արդարոյն. այլ
201 ոչինչ յաստացելոցն և յեղելոցն կարացին չարժել (ըզ-
մեծն) և զարին և զհաստատեալն առաքինութեամբք,
համբերութեամբ ի սկ(զբանէ) լուր ընկալաւ, և ոչ
տայր զակ(անջս) իւր հիացման, վասն զի յայլ մե-
ծութիւնս հայէր, և յայլ իմանալի ստացուածս
փութայր, որ ոչն կողոպտի և ոչ պակասնի։ Իսկ
զի՞նչ առակէ մեզ ճառս յայժմու պատմութենէս.
իբրև թէ ոչ է պարտ ոչխարաց կալ արտաքոյ բա-
կի, յայտ է թէ ժողովրդեան՝ առանց պահպանու-
թեան. այլ և զբակն ունելով ընդ հովանեաւ վիմին,
յայտ է եթէ ընդ եկեղեցւով. քանզի այնպէս ոչ
կարէ վնասել գալուստ հրոյն այնորիկ, զորմէ Քրիս-
202 տոսն ասէր. «Եթէ տեսի զսատանայ՝ զի անկանէր
իբրև զփայլակն յերկն(ից»։ Իս)կ[3] եթէ ի հովանւոյ
իմանալի (վիմի) անտի ելանիցէ, միանգամայն (իս)կ
հանդերձ հովուօքն հրով հատեալ ապականին. վասն

1. Վ. Դաւիթ.
2. Եդաք ըստ Վ.։
3. Վ. Զի թէ ելցեն ի հովանոյ վիմին իմանալոյ եկեղեցւոյ, հրով պատեալ ապականին հանդերձ հովուօք ժողովուրդք և քահանայք։

զի առՀասարակ ժողովրդեան և ծառայնորդացն զայս
վարդապետութիւն պատմեաց Հոգին։ Բայց թշնա-
մին ոչ ևս անխայթ առնէ զմարտնչելն ընդ Յովբայ,
այլ և երրորդ նետ ձգէ ի կապարճից իւրոց։
«Մինչդեռ ևս նա զայն խօսէր, այլ Հրեշտակ Հա-
սանէր առ Յովբ և ասէ ցնա. Ասպատակաւորք ա-
րարին ի մեզ երիս առաջս, և պատեցան զուղտուքն
և գերեցին զնոսա, և զմանկտին սպանին սրով. և
ապրեցայ ես միայն և եկի պատմել (քեզ)»։ (Տեսա- 203
նե՞ս զի) թափեալ[1] զնետս մա . . . . թշնամին ան-
ձամբ կող(ոպտեալ և) ընդունայն աշխատեալ. քանզի
(ոչինչ) Յովբ զգայր յեղելոցն, և զՀասեալ վիշտսն իբրև
զայլոց լսէր. և իբրև զվէմ՝ զկուտակեալ ալիսն ի
բաց դարձուցանէր։ Բայց դու մանաւանդ յայսմ
յարձակմանէ թշնամւոյն զգուշացիր և պաՀեա զքեզ,
և մի՛ յասպատակաւորան մերձենար. քանզի են որ-
դիք անօրինաց, ի Հեթանոսաց և յամենայն աղան-
դաւորաց, որք ի լեզուս իւրեանց իբրև յերիւարս
են յուսացեալ, և բանիւք ընթացից իւրեանց զմիտս
թեթևս Հնարին կորուսանել. քանզի սոքա յորժամ
. . . . . . . պ . . . այսինքն է զանձ . . . . . . 204
րք ընթեռնուն զաւ(ետարանն), չգիտեն ի կիր ար-
կանել (զորո)շմունս աստուածաշունչ գրոց. քան-
(զի) ուղտ որոճայ և կճղակն ոչ բաժանին և ոչ ո-
րոշին ի միմեանց. որպէս և կրի յայնոսիկ՝ որք ըն-
թեռնուն զաւետարանական գիրս և զվասն Քրիստո-
սին, փութով զանցանեն, և ոչ Հասանեն պատմու-
թեանցն որ վասն Նորա, եթէ զո՛ր պարտ է դնել
մարմնոյն և զո՛ր աստուածութեանն որոշել. և ոչ
յորժամ առիցէ խոնարՀագոյնս՝ զայն Համարել մարդ-
կութեանն. երկս անձինս (դն)ելով, յերկս Աստուածս
բաժան(ել դ)անքակ երրորդութիւնն. և այս(պէս ըղ)-

1. Վ. Տեսանե՞ս զնետս թափեալս թշնամւոյն և կողոպտեալ. իսկ Յոբ ոչ զգայր։

*մտաւ ածեն եթէ ՝Հայր մեծա*[1] . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . .

205 *եւյթ թշնամիքն են, որք յար(ուցեալ) ի վերայ մերոց փորձութեանցս . . . ի պատերազմի խառնեալ են... վկայեսցեն մեզ բանքն Պաւղոսի որ առ Եփեսացիսն են. «Ոչ է մեզ կռիւ ընդ մարմնոյ և ընդ արեան,*

1. *Պակասին աստ թուղթք ինչ. գնեմք ըստ Վանականի.*

*«Ուստերք քո և դստերք քո ուտէին և ըմպէին ի տան երիցու եղբօր»։ Այսու խրատեաց զնոսա Յոբ, ոչ թէ ոչ գոյր նոցա ի տան միոյ միոյ ուտել, այլ զի սեղան և զինի զիտէ հաստատուն պահել զսէրն, զի մի՛ լիցի ասել ումեք ի պարսաւողաց, թէ զայլս ուսուցանէ, զորդիսն ընդէ՞ր ոչ ուսուցանէ։ Այլ դարձցուք անդրէն*
(Եշս) *ի ճառս։ Մարտիկք յորժամ մարտնչին ընդ միմեանս, յառաջ առ սակաւ սակաւ ձգեն զմիմեանս. ապա յետոյ զիրկընդխառն լինին. նոյնպէս և սատանայ փորձեաց նախ զՅոբ ստացուածովքն. իբրև գիտաց զոյժ նորա, զոյժ յաւել նմա զցաւս որդւոցն, հարկանէր զչորեսին անկիւնս տանն, կործանէր ի վերայ մանկանցն, և եկեալ ասէր. Ես միայն ապրեալ՝ եկի պատմել քեզ. արի՛ տես զի՞նչ գործեցեր, զի սատակեցաւ ցաւք քո, ոչ մնաց քեզ մի ուստր կամ դուստր, զի զոնեա նովաւ մխիթարեսցիս։ Ի միում ժամու սպառեցաւ խաղ ճրագաց քոց և շիջան միանգամայն ի բազմականին։ Արդ մինչև յե՞րբ ժամանեսցիս մնալ ի սէր Տեառն քո. ո՞ր հնձող է որում ոչ մնացէ հասկք ի մէջ անդէոց։ Իբրև զայն Աստուածն քո՝ առ ո՞ր յոյս պաշտես զնա. խօսեա զհայհոյութիւն զԱստուծոյ, և երթ ապրեաց ի նմանէ։ Իսկ արդարն արկ զդեզ զոհութեան ի ճրագ մտաց իւրոց, և ասէ ցնա. Գնա՛ դադարեա ի համբաւուցդ. զի թէպէտ և յաճախեցեր զթոպոլոց քո ի վերայ ոստոց իմոց, ըզ-հին անբեր ոչ կարացէ թափել յինէն. իբրև գայ արեգ ամիս, տայ ինձ կրկին փոխանակ նոցա. զի ունիմ ես փոխանակ եզանց՝ զա-զօթս իմ, և փոխանակ ուղտուցն՝ ունիմ զխորհուրդս ճշմարիտս, և խաշինքն իմ մատուցան հովուին արարածոց։ Եւ սիրելիք որպէս ի միում սեղան հեզձան, յարիցեն ի միասին ի սեղան արքայութեան։ Զի ոչ եթէ արդարքն որ ննջեն մեռեալ են, այլ մեղաւորք որ կեն-դանի են՝ որպէս դեքն քո. զի ընկենու զնոսա ստութիւն յաւուրն դատաստանի ի գեհենն։ ԶԱստուած իմ ոչ հայհոյեմ ըստ կամաց քոց։ Տէր ետ և Տէր առ, եղիցի անուն Տեառն (օրհնեալ)։ Տէր տարաւ և ազատեաց զիս ի հոգոց. վասն ժառանգութեան որդւոց և բաժնի դստերաց, ահա տուեալ զամենայն ինչս իմ, այսուհետև ես իբրև մանուկ մերկ ելանեմ յաշխարհէս։*

*«Հողմ սաստիկ եկ և բախեաց զչորեսին անկիւնս ապարանիցն»։ Հողմ՝ իմանալի է զմատնիչն, նահապետ չարագոյն հողմոյն. վկայէ մեզ Պօղոս գրելով առ Եփեսացիսն։*

*այլ ընդ պետութիւնս և ընդ իշխանութիւնս և ընդ
աշխարհակալս խաւարիս այսորիկ և ընդ այսս չա-
րութեան երկնիս»։ Զդոյն գործեցեալ ընդ որդիսն
որպէս և ընդ ոչխարսն, սաստիկ յարձակմամբ չար-
ժեաց զանկիւնս տանն, և եա թաղեալ ի վերայ եր-
կրի իբրև ընդ երկրաւ. և ծնեալքն (կարգաւ)[1], ոչ
մեռանէին ըստ կարգի, (այլ ի վերայ) միմեանց, ըստ
նմանութեան (ոչխար)աց իբրև ի միոջէ ձեռ(անէ)
(խա)նձեալք անկանէին։ Պահ(պանո)ւթեան արժան* 205ա
*է ախտ և յոյժ (զգու)շանալոյ, և պարտ է փախ-
չել (ի սա)ստիկ ի գինւոյ և յանչափ սեղան(ո)յ։ Եւ
վասն այսորիկ խրատիչ արժ(ա)ն է լինել երիցագու-
նացն ի վերայ կրսերոցն. քանզի եթէ ոչ եղիցին
խրատիչք, այլ երիցագոյնքն յառաջեսցեն յըմպել
քան զկրտսերս, աներասանակ կառքն լինիցին և
տունն առանց պահպանութեան, և մեծ հողմն չըն-
չեսցէ՝ որ է պոռնկութեան։ Քանզի ի վերայ մեծա-
մեծ քաջացն վառի՝ եկեալ յանապատէ, այսինքն է
ի փափո(ւկ խա)րեցող մարմնոյ. քանզի (անապա)-
տացեալ է յամենայն (պահպանու)թենէ և ի զգու-* 205բ
*շութենէ։ Զչորս անկիւնս տանն չարժէ, որք ենն
քաջութիւն, ողջախոհութիւն, արդարութիւն, ի-
մաստութիւն։ Քանզի պոռնիկն առանց արութեան
է, դոյնպէս և անխրատ. այլ և զարդարութիւնն ա-
պականեալ՝ հարկաւորի ի ցանկութեանցն բռնադա-
տեալ. այլ և ի մտացն գերի։ Իսկ օրինակ եղիցի
քեզ այսմ Սամփսոն, որ ի պոռնիկ կնոջէ անտի ի
Դալիլայէ իբրև զմանուկ եղև խաղացեալ. և յառաջ
Դաւիթ իսկ այնչափ օրինազանց եղև զօրինա(ցն)
արդարութեամբ, մինչև յանց(եաւ ի պոռն)կութիւն,
և մեղաւ ի սպան(ութիւն, զի ի Նա)թանայ իբրև
զօրինազանց յանդիմանեցաւ։ Այսպէս իսկ և տա-* 206
*ճար մարմնոյն գլորի և սպանանէ զընակեալ ոգին,
վերջին և չարաչար անօրէնութեամբ մահուն։ Այլ*

1. Եղաք ըստ Վ.։

*ճառս իսկ փութայ վասն Յովբայ առ ի միացորդ-
պատմութիւնս։*

*«Այսպէս լուեալ Յովբայ, յարուցեալ պատառէր
զպատմուճան իւր, և կտրեաց զհեր գլխոյ իւրոյ.
հող ի գլուխ լինէր և անկեալ յերկիր՝ երկիր եպագ
Տեառն»։ Պատառեաց զպատմուճան և կտրեաց
զհեր գլխոյ իւրոյ, ոչ այնչափ ինչ վասն սը-
գալոյ՝ որչափ եթէ զմիացորդսն ընկենուլ կամեցեալ։*
207 *Զպատմու(ճանն) յաւելոյր և զհերսն (իսկ ի բաց) ըն-
կէր. և ոչ ինչ պատճառս թողոյր թշնամւոյն որով
թէ առ յապա զնա փորձել կարասցէ։ Միանգամայն
իսկ իբրև զմարտիկ՝ զպատմուճանն ի բաց ընկենոյր
և զվարսսն սափրէր. զի մերկ ընդ մերկ ի թշնամ-
ւոյն կամէր լինել զըրկընդխառն, և անկանէր յեր-
կիր՝ խոնարհելով առաջի Աստուծոյ։ Երկիր պագա-
նէր՝ յանդիմանելով զմատնիչն՝ զի ի զուր էր զըր-
պարտեալ զնա առաջի Աստուծոյ. քանզի զորմէ ա-
սէրն թէ հայհոյեսցէ, նա երկրպագէր սաստիկ.
վասն զի զորմէ պարծէրն եթէ յետ կորուսանելոյ
զմեծութիւնն՝ գտանիցի ապաշնորհ առաջի Աստու-*
208 *ծոյ, նա սաստիկ առաւել գոհանայ քան զառաջինն։
Այլ ևս ի վեր է քան զպատմութիւն՝ քաջութիւնն
Յովբայ։ Ո՛ պարկեշտութիւն, ո՛ աստուածասիրու-
թիւն, զիա՛րդ ոչինչ պատրեցաւ. որպէս և լինին դի-
պուածք՝ որք յայնչափ և յայնպիսի վշտաց ըմբըռ-
նեալք լինին։ Համարեայ եթէ անփոյթ զեզանցն
առնէր, յէշսն ո՞չ խնայէր, և զոչխարսն առ սակա՞ւ
ինչ բանս համարէր, և զուղտսն առ ո՞չ ինչ էր հա-
մարեալ. և արհամարհեա՞լ էր նմա ամենայն մեծու-
թիւնն. զիա՞րդ ոչ հիացոյց զնա գոյժ մահու ուստե-
րացն և դստերացն։ Անորդի յանկարծակի բազ-*
209 *մորդին եղև. ընդ մեծութեանն միանգամայն և ըզ-
ժառանգորդսն կորոյս. որ այնչափ որդւոցն էր հայր,
ոչ ոք էր որում հայր կոչիւր. ոչ ասաց ցԱստուած՝
եթէ զի՞նչ այնչափ մեղաւ Յովբ, մինչև համբուրելոյ
արժանի ոչ եղև ի մահուան որդւոյն. ոչ պատուեաց*

*գերեզմանաւ, ոչ մխիթարեցաւ արտասուօք ըստ օրինաց բնութեանն, ոչ յուղարկեաց որպէս սովորութիւն է յուղարկել ի հարց և ի բարեկամաց և յազգականաց։ Այլ փոխանակ այսոցիկ՝ բարբառեցաւ որ յամենայն ազգս բարեհամբաւեալ, և ասաց՝ թէ «Մերկ ելի յորովայնէ մօր իմոյ, մերկ և անդրէն դարձայց»։ Ոչ ինչ՝ ասէ՝ տրտմեցայց զիս*
*թշնամին, ոչ ինչ վնասեաց պատերազմողն, և ոչ* 210
*խափանել կարաց զիս նախանձորդն. ունիմ զիմ մեծութիւնն. և որպէս ծնայն՝ եմ նոյնպէս, և որպէս ստեղծայն՝ պահեալ եմ։ Մի եթէ զպատկերն Աստուծոյ ի բաց ընկեցի. մի եթէ բանաւոր ո՞չ մնացի. մի եթէ կորուսի՞ զկնիքն զոր ետ ստեղծիչն. որպէս ելի և երթամ, որպէս և ստեղծայ՝ հասանեմ առ ստեղծիչն. որպէս անկայ յերկիր՝ նոյնպէս հրաժարեմ յերկրէս։ «Տէր ետ և Տէր էառ»։ Ոչ մատնիչն էառ, այլ որ ետն ինքն էառ, որ փոխն ետ նոյն էառ անդրէն. նոյն էառ՝ որոյ էին ըս-*
*տացուածքն և կային առ իս. նա էառ՝ որ տալն* 211
*կարէ, մանաւանդ և յաւելուլ ևս. նա էառ՝ որ իբրև առնուն՝ ոչ նախանձու առնու, ոչ վասն պիտոյից և ոչ վասն վնասու, այլ քննելով զծառայն՝ փորձէ իբրև զգուստապետ, և դարձեալ բազմապատիկ անդրէն հատուցանէ։*

*«Որպէս և Տեառն կամք եղեն այնպէս և կատարեցաւ»։ Եթէ Տէր է, ո՞վ ի ծառայից որ ընդդէմ յառնել կարիցէ. եթէ զնորա ձեռանէ և զօրութենէ ամենայն ինչ կախեալ է, զչարել աւելի է և դժուարանալն յիմարութիւն է. զի որ ինչ կամքն Աստուծոյ են, բարուք են կամքն. առ ի յօգուտ հաճոյ է, առ ի բարիս և ի պիտանացուս յորինի։*

*«Եղիցի անուն Տեառն օրհնեալ»։ Եղիցի անուն*
*Տեառն օրհնեալ և թշնամւոյն անիծեալ. զի ես և* 212
*ընդ խրատելն օրհնեմ զԱստուած և ընդ տանջելն փառաւորեմ. այս օրհնութիւնք ինձ այսրէն դար-*

*ձուցանեն զմեծութիւն. ի ձեռն այսր գոհութեան
և զթշնամին գլորեմ և զորդիսն այսրէն առնում
և զատացուածսն կրկնակի ընդունիմ, և պսակ ապի֊
տակ կապեմ ի գլուխ։*

*«Ի վերայ այսց ամենայնի պատահեցելոց Նմա՝ ոչ
մեղաւ Յոբ առաջի Տեառն և ոչ մի ինչ չրթամբք
իւրովք, և ոչ ետ անզգամութիւն Աստուծոյ»։ Զար֊
մանայ Աստուծոյ Ոգին, բարեհամբաւէ իսկ մանա֊
ւանդ զՅոբ։ Որչափ հնարագիտութեամբ յարձա֊
213 կեցաւ ի վերայ Նորա պատերազմողն, իսկ Նա ոչ
ինքն չարժեցաւ. և հանդերձ մեքենայիւքն գլորեաց
զնա՝ որ գայր ի վերայ Նորա հնարագիտութեամբն։
«Ոչ մեղաւ Յոբ առաջի Տեառն». այսինքն է, եթէ
հանդերձ լեզուաւն և մտօքն ևս սուրբ էր ի մեղաց,
և գոհութիւնս Աստուծոյ մատուցանէր բանիւք՝ հան֊
դերձ մտօք։ Քանզի «ոչ ետ անզգամութիւն Աս֊
տուծոյ». այսինքն է, թէ ոչ մեղադրեաց զկամսն
Աստուծոյ, և ոչ զտնտեսութիւն արարչին անգոս֊
նեաց, և ոչ անմտութիւն համարեցաւ զեղեալսն, ե֊
թէ արդարք մատնին ի ձեռս մեղաւորաց։ Այլ ինքն
իսկ մանաւանդ Աստուծոյ ջատագովէր և ասէր.
«Տէր ետ և Տէր էառ». ցուցանելով՝ եթէ ոչ յիւ֊
214 րոց ինչ զրկեալ է. բայց զայլոյ ունելով՝ գովութեամբ
ետ որ զիւրն էառ։ Իսկ մի՛ դժուարիր յորժամ ան֊
կանիս ի մեծութենէ, և յորժամ ի մարդկեղէն պա֊
տուոյ արգելցիս, և յորժամ մեկնեսցիս յորդւոց
կամ ի հօրէ կամ յազգականաց. ըստ օրինի բնու֊
թեանս զզատչելն ի նոցանէ մի՛ զչարիցիս. որ ըզ֊
վիչտսն հեռացուցանել ի քէն ոչ կարէ, այլ նեղու֊
թիւնս ի վերայ նեղութեանց յաւելու. և զրկէ յար֊
գարև ի մեծութենէն առ ի գոհանալոյ զԱստուծոյ.
որով պարտ է պնդել ի վերայ ամենայն պատահե֊
ցելոցս։ Մի եթէ մեղադրիցէ՞ ծառայն՝ յորժամ պա֊
հանջիցի զաւանդն տեառն իւրոյ. և կամ եթէ փոխ
215 առեալ զինչս ուրուք, զչարիցի՞ հատուցանել ան֊
դրէն. մի՛ եթէ դարձեալ գտանիցէ՞ որ անդրէն նմա*

*փոխ տայցէ. մի՛ եթէ վնասե՞լ այգւոյն կարծիցի այ-*
*գեգործն, յորժամ կթիցէ ի նմանէ զողկոյզսն: Իսկ*
*վասն զի մեք ոչ ինչ ունիմք զմեր, և ընդ տալն*
*Աստուծոյ և ընդ առնուլն՝ զարժանաւոր գոհութիւնն*
*նմա մատուսցուք: Բայց եղիցի այս, յորժամ առեալ*
*մեր՝ ոչ ամենևին ըստ ցանկութեան մերում վարես-*
*ցուք, այլ ըստ նորա կամացն, որ զիւրն մեզ հաւա-*
*տաց. քանզի այսպէս անդրէն հատուցանելով՝ ոչ*
*դժուարասցուք, այլ գոհասցուք յամենայնի զնմանէ՝*
*որ յամենայնին է և ի վերայ ամենեցուն. ամենայ-* 216
*նիւ նմա փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

Դ

*«Եւ եղև իբրև զօրս զայս, և եկին որդիքն Աս-*
*տուծոյ կալ առաջի Տեառն. և մատնիչն ի մէջ նոցա*
*եկն կալ առաջի Տեառն: Եւ ասաց Տէր ցմատնիչն.*
*Դու ո՞ւստի գաս: Յայնժամ ասաց մատնիչն առաջի*
*Տեառն. Շրջեալ ի ներքոյ երկնի և յածեալ ընդ եր-*
*կիր ամենայն, աւասիկ կամ: Իսկ ասաց Տէր ցսա-*
*տանայ. Նայեցա՞ր ընդ ծառայ իմ Յոբ, զի ոչ գոյ*
*իբրև զնա ի վերայ երկրի՝ մարդ նման նմա. անա-*
*րատ, արդար, ճշմարիտ, աստուածապաշտ, որոշեալ*
*յամենայն իրաց չարաց, տակաւին իսկ կայ յանմե-*
*ղութեան. իսկ դու ասացեր կորուսանել զստա-* 217
*ցուածս նորա տարապարտուց: Եւ պատասխանի*
*սատանայ և ասէ ցՏէր. Մորթ ընդ մորթոյ, և ամե-*
*նայն որ ինչ իցէ մարդոյ՝ տացէ փոխանակ անձին*
*իւրոյ. բայց ոչ այդպէս է. այլ աղէ առաքեա ըզ-*
*ձեռն քո և արկ զոսկերօք նորա և զմարմնովք նորա,*
*եթէ ոչ յերեսս իսկ օրհնեսցէ զքեզ: Իսկ ասաց Տէր*
*ցմատնիչն. Ահա տուեալ ի ձեռս քո զնա. բայց*
*միայն հոգւոյն նորա մի մեղանչեր: Իսկ ելեալ մատ-*
*նիչն յերեսաց Տեառն, և եհար զՅոբ մեծօք հա-*
*րուածովք յոտից մինչև ի գլուխ: Եւ առեալ Յով-*

բայ խեցի՝ քերէր զթարախն յինքենէ. և ինքն նըս֊
218 տէր ի վերայ աղբևաց արտաքոյ քաղաքին։ Յետ
բազում ժամանակի անցելոյ, ասէ ցՅովբ կինն իւր.
Մինչև ցե՞րբ համբերես ասելով. ահա անսացից փոքր
միւս ևս ժամանակ՝ ակն ունելով յուսոյ փրկութեան
իմոյ։ Ահաւադիկ ապականեալ է յերկրէ յիշատակ
քո, ուստերք քո և դստերք՝ իմոյ որովայնի երկք և
ցաւք, յորս՝ տարապարտուց վաստակեցի տառապա֊
նօք։ Դու իսկ ինքնին ի զազրութիւն որդանց նստիս
օթագացեալ արտաքոյ, և ես մոլորեալ և հարկահար
կին, տուն ի տանէ և տեղի ի տեղւոջէ յածեալ, կա֊
րօտիմ տեսանել զմտանել արեգական, զի հանգեայց
219 յաշխատութեանց և ի ցաւոց իմոց որ այժմ են
պատեալ զինև։ Այլ ասա բան ինչ առ Տէր, և
վախճանեցիր։ Իսկ նորա հայեցեալ ի նա՝ ասէ.
Ընդէ՞ր իբրև զմի ի կանանց անզգամաց խօսեցար.
զի եթէ զբարիս ընկալաք ի ձեռանէ Տեառն, իսկ
չարեացս ո՞չ համբերիցեմք։ Յայսց ամենեցունցս պա֊
տահեցելոցս նմա, ոչ մեղաւ Յովբ և ոչ մի ինչ շըր֊
թամբք իւրովք առաջի Աստուծոյ»։

Դարձեալ վասն նորին և այժմ իսկ ճառս մխի֊
թարէ զմեզ և հարկաւորեալ աղաչանօք ոչ դադա֊
րէ, և յագումն լսելեաց ոչ առնէ. այլ ցանկութիւն
արկանէ վասն պիտանացուացն ստէպ ստէպ յիշա֊
220 տակն։ Իսկ զի՞նչ այսուհետև ճառս աղաչէ, զի՞նչ
խրատէ, և գոչելով վկայէ զգաստանալ և արթուն
լինել, և մի՛ թողուլ մտանել իմանալի գողոյն յա֊
գարակս մեր. բայց միշտ ակն ունել դատաւորին, և
իբրև առաջի Աստուծոյ կալով՝ զկեանս մեր բարեօք
յօրինել և թօթափել ի բաց զբեռինս մեղաց, և ըզ֊
մարմինս սրբել, որ է զգեստ ոգւոցս. լուանալ ըզ֊
խիղճ մտաց և զամենայն զաղտ, և զապականութիւն
սորա ի բաց ընկենուլ. և միանգամայն ասելով, ի
բաց մերկանալ զամենայն չարիս և զգենուլ զառա֊
քինութիւն, իբրև զհաստատուն խարիսխ և իբրև
221 զհզօր աշտարակ, և իբրև զնաւահանգիստ առանց

*ծփանաց. յաղքատութեան և ի մեծութեան, յանոր-*
*դութեան և ի բազմորդութեան, յառողջութեան և*
*ի հիւանդութեան, ի լիութեան և ի փորձութեան։*
*Գիտցուք առաջի զանարատութիւն Յովբայ, քանզի*
*այս և զմատնչին հնարագիտութիւնս ընդունայն առ-*
*նէ, և պայծառագոյն մեզ զվկայութիւնսն առ ի*
*յԱստուծոյ շնորհէ, զոր եկ իսկ և ուսիր որչափ ինչ*
*և վասն որոյ եղենն Յովբայ։ Վասն զի յաղթեալ ի*
*ճգունսն առաջինս, և յաղթող ընթացեալ ի փորձա-*
*նացն ասպարիսի, և նետս բազումս ընկալեալ, ինքն*
*ոչ վիրաւորեցաւ, բայց զձգօղն խոցոտեաց, և բա-* 222
*զում վիրօք՝ մերկն՝ ելից զաղեղնաւորն։ Դարձեալ*
*խնդրէ զնա ի մրցումն, և յորդորէ թշնամին զհան-*
*դիստեսն առ ի նորոգել զասպարէսն։*
*Եւ այսուհետև այլ օր ճգնութեան առաջի Յով-*
*բայ դնի. քանզի զայս Հոգին յայտնագոյնս գրեաց,*
*եթէ «եղև իբրև զօրս զայս». որ և որպիսի, յո-*
*րում դարձեալ պարտ էր ճգնել Յովբայ։*
*«Եւ եկին որդիքն կամ հրեշտակքն Աստուծոյ*
*կալ առաջի Տեառն, և մատնիչն ի մէջ նոցա եկն*
*կալ առաջի Տեառն»։ Իսկ զիա՞րդ հրեշտակքն Ա-*
*ստուծոյ, և կամ վասն ո՞յր գան առաջի Աստուծոյ.*
*յորմէ՞ սպասաւորութենէ եկեալք, զո՞ր կարգ լցեալ,* 223
*որո՞վ պատուով։ Իբրև զօրականք հաւատարիմք կան*
*առընթեր թագաւորին. զի բաւականութեամբ եցոյց*
*ճառս յառաջասացելովքն։ Բայց զի արդ գայ և մատ-*
*նիչն, այլ ոչ նոյնպէս. քանզի ոչ իսկ վայելէ ի*
*համարձակութեան յորում նոքայն են։ Իսկ եթէ ա-*
*սիցես եթէ զիա՞րդ ի մէջ նոցա կայ, զայն լուր։ Զի*
*իբրև զօրականացն կապեալ[1], որպէս և գող ի մէջ*
*նոցա, որք հասին ի վերայ չարութեան նորա։ Եւ*
*որպէս միանգամ ասացաք յառաջ, այնպէս կայ ի*

1. Վ. *Որպէս գող կապեալ ի մէջ զօրականաց՝ որք հասին ի վերայ չարութեան նորա։ Զի ստեղծուածոյն Աստուծոյ մասնութիւն անելոյ՝ յայն անուն կոչեցաւ, Իսկ հրեշտակք վասն խնամ տանելոյն՝ որդիք, յիրաւի որպէս ոմանք թարգմանեցին։*

մէջ նոցա. զի հալեցի նախանձուն և մաշեցի հե-
ռութեամբն, եկեալ առ ի յիշատակ պատուոյն զոր
224 ունէր յառաջագոյն. վասն զի ի նոցին ի բնութենէ
անտի իսկ էր և ի նմին ի կարգէ յորում էին հը-
րեշտակքն. քանզի ինքն զինքն քարավէժ ընկէց ընդ
բազում խորաձորս, վասն յոյժ իւրոյ ամբարտաւա-
նութեանն. զի իժ և վիշապ և ամենայն չար գա-
զան ետ զինքն անուանել: Բայց տարացոյց այսորիկ
այս է. զի ոչ ըստ համարձակութեան և պատւոյ հը-
րեշտակացն կայ առաջի Աստուծոյ մատնիչն. զի
հրեշտակքն Աստուծոյ կամ թէ որդիքն իսկ, որք
ըստ օրինակի ոմանց ասին. իսկ նմա մատնիչ ասի:
Իսկ զի՞րդ արդեւք որ զստեղծուածն Աստուծոյ
225 մատնիցէ և յայսմանէ մատնիչն կոչիցի, ո՞րպէս ինչ
կայցէ ի նմին տեղւոջ ընդ այնոսիկ՝ որք զստեղ-
ծուածն Աստուծոյ պահեն, այսինքն ընդ հրեշտակս.
յորմէ և կարծեմ որդիս Աստուծոյ կոչել ըստ ոմանց
յօրինակաց. վասն զի ճշմարիտ Որդւոյն Աստուծոյ
նման են. որչափ[1] և պարտ է ծառայից նմանել
Տեառն, առ ի սպասաւորութիւն նորա պարապել
ըստ տէրունական հրամանին, զոր ինքն Տէրն հրեշ-
տակաց իջեալ յերկնից փրկեաց: Վասն այսորիկ կալ
առաջի Տեառն զմատնիչն ընդ հրեշտակս ոչ արժա-
նի համարեցան կարգել եւթանասունքն: Տեառնե՞ս
զի ի վերայ կարգիս կայ նշան, ցուցանելով զի սո-
226 ցա չէ ասացեալ. բայց այլոց թարգմանացն եղեալ
է. իսկ եթէ այլոց թարգմանացն եղեալ է, յայտ է
թէ և ի հեբրայեցւոցն կայ: Զի թէպէտ և այն բա-
նիւք և կամ մօտ զթարգմանութիւնս ընդունի,
զոր յայտնագոյնս Ակիւղաս գրեաց. քանզի ասաց
եթէ արձանանալ առաջի Տեառն. իսկ այլք ի թարգ-
մանացն և ինքն Ակիւղաս, դոյնպէս և Թէոդոտիոն

1. Վ. Որչափ հնար է նմանիլ Տեառն՝ ծառայից. զի Որդին Աստուծոյ իջեալ վասն փրկութեան մարդկան, զնոյն սպասաւորութիւն լնուն և նոքա. վասն այսորիկ և եւթանասունքն ոչ համարեցան ասել առաջի Տեառն, այլ ի մէջ նոցա:

և Սիմաքոս հեբրայական բանին ծառայեցին։ Իսկ
եւթանասունքն իբրև ի սուրբ Հոգւոյն զթարգմա-
նութիւնսն ընկալեալ, բայց յայտնի է զի այնչափ
թուով՝ միաբանութիւնս առ միմեանս ընկալան։ Քան-
զի ասեն իսկ, եթէ որոշեալք երկու երկու ի միասին,
զթարգմանութիւնսն գրոց առհասարակ միաբանու- 227
թեամբ գրեցին. մտաց աստուածային գրոց ծառայե-
ցին և ոչ բանի։ Վասն զի թէպէտ կայր առաջի
Տեառն մատնիչն, այլ ամօթով իբրև զփախչող, այլ
իբրև զպարտաւոր՝ յետ սակաւ ժամանակի հրոյ մատ-
նելի. վասն այսորիկ և ի նոյն բանս ոչ կարգեցին
զնա ընդ հրեշտակս. քանզի Ակիւղաս ոչ գրեաց զնա
կալ առաջի Տեառն որպէս և լուսր իսկ։ Եւ եկն սա-
տանայ ի մէջ նոցա, կալ իբրև զարձան առաջի
Տեառն պապանձեալ, առ ի յանշարժ կալ և զլեզու
ոչ շարժել և ոչ համբառնալ զաչս. քանզի զայս ամե-
նայն ունի առանց երկմտութեան արձանանայն.
յայտնէ իսկ և որ ի կարգին գայ։ 228
«Եւ ասաց Տէր ցմատնիչն. Ուստի՞ գաս դու»։
Ուստի՞ գաս. քանզի ամենայն իրօք Յովբ խափա-
նեաց զքեզ մարտնչել ընդ այլս։ Ուստի՞ գաս. քան-
զի ուր և գնացեր՝ անդ փող պատերազմի հարեր և
յարուցեր զկռիւս, կամ թէ ընկրկեցեր զմեղաւորս
և կամ խռովեցուցեր զարդարն։ Իսկ նա դարձեալ
զայս պարծի և խրոխտանայ։
«Յայնժամ ասաց մատնիչն առաջի Տեառն. Շրր-
ջեալ ընդ ամենայն երկիր և յածեալ ի ներքոյ եր-
կնի, կամ աւասիկ»։ Յայնժամ ասէ, յորժամ ա-
սել նմա հրամայեցաւ. յորժամ թուղացոյց Տէրն ա-
ռաջի իւր չար ծառային բանալ զբերան. յորժամ
հրամայեաց արձանացելոյն շարժել զլեզու իւր։ Եւ 229
յայսմանէ իսկ յայտնի է, զի սաստեալ և պակու-
ցեալ և արձանացեալ կայր։ Եւ զի՞նչ ասէ. «Շրր-
ջեալ ընդ երկիր ամենայն և յածեալ ի ներքոյ երկ-
նի, աւասիկ կամ առաջի»։ Զամենայն երկիր, ասէ,
փութապէս զննեցի, յամենայն տեղիս որոգայթս

կանգնեցի և մեքենայս կազմեցի. ամենայն տեղիք
խմովք կարթիւք լի են. ամենայն ինչ ընդ խմով
ուռկանօք և թակարթօք է փակեալ. չէ ինչ հնար
վրիպել յորսոյ, վասն զի բազմադիմի են մեքե֊
նայք իմ։

«Ասաց Տէր ցմատնիչն. Հայեցա՞ր ընդ ծառայ
իմ Յոբ, զի ոչ գոյ իբրև զնա ի վերայ երկրի այր
230 առանց չարութեան, ճշմարիտ, անարատ, աստուա֊
ծապաշտ, որոշեալ յամենայն իրաց չարաց»։ Զի՞նչ
օգնեաց քեզ ի շրջելոյն ընդ երկիր. քանզի ի միոջէ
առնէ ես յաղթահարեալ. զի՞նչ քեզ շահք եղեն ի
բազում ուռկանացն, որ զմի ձուկն ոչ կարացեր որ֊
սալ. ընդունայն եղեն քեզ և փութապէս պատրաս֊
տութիւնք կարթիցն, քանզի Յոբ ոչ ըմբռնի. ըն֊
դէ՞ր ստութեան զթակարդն ձգես, քանզի ճշմարիտն
ոչ անկանի ընդ ստութեանն որսոյ. ընդէ՞ր զպղպար֊
տութեան գործիսն կարկատես, քանզի անարատն
ոչ ինքն զոք բամբասէ և ոչ ընդ ուրուք բամբասա֊
231 նօք անկանի։ Ժողովեա զմեքենայս ամպարշտու֊
թեանն, վասն զի ոչ կարես հնազանդեցուցանել
զաստուածապաշտն. ամենայն գործիք չարութեանց
քոյ խափանեալ են, քանզի Յոբ հրաժարեալ է
յամենայն չարութենէ։ Քանզի փորձեցաւ աղքատու֊
թեամբ, և եցոյց զի յիրաւի էր ի մեծութեան. և
հողմոցն շրջմունք ցուցին զարուեստ ուղղչին։ Այլ
իւ իւիք և զվասն Յոբայ վկայութիւն պսակեաց
Աստուած. տակաւին իսկ կայ յանմեղութեան։ Զի
դու ասացեր զստացուածս Նորա կորուսանել տարա֊
պարտուց. եզինքն յափշտակեցան, իսկ Յոբ զա֊
գարակն պտուղիրանաց գործէր. էշքն կորեան, այլ
232 Յոբ անխոյթ առնէր վասն իշոյն, զի օրինօքն էր
ստարտեալ, ինքն եղեալ բանաւոր բեռնաբարձ Աս֊
տուծոյ ի ձեռն ամենաբարի ունկնդրութեանցն. հըր֊
կէզ եղեն ոչխարքն, իսկ Յոբ իբրև զանմոլար ոչ֊
խար ամբացաւ ի ներքս ի բակին. զորդիս մարմնոյն
և զդստերս կորոյս, այլ զհոգւոցն բարէծնութիւն
պահեաց։

«Կրկնեալ բանարկուն առէ ցՏէր»։ Կրկնեալն՝
այսինքն է պատասխանեալ. քանզի ոմանք ի Թարգ֊
մանացն այսպէս եդին։ Բայց կրկնեալ յիրաւի և ի
բարիոք ժամու ասացաւ. վասն զի իբրև ի մրցանաց
ի տեղ դնէ զպատասխանիս. զի այսպէս իսկ գըտ֊
ցուք զպատասխանիս անուանեալ ի բովանդակ գիրս, 233
որչափ ոք ուրեք պատասխանէ ճգնութեամբ ընդ
միմեանս։

«Մորթ ընդ մորթոյ, և ամենայն որ ինչ իցէ
մարդոյ՝ տացէ փոխանակ անձին իւրոյ»։ Չարու֊
թիւն՝ կոյր ստացուածք են, և գուր անօրէնութեանց,
և նախ զբրօղան ձգէ յինքն և արկանէ։ Չար է
մատնիչն, այլ ոչ գիտէ զի զչարութեան նիւթն
գործէ ի վերայ անձին իւրոյ. կամօք զբանս իւր
մոռանայ, և ախորժելով չյիշէ, եթէ զինչ է խոս֊
տացեալ և ասացեալ ցԱստուած։

«Միթէ ձրի՞ պաշտէր Յոբ զԱստուած. ո՞չ դու
ամրացուցեր զներքին և զարտաքին տան նորա. և
որ ինչ միանգամ արտաքոյ շուրջ զնովաւ են և ըզ֊ 234
գործս ձեռաց նորա օրհնեցեր, և զանասուն նորա
բազմացուցեր ի վերայ երկրի». իսկ ապա ի վերայ
այսոցիկ էած. «բայց ոչ, այլ աղէ առաքեա դու
զձեռն քո և արկ ի վերայ ամենայնի, եթէ ոչ յե֊
րեսս օրհնեսցէ զքեզ»։ Իսկ իբրև առ իշխանութիւն
ի վերայ այսոցիկ, վաղվաղակի զամենայն առանց
վշտակցութեան ապականեաց, և թափեաց զամե֊
նայն լիութիւնս Յոբայ. զամենայն բարէկենդանու֊
թիւն նորա ի սաստիկ և ի կարի ողբերգութիւն
դարձոյց. յամենայն մեծութենէ զնա մերկացեալ և
անողորմ զպսակ որդւոցն թօթափեալ, և ոչ տուեալ
թաղել զորդիսն և զդստերսն որդէսիրին. աւասիկ 235
յայլ բանս (սո)խի, և զՅոբայ զմարմնոյն առողջու֊
թիւն նախատէր իբրև զայնչափ արդարութեանն
պատճառս եղեալ։

«Մորթ ընդ մորթոյ, և ամենայն որ ինչ իցէ
մարդոյն՝ տացէ փոխանակ անձին իւրոյ»։ Ոչ միայն

*զմարմին մորթ կոչելով, այլ և զՄեծութեանն զա-*
*ռաւելութիւն, զորդւոցն լիութիւն, և զայլ աջողուածս*
*աշխարհականս. քանզի և նա ըստ նմանութեան*
*մորթոյ ծածկէ զմարդն։ Բայց թերևս և զայն մաշ-*
*կեղէն մորթս առակելով ասէ, զորս ևս Աստուած*
*խոկ զգեցոյց զԱդամ և զԵւայ, յորժամ ի դրախ-*
236 *տէն հանելոց էր. քանզի և ասէ եթէ. «Եւ արար Ա-*
*ստուած Ադամայ և կնոջ նորա մաշկեղէն պատմու-*
*ճանս և զգեցոյց զնոսա»։ Իսկ առնել Աստուծոյ ասէ,*
*վասն զի ինքն ուսոյց թէ զիարդ և կամ որպէս*
*պարտ է առնել։ Իսկ մաշկեղէն պատմուճանս ոչ*
*միայն զայն կոչեաց՝ ի կենդանի մորթոց զգեստն՝*
*զոր հրամայեաց նոցա նոյնժամայն առնել, վասն զի*
*էին մերկացեալք և զգեստու կարօտացեալք. կար-*
*գել զմորթս կենդանեաց և կարել հրամայեաց, քան-*
*զի ոչ իսկ յասուէ կամ ի կտաւոյ անկանել հրա-*
*մայէր վասն փութոյն՝ այլ վասն զի հանեալ զնոսա*
*ի դրախտէն փափկութեան, և (յ)անտի կենաց զնոսա*
237 *մերկացոյց։ Իսկ զի պիտոյ է նոցա որովք զհարկա-*
*ւոր կերակուրն ժողովել կարասցեն, զայս իմացաւ*
*նոցա որք յառաջագոյն չէին պիտոյ նոցա, ոչ եզինք*
*որով վարէին, և ոչ բեռնաբարձ անասունք, և ոչ*
*այծք կթանք, և ոչ կտուրք հօտից, և ոչ այլ ինչ*
*յորմէ այժմ մարդկեղէն կեանքս յարմարին։ Վասն*
*զի ի դրախտէն՝ բարէկենդանութիւն նոցա պա-*
*տրաստէր, և ոչ ինչ յայսմանէ պիտոյ էր, յանցեան։*
*Իսկ փոխանակ այսր մորթոյս ասացելոյս յայտ է՝*
*եթէ երկրաւոր ստացուածոցս բուական լինել Յով-*
*բայ միւս մորթոյ, այսինքն է մարմինն. քանզի դեռ*
*ևս յառողջութեան էր յայնժամ։ Զի մատնելով ըղ-*
238 *ձգնողն, մատնչին իշխեաց ասել. իբրև թէ վասն*
*այնր զբարէպաշտութիւնն առ Աստուած պահէր։*
*Իսկ եթէ յայնմ հարցի յանդիմանեալ, իբրև թէ ոչ*
*սուրբ զբարէպաշտութեանն հաւատարմութիւնն պա-*
*հէր առ Աստուած, բայց առ երկիւղի, զի մի յա-*
*ռողջութենէ մարմնոյն անկցի. յորմէ մերկացեալ՝*

մերկացուցէ զաներևոյթ զակնկալութիւնս. քանզի
եղիցի ապաշնորհ առ իւր արարիչն, և նոյնժամայն
հայհոյութիւնս առ արարիչն խօսեսցի։ Բայց ոչ ընդ
վայր աղաչէ հարկանել զմարմինն Յովբայ, այլ ա֊
սացեալ՝ եթէ «մորթ ընդ մորթոյ», և զայս ի վերայ
ած. «և ամենայն որ ինչ իցէ մարդոյն՝ տացէ փո֊
խանակ անձին իւրոյ»։ Եւ ի վերայ ոգւոցն իսկ
Յովբայ կամեցաւ առնուլ իշխանութիւն. ապա իմա֊ 239
ցեալ եթէ ոչ կարասցէ զայնպէս իշխանութիւն առ֊
նուլ, և ոչ թողացի նմա ապականել զկենդանին,
պայծառացուցանելով զբանս իւր՝ զայս յաւելու։
«Բայց ոչ. այլ աղէ առաքեա զձեռն քո և արկ
զոսկերօք և զմարմնովք նորա, եթէ ոչ յերեսս իսկ
օրհնեսցէ զքեզ»։ Այսինքն է, թէ ոչ ինչ է պա֊
տուականագոյն մարդոյ քան զանձն իւր. բայց վասն
զի յայտ է՝ եթէ ոչ կամիս զոգիս մարդկան արհա֊
մարհել, գոնէ զոսկերս նորա փշրեա, զմարմինս նո֊
րա պատառեա, մանրեա զամանն, զի ցուցցի ստա֊
ցուած իւղոյն. ձեռն արկ յոսկերս և ի մարմինս
նորա, ընդ մաշել գեղեցկութեանն՝ յանդիմանեսցի 240
քաջութիւնն։ Ոչ ևս համբերեսցէ Յովբ տեսանել
զանկանել մատանց իւրոց, և զհոտել մարմնոյ իւրոյ,
և ոչ չարատեսիլն լինել զգեղ պատկերի իւրոյ. այլ
յերեսս օրհնեսցէ զքեզ, ասելով. Վասն է՞ր ստեղծա֊
նէիր եթէ ապականել կամէիր. վասն է՞ր իսկ քոյով
պատկերաւդ պատուեցեր՝ զորս հրամայես թշնամ֊
ւոյն, զորս ախտից մատնես, ընդ որովք և ոչ զան֊
բան կենդանիսն անկեալ տեսանեմք։ Բայց մինչդեռ
կայ առողջութիւն մարմնոյն, և ողջէծնութեան յոյս
կայ, և զկորուսեալ մեծութիւնն կրկնակի ընդունել
ակն ունի, և զարդարութիւնն թերևս կեղծաւորի,
իբրև յոյս ունելով թէ ուստի նմա դարձեալ կըր֊ 241
կնեսցի բարեացն ստացուածք։
«Եւ ասէ Տէր ցբանսարկուն. Ահաւասիկ տուեալ
զնա ի ձեռս քո. բայց միայն զոգին նորա պահես֊
ցես»։ Յառաջ քեզ ետու զինչսն Յովբայ, իսկ

այժմ զՅովբ ինքն. յառաջ հեռագոյն, բայց այժմ մօտ
ի մօտոյ յօրինի պատերազմ և մերձ առ միմեանս.
իսկ այժմ հրամայեմ քեզ գլորել և կամ գլորիլ. մատ-
նեմ զնա քեզ, ոչ զի զմիտն ապականեսցես և կա-
մացն վնասեսցես, և մի զընտրութիւն խորհրդոցն
կորուսցես. քանզի ի վնասել այսոցիկ՝ դիւրին է քեզ
յաղթութիւնն և անհարթ պատերազմն. յայսմանէ
242 քեզ հրաժարումն սահմանէ աստուածային հրամանն:
Քանզի կամեցիս իսկ դու մերձանալ յոգի արդա-
րոյն, բայց ոչ կարասցես. քանզի վրէժխնդիր ին-
քեան լիցի մեծի Թագաւորի հրամանն: Եւ պահա-
պան ոչխարացն թողու զգայլդ. քեզ իսկ յանձնեմ
զնախանձելոյն ի քէն զոգին, ոչ քո կամօք, այլ
վասն երկիւղի իմոյ հրամանիս և աստուածային կա-
մացս: Քանզի ոչ իսկ կարասցես ասել՝ եթէ այլ ոք
յարձակեցաւ ի վերայ ոգւոյն Յովբայ. քանզի դու
ի վերայ նորա պահապան կարգեալ, եղիցիս պար-
տաւոր, ուստի և եկեսցէ ի վերայ նորա նենգութիւն:
243 «Եւ ել սատանայ յերեսաց Տեառն»: Յամօթ ե-
ղեալ և կշտամբեալ. բայց սակայն ել խնդութեամբ,
յոր(ոյ) ի վերայ յետ սակաւ ժամուս գալոց էր. ել
իշխանութիւն առեալ, որ զամենայն զնորա իշխա-
նութիւնն կողոպտեաց. քանզի մարտուցեալ ընդ
Յովբայ և այնչափ ի նմանէն յաղթահարեալ՝ մինչև
յայսպէս մարդկանէ դիւրաւ մարտնչելի եղև: Բայց
սակայն զինչ գործէր իբրև ել:
«Եւ եհար զՅովբ մեծօք հարուածովք յոտից մին-
չև ի գլուխ»: Ոչ ինչ առողջ եթող ի հասակէն Յով-
բայ. զամենայն այգին ըստ կարգի ապականեաց
որդնն, զտերևն կերաւ, և զփայտն ծակոտեաց. բայց
զողկոյզն հատանել ոչ կարաց, քանզի համբերու-
244 թեամբ ճգնողն յաղթէր ընդդիմողին, և առաքինու-
թեամբք լուծանէր զամբարտաւանն, և հեզութեամբ
քակտէր զլարս աղեղանց և զնետսն մանրէր: Քան-
զի զինչ առնէ եկելոցն ախտիցն ի վերայ նորա, առ
ի բազմութիւն վիրացն, առ ի յանպատումն հա-

բուածոցն և ի սաստիկ ապականութենէն, զայգ֊
ուսիր։
«Եւ առեալ Ցովբայ խեցի, քերէր զթարախն
յինքենէ, և ինքն նստէր ի վերայ աղբևաց արտա֊
քոյ քաղաքին»։ Ոչ կոչեաց բժիշկս. բայց թերևս և
կոչեցեալք՝ ոչ գային, տեսանելով յաղթահարեալ
զարուեստս յախտիցն. բայց սակայն և Ցովբ իսկ
ոչ կոչէր և ոչ զառ ի մարդկանէ արուեստիցն խըն֊ 245
դրէր զօգնութիւն. այլ կաւովն քերէր զկաւն, և խե֊
ցեաւն սրբէր զամանն խեցեղէն. ազգակցութեամբն
զազգակիցն մխիթարէր, և եցոյց թշնամւոյն՝ թէ֊
պէտև զմեծ մարմինն վիրաւորեալ որ յերկրէն էր,
այլ նմա ոչ ինչ կարաց զօրել. և վասն այսորիկ թա֊
ւալի յերկրի, զի հող և մոխիր է։ Բայց սակայն յի֊
րաւի նստաւ Ցովբ ի վերայ աղբևացն, զի աղբեւքն
վաղվաղակի երթիցեն առ աղբեւսն. միանգամայն
զի և զաթոռն կալցի պատճառս հեգութեան. քանզի
ի վերայ աղբևացն նստելով, զի մարմինն աղբեւք
իսկ էին, և յիշեցուցանելով մարմնոյն զնոյն բնու֊ 246
թիւն։ Զի պատճառք իմաստասիրութեան էին նմա
այն յիշատակ, ուստի և զամենայն հնարագիտու֊
թիւն թշնամւոյն դիւրաւ դարձուցանէր յետս, որ֊
պէս և զայս որ ի կարգիս ցուցանէ մեզ պատմու֊
թիւնս։

Քանզի ասէ, թէ «Յետ բազում ժամանակի ան֊
ցելոյ, ասաց ցՑովբ կինն իւր. Մինչև ցե՞րբ համբե֊
րես ասելով, ահա անսացից փոքր միւս ևս ժամա֊
նակ, ակն ունելով յուսոյ փրկութեան իմոյ։ Ահա֊
ւադիկ ապականեալ է յիշատակ քո յերկրէ, ուս֊
տերք քո և դստերք՝ իմոյ որովայնի երկք և ցաւք,
յորս տարապարտուց վաստակեցի տառապանօք։ Դու 247
իսկ ինքնին ի զազրութիւն որդանց նստիս օթագա֊
ցեալ արտաքոյ. և ես մոլորեալ և հարկահար կին,
տուն ի տանէ և տեղի ի տեղւոջէ յածեալ, կարօ֊
տիմ տեսանել զմտանել արեգական, զի հանգեայց
յաշխատութեանց և ի ցաւոց իմոց որ այժմ են պա֊

*տեալ զինն։ Այլ ասա բան ինչ առ Տէր և վախճա-
նեցիր»։ Բայց զի ժամանակն յերկարէր, բանս
յայտնի արար մեզ. և վասն օգտի մերոյ զթիւ ժա-
մանակացն ոչ յայտնեաց մեզ Հոգին. քանզի եթէ
յայտնի սահմանեալ էր զամիսն կամ զտարիս, իւ-
րաքանչիւր ոք՝ որք առ ի յապա փորձելոց էին՝ վր-
248 հատէին, մինչև հասեալ էին ի ժամանակ կիտին.
համարելով զգիշերս և զժամս, և զժամանակս զմր-
տուռ ածելով։ Իսկ եթէ դէպ լինէր, և փորձանօքն
զանցանէր զՅովբայ ժամանակաւն, առաւել ևս լինէր
յուսահատ, իբրև ոչ պատահելով զօրութեան ձեռինն
Աստուծոյ, և ոչ յերկնից օգնութեանն վայելեալ՝
յորում նայն վայելեաց։ Իսկ այժմ բազում ասաց
գոլ զժամանակս, զի գիտասցես եթէ ոչ միայն քան
զախտսն և զայնչափ հարուածս, այլ և քան զժա-
մանակսն հզօրագոյն գտաւ Յովբ. և երկայն ժամա-
նակօք մարտուցեալ տանջանօք ընդ վշտաց մար-
249 մնոյն, սակայն անվթար ի ճգունսն եկաց։ Իսկ զմեզ
մխիթարէ, զի որչափ և կայցեմք ի փորձութեան
ժամանակս, մի ամենևին վհատեսցուք. քանզի եկեա-
ցէ մեզ ձեռն Տեառն, և աջ նորա առընթեր կացցէ
մեզ, որ ի բազում ժամանակսն փրկեաց զՅովբ ի
հնոցէն փորձանաց։ Բայց քանզի յամենայն պատե-
րազմունսն յաղթահարեալ էր մատնիչն, և վրիպեալ
էր ամենայն փորձանօքն, և խափանեալ էր յամենայն
որսոց, և ամենայն որոգայթքն մանրեալ էին, և
յամենայն մեքենայից մերկացեալ էր, յետ մեծու-
թեանն ապականելոյ, յետ բազում որդւոց կորըս-
250 տեան, յետ մարմնաքանց հարուածոց մարմնոյն, ըզ-
վերջին հնարագիտութիւն, և որպէս կարծէր եթէ
քան զամենայն բռնագոյն՝ էած ի վերայ նորա ըզ-
կինն։ Եւ քանզի պարտ էր ասել նմա զայս, յոր-
ժամ զպսակ ուստերաց և դստերացն թօթափեաց,
յորժամ զմարմինսն սկսան պատառել զառաջին որ-
դունքն, յորժամ քաղաքացիքն փախչէին ի նմանէ
և հալածէին զնա հանդերձ ազգականօքն, յորժամ*

*նստաւ յաղբեւսն, փոխանակ թագաւորական ան-
կողնացն, յայնժամ լռեալ էր. յորժամ ախտն ժա-
մանակօքն պարարեալ՝ հզօրագոյն եղև, և այնպէս
ևս ոչ կակղագոյն գտեալ էր զճգնողն ընդդիմացո-
ղին. յայնժամ գումարէ զկինն, թերևս ընդ միտս* 251
*առեալ, եթէ ոչ հզօրագոյն է սա քան զԱդամ.
Թէպէտ և մեծատուն էր, այլ ոչ ունէր զդրախտն
Աստուծոյ. Թէպէտ և արդար էր, այլ ոչ կթէր ըզ-
փայտն կենաց. Թէպէտ և աստուածապաշտ էր, այլ
Ադամ ի խօսել ընդ Աստուծոյ վայելէր. սորա բա-
զում էր անասուն, իսկ նմա ամենայն կենդանիք
երկրիս հնազանդեալ էին։ Իսկ եթէ զնա ի ձեռն
կնոջն կարացի կործանել, թերևս և ոչ սա կարաս-
ցէ ուժել, մարտնչելով ընդ սմա կնոջն։ Այսու կար-
ծեօք վառէ ի վերայ Յովբայ զհասակ կնոջն, զորոյ
զանունն վասն, այսորիկ Հոգին Աստուծոյ ոչ ետ
գրել ձեռնագիր պատմութեամբքս, առ ի ցոյցս՝* 252
*եթէ նման էր այնմ առաջին կնոջն։*
*Այլ զի՞նչ ասէ ցՅովբ. «Մինչև ցե՞րբ համբերես».
այսինքն է, եթէ զի՞նչ վախճանի ակն ունիս համ-
բերութեամբդ, և զի՞նչ տեսանես պտուղ. որո՞ւմ օգ-
նութեան ակն ունիս. զի՞ զքեզ խօսելով պատրես
բանիւք՝ յուսալով ընդունայնս, և բարբաջանս խոր-
հելով. ասելով՝ ահա անսացից փոքր միւս ևս ժամա-
նակ, ակն ունելով յուսոյ փրկութեան իմոյ։ Փոքր
մի ժամանակ անսաս. իսկ սա աւասիկ աճեցեալ
բազում եղև. ակն ունիս յուսոյ փրկութեան քո,
այլ դու տանջանաց ի տանջանս փոխիս։*
*«Ահաւասիկ ապականեալ է յիշատակ քո յեր-
կրէ»։ Ընդունայնս յուսաս. քանզի ի նա յուսաս՝* 253
*որ ոչ կարէ ապրեցուցանել զքեզ ի չարեացս. բայց
յայտ է թէ ընդ այլոց վշտացն ամենայնի և զքո
ևս յիշատակ յերկրէ կորուսեր. իսկ ըստ որո՞ւմ օ-
րինակի։*
*«Ուստերք քո և դստերք՝ իմոյ որովայնի երկք և
ցաւք, յորս տարապարտուց վաստակեցի տառապա-*

նօք»։ Համարեաց եթէ զմեծութիւնն կորուսեր՝ ուս֊
տի էիր երևելի. ահաւասիկ և ի վիճակէ որդւոցն
զրկեցար. իսկ ուստի՞ այսուհետև մնացէ յիշատակ
քո ի վերայ երկրի։ Ինչքն յափշտակեցան, ստացուած֊
քըն ապականեցան, ուստերք ոչ գոն, դստերք ոչ
254 մնացին, և ոչ թոռունք եղիցին՝ յորդւոց անգոյու֊
թենէ. այլ ընդունայն սերմանեցեր յագարակի ար֊
գանդիս իմոյ. և դու միայն ի սերմանելն ես զըր֊
կեալ. իսկ ես և ի ցաւոցն՝ զորոց փորձ գիտէ ար֊
գանդս իմ, և զոր կիրս և կրէ որովայնն յղեաց.
զորս ոչ համբերութեամբ երկունքն ընդունին, այլ
և զյիշատակն ահագինս համարին։ Մի՛ եթէ մի՞ ցաւ
իցէ յայնժամ կամ բազումք. ո՞չ ամենայն իսկ ան֊
դամքն պատառին ծնօղին. ո՞չ ընդ երկու իսկ բա֊
ժանեալ համարի հասակն կանանց. ո՞չ պատառելոյ
ակն ունի արգանդն, առ ի չհամբերել աճման ման֊
կանն։ Իսկ ընդ ելանել մանկանն ո՞ կարէ պատմել
255 զբռնութիւնն՝ թէ ընդ որո՞վ սաստկութեամբ անկանի
ծնօղն։ Այլ սակայն մահ ընկալաւ զծնունդս որովայ֊
նիս իմոյ, և պտուղ միջոյ իմոյ ի դժոխս ապակա֊
նեցաւ։ Իսկ արդ ա՞յլ որդւոց ծննդեան ակն կա֊
լայց, զիա՞րդ կամ ուստի՞. զի գլորեալ է մշակդ և
լեալ ապականացու. և դու իսկ անձամբ կերակուր
եղեր որդանց։ Ոչ զմի օր կամ զմի ժամ, այլ զգի֊
շերս ընդ տիւս միաբանեալ օթէգանաս արտաքոյ.
և ոչ օդք և ոչ վարիչ օդոցն ողորմին քոյոց ախ֊
տիցդ, և ոչ գիշերի հանգիստ լինի. այլ յորժամ
դադարեն ամենեքին, յայնժամ սողունք երկրի ծա֊
կոտեն զմարմինս քո. յայնժամ երերեալ յորդանց
նստիս։
256 «Եւ ես մոլորեալ և հարկահար կին, տուն ի տա֊
նէ և տեղի ի տեղոջէ յածեալ, կարօտիմ տեսա֊
նել զմտանել արեգական. զի հանգեայց յաշխատու֊
թեանց և ի ցաւոց իմոց, որ այժմ են պատեալ զի֊
նև»։ Բայց թշուառութիւնքդ յամենայն կողմանց
յերկարեն, ոչ կարեմ մխիթարել զքեզ յախտիցդ,

և լուանալ զվէրսդ. աղքատութիւնս յոստայնանկու-
թիւն հարկաւորէ զԹագուրհիս, տեղի ի տեղոջէ
փոխեալ՝ զի պատահեցից այնմ որ ընկալցի ի վար-
ձու։ Քանզի բազումք իբրև ի նախատելի մարդոյ
փախչին, իբրև ի բազում չարեօք լցելոյ, և պատ-
ճառս ողբոց եղելոյ, իբրև թէ ուր երթիցեմ՝ սուգ և
արտասուս արկանիցեմ։ Եւ ամենեքին ի լոյս արե- 257
գական վայելեն, իսկ ինձ՝ երկայնութիւն տուըն-
ջեանս ծանրաբեռն թուի. և ընդ ծագել լուսոյն՝ ըզ-
գալ խաւարին աղաչեմ, և կամիմ եթէ բռնադա-
տեսցէ գիշերն զընթացս տուընջեանն, զի ի բազում
աշխատութեանցն գոնէ սակաւ մի հանգիստ գտից.
և ի տանջանացս որ պատեալ են զինև, եթէ սա-
կաւիկ ինչ փարատեցից, որում ոչս էի սովոր յա-
ռաջ։ Ուստի և անհնարին դժուարագոյնք ինձ երե-
ւին. քանզի որ սովորեալս էի փափկանալ, ծանր
լուծ աղքատութեան և անուր թշուառութեան յա-
մենայն կողմանց պնդեալ կայ ի վերայ իմ։
«Այլ ասա բան ինչ առ Տէր և վախճանեսցիր»։ 258
Համառօտիւ գիտ զհրաժեշտ ախտիցդ, եւ վաղվա-
ղակի յաշխարհէս կենաց, որ այսպէս տանջանս ի
վերայ քո հասոյց. ելցես վաղվաղակի եթէ ասաս-
ցես բան ինչ ի Տէր. կամ զի ցասուցեալ ապանցէ
զՅովբ, և կամ թշնամին յագեսցի՝ յորժամ Աս-
տուած հայհոյեսցի, և ածցէ վաղվաղակի ի վերայ
քո զմահ, որում ոչ պատահեսցես՝ թէպէտ և բա-
զում անգամ աղօթեսցես։
«Իսկ նորա հայեցեալ ընդ նա ասէ»։ Այս ինքն
է բարկութեամբ, ընդ երկար նայեցեալ ընդ նա պա-
տասխանեաց. «Ընդէ՞ր իբրև զմի ի կանանց անզգա-
մաց խօսեցար. զի եթէ զբարիսն ընկալաք ի ձեռա-
նէ Տեառն, իսկ չարեացս ո՞չ համբերիցեմք»։ 259
Հայի ի կինն և տեսանել կամի զայն որ ի նմայն
խօսէր, և դիտել զօձն որ ի ներքս ի լեզուի կնոջն
էր թաքուցեալ. վասն այսորիկ ասէ ցկինն. «Իբրև
զմի ի կանանց անզգամաց խօսեցար»։ Բազում կա-

նայք անզգամութիւն խօսեցան, և և՛ս խօսե-
ցին. որպէս և էր Եգիպտացին այն որ Յովսէփայ
զպոռնկութիւն խոստանայր. որպէս էր և դարձեալ
Դալիլայ, որ զՍամփսոնն կորուսեալ՝ մատնէր այլ-
ազգեացն։ Իսկ դու իբրև զմի յանզգամաց խօսե-
ցար, որ եհան ի դրախտէն զազգ մարդկան, յոր-
ժամ կթեաց զփայտն մահու և զպտուղ պատուիրա-
260 նազանցութեանն. նախ ինքն կերաւ, և ապա առն
մատոյց, որ թողեալ զարարիչն և հաւանեցաւ վի-
շապին, և խորհրդակից զթշնամին առ, որ զմեզ յա-
մենայն բարութեանցն մերկացոյց։

«Զի եթէ զբարիսն ընկալաք ի ձեռանէ Տեառն,
իսկ չարեացս ո՞չ համբերիցեմք»։ Ուստի՞ իսկ է մեզ
ունելս, ուստի՞ առաք սկիզբն, կամ յումէ՞ եղեաք.
ո՞ ետ մեզ զպատկեր Աստուծոյ. ո՞յր զօրութեամբ
վայելեմք յերկնից լուսաւորաց. ուստի՞ ունիմք իշ-
խանութիւն կթել զերկիրս, և կամ գնալ ընդ ծով.
ո՞ մեզ զայսպէս տարերս հնազանդեաց։ Տրամեցու-
261 ցանէ զքեզ կորուստ մեծութեանդ. և ուստի՞ է մե-
ծութիւն մարդկան, եթէ ո՛չ Աստուած շնորհէ։ Ո՞չ
ինքն մեծացուցանէ և ինքն աղքատացուցանէ։ Ըդ-
չարիս ընդ մահ որդւոցն, այլ Աստուած ետ մարդ-
կան զորդէծնութիւն, որ ետն՝ նոյն և առ. որ սեր-
մանեացն՝ նոյն և հնձեաց, որ տնկեացն՝ նոյն և կը-
թեաց։ Ո՞րչափ արգանդք են ամուլ. քանի՞ ինչ ի-
ցեն՝ որ ի վերջին ծերութիւն հասեալ են առանց
որդէծնութեան։ Իսկ քո արգանդդ թէպէտ և բա-
զում մանկունս ծնաւ, ո՛չ իմ միայն սերմանելովն,
այլ Աստուծոյ զօրութիւն տալով սերմանն։ Իսկ
զի՞րդ կարիցեմք կշտամբել զնա, որ էառ զիւրան։
262 Այլ զվէրս մարմնոյս և զճիճուս մեղադրեցից. ո՞չ նա
զգեցոյց ինձ զմարմինս զայս. ո՞չ կաւ առեալ՝ աչս
և ականջս, ձեռս և ոտս, և զայլ անդամս ըստ կար-
գի մի ըստ միոջէ յօրինեաց։ Իսկ որպէս և կամե-
ցեալ՝ զմարմին արար ի կաւոյն, նոյնպէս դարձեալ
անդրէն զմարմինս ի կաւ դարձուցանէ։ «Զի եթէ

զբարիս ընկալաք ի ձեռանէ Տեառն, իսկ չարեացս
ո՞չ համբերիցեմք»։ Զայնչափ ամս յինչս և ի ստա-
ցուածս, յուստերս և ի դստերս, ի թագաւորու-
թեան և յառողջութեան, և յայլ ևս ի լիութիւնս
վայելչութեանց եղեաք՝ տալով Աստուծոյ. և այժմ՝
յորժամ զայս փորձութեամբք հեռացոյց ի մէնջ առ
ի փառս իւր, ո՞չ համբերեսցուք, ո՞չ փառաւորես- 263
ցուք համբերութեամբ զԱստուած, և զթշնամին կոր-
ծանեսցուք. ո՞չ մատուսցուք բարւոք պատարագ ըզ-
համբերութիւնս, որով զապականեալսն[1], և այլ ևս
աւելի ընդ նմին այսրէն առնուլ կարասցուք։

«Յայսց յամենեցունցս պատահեցելոցս նմա, ոչ մե-
ղաւ Յովբ և ոչ մի ինչ շրթամբք իւրովք առաջի
Աստուծոյ»։ Իսկ մի՞ եթէ ի զո՞ւր արդեօք մատ-
նեաց Աստուած զՅովբ ի կռիւն, մի՞ եթէ ո՞չ ճանա-
չէր զճգնողն, մի՞ եթէ ո՞չ գիտէր թագաւորն զիւր
զօրականն։ Այնչափ ալիք և մրրիկք հողմոց, և ա-
մենայն ծովք երկրիս խռովեալք, և հանդերձ ամե-
նայն ձորովք յարձակեալ էր թշնամին. իսկ Յովբ 264
զի ոչ մեղաւ՝ ի գործոց անտի յայտ է. այլ եկաց
անպարտ, արդար, աստուածապաշտ, որոշեալ յա-
մենայն իրաց չարաց. այլ և բանիւք իսկ ոչ մեղաւ։
Իսկ եթէ բանիւք ոչ, յայտ է եթէ և ոչ խորհըր-
դովք. քանզի լեզու ըստ բազում օրինակի հայելի
է խորհրդոց. քանզի զոր նա յղանայ, սա բղխեալ
ծնանի։ Իսկ մեք նմանեսցուք նորա համբերու-
թեանն, ըստ հեզութեանն ճգնեսցուք. վարեսցուք
համբերութեամբն. և առ ի յԱստուած յուսոյն հա-
ւատարեսցուք նմա։ Զհետ երթիցուք անվրէպ հա-
ւատոյն, զմտացն պնդութեանն, զլեզուին հաստա- 265
տութեան, և առ կռիւս աներկիւղ թշնամւոյն՝ զան-
շարժութիւն, և ի փորձութիւնս՝ զանխռովութիւն,
և առ ամենայն ինչ որ գայ ի վերայ՝ հզօրք և ան-

1. Վ. Արդ մեք համբերութեամբ փառաւորեմք զնա, որով զա-
նապականութիւն՝ և այլ ևս աւելի այսրէն առնուլ կարասցուք.

*չարժք կացցուք. յամենայն տանջանս սուրբք և
փորձք եղիցուք. քանզի այսպէս և Նորա պսակացն
պատահեսցուք, և յաղթութեանն հաւասարեսցուք,
և վկայ մերում արդարութեան կալցուք զԱստուած,
Նմա փառք յաւիտեանս. ամէն:*

## Ե

*«Իսկ լուեալ երից բարեկամացն զչարիսն ամե-
նայն որ հասին ի վերայ նորա, եկին յիւրաքանչիւր
գաւառաց առ նա մխիթարել զնա: Եղիփաս արքայ
266 Թեմնացւոց, Բաղդադ բռնաւոր Աւքեցւոց, և Սով-
փար արքայ Մինացւոց. և միաբանեալ եկին առ նա
տեսանել և մխիթարել զնա: Իսկ տեսեալ զնա ի
հեռաստանէ՝ ոչ ծանեան. և բարբառեալ մեծաձայն
լացին, պատառեցին իւրաքանչիւր զպատմուճանս
իւր, և ցանեալ հող ի վերայ գլխոց իւրեանց՝ ընդ
երկինս հայելով նստան յերկիր: Իսկ նստէին առ
Նմա զեւթն տիւ և զեւթն գիշեր, և ոչ ոք խօսեցաւ
ընդ Նմա բան. քանզի տեսանէին զվէրսն յոյժ և
սաստիկ»:*

*Ուրախ լեր սիոն̄ հանդէս պարհոց[1], իմաստասի-
րութեան առագաստ, պարկեշտութեան խարիսխ,
267 բարէկենդանութեան ընթրիք, արքայութեան սեղան.
որ զտօնս որպէս կամիս զծագրես. որ զժողովս ոչ
ընչիւք՝ այլ սքանչելեօք զանազանութեան պայծա-
ռացուցանես: Քանզի երբեմն զխաղաղութիւն քարո-
զես, յորում տիեզերք ամենայն յորդորին ի տօնել:
Երբեմն զհոգին յաշակերտսն փչես. և փ մեզ իբրև
յորդիս և ի ժառանգորդս հասանէ մասն օրհնու-
թեանն: Երբեմն զաւազանն դնես առաջի, և զդաս-
տառակն ոտից մատուցանես, յորում նաւահանգիստ
փրկութեան բանայ մեղաւորաց: Երբեմն զատիկ*

1. Վ. *Ուրախ առնի սիոն հանդիսարան սրբոց:*

կրկնակի կատարես, միանգամայն զենլով զգառն
զիմանալի և զգալի. կրկնակի մեք անդրէն ժողո-
վիմք՝ ուսանելով բանիւք և գործովք. քանզի որ 268
հինն էր այն էանց, և նուակատիք նորոյս եղեն։ Եր-
բեմն Քրիստոսի գրօք փակելովք տաս մտանել, և
ի մեզ ի ներքին մարդս յորդորես բնակեցուցանել
զարարիչն։ Երբեմն զնա չօչափես՝ առ ի ցուցանել
զջերմութիւն սիրողացն, և հաւատացելոցն տաս ե-
րանութիւն։ Երբեմն զհուրն բաժանես, ըստ նմա-
նութեան լեզուաց, և զոհարանք ամենեքին լինիմք
աննիւթ պատարագին։ Երբեմն պահս քարոզես, և
նոր ճգունս պատրաստես մերում մարմնոյս, զի ա-
ռանց կթելոյ՝ քաղցուին լիցուք ամանք։ Երբեմն ըզ-
Յովբ մերկացուցանես առ ի ճգունս, և մեզ զհամ- 269
բերութեան զպատուազինութիւնս զգեցուցանես. քան-
զի ո՞ կարէ օծանել առ ի համբերութիւն որպէս
այսպիսիս և այսչափ ճգնողս։ Զորոյ լուեալ բարե-
կամացն վասն ախտից՝ խռովեցան. իսկ եկեալք՝ ոչ
համբերէին տեսլեանն, և նախութեան հօտոյն ոչ
կարէին տանել։ Եւ տեսանելով զհարուածս՝ զար-
հուրէին. և զթագաւորն ի վերայ երկրի տեսանելով
մերկ անկեալ, և վասն յուսահատ լինելոյ՝ անփոյթ
զբժշկաց արարեալ. և ոչ ոք սպունկ վիրացն մա-
տուցանէր, այլ ամենեքին խեցիս մատուցանէին. և
ոչ ոք կակուղ անկողինս, ոչ իբրև հիւանդի, և ոչ
իբրև թագաւորի արկանէր. այլ զաղբն ժողովէին 270
իբրև ապականելոյ և անկելոյ յերկիր, և ի ներքոյ
հողոյ և մոխրոյ եղելոյ։ Բայց յայտնին բանքս որ
վասն Յովբայ պատմութիւնքս են։

«Իսկ լուեալ երից բարեկամացն զչարիսն ամենայն որ հասին ի վերայ նորա, եկին յիւրաքանչիւր գաւառաց առ նա մխիթարել զնա։ Եղիփաս արքայ Թեմնացւոց, Բաղդադ բռնաւոր Աւքեցւոց, և Սովփար արքայ Մինացւոց»։ Բազում իսկ և այլ բարեկամս Յովբ ունէր իբրև զերևելի թագաւոր, իբրև զարդար, իբրև բարեպաշտ, իբրև ազնուական

քան զամենայն արևելեայս. բայց սոքա առաւելա-
271 գոյն էին քան զայլ բարեկամսն: Հաղորդք խաղա-
ղութեան, պատերազմաց զօրակիցք, իբրև ոմանք
դաշնակիցք, որպէս և Աբրահամու ի Մամբրէ՝ Եշ-
քող և Աւնան. այսպէս էին և սոքա Յովբայ: Եւ
սոցա լուեալ զչարիսն ամենայն որ հասին ի վերայ
նորա. զկիզումն ոչխարացն և զիշոցն, զեզանցն յա-
փըշտակութիւն, և զգերութիւն ուղտուցն և զկոտո-
րուած մահու մանկտւոյն, զուստերացն և զդստե-
րացն սատակումն, և զապականութիւնն՝ որ տակա-
ւին արածէր զմարմինն նորա: Զի՞րդ անորդի բազ-
մորդին եղև. զի՞րդ յանկարծակի աղքատութիւն և
272 վիշտ՝ ընկալան զլիութիւն և զմեծութիւն. զի՞րդ
կորոյս զողկոյզն՝ պտղալից այգին. մերկացեալ ի
տերևոցն, ապականեցաւ որթն՝ հանդերձ ուռովքն և
արմատն կորեաւ. կտրեալ վիրօք մարմնոյն, թէ
որպէս կաթէին թարախքն ի վիրացն. զի՞րդ որո-
վայնն յորդանցն էր ծակոտեալ, և դադարք սողնոց
լեալ էին ամենայն անդամք ճգնողին, ի թափել
մարմնոյն և ի ծակոտել ոսկերացն:

«Եկին յիւրաքանչիւր գաւառաց մխիթարել զնա»:
Զփոյթ սիրոյ ցուցեալ բարեկամացն ի վերայ նորա:
Բայց թերևս և ազգակիցք նորա էին. քանզի էր
գլխաւոր ի նոցանէն Եղիփաս արքայ Թեմնացւոց:
273 Քանզի Եղիփաս եղեալ էր որդի անդրանիկ Իսաւայ,
յորմէ էին որդիք Թեման և Սոփար, որպէս գրեալ
է ի գիրս Ծննդեան: Սոքա էին առաջնորդ որդիք
Իսաւայ. Թեման առաջնորդ որդի Եղիփասու՝ որդւոյ
անդրանկի Իսաւայ, յորմէ և արդարև ազգ Թե-
մնացւոցն անուանեալ է: Ապա ի վերայ ածէ իշխանն
Թեմանու, իշխան Սոփարու. վասն զի Սոփար և
Եղիփաս՝ սոքա վասն որոց այժմ պատմութիւնս գը-
րեալ է, թոռունք էին և սոքա Իսաւայ՝ որպէս և
Յովբն էր. քանզի հայր հաւոյ Յովբայ զԵսաւ
ցուցանեն գիրք Ծննդեան և այս պատմութիւնս:
274 Քանզի և այս Յովբայ գիրքս վասն ազգիս այսպէս

*նշանակեն մեզ. քանզի սա թարգմանի յԱսորի գը-
րոցս, եթէ բնակեալ էր սա յԱւսիտ աշխարհի, ի
սահմանսն Հրէաստանի և Արաբացւոց։ Բայց անուն
էր սմա յառաջ Յովբաբ. և զի՞նչ արդեւք յաւելու-
ցու յայս։ Եւ էր նա ի հօրէ Զարեհի, որդի որդ-
ւոցն Եսաւայ. իսկ ի մօրէ Բոսորայ. իբրև թէ գոլ
նմա հինգերորդ յԱբրահամէ։ Այլ և գիրք Ծննդոցն
ըստ այսմ պատմութեանս նմանս բարբառին. և մե-
ռեալ իսկ Բաղակ և թագաւորեաց փոխանակ ընդ
նորա Յովբաբ որդի Զարեհի ի Բոսորայ։ Իսկ եթէ
Զարեհ ո՞յր որդի իցէ, ի ձեռն յառաջ ասացելոցն
յայտնեաց. քանզի ասէ թէ այս որդիք Հռագուելի,* 275
*Նաքոթ և Զարեհ. իսկ եթէ Հռագուէլ՝ ո՞յր, նոյն
պատմութիւնս յայտնէ. այս անուանք են որդւոցն
Եսաւայ. Եղիփաս որդի Ադայ՝ ի կնոջէ Եսաւայ. և
Հռագուէլ որդի Բասեմաթայ. իսկ ապա Հռագուէլ
Եսաւայ որդի, և Զարեհ Հռագուելի. և Զարեհի՝ Յով-
բաբ՝ որ անուանեալն էր Յովբ։ Իսկ յիրաւի ասի
թէ հինգերորդ էր յԱբրահամէ. վասն զի Իսահակ
առաջին էր յԱբրահամէ, և երկրորդ Եսաւ, երրորդ
Հռագուէլ, չորրորդ Զարեհ. և զՅովբաբ հինգերորդ
թուեաց։ Իսկ այս Եղիփաս ոչ այն էր որ Եսաւայ
անդրանիկն էր. բայց թոռն էր նորա, յանուն ի* 276
*նորա կոչեցեալ։ Գոյնպէս և վասն Սոփարայ ասաս-
ցես, զի ոչ է սա այն՝ որ ի Ծննդեան գիրսն գրեալ
է, որոյ Եղիփաս որդի, այլ Եղիփասու որդի էր.
նոյն անուն կոչեցեալ նմա որ հօրն էր. քանզի այս-
պէս գտցես զժամանակսն արդար ընդ միմեանս հա-
ւանեալ։ Քանզի Բաղդադ ոչ ունէր զթագաւորու-
թիւնն օրինօք, ուստի և ոչ թագաւոր, այլ բռնա-
ւոր կոչեցեալ է. բայց ոչ էր յայտնի մեզ ծնունդ
նորա։ Քանզի պարտ իսկ էր առանց նշանակի լի-
նել նմա, վասն զի ոչ օրինօք ստացեալ էր զիշխա-
նութիւն՝ այլ բռնութեամբ, և զթագաւորութիւնն
բռնութեամբ թշնամանեալ էր։ Իսկ սէրն զոր ընդ* 277
*նմա ունէր Յովբ, ոչ ընդ բռնութիւնն հաճեալ էր,*

*այլ զխաղաղութեան օրէնսն պատուէր։ Իսկ մեք*
*զլեզուս մեր և զմիտս յայն դարձուցուք՝ որ ի կար-*
*գիս կայ։*
*«Եւ միաբանեալ եկին առ նա տեսանել և մխի-*
*թարել զնա»։ Ոչ մի մի եկին, այլ միաբանեալ ե-*
*կին առ Յովբ. կարծէին եթէ բազմութեան ինչ*
*պէտք են առ ի մխիթարութիւն յայնչափ վշտաց.*
*բայց ո՛չ գտին այնպէս զախտն՝ որպէս կարծէին,*
*թէ ընդունիցի մխիթարութիւն. քանզի այս իսկ*
*ցուցանի մեզ ի կարգիս։*
*«Իսկ տեսեալ զնա ի հեռաստանէ՝ ոչ ծանեան, և*
278 *բարբառեալ մեծաձայն լացին, պատառեալ իւրա-*
*քանչիւր զպատմուճան իւր, ցանեալ հող ի վերայ*
*գլխոց իւրեանց, ընդ երկինս հայելով»։ Տեսանե՞ս*
*ո՛րչափ են վիշտք, ո՛րչափ ուժեն ախտք, ո՛րչափ*
*ինչ և որպիսի՛ իսկ գործեն փոփոխմունք կենացս։*
*Բարեկամքն զՅովբ ո՛չ ծանեան, քանզի ոչ տեսին*
*զգեստ ծիրանեացն, և ո՛չ զբարձր աթոռն և ոչ ըզ-*
*թագաւորական պսակն, և զօրականս առ ի սպա-*
*սաւորութիւն, և ոչ ծառայս ի հարկաւորութեան։*
*Բայց աթոռ էր նորա ցամաք երկիրն, և աղբեւքն՝*
*անկողին, և տուն էր նորա օդք եթերաց. և փո-*
279 *խանակ մխիթարչաց՝ կծողք կային առընթեր. ա-*
*մենեքին ծափ զծափի հարկանէին՝ զարմանալով ընդ*
*ողբերգել ի մեծութիւնն, և ոչ ոք ձեռն ձգէր՝ որ*
*զընկեցեալն յարուցանել կարէր յերկրէն։ Յիրաւի*
*ուրեմն յայսմանէ ոչ ծանեան, այլ մեծաբարբառ*
*լային, զանուն բարեկամին հարցանելով*[1], *և պատա-*
*ռէին զպատմուճանս իբրև ի վերայ մեռելոյ, և յու-*
*զարկեցելոյ իբրև ի գերեզման։ Եւ ոչ ինչ թողուին*
*առնել զայն՝ որ անկ էր սգոյ. այլ որչափ մերձե-*
*նային առ Յովբ, յաւելուին յաշխարել։ Քանզի զա-*
*ռաջինն հարցանէին*[2] *զանուն Յովբայ, իբրև ոչ կա-*

1. յՕր. *հարկանելով։*
2. յՕր. *հարկանէին։*

բացեալ ճանաչել, և առ ընթեր կալով։ Իսկ կրկին 280
լացեալ իբրև զմեռեալ, և զպատմուճան իւրեանց
պատառելով, հող ի գլուխ եղեն, այսինքն է հայե-
լով առ ի յերկիրս։ Բայց զի՞նչ նշանակ ի յայտմանէ.
այլ զի զհողն ի վերայ գլխոյ արկին, ագալով զվեր-
ջինս։ Իսկ առ ի յերկիրս, յայտ է թէ յերեսս
երկնից և ի տեսիլ այնորիկ որ բնակեալ է յերկիրս.
քանզի կարծէին եթէ անտի է եկեալ ի վերայ նորա
բազմութիւն տանջանացն։ Ուստի և միանգամայն
իսկ յուսահատեցան զնմանէն. բայց յայտնի հաս-
տատութիւն է այսորիկ, որ ըստ կարգին գայ։

«Իսկ նստէին առ նմա ի վերայ երկրի զեւթն
տիւ և զեւթն գիշեր»։ Եւ նստան առ նմա իբրև ի
վերայ հողակուտի մեռելոյ, և դեգերեցան իբրև առ 281
գերեզմանի. յայտմանէ և ոչ բարբառ արձակէին առ
Յովբ. որպէս յայտ առնէ ըստ կարգիս։

«Եւ ոչ ոք խօսեցաւ ընդ նմա բան»։ Քանզի տե-
սանէին զվէրսն յոյժ և սաստիկ, և նստէին ի վե-
րայ երկրի՝ զօրէնս սգաւորացն կատարելով։ Միան-
գամայն և մխիթարել կամէին զՅովբ, տառապանօքն
նստելով։ Այլ և աթոռ ունել ամաչէին, վասն զի
տեսանէին զայնչափն, զի նստէր ի վերայ աղբեացն։
Բայց խօսէր ոք ոչ ընդ նմա. թերևս կարծէին թէ
և ի մտացն վրիպեալ իցէ։ Ընդ նմա ոչ խօսէին,
բայց ընդ միմեանս թերևս խօսէին, թէ ո՞ւր բա- 282
ւեաց գործել զողբս այսչափ ժամանակս, զիա՞րդ
վայրկեան[1] մի եղև, որ ոչ ակն ունէաք բազում
ժամանակաց։ Ամբարի՞շտ արդեւք էր Յովբ և արդար
կարծէաք, արդեւք աստուածատեա՞ց էր և ի զուր
աստուածասէր կոչիւր. արդեւք բազում բամբաս-
նաց պարտաւո՞ր (ից)էր և մեզ ոչ էր յայտնի, իսկ Ա-
ստուած զնորա ծածկեալսն մերկացոյց, և զկեղծաւո-
րութիւնն յանդիմանեաց, և զգաղտնի անիրաւու-

1. Վ. Զիա՞րդ ի վայրկեան ժամանակս այս ամենայն հասին ի վերայ։

*թիւնսն ի ձեռն չարչարանացն ի մէջ էած։ Զայս*
*առ միմեանս ասէին, թերեւս և զնմանս զայսոցիկ.*
*քանզի տեսանէին զվէրսն յոյժ և սաստիկ, բայց ո՛չ*
283 *գիտէին զի մեծամեծ մարտքն մեծացն վայելէին.*
*զի փրկել զնաւն քաջ ուղղչացն է. թէպէտ և գլո-*
*րեսցի առագաստն, թէպէտ և փշրեսցին ղեկքն, թէ-*
*պէտ և խլեսցին առասանքն, թէպէտ և խարիսխքն*
*կողոպտեսցին, թէպէտ և խռովեսցին ամենայն ալիք*
*ծովուն, թէպէտ և ստէպ ստէպ հողմքն յուզեսցին*
*ի վերայ միմեանց։ Սգային զաղքատութիւնն Յով-*
*բայ, իսկ նա մեծութիւն ունէր մեծագոյն զբարե-*
*պաշտութիւնն. արտասուէին զնորա զանորդութիւնն,*
*իսկ նա ունելով զԱստուած՝ ոչ ցանկայր ժառան-*
*կորդաց. զչարէին՝ տեսանելով զնա յորժամ ի վե-*
284 *րայ աղբեւացն նստէր. չգիտելով եթէ զկաւն ի վե-*
*րայ կաւոյ նստուցանէր բարեպաշտն, իսկ ոգւոցն*
*մարգարիտ ընդ հրեշտակսն խառնեալ էր. յերկինս*
*բնակեալ էր, ընդ վերին զօրութիւնսն զբնակու-*
*թիւնսն և զօթեւանսն ստացեալ էր։ Մանաւանդ զի*
*զհայրն ունէր օթեւանս առեալ առ ինքեան, և հան-*
*դերձ հարբն և զորդին զայն՝ որ ասէր առաքելոցն.*
*«Եթէ ոք սիրէ զիս՝ զպատուիրանս իմ պահեսցէ. և*
*հայր իմ սիրեսցէ զնա, և եկեսցուք և օթեւանս առ-*
*ցուք առ նմա», միասնական երրորդութիւնն հօր*
*և որդւոյ և սուրբ հոգւոյն. նմա փառք յաւիտեանս։*

## Զ

285 *«Յետ այսորիկ եբաց Յովբ զբերան իւր, և անէծ*
*զօրն իւր, և պատասխանի ետ Յովբ և ասէ. Կորի-*
*ցէ օրն այն՝ յորում ես ծնայ ի նմա, և գիշերն՝*
*յորում ասացին եթէ ահա արու։ Եւ ասէ. Օրն այն*
*եղիցի ի խաւար, մի՛ եկեսցէ ի վերայ նորա լոյս,*
*այլ ընկալցին զնա խաւար և ստուերք մահու. եկես-*
*ցէ ի վերայ նորա մէգ. խաւարեսցի գիշերն այն, և*

մի՛ հասցէ ի նա լոյս, և մի՛ խնդրեսցէ զնա տէր ի
վերուստ, և լոյս ի նա մի՛ եկեսցէ, մի՛ եղիցի յա֊
ւուրս տարւոյ, և մի՛ թուեսցի յաւուրս ամսոց։ Այլ
գիշերն այն եղիցի ի ցաւս, և մի՛ եկեսցէ ի վերայ
նորա ուրախութիւն, և մի՛ ցնծութիւն։ Այլ նզովես֊ 286
ցէ զնա, որ նզովելոցն է զօրն զայն, որ զբռամբ ա֊
ծելոց իսկ է զմեծ կէտն։ Խաւարեսցին աստեղք գի֊
շերոյն այնորիկ, մնասցէ՝ և ի լոյս մի՛ եկեսցէ. մի՛
տեսցէ զարուսեակ ծագեալ։ Զի ոչ փակեաց ըզ֊
դրունս արգանդի մօր իմոյ, զի թերևս մերժէր ըզ֊
ցաւս յաչաց իմոց։ Իսկ ընդէ՞ր յորովայնի ոչ վախ֊
ճանեցայ, այլ ելի յարգանդէ և ոչ անդէն վաղվա֊
ղակի կորեայ։ Ընդէ՞ր դիպեցան ինձ ծունգք[1], ըն֊
դէ՞ր դիեցի զստինս մօր իմոյ. զի այժմ ննջեալ դա֊
դարէի, և ննջեալ իսկ հանգչէի ընդ թագաւորս և
ընդ խորհրդականս երկրի՝ ոյք հպարտացեալ էին ի 287
սուրս իւրեանց. կամ ընդ իշխանս՝ որոց բազում
էր ոսկի, որ լցին զտունս իւրեանց արծաթով. կամ
իբրև զվիժած՝ որ ելանէ յարգանդէ մօր իւրոյ,
կամ իբրև զտղայս՝ որ ոչ տեսին լոյս։ Անդ ամպա֊
րիշտք դադարեցուցին զսրտմտութիւն բարկութեան,
անդ հանգեան աշխատեալք մարմնով, ի միասին
յաւիտենականք՝ որք ոչ լուան զձայն հարկահանի։
Փոքր և մեծ անդ են, և ծառայ աներկիւղ ի տեառնէ
իւրմէ։ Իսկ ընդէ՞ր տուեալ է անձանց դառնացելոց
լոյս, և կեանս ցաւագնելոց ոգւովք. որք ցանկան
մահու, և ոչ հասանեն. փորեն զնա իբրև զգանձս, 288
և խնդալից լինին եթէ պատահեն մահու։ Քանզի
մահ՝ մարմնոյ հանգիստ է, յորմէ ճանապարհն թա֊
քեաւ ի նմանէ, զի փակեաց զնովաւ Աստուած։
Յառաջ քան զկերակուրս իմ՝ հեծութիւն եհաս, ար֊
տասուօք և աչիւ նեղեալ եմ, արտասուս և ցաւս
հեղում։ Երկիւղ յորմէ զարհուրեալ էի՝ եկն ի վե֊
րայ իմ, և յորմէ կասկածէին պատահեաց ինձ։ Ոչ

1. Վ. ծունկք։

*խաղաղեցայ, և ոչ դադարեցի, և ոչ հանգեայ. եկն
ի վերայ իմ բարկութիւն»։*

*Արք զորս Աստուած կոչէ և ձգեալ յորդորէ առ
ի բարեպաշտութիւն. որոց փոխանակ առընթերա-*
289 *կայիցս խոստանայ զառ յապայսն, զորս աղաչէ փո-
խանակ մահու ընդունել զկենդանութիւն, զորս ե-
լանել յապականութենէ և զգենուլ զանապականու-
թիւն հրաւիրէ, զորս ոչ դադարէ խրատելով մխի-
թարել և ուսուցանել և պատուիրել։ Մի կուրանալ
ի ժամանակի լոյս. մի արբենալ յորժամ պիտոյ է
զգաստութիւն. մի խնդալ ընդ այն՝ ընդ որ ոգալն
պարտ է. և մի հպարտանալ ընդ այն՝ ուր արժան
է ամաչել, և մի մատնել զվիճակն՝ զոր յետ սակաւ
ժամանակի պահանջելոց են ի մէնջ. և մի մատնել
զմխածինն թշնամեաց, և մի արհամարհել զյոյս՝ զոր*
290 *միայնն ունիմք. մի ժողովեսցուք փուշս ոգւոց։
Քանզի այս է մեծութիւնն, հպարտութիւն և փափ-
կութիւն, և անիրաւ զօրութիւն, և անարժան լիու-
թիւնն, և փառքն սուտ անուանեալք, և ստուերք
աշխարհիս, իբրև տերևք թեթևք, և իբրև զարդի-
ոստայնս, որ ընդունայն այսր և անդր ծփին, որ
ըստ դիպուածոց աշխարհիս գլորին, ըստ նմանու-
թեան ընդդէմ սաստիկ հողմոց թօթափեալ։ Եկայք
կոխեսցուք փութապէս զկամս ցանկութեանց, և ա-
մենևին պարապեսցուք հոգւոց, և միաբանեալք ե-
ղիցուք յօրէնս հոգւոյն, և թշնամիք եղիցուք չըր-
ջանակաց աշխարհիս, և որ ի սմա հոլովք որոգայ-
թից են. թշնամի եղիցի մեզ աշխարհս, զի զԱս-*
291 *տուծոյ զսէրն շահեսցուք։ Քանզի զայս յայտնապէս
ցուցանեն մեզ բանքս Յակովբայ, եթէ «Սէր աշ-
խարհիս այսորիկ թշնամի է առ Աստուած. քանզի
որ կամիցի սէր ունել ընդ աշխարհիս՝ թշնամի Աս-
տուծոյ լինի»։ Իսկ եթէ սէր աշխարհիս թշնամու-
թիւն առնէ ընդ Աստուծոյ, յայտ է եթէ թշնամու-
թիւն աշխարհիս՝ սէր և հաշտութիւն առնէ ընդ
Աստուծոյ։ Իսկ զի՞նչ. ո՞չ Յովհաննէս ըստ նմանու-*

թեան այսորիկ օրինադրեաց. «Սիրելիք, մի՛ սիրէք
զաշխարհ, և մի՛ զայն որ յաշխարհի է. զի ամե-
նայն որ յաշխարհի է՝ ցանկութիւն մարմնոյ է, և
ցանկութիւն աչաց, և հպարտութիւն աշխարհի որ
ոչ է յԱստուծոյ»: Իսկ մեք Աստուծոյ եմք և յԱս-
տուծոյ. և վասն այսորիկ մեզ փախչել պարտ է
յայնմանէ որ ոչ է յԱստուծոյ: Բայց թերևս դու 292
տասցես՝ թէ Աստուած է արարիչ և յօրինիչ աշ-
խարհիս, և արդար իսկ ասես. այլ զաշխարհս աս-
տուածազգեստքն անկոանեն. ոչ զայս որ ի տա-
րերցս Աստուած արար և յօրինեաց, այլ զոր մեք
այլ աղտեղի աշխարհ արարաք անձանց մերոց՝ մե-
րովք վարուք, և զթշնամին չար՝ իշխան կարգեցաք
սմա: Եւ վկայէ իսկ (Տէր), քանզի այսպէս ասէր ցա-
ռաքեալսն. «Եկեսցէ իշխան աշխարհիս այսորիկ և
առ իս ինչ ոչ գտանէ»: Ձի ոչ ընդ վայր ասաց,
եթէ իշխան աշխարհիս. այլ զի մի՛ կարծեսցուք՝ ե-
թէ զայս զերևելի արարածոցս ասիցէ, քանզի չէ
այսր իշխան թշնամին մեր, և ոչ մի՛ ինչ իշխանու- 293
թիւն տարերցս ունի մատնիչն: Այլ զիա՞րդ կամ ո-
րո՞վ յաւելուածով ասէ, «զայս իշխանն աշխարհիս այ-
սորիկ». զոր մեք մեզ արարաք առանց Աստուծոյ
կամացն, և նիւթս տուաք նմա զանհաւատութիւն,
զանհաւանութիւն, զանունկնդրութիւն, և զամենայն
ազգս մեղաց. զորս յայտնագոյն Պաւղոս առակելով
ասէ, նման ըստ տէրունական բանին, այսպէս գրե-
լով առ Եփեսացիսն. «Եւ դուք որ երբեմն մեռեալ
էիք ի մեղս ձեր և ի յանցանս ձեր, և գնայիք ըստ
յաւիտենի աշխարհիս այսորիկ, և ըստ իշխանութեան
օդոյս այսորիկ, որ այժմ են զօրացեալ ի վերայ որ-
դւոցն անհաւանութեան»: Իսկ այլ չարութեան աշ- 294
խարհ մեք գործեցաք, և այլ աղտեղի ստացուածս
յաշխարհի արարաք անձանց մերոց, և այլ աւուրս
կարծեցաք ծննդեան մերոյ, զոր անէծ Յովբ ի ժա-
մուս՝ իբրև զբարեպաշտ, իբրև զարդար, իբրև զա-
ռանց չարութեան. որ ընդ կաւոյն ոչ կամեցաւ ա-

պակասել, և ո՛չ աղխուարկութեանն ծառայել յանձն էառ: Բայց յայտ առնեն բանքս որ վասն Յովբայ ի պատմութեան ասացան:

«Յետ այսորիկ եբաց Յովբ զբերան իւր, և անէծ զօրն իւր»: «Յետ այսորիկ». յետ որո՞յ: Յետ մերկանալոյն յամենայնէ ի մեծ և ի բազում ստա-
295 ցուածոցն: Բայց յայնժամ ոչ անէծս, այլ պայ-
ծառ և ուքանչելի գովութիւնս մատոյց: «Որպէս Տեառն կամք եղեն՝ այնպէս և կատարեցաւ. եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեանս»: Եւ այնչափ անփոյթ արար զանիծիցն, մինչև օրհնութեան փող հըն-չեցոյց, և վիրաւորեալ մանիչն փախեաւ, և յաղ-թահարեալ՝ զայլ դէմս ճգանց խնդրեաց: «Յետ այսորիկ». յետ որո՞յ. ասասցես եթէ յետ չօշա-փելոյ վիրօք զամենայն մարմինս նորա: Բայց սա-կայն և այսմ ամենայնի գոհութեամբ տարաւ, և առեալ զխեցին՝ որով զթարախն քերէր, քնար հարկանել այնու կարծէր աստուածազգեստն, և
296 կատակել զթշնամին, խօսելովն ընդ Աստուծոյ: Մին-չև կնոջն հանդերձ այլովք ախտիւքն նախատեալ ըզ-վէրսն, ինքն առ հասարակ վասն այլոցն մատու-ցանէր զգոհութիւն. «Եթէ զբարիսն ընկալաք ի ձե-ռանէ Տեառն, չարեացս ո՞չ համբերիցեմք». այսինքն եթէ նմա մատուցուք զհամբերութիւնս, որ յառա-ջագոյն մեզ փո(խ) ետ զբազմութիւն բարեացս: Իսկ «յետ այսորիկ». յետ որո՞յ պարտ է իմանալ: Յետ գա-լոյ բարեկամացն և զպատմուճանս պատառելոյ, և յետ թանալոյ զծնօտն ողորմագին արտասուօք և զբազմահեծ բարբառս թողլով ի վերայ նորա, և
297 արկանել հող ի վերայ գլխոյն այնորիկ, և ողբալ զոր պարտն էր պսակել. և յուսահատել որ ոչինչ յուսահատութեան արժանիս գործէր, բայց գոհու-թեան և ամենայն երանութեան: Եւ վասն զի մա-տուցեալք՝ զճգնողն ոչ ողջունեն, և ոչ հարցանեն՝ ե-թէ զիա՞րդ կաս, և ոչ դարմանս վիրացն մատուցա-նեն, և ոչ զցաւովքն սփարին, որովք Յովբ զառաքի-

նութեան զանձն էր ատեցեալ, և ոչ ասացին եթէ
մի վհատիր, զի որ մխիթարէն մօտ է. մի դանդա-
ղիր, զի լուծեալ է թշնամին. և մի նուաղեր, քանզի
կէտն ոչ է հեռի, և յաղթութիւնն հասեալ է ի դուրս։
Այլ լային և ողբային և յուսահատէին զՅովբայ, 298
նայելով ի կեանս առժամանակեանս և ի փառս աշ-
խարհականս՝ որ թօթափելոց են։ Յիրաւի Յովբ դար-
ձուցանել ի նոցանէ զգութ աշխարհիս կամեցեալ, և
խրատել զառողջսն՝ հիւանդն, այսպէս բանիւք բար-
բառի։
«Կորիցէ օրն այն՝ յորում ես ծնայ ի նմա, և
գիշերն՝ յորում ասացին եթէ ահա արու»։ Վասն
է՞ր իսկ սգայք զայսմանէ՝ զորոյ ես սկիզբնն անգոս-
նեմ. զոր(ոյ զմուտն[1]) ատեամ, և զառընթեր (ան)-
ցանելն ոչ կամիմ։ «Կորիցէ օրն յորում ծնայ»։ Ոչ
յորում ստեղծայն, այլ յորում ծնայն, այսինքն է
յորում ծնեալն եղէ. քանզի այսպէս եդին ի հեբրա- 299
յեցւոյ անտի այլ թարգմանքն. «կորիցէ այսուհետև
օրն յորում ծնեալն եղէ»։ Վասն զի Աստուած ի բա-
րիս էստեղծ զիս. իսկ Եւայ պատուիրանազանց
եղեալ՝ ի տրտմութիւնս ծնաւ։ Եւ Դաւիթ իսկ
ոչ էր այսմ անտեղեակ. այլ ուսեալ ի Հոգւոյն, ի
մարգարէական սաղմոսն եդ, և ասէ՝ թէ «ահաւասիկ
անօրէնութեամբք յղացաւ և ի մեղս ծնաւ զիս
մայր իմ»։ Ըստ որո՞ւմ օրինակի։ Այլ թերևս
յետ ի դրախտին յանցանաց, և յետ պատուիրա-
նազանցութեան չուառական փայտին կերակրոյ՝ սկը-
սաւ ծնանել Եւայ։ Վասն այսորիկ զօր ծննդեան՝
գիշեր կոչէ. զի ժամանակն և զայս որոշէ. քանզի
տիւն թերևս գիշեր է, յորում իւրաքանչիւր ոք 300
ծնանի։ Այլ զօր զայն էառ, յորում Եւայ յանցու-
ցեալ՝ լուաւ, եթէ «բազմացուցանելով բազմացուցից
զտրտմութիւնս քո և զհեծութիւնս քո, և ցաւովք

1. Վ. Վասն է՞ր սգայք զայսմանէ, որ ես զսկիզբն բամբասեմ և զմուտն ատեմ։

և հեծութեամբ որդիս ծնցիս»։ Իսկ տիւ կոչէ զնա
վասն ժամանակին, և գիշեր անուանէ վասն անի-
ծիցն՝ որ եղեն ի Նմանէ։ Ի Նմա ասացին իմանալի
սպասաւորքն փարաւոնի՝ եթէ «ահա արու». որք զա-
րուսն սպանանել կամին, յայտ է թէ զբարի խոր-
հուրդսն. իսկ ապրեցուցանել զէգսն՝ յայտ է թէ ըղ-
ցանկութեան կամսն, վասն այնորիկ բարիոք էած ի
վերայ։
«Գիշերն այն եղիցի խաւար»։ Առ ի՞նչ, կամ թէ
301 վասն ո՞յր, լո՛ւր ի կարգէ ասողի։ «Եւ մի՛ խնդրես-
ցէ զնա Տէր ի վերուստ, և լոյս ի նա մի՛ եկեսցէ»։
Ոչ ասաց թէ մի՛ նորոգեսցէ զնա, այլ «մի՛ խնդրես-
ցէ զնա»։ Յայտ է թէ մի՛ այցեսցէ. վասն զի այսպէս
գրեալ է ի Թէոդոտիոնի և յԱկիւղայ թարգմանա-
ծին։ Քանզի այց եղեալ Նմա՝ հարկ է եթէ պատա-
հեալ կործանումն մարդկան ի մէջ եկեսցէ։ Իսկ
յորժամ ոչ լիցի այց՝ ի մոռացումն եկեսցեն անէծքն՝
որ եղան ի վերայ մեր, և հրաման Նորա եղև ի
Նմա. ուստի աղաչէ եթէ «և լոյս ի նա մի՛ եկեսցէ»,
իբրև թէ ամենևին իսկ մի՛ երևեսցին յանցանքն Ա-
302 դամայ, որ եղեն ի Նմա։ Բարեխօսէ և յոյժ իսկ
կամի ածել ի վերայ մատնչին, զայն ժամու զյան-
ցանսն։ «Այլ ընկալցի զնա խաւար և ստուերք մա-
հու», քանզի խաւար է արդարև թշնամին մեր։
Վասն զի որպէս Քրիստոս լոյս է, դոյնպէս նա
խաւար։ Զոր օրինակ Քրիստոս արդարութիւն է,
նոյնպէս և նա մեղք։ Որպէս Քրիստոս աղբիւր
կենաց է և կերպարանք էութեան Նորա, դոյն-
պէս և նա ստուեր մահու։ Մթացուցանէ զմեղա-
ւորս, հանելով յերեսաց լուսոյ. և որք հաւանին
Նմա՝ ընկենու ի խորխորատ, և առ յայնմանէ ձգէ
ի չարաչար մահն մեղաց։ Եւ աղաչէ ճգնողն գալ
ի վերայ Նորա զանէծսն, որ եղեն վասն յանցա-
303 նացն Ադամայ. իբրև զհասարակաց թշնամի, և իբ-
րև զհակառակորդ իւր, յոյժ անիծանէ։ Բայց միան-
գամայն և մարգարէանայ և զառ յապա լինելոցն.

քանզի յայտնապէս եցոյց ըստ կարգիս՝ եթէ զի՞րդ
այսմ և կամ ե՞րբ լինելոց է։
«Եկեսցէ ի վերայ նորա մէգ. խաւարեսցի գի-
շերն այն և մի՛ հասցէ ի նա լոյս»։ Իսկ զի՞նչ է
մէգն, յայտնագոյնս կարէ ցուցանել մարգարէու-
թիւնն Դաւթայ. «Խոնարհեցոյց զերկինս և էջ, և
մէգ ի ներքոյ ոտից նորա»։ Քանզի աստ զմարմինն
տէրունական, որ ըստ բազում օրինակի մէգ եղև
մատնչին։ Քանզի նախ այն իսկ, զի զմարմնացեալ
Բանին Աստուծոյ զպատիւ աստուածութեանն, թէ-
պէտ և ոչ միանգամայն, այլ սակայն մասամբք ինչ 304
թաքուցանէր և ոչ յայտնէր նմա. որպէս զի մի՛ նա
կարասցէ հասանել որ կատարելոցն է խորհուրդն
Քրիստոսի։ Զի յետ այնորիկ ոչ սակաւ խռովութիւնս
արար իմանալի թշնամեացն, և զպատուիրանազան-
ցութեան զօրն և զգիշերն խռովեցոյց։ Քանզի տիւ
էր վասն ժամուն, և գիշեր էր վասն անիծիցն, որ-
պէս յառաջագոյն իսկ ասացաք. զի ձգեալ եհան
զԱդամ ի նմանէն և փոխեաց զանէծսն ի վերայ
պատրողին։ Քանզի այս բնութիւն է խռովչաց, աս-
տի անդր և անդի այսր՝ իբրև յամբոխի, չգիտելով
նոցա որ փոփոխին այսր անդր. ուստի և զառ ի
մէնջ յանցանաց անէծս ի վերայ մատնչին փոփո- 305
խելով՝ խռովութիւն կոչեաց։ Քանզի յորժամ զօրն
ասէ, յայտ է՝ եթէ որ ի նմայն է և որ ի վերայ
նորա՝ զայնմանէ ասէ. քանզի սովորութիւն է աս-
տուածային գրոց առակել ի ժամուց և ի տեղեաց,
և վասն այսորիկ ասաց վասն աւուրն այնորիկ և
գիշերույ՝ եթէ «տարցի զնա խաւար», ի ձեռն խաւա-
րին ակնարկելով զբռնաւորկուն։ Քանզի որ ի նմա
տրտմութիւնքն եղեն՝ ի վերայ վիշապին դարձոյց,
պատրողին և ապստամբի. զի զնմանէն ասէր որ
զայս արար Տեառն, եթէ «իշխան աշխարհիս այ-
սորիկ դատապարտեալ է»։ Բայց պարտ է մեզ չօ-
շափել զզօրութիւն այսորիկ որ ի կարգիս կայ։ 306
«Մի՛ եղիցի յաւուրս տարւոյ, և մի՛ թուեսցի յա-

*ւուրս ամսոց»: Տարի զաւետարանականն ասէ, յո-
րում եղև մեզ քարոզութիւն փրկութեան. իւր իսկ
է բարբառ Աստուծոյ բանն, որ աւասիկ ի ձեռն
Եսայեայ մարգարէի զայս քարոզեաց. «Հոգի Տեառն
ի վերայ իմ, վասն որոյ օծ զիս, աւետարանել աղ-
քատաց առաքեաց զիս. բժշկել զբեկեալս սրտիւք,
քարոզել գերեաց զթողութիւն և կուրաց տեսանել,
կոչել զտարեկան Տեառն ընդունելի և զօր հատուց-
ման»: Բայց որպէս պատշաճ են նմա այս բանք, և
եղելոյն ի նմանէ վասն մերոյ տնտեսութեանն, յայտ-
307 նագոյն զայն առնելով, այլ գործովք եցոյց, որ կայ
յաւետարանին ըստ Ղուկայ գլխոյն. «Եւ եմուտ
Յիսուս ըստ սովորութեան իւրում յաւուր շաբաթու ի
ժողովս նոցա, և տուեալ ցնա գիրս զԵսայի մար-
գարէ, և յարեաւ ընթեռնուլ, և եբաց զգիրսն և
եգիտ զտեղին յորում էր գրեալ. Հոգի Տեառն ի
վերայ իմ, վասն այսորիկ օծ իսկ զիս, աւետարա-
նել աղքատաց առաքեաց զիս, բժշկել զբեկեալս
սրտիւք, քարոզել գերեաց զթողութիւն և կուրաց
տեսանել, կոչել զտարեկան Տեառն ընդունելի»:
Իսկ զի՞նչ ի վերայ էած. «Սկսաւ ասել ցնոսա, այս-
օր լցան գիրքս յականջս ձեր»: Յայս տարեկան
308 մի՛ թուեսցի. այսինքն է մի՛ համարեսցի օրհնազան-
ցութեան օրն, ի տուեալ բարիսն մեզ ի փրկչէն.
յայնմ օրէ տրտմութիւնք մի՛ խառնեսցին, և մի՛
մասամբք ինչ ապականեսցեն անէծքն զպարգևեալ
զօրհնութիւնսն մեզ ի Տեառնէ: Բայց յոյժ յիրաւի
առընթերագրեաց, եթէ «մի՛ թուեսցի յաւուրս ամ-
սոց»: Վասն զի քարոզելով Տեառն սակաւ ամիսս՝
յաւել ի տարիս. քանզի քարոզել յետ մկրտութեանն
սկսաւ նոյնժամայն յորժամ մկրտեցաւ. բայց ոչ
եմք անտեղեակ ժամանակին, զոր կատարէ ի սկըզ-
բանէ `եկեղեցի՝ զտէրունական մկրտութեան զտօնն:
309 Եւ ապա զհրէական զատիկն՝ յորում ելեալ հալա-
ծէր զվաճառականս և զառգնողսն, և ապա ա՛յլ զա-
տիկ առնուլ յետ նորա, զոր հանդերձ աշակերտօքն*

ի Սիոնի ի վերնատանն կատարեաց, յորժամ և
զիւր զատիկն եցոյց. զի ասաց՝ եթէ ի նմին գիշերի
ըմբռնեն զնա որ ի խաչն հանեն։ Զի յորժամ հա-
մարեացիս սակաւ ինչ ամիսս՝ գտցես աւելի քան
զտարին. զոր և յիշեաց և Յովբ, իբրև ի հոգևորա-
կան մարգարէութենէն շնորհս ընկալեալ։ Այլ այն-
չափ միաբանին Յովբայ ասացուածքս ընդ Եսայեայ
մարգարէական բանսն, մինչև ասաց մարգարէն՝ ե-
թէ «տարեկան տեառն ընդունելի», յաւել և «զօր հա-
տուցման Աստուծոյ մերոյ», յայտ է թէ Քրիստոսի։ 310
Քանզի յաւուրն խաչելութեան Քրիստոսի, Աս-
տուածն մեր հատոյց մատնչին, ընկրկեաց զնա՝ որ-
պէս նա ընկրկեցոյց զազգ մարդկան, և պատրեաց՝
որպէս պատրեացն իսկ. և որպէս նա ի ձեռն օձին
զԵւայ պատրեաց, դոյնպէս և նա պատրեաց բար-
ձրացեալ ի վերայ խաչին, որպէս Մովսէս բարձրա-
ցոյց զօձն յանապատին, և խաբեաց զթշնամին հա-
սարակաց։ Քանզի ի ձեռն խաչին իբրև ի մարդ մա-
տուցեալ՝ ըմբռնի յԱստուծոյ, և ի բռնութենէն ան-
կանի, զոր էր ամրացուցեալ իւր ի բազում ժամա-
նակաց. և այսուհետև լինի նմա մարդկան գլորումն,
ոչ առ ի խնդութիւն նմա՝ այլ առ ի ցաւս, վասն 311
միւսանգամ շնորհելոյ յարութեանն։ Զայս գտցես՝
զի ասէ Յովբ ի կարգի աստ։

«Այլ գիշերն այն եղիցի ի ցաւս, և մի եկեսցէ
ի վերայ նորա ուրախութիւն, և մի ցնծութիւն ի
նմա»։ Նմա է գիշեր որ ի ձեռն օրինազանցութեանն
զտիւն գիշեր արար, որով ոչ այնու ինչ նախանձու
կարէ մեզ զամպիտ լինել. վասն զի տեսանէ զայն՝
զոր ինքն պատրելովն եհան ի դրախտէն, զնա Աս-
տուած յերկինս վերացոյց։ Եւ զոր օրինակ ինքն ի
ձեռն փայտին զհին Ադամ ընկրկեաց, ըստ նմին օ-
րինակի՝ և Նոր Ադամ ի ձեռն խաչին, փրկութեան
փայտիւն գլորեաց զնա։ Վասն այսորիկ խնդրէ մի 312
գալ ի նմա ուրախութիւն և ցնծութիւն, զի մի դի-
պեսցի մարդկան այլ օրինազանցութիւն՝ որպէս և

յայնժամ։ Ուստի և Տէրն յայնմ ժամանակի կա-
մեցեալ բովանդակ հատանել զցնծութիւն թշնամւոյն,
և խաչահանուացն զթողութիւն շնորհէ ի ձեռն բար-
բառոյն իւրոյ առ Հայր։ Զայս առակէ և Յովբ ի
վերայ ածելով։
«Այլ նզովեսցէ զնա որ նզովելոցն իցէ զօրն
զայն, որ զբռամբ ածելոցն իսկ է զմեծ կէտն»։
Նզովեսցէ զնա, միանգամայն իսկ և որ ի նմայն ի-
ցէ խափանեսցէ. (և) զնա իսկ նզովեսցէ և դատա-
313 պարտեսցէ, և որ յանձն առնուցու զօրն պատուի-
րանազանցութեան, և որ ի նմայն դատապարտեալ։
Իսկ ո՞ նզովեսցէ. որ նզովելոցն է զօրն զայն։ Զո՞ր.
յայտ է թէ զկատարածին, յորում զբռամբ ածելոց
է Քրիստոս զմեծ կէտն, «զանօրէնութեան մարդն,
զորդին կորստեան, զհակառակորդն և զհպարտա-
ցեալն ի վերայ ամենայն անուանեալ աստուծոյ կամ
պաշտաման, մինչև նստել նմա ի տաճարին Աստու-
ծոյ, և ցուցանել զինքն եթէ Աստուած իցէ», որ-
պէս Պաւղոս Թեսաղոնիկեցւոցն գրէ։ Քանզի նոյն
վասն նորին առ նախին ասէ. «Զոր տէր Յիսուս մա-
շեսցէ հոգւով բերանոյ իւրոյ, և խափանեսցէ յայտ-
314 նութեամբ գալստեան իւրոյ»։ Ուստի և զկէտոսն Թէո-
դոտիոն յայտնագոյնս ցուցանել կամեցաւ. փոխա-
նակ կէտին՝ զվիշապն եդ, և զլևիաթան՝ Ակիւղաս
և Սիւմաքոս։ Քանզի այսու անուամբ և հեբրայա-
կանն կոչէ, զի իմասցուք զնա յայտնի. վասն որոյ
Դաւիթ սաղմոսելով երգեաց. «Վիշապ զայս զոր
ստեղծեր խաղալ նովաւ». քանզի և անդ զլևիաթան
անուանէ զվիշապն։ Այլ կէտ զնա առ այժմ եւթա-
նասունքն յոյժ յիրաւի կոչեցին ցուցանելով, զի
վասն սորա ասէ Յովբ. վասն որոյ առ նա գտցես
զԱստուած ասելով ի կատարածի պատմութեանս.
315 «Բաժանեցին զնա ազգք Փիւնիկացւոց, և ամենայն
ղուղակքն միաբանեալ՝ ոչ բարձցեն զթեփ մի տանոյ
նորա, և ի նաւս ձկնորսաց զխալամ նորա»։ Քան-
զի իբրև զկէտէ խօսի Աստուած, թէպէտ և ի վե-

բազոյն անդ վիշապ անուանեաց, այլ և ձագ իսկ։
Եւ զի՞նչ է այս. այլ զի չար յերկրի է և չար ի ծո-
վու, քանզի այս են կէտք և վիշապք։ Արհամար-
հեալ է ի վերայ երկրի քան զամենայն թռչունս.
յայտ է թէ քան զհրեշտակս տկարագոյն է, որպէս
և ճնճղուկ քան զամենայն թռչունս տկարագոյն է.
ուստի և յորժամ ճնճղուկ զնա անուանեաց, և ման-
կան ասէ կապեալ զնա։ Եւ կամեցեալ յայտնել զտ- 316
կարութիւն նորա ի թռչունս, որ ածելոցն է զսա
զբռամբ՝ նա է որ Նզովէն, այսինքն է, յորում ժա-
մանակի պատրելոցն է զբազում մանկունս, մանա-
ւանդ զորդիս Հրէից, վասն որոց ինքն իսկ ասէ
Տէր, եթէ «Ես եկի յանուն Հօր իմոյ և ոչ ընկա-
լարուք զիս, եթէ այլ ոք եկեսցէ յիւր անուն՝ զնա
ընդունիցիք»։ Քանզի Նզովէ զօրն զայն, յայտ է ե-
թէ և որ ի Նմայն էր, խափանելով զայնս և ոչ թոյլ
տալով երթալ ի գլուխ։ Ուստի և կարճէ զաւուրսն
զայնր ժամանակի. քանզի ասէ, եթէ «Վասն ըն-
տրելոցն կարճեսցին աւուրքն այն»։ Եւ ընդէ՞ր իսկ
զայս առաջի կարգեաց, «Եթէ ոչ էին կարճեալ ա- 317
ւուրքն այն, ոչ ևս ապրէր ամենայն մսեղի»։ Վասն
խնայելոյ ի մեզ՝ անիծանէ զժամանակն զայն Ա-
տուած, յորում պատրել կամի մոլար ոգին. այ-
սինքն, կարճէ և խափանէ զօրն պատուիրանազան-
ցութեան, և անհաստատուն առնէ զեղեալսն ի նմա,
և զերծուցանէ զԱդամ ի հրամանէն եղելոյ յաւուրն
յայնմ։ Այլ սակաւ մի և ըստ կարգիս հայեսցուք։
«Խաւարեսցին աստեղք գիշերւոյն այնորիկ. մնաս-
ցէ՝ և ի լոյս մի՛ եկեսցէ. և մի՛ տեսցէ զարուսեակն
ծագեալ»։ Զի չար գիշերին ասացելոյ աստեղք նո-
րա՝ դևք են. վասն զի կերպարանին ի հրեշտակ
լուսոյ, այլ ի ծագել ճշմարիտ լուսոյն խաւարանան. 318
և համբերեն իւրեանց չարութեամբքն, քանզի այս է
«մնասցենն»։ Իսկ ի լոյս ոչ գան, քանզի ոչ կարեն առ-
նուլ անդրէն զիւրեանց բնաւորութիւնն։ Այլ և ոչ
զարուսեակն զայն տեսցեն ծագեալ, վասն որոյ Ն-

սայր սաէր․ «Արաւսեակն՝ որ ընդ առաւօտն ծա-
գէր»․ ապա ի վերայ ածէ․ «և փշրեցաւ յերկիր», առ
ի ցոյցս՝ եթէ ոչ ևս կարասցէ ելանել յառաջին պա-
տիւն։ Քանզի անկանելով յերկիր, կամեցաւ կորու-
սանել զմարդն․ իսկ Աստուած զօրութիւն ետ որ
պատրեալն էր, կոխել և մանրել զպատրողն։ Բայց
վասն որո՞յ անիծանէն զնա, յիրաւի ոչ թաքոյց․
քանզի ասէ, եթէ
319 «Ընդէ՞ր ոչ փակեաց զդրունս արգանդի մօր իմոյ,
զի թերևս մերժէր զցաւս յաչաց իմոց։ Իսկ ընդէ՞ր
յորովայնի ո՛չ վախճանեցայ, այլ ելի յարգանդէ և
ոչ անդրէն վաղվաղակի կորեայ։ Եւ ընդէ՞ր դիպե-
ցան ինձ ծունգք, և ընդէ՞ր դիեցի զստինս մօր
իմոյ»։ Ցայսմ ի տեղ Յովբ նմանս Երեմիայի բար-
բառի։ «Անիծեալ եղիցի օրն յորում ծնայ ես ի նմա,
և տիւն՝ յորում ծնաւ զիս մայր իմ, եղիցի նզո-
վեալ․ անիծեալ լիցի մարդն որ ետ աւետիս հօր ի-
մոյ, եթէ արու ծնաւ քեզ արու․ ուրախացեալ[1] ե-
ղիցի օրն այն իբրև զքաղաքն՝ զոր կործանեաց
320 տէր սրտմտութեամբ՝ և ոչ զղջացաւ։ Լուիցէ ընդ ա-
ռաւօտս զձայն բարբառոյ, և ի մէջօրէի զձայն ա-
ղաղակի»։ Եւ ո՞ր մարգարէական արդարութիւն է
այս, անիծանել զմարդ՝ որ զորդւոյ ծնունդ՝ հօր
աւետիս տայ․ զի՞նչ իսկ և (զ)ծնեալն ունէր իշխա-
նութիւն սպանանել։ Քանզի ի վերայ ածէ, եթէ
ընդէ՞ր ոչ սպան զիս յարգանդի մօր իմոյ, և ոչ ե-
ղև ինձ գերեզման մայր իմ, և արգանդ յաւիտենա-
կան յղութեանն․ այսինքն է, եթէ լիցի պատճառք
փոփոխմանն ի պատրաստեալ աշխարհն։ Իսկ ապա
յայտնի ուրեմն երկոքին անիծանեն զմատնիչն, որ
հնարի աւետիս տալ իւրաքանչիւր հօր՝ ասելով, ե-
321 թէ արու ծնաւ քեզ արու․ կամելով ինքեան համա-
րել զծնունդն, և յափշտակեալ՝ իւր (ի) ծառայութիւն
կամեցաւ գրել զծնեալն։ Իսկ անիծանէ զնա, վասն

1. Վ․ Ոչ ուրախացեալ։

զի ձգէ զմեր ծնունդս յիւր ծառայութիւն, և ին-
քեան համարի զայս՝ զոր ասեն որդիք Մանիքեցւոց
և ժողովք այլոց աղանդաւորաց, որք ազգին ի նորա
մոլորութենէն, և զայս յանդգնին համբաւել: Իսկ
ո՛չ եթէ արդարև զմեր զիւրաքանչիւր ոք անկանել
յաշխարհս իշխանութիւն ունէր սպանանել, և ոչ
անգամ զյղացեալն յարգանդի մօր, զի զերծուցէ
որ ծնանելոցն էր յաստի ի ցաւոց և ի տրտմու-
թեանց. զորս և յայտնագոյնս իսկ ինքն Երեմիայ 322
զայս ի վերայ ածելով եցոյց. «Ընդէ՞ր է այս ինձ
զի ելի յարգանդէ, տեսանել զցաւս և զվաստակս,
և լցան ամօթով աւուրք իմ»: Քանզի արդարքն
իբրև զարդարս և զախտակիցս յայլոց չարեաց ա-
մաչեն, և զայլոց աղտեղի վարս անձանց ամօթ հա-
մարին, զոր մեղաւորք՝ իբրև զփութալի և զցանկա-
լի մտաց՝ յափշտակեն: Քանզի արդարքն զայս խոր-
հին զնմանէն, որ են իսկ. և Յովբ իսկ ինքնին
յայտնէ զկամս իւրոց բանիցն ասելով. «Զի թերևս
մերժէր զցաւս յաչաց իմոց». զորս և յայտնագոյնս
իսկ Ամբակում մարգարէ եցոյց զայս, իբրև հեծե-
լով ասացեալ զայս ցԱստուած. «Ընդէ՞ր ցուցեր ինձ 323
զցաւս և զվաստակս, տեսանել զտառապանս և զամ-
բարշտութիւնս, զի առաջի իմ եղև (դատա)ստան.
և դատաւորն առն(ոյր կաշ)առս. վասն այսորիկ և
աւր(էնք) ծածկեալ էին»: Եւ որչափ ինչ (մաղ)թէ ի վե-
րայ, իբրև ողբալով ողբայ զմարդկեղէն կեանս.
յայսմանէ փախչին արդարք. վասն այսորիկ իւրա-
քանչիւր ոք ի սրբոցն աղօթելով խնդրէ զաստի հրա-
ժեշտն. և ո՞չ Պաւղոս ասէր, եթէ «Նեղեալ եմ յեր-
կոցունց, ցանկութիւն ունիմ ելանել ի մարմնոյս,
և լինել ընդ Քրիստոսի». իսկ Դաւիթ, «Ցոյց տէր
զվախճան իմ, և զթիւ աւուրց իմոց, զի գիտացից
որչափ ինչ պակասեալ է յինէն». այնչափ ծանրա- 324
բեռն համ(արեալ) էին նմա կեանքս, մինչև զվախճան
իւր փութայր տեսանել: Բարուք իսկ և Յովբայ ա-
ռաց(եալ է, թէ) «Ընդէ՞ր ոչ մեռայ յորովայնի (մօր)

*իմոյ», և զայն ևս յաւել, թէ (երբ) ելի յարգանդէ,
ընդէ՞ր ոչ ն(ոյն ժա)մայն սատակեցայ. այսինքն, եթէ
յերևելի տարերսս էր վայելեալ, բարի էր վայելչու֊
թիւն իբրև զբարւոյ արարածս. սակայն պարտ էր
որոշել՝ յետ տեսանելոյ զայս և ոչ հաղորդել սոցա,
որ տրտմութիւն յաստի կենացս գործէր արդարոց։
Եւ ընդէ՞ր վասն այսոցիկ անիծանէ զմատնիչն. այլ
325 քանզի ինքեան համբաւէր լինել գյօրինուածս մե֊
րոց մարմնոցն, ամբաստանելով իբրև թէ ինքն
ունիցի իշխանութիւն աշխարհիս այսորիկ, և զա֊
նէծսն ընդունի ի վերայ անձին իւրոյ, յայնցանէ
որք զչարին ընդ տրտմութիւն աշխարհիս։ Վասն է՞ր
իսկ և անդէն յարգանդի ոչ ապականէ զծնունդսն,
և կամ թէ նոյն ժամայն իբրև (ելա)նէ յարգանդէն,
եթէ ունի իշխանութիւն յօրինուածի մարմնոյս մե֊
րոյ. վասն զի հպարտանայ իշխանութիւն ունել ի
վերայ աշխարհիս։ Ապա յետ այսորիկ չինել կամի
զբանս իւր, և զկամսն իւր յայտնելով յաւել (զայս)։
Եթէ «Ընդէ՞ր դիպեցան (ինձ ծուն)գք, և ընդէ՞ր
326 դիեցի զստինս մօր իմոյ»։ Այսինքն է, եթէ ընդէ՞ր
դիպեցայ մանկութեան ծնողին, կաթամբ սնեանցն
սնանելով և կամ ծնկաց սողելոյ. քանզի յայնմանէ
յայս հասակ յառաջեալ հասի, որ ինձ ոչ ինչ թուի.
բայց ձեզ այնչափ մեծ համարեալ է, մինչև ողբայք
զՅոպբ, ոչ ինչ անիրաւութիւն գիտելով զնորա, և
ոչ զամպարշտութիւն ուսեալ՝ յորոց վերայ պարտ էր
ողբալ. այլ զկորուստ մեծութեանն արտասուէք, և
զապականութիւն մարմնոյ. բայց ես այսչափ վասն
այսորիկ համբերեմ, միանգամայն իսկ և զմեծու֊
թեան և զմարմնոյ և զամենայն որ ին(ձ ի) պէտս
327 կենաց. զհրաժեշտն երանելի համարիմ։ Ո՞չ զայս իսկ
ցուցանէ որ ի կարգիս կայ, առանց իրիք երկմտու֊
թեան։*

*«Զի այժմ հանդարտեալ դադարէի, և ննջեալ
հանգչէի ընդ թագաւորս և ընդ խորհրդականս եր֊
կրի, ոյք հպարտացեալ էին ի սուրս իւրեանց. կամ*

ընդ իշխանաւորս՝ որոց բազում էր ոսկի, որ լցին
զտունս իւրեանց արծաթով. կամ իբրև զվիժած՝ որ
ելանէ յարգանդէ մօր իւրոյ, կամ իբրև զտղայս՝ որ
ոչ տեսին լոյս»: Քանզի վայելել յարարածս Աս-
տուծոյ ցանկալի է. և հասանել ի մարդկութիւն և
զկերպարանս Աստուծոյ առնուլ՝ երանելի է, բայց ո՛չ
յամել ի կենցաղիս յայսմիկ յաղտեղութեան՝ որ (ան-
զգա)մաց յափշտակելի է, և արդարոց ոչ ցանկալի, 328
և ոչ աստի հրաժեշտն տրտմութիւն. քանզի հան-
գիստ է և յաշխատութեանց զերծումն. և մահն
քուն է, և հանգիստ է փոխել ի մարմնոյս: Այլ ըն-
դէ՞ր իսկ ողբայք զայս, որ ոչ առ ումեք սովոր է
յամել և յերկարել: Քանզի ո՞ւր են թագաւորք եր-
կրիս՝ որ էին յառաջին ժամանակին, կամ ո՞ւր են
որ բազում ոսկւով մեծացեալ իշխանք էին, կամ
զի՞ եղեն որք ի սոցա մայրենի արգանդի վախճա-
նեցան, և կամ թէ նոյն ժամայն ընդ ծնանելն վախ-
ճանեցան, զի փոխեալք յերկրէ լաւագոյն եղեն:
Արտասուէք զՅովբ, զի անապատացեալ եղէ ի զօ-
րականաց և ի բարեկամաց և յընտանեաց. թէպէտ 329
և մեռեալ էի, այլ ընդ թագաւորս և ընդ խորհըր-
դականս երկրիս լինելոց էի. այսինքն է, որք բա-
զում բարեկամս և խորհրդակիցս ստացեալ էին,
այլ և զօրականաց բազմութիւն՝ ոյք ունէին զառա-
ւելութիւն զինուց, և պարծէին ի սուրս իւրեանց:
Զի՞ արտասուէք զՅովբ՝ որ զնիւթս մեծութեան ի
բաց ընկէց. այլ թէպէտ և մեռեալ էր, թերևս ընդ
իշխանս էր՝ որք բազում գանձս կուտեալ ունէին ի
ստացուածոց իւրեանց: Զա՞ր ինչ ախտանալ վասն
որդւոցն կարծէք, և չա՞ր որդւոցն ախտանալ համա-
րիք, զի մինչև հ(աս)եալ էին յամուսնութիւն, և 330
մինչեւ առագաստ կապեալ, և մինչև զպտուղ որդ-
ւոցն տեսեալ էր՝ հրաժարեցին յերկրէս: Իսկ նոքա
յայն դաս գնացին, ուր էին վիժածք արգանդի, և
որ յառաջ քան զժամն վախճանեալ մանկունք էին:
Բայց ընտրութիւն ինչ ոչ էր ընդ նոսա, որ յետ

բազում ժամանակաց ի ծերութեան վախճանեցան,
և ոչ բազմամեայն առ փոքր ժամանակեայն. քան֊
զի յորժամ վախճանին կեանքս, շատակեացն և սա֊
կաւակեացն ոչ ընդհատ են ի միմեանց: Բայց ըստ
վայելչութեան կենացն է ընտրութիւն. զոր օրինակ
որ շատն ըմպիցէ և որ սակաւն, յետ դարձուցա֊
331 նելոյ ի վեր կամ հալելոյ, ոչ ինչ ընտրութիւն ու֊
նին ի միմեանց, դոյնպէս և նոքա: Բայց որո՞ց դա֊
սուց՝ առ որս իցեն որոշմունք, ես ասացից, արդա֊
րոց առ մեղաւորս. բայց զոցանէն ցուցանէ որ ի
կարգիս կայ:
«Անդ ամպարիշտք դադարեցին զսրտմտութիւն
բարկութեան, անդ հանգեան աշխատեալք մարմնով,
ի միասին յաւիտենականք՝ որք ոչ լուան զձայն
հարկահանի»: Քանզի ամպարիշտք յայտ է թէ մե֊
ղաւորք են. և ըստ որում օրինակի պարտն է՝ ոչ
պաշտեն զԱստուած. քանզի նա կամի պաշտել բա֊
նիւք և գործովք և խորհրդովք. իսկ սոքա յետ
332 աստի հրաժարելոյն բորբոքեն զսրտմտութիւն դա֊
տաւորին, ոչ փոխեալք յայն՝ զոր նայն հրամայեաց:
Իսկ աշխատեալք մարմնով՝ որք ճնշեցին զիւրեանց
մարմինս, յայտ է թէ զի մի՛ շարժեսցին յանարժան
ցանկութիւնս, կամ թէ աշխատեալք մարմնով ի
գործս առաքինութեանց. սոքա ժառանգեն զհան֊
գիստն յաւիտենական, և միանգամայն լնուն յար֊
քայութեան երկնից, և յաւիտենականք լինին ի բա֊
րիսն յաւիտենականս: Վասն զի ձայնին հարկահա֊
նին ոչ լուան, որ հանէր զհարկ մեղաց իւրոց, որք
ամենևին յականջս իւրեանց զայն ոչ արկին: Իսկ
ոմանք լսելով՝ ստունկանեցին և ոչ արկին ի միտս
333 իւրեանց, զոր հրամայէր կամ յորդորէր զնոսա ի
չարիս: Յայսոցիկ ի վերայ և զայս ևս յաւելու Յովբ,
դադարելոյն և զոչ յաջողելոյն զընտրութիւն:
Քանզի յորժամ աստի գնասցուք՝ դադար է, զի
«Փոքր և մեծ անդ է, և ծառայ աներկիւղ ի տեառ֊
նէ իւրմէ»: Փոքր մեծութեամբ, կամ գեղով, կամ

ուժով և կամ զօրութեամբ մարմնոյ, և մեծք նո-
վիմբ անդ են. և ոչ պատուի անդ՝ որ լեալ է ի
մեծութեան երկրիս, և ոչ փոքրն արհամարհի. քան-
զի ոչ եթէ աստի քաղաքաւորութիւնս զանտի զօ-
րութիւն ունի, ուստի և ծառայք անդ ո՛չ երկնչին
ի տերանց իւրեանց։ Բարիոք իսկ և յայտնագոյնս
գրեաց զայս Սիմաքոս, «և ծառայ ազատ ի տեառնէ
իւրմէ». իբր ոչ ուրուք գոլ անդ ծառայ, և ոչ ծա- 334
ռայութիւնս այս զոր հարկանեն տերանց իւրեանց։
Բայց ոչ է մոռացեալ Յովբայ, զոր ասաց յառաջին
բանն։ Քանզի պատասխանելով վասն նոցա, և մեզ
ուսուցանելով զպատճառն վասն որոյ զայն ասաց՝
յիրաւի և զայսորիկ կարգիս կայ՝ լծեաց ընդ այնմ։
«Իսկ ընդէ՞ր տուեալ է անձանց դառնացելոց ըղ-
լոյս, և կեանս ցաւագնելոց հոգւով. որք ցանկան
մահու, և ոչ հասանեն. փորեն զնա իբրև զգանձս, և
խնդալից լինին, եթէ պատահեն մահու»։ Ի դառ-
նութիւն են ի կենցաղիս յայսմիկ ամենայն արդարք,
զորոյ և ասացաւ, եթէ «Բազում նեղութեամբք
պարտ է մտանել մեզ յարքայութիւն Աստուծոյ». 335
որ զմոխիր իբրև զհաց ուտեն և զըմպելիս իւրեանց
խառնեն արտասուօք, անցանել ընդ աստի փոր-
ձանս այսպէս հնարիւք կամեցեալ. սոյնպէս ի տա-
ռապանս են, և վկայէ Դաւիթ ասելով. «Լուացի զա-
մենայն գիշերս զմահիճս իմ, արտասուօք իմովք զան-
կողինս իմ թացից»։ Եւ սոքա մահու ցանկան, բայց
ոչ եթէ յորժամ ցանկան՝ պատահեն. բայց միայն
որ կապեացն՝ նա լուծանէ. որ զօդացուցանէ զմար-
մինն՝ նոյն դարձեալ և ի ժամանակի քակէ զոգին
ի մարմնոյն, յորժամ և կամիցի. բայց զի ցանկան
մահու և փորեն իբրև զգանձս, վկայէ ինձ Եղիա
ասելով. «Շատ է ինձ, ա՛ռ Տէր զհոգի իմ յինէն. 336
զի ոչ եմ ես լաւ քան զհարս իմ»։ Վկայէ իսկ և
Պաւղոս, յորժամ որք ի Կեսարիա աշակերտքն էին,
և արգելուին զնա ելանել յԵրուսաղէմ, ահաւասիկ
այսպէս ասէր. «Զի՞նչ գործէք լալովդ, և զհոգիս ի

ներքս ճմլեցուցանէք· զի ես ոչ միայն ի կապել պա-
տրաստ եմ, այլ ի մեռանել յԵրուսաղէմ»: Բայց
ոչ յայնժամ պատահէր այնմ, այլ յետ սակաւ ժա-
մանակի առաքեալ լինէր ի Հռովմ: Իսկ անդ բա-
զում ազգաց քարոզեալ, յայնժամ վախճանէր անդ
ըստ Աստուծոյ հրամանին, և համեալ ցանկութեանն՝
այնչափ լինէր խնդալից՝ մինչև ասէր· «Զի ես արդ
այսուհետև նուիրեալ եմ, և ժամանակ դարձի իմոյ
337 համեալ է· զճգունս բարիոք ճգնեցայ, զընթացս կա-
տարեցի, զհաւատս պահեցի, այսուհետև կայ մնայ
ինձ արդարութեան պսակն»: Յօժարութեան էին
բանքս այս և յոյժ խնդութեան· կայ ըստ այսմ ըստ
առաջին արդարավայելուչ իմաստասիրութեան մր-
տացս, և որ ի կարգի սաստ են բանքս Յովբայ:
«Քանզի մահ՝ մարդոյ հանգիստ է, յորմէ ճանա-
պարհն թագեաւ ի նմանէն, զի փակեաց զնովաւ
Աստուած»: Այր կոչէ զարդարև այրն, որ զքաջու-
թիւնս զմտաւ ածէ, և զերանութիւնս զայն ան-
ձին պահէ· զոր և Դաւիթ ի գլուխ մարգարէական
սաղմոսարանին գրեաց· «Երանեալ է այր որ ոչ
338 գնաց ի խորհուրդս ամպարշտաց, և ի ճանապարհի
մեղաւորաց նա ոչ եկաց, և յաթոռս ժանտից ոչ
նստաւ»: Այլ զայրն զորմէ՞ ասէ· զարդարոյն ասէ·
քանզի մահ նմա է հանգիստ: Քանզի թափելով յաս-
տի ցաւոցս, առ ի հատուցման հանգիստն երթայ·
միշտ իսկ այսմ ցանկացեալ, բայց ոչ գիտէ, թէ
ե՞րբ այսպիսի ցանկութեանց դիպեսցի: Քանզի թա-
քուցեալ է նորա ճանապարհն, այսինքն ելքն աս-
տի, յորո՞ւմ ժամանակի և կամ թէ ընդ որպիսի՞
ելս եղիցի· քանզի փակեաց զնովաւ Աստուած
զայսպիսի գիտութիւն, այսինքն է թէ «իմացոյց»,
քանզի Ակիւղաս այսպէս գրեաց, զի զամենայն ա-
339 ւուրս նմա ակն կալցեն, և այնպէս պատրաստ եղի-
ցին: Եւ մի՛ խռովեցուսցէ զքեզ բանս, եթէ զիա՞րդ
առ ի վնաս արգել և փակեաց Աստուած գիտել
զաստի զելսս· քանզի որ ընդդէմ մարդոյն թուի՝

*առ ի յօգուտ նմա իմացիս. որպէս Ակիւղաս գը-*
*րեաց։ Միանգամայն իսկ և մտացս միտ դիցես. զի*
*Հարք և դաստիարակք և կամ եթէ այլ ոք ի հոգա-*
*բարձուաց իբրև ընդդէմ ուրուք դուրս փակեն, ընդ*
*որս նոցա մտանել չէ օգուտ, և որ ընդդէմն նոցա*
*թուի՝ վասն օգտի նոցա գտանի, դոյնպէս և Աս-*
*տուած փակելով զդուրս աշխարհիս, այսինքն է ըզ-*
*գիտութիւն ժամանակին՝ թէ երբ և կամ որպէս ե-*
*լանէ, փակեաց զմեւք, ոչ առ ի վնաս մեզ, այլ* 340
*յոյժ առ ի յօգուտ փակեաց. զի այնմ տեղի գըտ-*
*ցի զոր պատուիրեաց իւրոց աշակերտաց, եթէ «Ար-*
*թուն կացէք, զի ոչ գիտէք յորում ժամու եկեսցէ*
*տէր ձեր»։ Քանզի զոր ասացեալն է առ յօգուտ*
*հասարակաց՝ զայն պատրաստէ իւրաքանչիւր ումեք*
*անձին համարել։ Այս այսպէս լինելով՝ տես զոր-*
*պիսի՛ կնիք առ այժմ եդ Յոբ, եթէ*
*«Յառաջ քան զկերակուրս իմ՝ հեծութիւն եհաս,*
*արտասուօք և ահիւ նեղեալ եմ. արտասուս և ցաւս*
*հեղում, երկիւղն յորմէ զարհուրեալ էի եկն ի վե-*
*րայ իմ, և յորմէ կասկածէի պատահեաց ինձ։ Ոչ*
*խաղաղեցայ, ոչ դադարեցի, և ոչ հանկեայ, և եկն* 341
*ի վերայ իմ բարկութիւն»։ Հարցանել ցՅոբ և*
*խնդրել պարտ է, եթէ երկիւղն յորմէ զարհուրեալ*
*էր, այսինքն է, վասն որոյ զարհուրեալն էր՝ եկն ի*
*վերայ նորա, զիա՞րդ դարձեալ ըմբռնեալ էր ընդ*
*երկիւղիւ. թէ արդեւք ցուցանիցէ՞ այս՝ թէ որպէս լի*
*էր այրն իմաստասիրութեամբ, զի ոչ իսկ էր վստահ*
*յերևելիսս, գիտելով թէ ամենայն առանց հաստա-*
*տութեան է, յողդողդ և դիւրափոխ. բայց սակայն*
*երկիւղն ոչ ստեաց նմա, այլ եկն ի վերայ նորա,*
*յորմէ զարհուրեալն իսկ էր։ Բայց երկիւղն մեծ*
*վասն իմանալեացն երկնչի. վասն որոց և արտասուէ,*
*և մինչև կերեալ հեծէ. ոչ զայն ագալով զոր* 342
*կարծէին բարեկամքն, այլ յայլում երկիւղի ըմբըռ-*
*նեալ էին ոգիքն, եթէ գուցէ զներքին մեծութիւնն*
*կողոպտիցէ թշնամին, եթէ գուցէ ի բարեացն յայն-*

*ցանէ կարասցէ մերկացուցանել, յորմէ վրիպել կա-
րի եղկելի է։ Իսկ եթէ ոչ ոք հեղգասցի, ոչ կա-
րասցէ թշնամին հանել ի նմանէն. քանզի այն ու-
նի որ ոչն հեղգայ, և զգաստանալով և աղօթելով
և արտասուս խառնելով ի բաժակն բարեխօսու-
թեան՝ բաւական է առնուլ առ յօգնութիւն զաջն
Աստուծոյ. զի կարող է պահել երկիւղ նորա, վասն
այսօրիկ երկնչի։ Իսկ որ վասն երևելեացս երկնչի,
և վասն ստացուածոցս իմանալ փականս, և հոգ տա-
343 նելով վասն անձին և որդւոց առողջութեան, և այլ
ինչ զգուշութիւնս իմանալով վասն երկրաւոր ստա-
ցուածոցս, ընդունայն հնարագիտութիւն վաճառա-
կանութեան է այս, և յայտնի ախտանայ զայն, որ-
պէս և գրեալ է ի սաղմոսին. «Անդ երկիցեն երկիւղ,
ուր ոչ իցէ երկիւղ». այսինքն է՝ թէ երկնչին ուր ա-
ւելորդ համարեալ է երկիւղ, և ոչ կորուստ է վնա-
սակար, և ոչ հզօր՝ պահպանութիւնն։ Զայս դէմ
յանդիման վկայեաց Յովբ ասելով. «Ոչ խաղա-
ղեցայ և ոչ դադարեցի և ոչ հանգեայց, և եկն ի
վերայ իմ բարկութիւն»։ Ոչ խաղաղեցաւ հոգալով
վասն որդւոցն, և ոչ դադարեաց տանել զամենայն խը-
նամս վասն նոցա, և ոչ հանգեաւ, վասն զի պա-
344 տարագս զամենայն աւուրս վասն նոցա մատուցա-
նէր։ Բայց սակայն եհաս նմա բարկութիւն, զոր
ընկալաւ վասն ապականութեան որդւոցն, հանդերձ
մեծութեամբն և մարմնովն իւրով։ Քանզի արդարն
թէպէտ և յոյժ եղիցի արդար, թէպէտ և ամենայ-
նիւ հաճոյ իցէ Աստուծոյ, այլ ոչ է հնար նմա ա-
ռանց փորձութեան աշխարհիս կեալ. ոչ կարէ լինել
առանց տրտմութեան աշխարհիս, որպէս և Տէրն
ասէր ցառաքեալսն. այլ և Պաւղոս իսկ ասէ, եթէ
«Որ կամի բարեպաշտութեամբ կեալ ի Քրիստոս
Յիսուս՝ ի հալածանս կեցցէ». զայս առ Տիմոթէոս
գրէր։ Այլ և Քրիստոս ասէր, եթէ «Քաջալերեցա-
րուք ես յաղթեցի աշխարհի», և դարձեալ ասէ,
թէ «Որ համբերիցէ մինչ ի սպառ՝ նա կեցցէ», զօ-*

րութեամբ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն. Նմա 345
փառք յաւիտեանս յաւիտենից։

## Է

«Կրկնեալ անդրէն Եղիփազու Թեմնացւոյ ասէ.
Միթէ բազո՞ւմ անգամ լեալ իցեն քո բանք աշխա֊
տութեամբ, և զօրութեան բանից քոց ո՞ հանդար֊
տեսցէ։ Զի եթէ դու խրատեցեր զբազումս, և ըզ֊
ձեռս տկարաց մխիթարեցեր, և զհիւանդս կանգնե֊
ցեր բանիւ, և ծնգաց կթոտելոց զքաջալերութիւնս
զգեցուցեր, արդ եկին ի վերայ քո ցաւք և մերձե֊
ցան առ քեզ. բայց դու փութացար։ Ո՞չ ապաքէն
երկիւղդ քո է յանզգամութիւն, յոյսդ քո և ան֊
չարութիւն ճանապարհի քո։ Արդ յիշեա՛, ո՞ ոք որ
սուրբ էր՝ կորեաւ, և կամ ե՞րբ ճշմարիտք արմա֊
տաքի խլեցա՞ն։ Զոր օրինակ տեսի զայնոսիկ որ զան֊ 346
պատեհսն արօրադիր առնեն, ոյք սերմանեն զնա՝
ցաւս հնձեսցեն անձանց։ Ի հրամանէ Տեառն կորի֊
ցեն, և ի բարկութենէ հոգւոյ նորա ապականեսցին։
Զօրութիւն առեւծու, գոչիւն մատակ առեւծու, պեր֊
ճութիւն վիշապաց՝ շիջաւ։ Մրջիւնառեւծ սատակե֊
ցաւ առ ի չգոյէ կերակրոյ, կորիւնք առեւծուց լքին
զմիմեանս։ Եթէ էր ինչ բան ճշմարիտ եղեալ ի խօսս
քո, և ոչ մի ինչ յայս(ց) չարեաց պատահեալ լինէր
քեզ։ Իբրև թէ ո՞չ ունիցի ունկն իմ հրաշակերտս
ի նմանէ։ Քանզի հրաշալիք ի նմանէ արհաւիրք
և բոմբիւնք գիշերւոյ. զի հասանեն զարհուրեցու֊
ցանել զմարդիկ, դողումն և սոսկումն պատահեցին 347
ինձ, և մեծապէս զոսկերս իմ խռովեցուցին։ Եւ
եկն հողմ ի վերայ երեսաց իմոց, քստմնեցին հերք
իմ և մարմինք իմ։ Տեսի և ոչ էին կերպարանք
առաջի աչաց իմոց. բայց միայն օդ և սօսափիւն
լսէի։ Իսկ արդ՝ մի՛ եթէ սո՞ւրբ լինիցի մարդ
առաջի Տեառն, կամ ի գործոց իւրոց անա֊

րա՞տ այր. եթէ ծառայից իւրոց ոչ հաւատայցէ, և
զհրեշտակաց խո(տո)րագոյնս ինչ իմացաւ: Իսկ արդ
թողո՞ւ զբնակեալսն ի տունս կաւեղէնս, յորոց և ին-
քեանք ի նմին կաւոյ եմք. եհար զնոսա ըստ օրի-
նակի ցեցոյ. և յառաւօտէ մինչև յերեկոյ ոչ ևս ի-
ցեն: Քանզի անձամբ անձին օգնել ոչ կարէին, կո-
348 րեան: Փչեաց ի նոսա և պակասեցին. և քանզի ոչ
գոյր ի նոսա իմաստութիւն, կորեան: Արդ՝ աղէ դու
կարդա, եթէ ոք լուիցէ քեզ, կամ եթէ զոք ի հր-
րեշտակաց սրբոց տեսցես: Քանզի և զանզգամս ըս-
պանանէ բարկութիւն, և զմոլորեալն մեռուցանէ
նախանձ: Նա՝ ես տեսի զի անզգամաց արմատս ար-
ձակեալ էր, բայց վաղվաղակի հարան յարկք նոցա:
Հեռի եղեն որդիք նոցա ի փրկութենէ, կողկողեա-
ցին նոքա առ դրունս վաթթարաց, և ոչ ոք իցէ որ
փրկեսցէ: Քանզի զոր նոքայն հնձեցին՝ զայն ար-
դարք կերիցեն, և նոքա ի չարեաց ապրեալ մի՛
գտցին, և ծծեսցի ի նոցանէ զօրութիւն: Քանզի ոչ
349 ելցէ յերկրէ աշխատութիւն, և ոչ ի լերանց բըղ-
խեն ցաւք: Այլ մարդ աշխատութեամբ ծնանի,
ձագք անգեղց ի բարձունս թռչին»:

Քանից(ս) անգամ յեկեղեցի Աստուծոյ ժողովիմք՝
կոչելով զմեզ սուրբ Հոգւոյն, ընդարձակել պարտ է
զշտեմարանս ականջաց և պատրաստել զաման մը-
տաց, զի մի՛ ինչ կորուսցուք յայնմանէ, առանց ո-
րոց զկեանս շահել ոչ կարեմք. և ոչ զքաջաբեր ա-
գարակ առաքինութեան վարս ստանալ կարեմք, և
ոչ լի պտուղս մատուցանել Քրիստոսի, զոր պատուի-
րեաց մեզ վարել տնկել և սերմանել: Միանգամայն
իսկ ասեմ, և ոչ համարձակութեամբ կալ առաջի
թագաւորական ատենին, յորժամ եկեսցուք առաջի
350 ահագին և փառաւոր դատաւորին, ըստ կարգի կե-
նացս մերոց հատուցանել զպարտիս, յորժամ գը-
տանել տեղի պատասխանատուութեան երանելի է,
և ստանալ վշտակից դատաւոր և ոչ սաստիկ: Որ
կոչէ դատաւորն առ ի տեսանել և ոչ հալածէ,

քաղցր խօսելով և հանդարտ դիմօք. որ ընդ հայելն
ժպտի, և ոչ տեսմամբ ահագին աչաց զերեսս դար-
ձուցանելով: Որ ձևովքն ցուցանէ՝ եթէ զայրանայ
յորժամ ոք ցասուցանէ, և սրտմտի՝ յորժամ գտա-
նէ զծառայն յանհաւանութեան, յետ այնչափ ըն-
դունելոյ զբարիս: Սպառնայ և բարկանայ, յորժամ
բազում անգամ կոչեցեալ զմոլորեալ ոչխարն՝ և ոչ 351
լուիցէ ձայնի նորա. այլ և բարձեալ հովուին ի վե-
րայ ուսոց իւրոց, և վազեալ ի բաց անկանիցի. ընդ
որովք և մեք մի՛ անկցուք: Ե՛կ իսկ և քննեսցուք
զօրէնս Աստուծոյ, և ամենեցուն ըստ կարգի ի
ճգանց և ի վարուց ի վերայ հասցուք. տեսցուք
զի՞նչ և ուստի՛ է նոցա կռիւն. զորպիսի՛ ընկալան
զնչանն. և զորպիսի՛ առին զյաղթութիւն: Զի եթէ
լուիցես զծառայութիւնն Յովսէփու, զսկիզբն և ըզ-
վախճան ծառայութեանն քննեա՛. քանզի սկիզբն՝
էր ծառայութիւն, և վախճանն՝ եղև թագաւորու-
թիւն: Եթէ լուիցես և զհալածանսն Դաւթայ ի
Սաւուղէ, խնդրեա՛ և զպատճառս հալածանացն. 352
քանզի մանաւանդ հաւատովք սպանաւ Գողիադ և
ոչ զինու. և Սաւուղ նախանձելով ընդ նմա, զոր
պարտ էր առնուլ բաժանորդ թագաւորութեան իւ-
րոյ, նա հեռացուցանել զնա կամեցաւ հալածանօք:
Եթէ գտցես և զՅովբ նախատեալ ի բարեկամաց,
քննեա՛ տես թէ ուստի՛ լինին նախատանքն և յի՞նչ
վախճան հասանեն: Քանզի նախատեն բարեկամքն
զՅովբ, ամպարիշտ և ոչ բարեպաշտ համարին ըզ-
ճգնողն, կարծելով զնմանէն չարիս. բայց ոչ ի
գործոց իւրոց դատապարտէին զնա, այլ զոր էած ի
վերայ նորա թշնամին՝ յայնմանէ դատապարտէին.
զոր էած ի վերայ նորա ըստ Աստուծոյ թողացու- 353
ցանելոյ: Բայց որ թողացոյցն ոչ յամէ, այլ նախ
դնէ զճգունսն, և ապա պսակէ զճգնողն, և զնախա-
տինս բարեկամացն բառնայ վկայութիւնն Աստու-
ծոյ: Բայց զի ոչ յարժանի նախատեն բարեկամքն
զՅովբ, ուսուցեն քեզ որ վասն նորին պատմու-
թեան բանքս են:

«Կրկնեալ անդրէն Եղիփազու Թեմնացւոյ ասէ»:
Քանզի սա Յովբայ ազգակից իսկ էր, որպէս յա-
ռաջագոյն յասացեալսն մեր ցուցաք. այլ և ոչ ըստ օ-
րինի ազգակցութեանն ամաչէ. բայց այնպէս խօսի
ընդ Յովբայ, իբրև թէ զանչարժ և զքաջն և զհաս-
354 տատունն աշտարակն գլորեցուցանել կամեցեալ: Ուս-
տի և ոչ գրեաց զնմանէ պատմութիւնս՝ եթէ ընդ
վայր ասաց, այլ կրկնեալ պատասխանեաց: Զի որոց
տեսեալ զմրցմունս ըմբշացն[1], և կամ եթէ լուեալ
յայլոց տեսողացն, գիտէք եթէ զիա՞րդ կռուելովն
ըմբռնեն զմիմեանս, կամ զձեռանէ կամ զոտից կամ
զուլանէ և կամ զայլոց անդամոց. որպէս զի մինն
զմիւսն կամիցի գլորել: Վասն այսորիկ և ի սկզբա-
նէ ոչ ասէ, թէ կրկնեալ պատասխանէր Յովբ, այլ
միայն, եթէ բաց զբերան իւր. քանզի ոչ զայն իսկ
ասէր, որովք կարծէր եթէ կռիւ ընդ բարեկամսն
յարուցէ, այլ զայնց ասէր՝ որովք ածիցէ զնոսա ի
355 վշտակցութիւն: Իսկ Եղիփազ կրկնելով ասէր, մա-
տուցանել ճգունս բանիւքն. դոյնպէս և մատնիչն
կրկնելով պատասխանէր Տեառն, վասն զի կամէր
ընկրկել զճգնողն նորա: Քանզի յասացելոցն յայն-
ժամ սկսանէր պատերազմել ընդ Յովբայ, յորմէ և
վրիպեաց. այլ և յամենայն փորձութեան գործոյն
յաղթահարեալ եղև. Նախ ի ձեռն կնոջն սկսաւ
մարտնչել, կրկին ի ձեռն բարեկամացն բանիւքն
մրցէր, թերևս բանիւքն կարծէր գլորել, զոր գոր-
ծովքն ոչ կարաց: Թէպէտ և գլորել ո՛չ կարէր զճըգ-
նողն, տեսանելով զնա յաղթող. այլ գոնէ առանց
քրտանց վայելել նմա ի ճգունսն ոչ կամէր. բայց
356 քննեսցուք և զԵղիփազու բանս որ ըստ կարգիս կայ:
«Միթէ բազո՞ւմ անգամ խօսեալ իցէ քո աշխա-
տութեամբ, և զօրութեան բանից քոց ո՞ հանդար-
տեացէ»: Այսինքն է, մի՛ եթէ բազո՞ւմ անգամ
այսպէս խօսեցար՝ որպէս և այժմս. ուստի ընդ վայր

1. յՕր. ամբարիշտացն: Վ. յըմբշամարտսն:

և ընդունայն աշխատեցար. բայց են պիտոյ քեզ
իրք առ ի դատապարտութիւն։ Քանզի բաւական են
զքեզ դատապարտել բանքդ քո, որ այդչափ մեծա-
բանութեամբ են, մինչև ի լսողացս ոչ ոք կարէ
համբերել. բայց սակայն դու ընդ քեզ կռուիս և
պատերազմդ յանդիմանէ զասօղդ. զի ոչ այնպէս
էիր վարուք, որպէս և կարծեցեալն էիր։ Զայս 357
փող պատերազմի եհար Եղիփազ ընդ Յովբայ յա-
ռաջ ասացելովքն. բայց մեք որ ըստ կարգիս կայ
մտադիւրութեամբ հայեսցուք. քանզի գտցուք զա-
մենայն բանս Եղիփազու առ ի բամբասանս առա-
կեալ վասն Յովբայ։ Քանզի ասէր իսկ այսպէս.
«Զի եթէ դու խրատեցեր զբազումս, և զձեռս
տկարաց մխիթարեցեր, և զհիւանդս կանգնեցեր
բանիւք, ծնգաց կթոտելոց քաջալերութիւն զգեցու-
ցեր, արդ եկին ի վերայ ցաւք և մերձեցան առ քեզ,
բայց դու փութացար։ Ո՞չ ապաքէն երկիւղդ քո
յանզգամութիւն է, յոյսդ քո և անչարութիւն ճա-
նապարհի քո»։ Այսինքն է, զի եթէ զբազումս
խրատեցեր, ընդէ՞ր և զքեզ ո՛չ խրատես. և եթէ 358
զձեռս տկարաց մխիթարեցեր, ընդէ՞ր և անձինդ
քո տկարութեան ո՛չ գտանես մխիթարութիւն. և
եթէ զհիւանդս կանգնեցեր բանիւք, զիա՞րդ ես այժմ
անկեալ յերկիր ոգւով և մարմնովք. և եթէ ծնգաց
կթոտելոց քաջալերութիւն զգեցուցեր, վասն է՞ր և
անձինդ ոչ տաս քաջալերութիւն, այլ լքեալ ես ի
վերայ եկելոց վշտացդ, և իբրև զանդամալոյծ ես։
Տես՝ զուգէ թէ և առաջինքն սուտ էին, և եր-
կրորդս լի անմտութեամբ. առաջինքն սուտ էին,
քանզի ոչ մնայիր դու առանց մխիթարութեան, որ
զայլսն մխիթարէիր. և երկրորդն անմտութեան, զի 359
եթէ իբրև առն ճշմարտի և արդարոյ լեալ էին քո
վարք, գալով ի վերայ քո ցաւք, և հասեալ ի վե-
րայ քո խրատ, ոչ խռովեալ կարճամտէիր և փու-
թայիր յելսն։ Քանզի «փութացարն», Սիմաքոս «խռո-
վեցար» ասաց. իսկ Ակիւղաս գրեաց, թէ «փութա-

ցեալ եղեր»։ Ո՞չ ապաքէն երկիւղդ քո յանզգամու-
թիւն է. զարհուրեալ ես յերկիւղէ, ուր ոչ գոյ եր-
կիւղ. յոյսդ քո և անչարութիւն ճանապարհի քո է
անզգամութեամբ, քանզի յայտնանէ, և ոչ մի ինչ
խոկայ առ Աստուած. այլ թերևս համբերէիր ի
ճգունեան։ Զայս ասէր Եղիփազ ոչ առ համբերութիւն
խրատել կամեցեալ զՅոբ, այլ ի ձեռն նախատա-
360 նացն և թշնամանացն լուծանել և գլորել զկամս
նորա ձեռնարկել կամէր. քանզի և այս՝ որ ըստ
կարգիս կայ՝ ձգէ զՅոբ առ ի յուսահատութիւն։
«Արդ յիշեա՛, ո՞վ ոք որ սուրբ էր՝ կորեաւ. և
կամ ե՞րբ ճշմարիտք արմատաքի խլեցան։ Զոր օրի-
նակ տեսի զայնոսիկ որ զանպատեհսն արօրադիր
առնեն, ոյք սերմանեն զնա՝ ցաւս հնձեսցեն անձանց,
ի հրամանէ Տեառն կորիցեն»։ Ոչ ես դու այնպիսի՝
որպէս հպարտացեալ զքեն կարծէիր, այլ և զայլսն
հարկաւորեալ պատրելով կարծեցուցանէիր։ Քանզի
361 ահա և դու իսկ կորուսեալ ես, որպէս ցուցանէ մեզ
ապականութիւն մարմնոյդ. կորեան իսկ և արմատքդ
քո և ստացուածք մեծութեանն քո, և լիութիւն
ստացուածոյն, և պսակ ժառանգաւորացն։ Քանզի
ոչ իսկ ես սուրբ և ճշմարիտ՝ որպէս կարծես դու
վասն քո. կամ զիա՞րդ այսպէս ախտացար։ «Զոր
օրինակ տեսի զայնոսիկ՝ որ զանպատեհսն արօրա-
դիր առնէին, և ոյք սերմանեն զնա՝ ցաւս հնձես-
ցեն անձանց»։ Ոչ ինչ ի նանիր և յանիրաւ են քեզ
տրտմութիւնքդ, այլ ըստ իրաւանց եղեն քեզ յԱս-
տուծոյ. քանզի նորա բարկութիւն ակնարկելով և
հրամանաւ լինի. զի ոչ միայն զայնոսիկ՝ որ զան-
362 պատեհսն արօրադիր առնեն, այլ և ոյք սերմանենն,
բայց են նոքա՝ որք զանպատեհ և զանօրէն պտուղս
խնամով ժողովեն. ի կամաց և ի յօժարութենէ
զայն գործելով, ապականին ամենայն ապականու-
թեամբ, որում Յոբայ պատահէ համբերել։ Եւ ի
վերայ այսորիկ ածէ, որ ըստ կարգի առաջնոցն կան
առ ի նախատանս Յոբայ։

«Զօրութիւն առեւծու, բայց գոչիւն մատակ ա-
ռեւծու, պերճութիւն վիշապաց՝ չիջաւ։ Մրջիւնա-
ռեւծն սատակեցաւ առ ի չգոյէ կերակրոյ, կորիւնք
առեւծու լքին զմիմեանս»։ Առեւծու համեմատեաց
զՑոփր վասն թագաւորական զօրութեանն. իսկ գո-
չիւն մատակ առեւծու յիրաւի առընթեր եդ, ակ- 363
նարկելով զհասակ քաջութեան ոգւոցն Ցոփրայ. այլ
և զվիշապացն պերճութիւն, այսինքն է՝ զմիտսն նո-
րա. վասն զի թագաւորական է կոչեալ ի սոցունս և
այս անուանս։ Բայց զայս ամենայն ասէ, զչիջանելն
ոտն հարկանէ ի վերայ ախտից արդարոյն։ Եւ յետ
այսորիկ մրջնառիւծ անուանեաց զՑոփր, ցուցանե-
լով թէ ոչ սակաւ ինչ վրիպեաց ի բարեկենդանու-
թեանց, այլ բովանդակ(ի) չիջաւ։ Քանզի այս կենդանի
մրջնառեւծս ասեն եթէ երկդիմի է. զմի ինչ ունի
ի մրջմանց, և մի ինչ դարձեալ յառեւծուց, և վասն
այսորիկ ոչ գտանէր կերակուր. քանզի ոչ զառեւ-
ծուց ինչ ուտէ՝ իբրև զմրջիւն, և ոչ զմրջմանց ինչ
կարէ ուտել՝ իբրև զառեւծ, և ինքն իւրով ստամ- 364
բակելով վաղվաղակի ապականի։ Այնպիսի զօլ ասէ
և զՑոփր. թէ մեղաւոր է և զարդարոյ զձեւս կեղ-
ծաւորի, և ոչ արդարութեամբն իւրով կարէ ապրել՝
իբրև զի է մեղաւոր, և խօսի ըստ նմանութեան մե-
ղաւորաց, և խնդրէ յԱստուծոյ զողորմութիւն, և
փրկութիւն իւր յամենայն կողմանց փակեալ է։ Կո-
րիւնս առեւծու անուանեաց զորդիսն Ցոփրայ, իբրև
զթագաւորական ծնունդս, որք լքին զմիմեանս, յոր-
ժամ էին յուրախութեանն, և անկաւ տունն ի վե-
րայ նոցա, և զմարմինս նոցա բաժանեաց և ցը-
րուեաց հեռի ի միմեանց։ Բայց զի զայս-առ Ցոփր
առակելով ասէր, յայտնագոյնս եցոյց ի ձեռն այ- 365
նոցիկ՝ որ ըստ կարգիս գայ։

«Եթէ էր ինչ բան ճշմարիտ եղեալ ի խօսս քո, և ոչ
մի ինչ յայսց չարեաց պատահեալ լինէր քեզ»։ Ոչ
ինչ ի քո թագաւորական մտացդ և ոչ ի քաջու-
թեան հասակէդ և ոչ ի բարձր կամացդ չիջանէր.

այլ և ոչ ողորմելի մահ որդւոցն հասանէր, եթէ
բան ինչ ճշմարիտ ստացեալ էր ի խօսս քո, և ոչ
անօրէնութեամբ կեղծաւորէիր զարդարութիւն։ Յետ
այսորիկ զՅովբայ զճգունան կատակելով, այլ և ըզ-
վասն նորա վկայութիւնն՝ իւրով դիմառնութեամբք
այպանելով, ի վերայ ածէ։

«Իբրև թէ ո՞չ ունիցի ունկն իմ հրաշակերտս ի
նմանէ։ Քանզի հրաշալիք ի նմանէ արհաւիրք և
366 բոմբիւնք գիշերւոյ, զի հասանեն զարհուրեցուցա-
նել զմարդիկ։ Դողումն և սոսկումն պատահեցին
ինձ, և մեծապէս զոսկերս իմ խռովեցուցին։ Եւ եկն
հողմ ի վերայ երեսաց իմոց, քստմնեցին հերք իմ
(և մարմինք իմ)։ Յարեայ՝ տեսի, և ոչ էին կեր-
պարանք առաջի աչաց իմոց, բայց միայն օդ և
սօսափիւն լսէի»։ Եւ առ ի՞նչ զայս ասիցէ. այլ
թերևս որ յերազի ինչ կարծիք անցին ընդ նա,
զայն տեսիլս պատմիցէ. որպէս լինին ահագինք ինչ
մինչև սոսկումն հերաց, և մարմնոց խռովութիւն, և
երերումն ոսկերաց և դողումն խորհրդոց, և երկիւղ
մտաց, և այլ բազում ինչ որ ընդ այսմ գործէ։
367 Բայց սակայն բազում անգամ ընդ այնս մարտու-
ցեալ, ոչ ինչ անկայ ընդ այնպիսեօք, որպէս դու
այժմ վասն ախտից ես վհատեալ, և ոչ կարես
յայդմանէ զճգունդ պատմել։ Բայց ես ոչ և ի սկըզ-
բանէ իսկ անկանէի ընդ այնոքիւք, այլ այնչափ
հասեալ[1] էի ի վերայ եղելոցն, մինչև ամենայն հոգ-
ւովք և մարմնովք զարհուրէի, և ոչ իմիք հաւա-
տայի շարժել յասացելոցն կամ յեղելոցն։ Բայց օդ
և բարբառ լսէի ընդունայն շնչոյ, վասն որոյ ոչ ինչ
ամենևին համարէի բանիւք։ Վասն զի յարուցեալ
յերազոցն՝ ոչ ինչ տեսանէի ի բաջաղմանցն. բայց
ստուգութեամբ հայելով՝ ոչ ինչ կերպարանս տեսա-
368 նէի առաջի աչաց իմոց, թէպէտ և ընդունէի յա-
կանջս յայնմանէ՝ որ շարժէր զայս տեսիլս հրաշա-

1. յՕր. հարեալ էր . . . զարհուրէր։

կերտս և մեծամեծ բանս. որպէս և դու հաւատացեր
թերևս տեսլեան, լսելով եթէ իցես անարատ զի
պա՛րտ էր քեզ հայել ի գործս քո և ոչ ի տեսիլս.
քանզի ոչ արդարք են, այլ բաջաղեալ են վասն քո այս
բանք. ճառս փորձեցի քեզ ցուցանել ըստ մասանց:
«Իսկ արդ՝ մի՛ եթէ սո՞ւրբ լինիցի մարդ առաջի
Տեառն, կամ ի գործոց իւրոց անարա՞տ այր»: Զիա՞րդ
կարծես դու լինել քեզ անարատ, կամ զիա՞րդ
իմանաս դու զքէն, թէ որոշեալ ես յամենայն ի-
րաց չարաց. ե՞րբ ստացաւ զայս բնութիւն մարդկան:
«Եթէ ծառայից իւրոց ոչ հաւատայցէ, և զհրեշ- 369
տակաց խոտորագոյնս ինչ իմացաւ: Իսկ արդ թո-
ղո՞ւ զբնակեալսն ի տունս կաւեղէնս, յորոց և ին-
քեանք ի նմին կաւոյ եմք. եհար զնոսա ըստ օրի-
նակի ցեցոյ, և յառաւօտէ մինչև ցերեկոյ ոչ ևս ի-
ցեն: Քանզի անձամբ անձին օգնել ոչ կարէին, կո-
րեան: Փչեաց ի նոսա և պակասեցին. և քանզի ոչ
գոյր ի նոսա իմաստութիւն, կորեան»: Քանզի զա-
նարատութիւն յանձն առնուլ ոչ թեթև մարդ-
կան է, այլ ըստ կարգի մարդկան անցեալ է, և ի
դասս հրեշտակաց հասեալ է: Քանզի որ ասէ՝ թէ
ծառայիցն իւրոց ոչ հաւատացէ, յայտ է թէ Ա-
ստուած արդարոց ոչ հաւատայ. որպէս և դու վասն 370
քո հաւատացեալդ ես, գիտելով զնոցա բնութեանն
տկարութիւն և զմարմնոյն դիւրագլորութիւն. որոց
խնայելոյ պատճառս տան անկեալ հրեշտակքն, որոց
ի վերայ խոտորագոյնս իմացաւ՝ փոխելով զնոսա
յառաջին պատուոյն և ի կարգէն, և ընկեցեալ ըզ-
նոսա ի վայր, քանզի խոտորագոյնս ածէին զմտաւ
ընդդէմ Աստուծոյ: Իսկ եթէ վասն նոցա այս, որ
թէպէտև զբնութիւնն տկար ունէին, այլ սակայն
ի բարձունս յառաքինութեան զօրութիւնսն էին. իսկ
եթէ այս վասն հրեշտակաց՝ որք բնութեամբն վե-
րագոյն էին քան զմեզ, զի՞նչ վասն այլոց մարդ-
կանս ասիցեմք, մանաւանդ վասն մեղաւորաց, ո-
րոց ոչ միայն բնութիւնս ի կաւոյ է և (ը)նականու- 371

*թիւն ի ստացուածոցս՝ կաւեղէնս, այլ իբրեւ զմեղա-
ւորս դիւրաւ ապականին, և իբրեւ զհանդերձս ի ցե-
ցոյ, զորս իբրեւ թէ հարկանիցէ Աստուած, վաղվա-
ղակի յակ(ան թօթ)ափել անիցէ զնոսա դիւրա-
ծախս։ Որք օգնել անձանց ոչ (կարեն), վասն զի հա-
կառակ են ըն(դ ն)մա, որոց ոչ արժան էր բարկա-
ց(ուցանել) զհարեալն և զխրատեալն առ ի յԱստու-
ծոյ, այլ պարտ էր աղաչել. քանզի, յոր(ս ս)աստե-
լով փչէ՝ նոյն ժամայն չորանան և գօսացեալք կորըն-
չին, քանզի չունին իմաստութիւն, զայն (որ) առաջ-
նորդէր նոցա յապաշխարութիւն։ Այսպէս առ հա-
372 սարակ վասն ամենայն մեղաւորաց ամբաստանու-
թիւն մատուցեալ Եղիփազու, ընդ որս և զՅովբ
կարգել ոչ ամաչէր։ Յառաջագոյն անորիչ եհան ըզ-
բանսն, իսկ այժմ անչափ սրամտութեամբ ի դէմս
ինքեան դարձուցանէ զբանսն։*

*«Արդ՝ աղէ դու կարդա, եթէ ոք լուիցէ քեզ,
կամ եթէ զոք ի հրեշտակաց սրբոց տեսցես»։ Այս-
պէս սաէ խսկ. պարտես զքեզ որովք կարծես թէ
ունիս վկայութիւն յԱստուծոյ, և ոչ գալստեան հը-
րեշտակի կարասցես պատահել յաղօթս քո. քանզի
չար ուրեմն պատրողի դիպեցար, որ պատրեալ հա-
ւանեցոյց զքեզ այսպէս, իբրեւ թէ յԱստուծոյ առա-
373 քեալ։ Զայդ կարծեցոյց քեզ, այլ յայտ է զի ոչ այդ-
պիսի ինչ, վկայեաց քեզ Աստուած. զի եթէ էր, և
այդպէս վկայութիւն տուեալ էր, առաւել ևս ինքն
երեւէր քեզ, որ չնորհէ բարեխօսութեամբ հրեշտա-
կացն կալ առաջի իւր։ Բայց պարտ է մեզ գիտել՝
որ ըստ կարգիս է ամբաստանութիւն Եղիփազու։*

*«Քանզի և զանզգամս կորուսանէ բարկութիւն,
և զմոլորեալն մեռուցանէ նախանձ»։ Իբրեւ զբար-
կացող բամբասէ զՅովբ. վասն զի այնպիսիս բարբա-
ռեցաւ վասն աւուրն յորում ծնաւն։ Անգոսնէ խսկ
զՅովբ իբրեւ զպատրեալ, որով նովին պատրանօք և
զինքն սպանանէ, և կամի զինքն երեւեցուցանել իբ-
374 րեւ զարդար, և ինքն ոչ է արդար, և այս նմա յան-
մտութենէ է. և վասն այսորիկ ի վերայ ածէ։*

«Նա՛ ես տեսի զի անզգամաց արմատս արձակեալ
էր, բայց վաղվաղակի հարան յարկք նոցա»։ Որպէս և
Յոբ առ սակաւ ինչ եկաց լռութեամբ։ «Հեռի եղեն
որդիք նոցա ի փրկութենէ, կողկողե(ս)ցին նոքա առ
դրունս վաթթարաց, և ոչ ոք իցէ որ փրկիցէ։ Քան-
զի զոր նոքայն հնձեցին՝ զայն արդարք կերիցեն. և
նոքա ի չարեաց ապրեալ մի՛ գտցին, և ծծեսցի ի նո-
ցանէ զօրութիւն»։ (Այս ի)նքն է, զի՞ զչարիս ընդ մահ
որդւոցն. քանզի անզգամաց որդիք ոչ միայն հեռի
ի փրկութենէ ապականեալ լինին, այլ և առ կե- 375
նաց իւրեանց ժամանակօք՝ կողկողեալք լինին առ
նոքօք, որք իցեն քան զնոսա վա(տ)թարագոյնք, և
ոչ ոք ապրեցուցանէ զնոսա՝ իբրև յԱստուծոյ յի-
րաւի տանջեցեալս։ Ուստի և զմեծութիւնն զոր ա-
նիրաւութեամբ ժողովեցին՝ զայն արդարք առցեն,
և նոքա ի չարեաց ոչ կարասցեն զերծանել, և ա-
մենայն զօրութիւն նոցա թօթափեսցի, և իբրև ապա-
ռեալ քամեսցին յԱստուծոյ հրամանէն։ Բայց սա-
կայն պայծառացուցանէ Եղիփաս զբանս իւր, ազ-
դեալ յայնմանէ՝ որ նովաւ ընդ Յոբայ մարտնչէր.
երբեմն եթէ իբրև յիրաւի ախտացեալ՝ ողբայ ըզ-
Յոբ, և երբեմն իբրև զպատրեալ զինքն արդարու- 376
թեամբն իւրով, իբրև ոչ յոյս ունելով նմա զերծա-
նել ի տրտմութեանցն. և ընդ նմին իբրև թէ ոչ
գիտէ զմարդկան տկարութիւն, եթէ քան զերկիր
յորում բնակեալ են՝ ողորմելի են, և ի թռչնոց
քան զյոյժ տկարագոյնան նուազ ևս են։ Բայց յայտ-
նագոյնս խոկ ցուցանէ ի ձեռն այսորիկ՝ որ ըստ
կարգիս ի վերայ ածէ։

«Քանզի ոչ ելցէ յերկրէ աշխատութիւն, և ոչ ի
լերանց բղխեն ցաւք. այլ մարդ աշխատութեամբ
ծնանի, և ձագք անգեղց ի բարձունս թռչին»։ Իսկ
ուրեմն ողորմագին ևս քան զկա՛ւ իցեմք. վասն զի
նա ոչ աշխատի, իսկ մեք մարդիկս վասն հարկա-
ւորութեան վաստակիմք. և նուազագո՞յնք եմք քան 377
զանգեղս գիշակերս. քանզի նոքա ի բարձունս թռ-

չին, իսկ մարդիկս յերկրիս ծփին։ Զայս ամենայն
ասաց Եղիփազ։ Բայց մեք պատուոյ մարդկանս ոչ
եմք ագէտ, և ոչ յայնմանէ՝ զի թէպէտ և յաշխա-
տութիւնս և ի քրտունս և ի վաստակս և ի տառա-
պանս հասեալ է, այլ եթէ զայս յարդարութիւնս
և յառաքինութիւնս զովութեամբ աշխատեսցի, փափ-
կութիւն անապական և հանապազորդ հանգիստ
ընկալցի զնա, և երկրիս տէր եղիցի և թագա-
ւոր երկնից կոչեսցի. իբրև ընկալեալ է զկերպա-
րանս Աստուծոյ, արարչին ամենայն արարածոց, և
378 Քրիստոսի իսկ պատկերակից և ժառանգակից եղեալ։
Զի թէպէտ և այժմ իցեն անգեղք քան զմեզ բար-
ձրագոյն, այլ յետ սակաւ ժամանակի արդարքն գեր
ի վերոյ և քան զհրեշտակսն գտանիցին, ամպովք
յօդս բարձրացեալք, և անտի յերկինս ամբարձեալք։
Ընդ որս և մեզ լիցի անկանել ի թիւ, յԵղիփազու
ի բարբանջմանցն զերծեալք եղիցուք, և պահեսցուք
զմեզ յայնմանէ՝ որում նա զիւր լեզուն գործի ետ
ի վարձու։ Բայց Յովբայ ճգնակիցք եղիցուք և ըդ-
տառապանսն գովութեամբ ընկալցուք, և ընդ նեղ
դուռնն յօժարութեամբ և բարեաց յուսովն գնաս-
ցուք, զօրութեամբ Հօր և Որդւոյն և սուրբ Հոգ-
379 ւոյն. Նմա փառք այժմ և միշտ և յաւիտեանս յա-
ւիտենից. ամէն։

## Ը

«Բայց սակայն ես աղաչեցից զՏէր, և կոչեցից
զՏէր ամենակալ, որ առնէ զմեծամեծ(ս) և զանքննինս,
զփառաւորս և զհրաշակերտս, որոց ոչ գոյ թիւ. որ
տայ զանձրև ի վերայ երեսաց երկրի. որ առաքէ
զջուր ի ներքոյ երկնի. որ առնէ զխոնարհս բար-
ձունս, և զկորուսեալս յարուցանէ ի փրկութիւն.
որ փոփոխէ զխորհուրդս խորամանկաց, և ոչ գոր-
ծեսցեն ձեռք նոցա զճշմարտութիւն. որ հասանէ

խմաստնոց հանճարով իւրով, և զբազմապատիկ խոր֊
հուրդս նոցա յիմարեցոյց։ Ի տուէ պատահեսցէ նո֊ 380
ցա խաւար, և ի մէջօրէի իբրև ի գիշերի խարխա֊
փեսցեն։ Սատակեսցին ի պատերազմի, և աղքատք
ապրեսցին ի ձեռանէ հզօրի։ Եւ եղիցի յոյս տկա֊
րի. բերան անիրաւաց խցցի։ Երանեալ է մարդ զոր
յանդիմանեաց Տէր ի վերայ երկրի, և զխրատ ա֊
մենակալի մի՛ ուրանար։ Զի նա ցաւեցուցանէ, և
միւսանգամ անդրէն հաստատէ. հարցէ՝ և ձեռք
նորա բժշկեսցեն։ Վեցիցս ի վշտաց փրկեսցէ զքեզ,
և յեւթներորդումն ոչ մերձեսցի առ քեզ չար։ Ի
սովի՝ փրկեսցէ զքեզ ի մահուանէ, և ի պատերազ֊
մի՝ ի ձեռաց երկաթոյ։ Ի տանջանաց լեզուի փըր֊ 381
կեսցէ զքեզ, և մի՛ երկիցես ի չարեաց որ ի վե֊
րայ գան. զանիրաւս և զանօրէնս այպանեսցես։ Ի
գազանաց վայրենեաց երկրի ոչ երկիցես դու, զի
ընդ քարինս վայրի դաշինք քո, և գազանք վայրի
խաղաղեսցին ընդ քեզ։ Ապա գիտասցես՝ եթէ խա֊
ղաղութիւն է տան քում, և այցելութիւն վայելչու֊
թեան քո մի՛ վրիպեսցէ։ Եւ գիտասցես զի բազում
է զաւակ քո, և որդիք քո եղիցին իբրև զամենայն
բանջար ի վայրի։ Եւ երթիցես ի գերեզման իբրև
զցորեան հասեալ ի ժամանակի իւրում հնձեալ,
կամ իբրև շեղջ կալոյ ի ժամանակի ամփոփեալ։
Ահաւասիկ զայս այսպէս քննեցաք, և այս է զոր
լուաքն. բայց դու գիտասջիր յանձն քո՝ զի՛նչ գոր֊ 382
ծեցեր». ըստ կարգի Եղիփազու։

Միշտ վայելուչ է տալ ի ճգունս Աստուծոյ զմարմինս, և զհոգիս ի գործ առաքինութեան. այլ այն ճգունք բարեպաշտաց անհրաժեշտ են, յորում խընդրիմք ի թշնամեացն ի փորձանս և ի մրցմունս։ Քանզի յայնժամ գեղեցիկ են ցոյցք առաքինութեանցն, պայծառագոյնս իսկ ունին զյոյս հատուցմանց՝ որք նեղութեամբն ճգնին։ Ցայնժամ հանդէսն յոլովի, և կապ տառապանացն ուժգին պնդի, և յամենայն կողմանց զճգնողաւն սահին քրտունք, և աշխատեալ

բովանդակ անդամովքն, ոչ վասն ձեռացն միայն և
383 ոտից և ծնգաց և բարձից երկուցեալ, այլ և յա-
չացն զգուշանայ, զի մի՛ երբեք մռայցուցեալ թըշ-
նամւոյն՝ ի մէջ հանդիսին բրեսցէ զաչս։ Բայց եր-
կիւղ ճգնողին՝ կենաց և փրկութեան անձին պատ-
ճառք լինին. իսկ ընդդիմացողացն՝ ամօթոյ և կա-
տականաց. ընդունայն առնէ զամենայն յարձակ-
մունս նոցա, և ի բաց դարձուցանէ զամենայն ճո-
լորութիւնս նոցա։ Բայց սակայն թշնամիքն ոչ դա-
դարեն ի խափանելոյ և յընկրկելոյ, յորժամ ամե-
նայն մարմնովքն մրցեալ վաստակիցին. ապա ևս
ատամացի առնուն, և եղնգամբն ևս մաքառիցին, և
ոչ ի փետելոյ զհերս խնայիցեն, ըստ նմանութեան
384 անամօթ կանանցն, մինչև ճգնադիրն լուծցէ զմըրց-
մունսն օրինաց փողովն, և դադարեցուսցէ զհան-
դէսն, տեսանելով զյաղթութիւն ճգնողին։ Դոյնպէս
և այժմ ընդ Յովբայ մարտնչի թշնամին յօդոց ան-
տի, և ընդ մէջ երկնից և երկրի ողորմագինս յածի։
Վասն զի յերկնից անկաւ, և յերկրիս ոչ տան դա-
դարել որ ի սմա բնակեալ են սուրբքս, զի թէպէտ
և յոյժ կամի նա վայելել յապականութեան կաւոյս։
Քանզի սա բազում անգամ յաղթահարեալ ի Յով-
բայ՝ ոչ հրաժարեաց ի կռուոյ, թերևս ոչ յաղթել
ակն ունելով, այլ զարդարումն աշխատութիւն կամե-
385 ցաւ արկանել։ Բայց զԵղիփաս ի վերայ բարեկամին
ճարտարաբանել յորդորեաց, չարժեալ ի հպարտու-
թիւն, զվերջին խորխորատն չարութեան պատրաս-
տէ նմա. յորմէ գրգռեալ Եղիփազ՝ ոչ ի բարեկա-
մութենէն ամաչէր և ոչ ի վշտաց անտի ակն ածէ,
և ոչ իբրև յարդարոյ պատկառէ՝ դարովել կամեցեալ
զնա, որ ընդ ամենայն աշտիճանս առաքինութեանցն
ելեալ էր, և զինքեան բարեպաշտութեան կարծիս
կամի ցուցանել։ Քանզի լուար զխո՞րդ զՅովբ նա-
խատէ, և զինքենէ մեծարանութիւն բարբառի։
«Բայց սակայն ես աղաչեցից զՏէր, և զամենա-
386 կալ զՏէր կոչեցից»։ Իսկ ես աղաչեցից զՏէր։ Քանզի

դու, ասէ, զաղօթից փոյթ ոչ արարեր, ես զամենեցուն
զՏէրն կոչեցից։ Քանզի դու յանձնդ վստահացեալ՝
զամենեցուն Տէրն կարդալ դանդաղեցար, ուստի և
պատահեցան քեզ առընթերակացք չարիք։ Եւ դար-
ձեալ յետ այսորիկ աւասիկ այսպիսի փառաւորու-
թիւնս Աստուծոյ մատուցանէ, բարկացուցանելով
զՅովբ, իբրև թէ ոչ գիտէ փառաբանել, կամ թէ
անփոյթ իսկ առնիցէ։

«Որ առնէ զմեծամեծս և զանքննինս, զփառաւորս
և զհրաշակերտս, որոց ոչ գոյ թիւ. որ տայ զանձրև
ի վերայ երկրի. որ առաքէ զջուր ի ներքոյ երկնի.
որ առնէ զխոնարհս բարձունս, և զկորուսեալսն յա- 387
րուցանէ ի փրկութիւն»։ Պայծառ են և այսք, այլ
զի՞նչ է առ Յովբաւն, զի՞նչ առ լեզուաւ արդարոյն,
առ մատուցեալ ի նմանէն փառաւորութիւնսն։ Կա-
մի՞ս ուսանել՝ թէ որպէս Յովբ բանիւք և գործովք
փառաբանէ, չրթամբք միանգամայն և իրօք. յոր-
ժամ հանդերձ ընչիւքն և ստացուածովքն ապակա-
նէին, և հրոյ գործ եղև հօտն՝ հանդերձ այլովք խա-
շամբքն, և ուղտքն յափշտակեցան ի գերչացն հան-
դերձ իշովքն, և ուստերքն հանդերձ դստերօքն թա-
ղեցան ընդ յարկօքն, յայնժամ զԱստուած փառա-
բանելով գոչէր. «Որպէս Տեառն կամք եղեն, այն-
պէս կատարեցաւ, եղիցի անուն Տեառն օրհնեալ յա- 388
ւիտեանս»։ Եւ որ վշտօքն էր արբեցեալ, սակաւ
բանիւք յաղթեաց զուարթնոցն փառաբանութեամբք։
Բայց քննեսցին և Եղիփասու բանքս՝ որ ըստ կար-
գիս կայ, որովք կարծէ փառաբանութիւն Աստուծոյ
մատուցանել, և առակօք՝ բամբասանս զՅովբայ ցու-
ցանէ. քանզի և զի՞նչ իսկ ասէ։

«Որ փոփոխէ զխորհուրդս խորամանկաց»։ Այ-
սինքն է քակտեալ ցրուէ, քանզի այսպէս գրեաց
Թէոդոտիոն և Սիմաքոս։ «Որ փոփոխէ զխորհուրդս
խորամանկաց, և ոչ գործեսցեն ձեռք նոցա զճշմար-
տութիւն. որ հասանէ իմաստնոց հանճարով իւրով, 389
և զբազմապատիկ խորհուրդս նոցա յիմարեցոյց»։ Եւ

*զի՞նչ է այս։ Իբրև զխորամանկ բամբասէ զՅովբ․
իբրև թէ յոկ կարծիս արդարութեան փութայ զան֊
ձամբ արկանել, և ոչինչ արդարութեամբ գործէր
զորս կերպարանէրն։ Բայց Աստուած ոչ անտեղեակ
է այսպէս խորհրդոց, և յիմարեցուցանէ զխորհուրդս
նոցա՝ ընդդէմ կամաց իւրեանց, որք փութային ինչ
են նոցա․ այլ սակայն Եղիփազ ի վերայ այսոցիկ և
անէծս ևս ածէ, ուստի և առակաւ զՅովբ ողբայ։*
*«Ի տուէ պատահեսցէ նոցա խաւար, և ի մէջօ֊
րէի իբրև ի գիշերի խարխափեսցեն։ Սատակեսցին*
390 *ի պատերազմի, և աղքատն ապրեսցի ի ձեռանէ
հզօրին։ Եւ եղիցի յոյս տկարի, և բերան անիրաւաց
խցցի»։ Զայս իսկ անիծանէր Եղիփազ բաջաղեալ
մտօքն՝ թէ անէծքս հասանիցեն Յովբայ․ քանզի ոչ
գիտէր՝ եթէ որչափ և իցեն անիծից իրք՝ հեռանան
ի Յովբայ․ բայց պատին զնովաւ որչափ ինչ և իցեն
իրք օրհնութեան։ Քանզի Յովբ ոչ ի տուէ չօշափէ
զխաւար, այլ ի գիշերի մեծագոյն լոյս ստացեալ
բարեպաշտութեամբն քան զմէջօրէին։ Յովբ ի պա֊
տերազմի ոչ գլորեցաւ, այլ կործանեաց զպատերազ֊
մողն և զընդդիմացողն։ Յովբ ոչ առաքինութեամբք*
391 *աղքատ է, այլ երկրաւոր զգեստուքս և տկարութեամբ
մարմնոյ․ և ի ձեռաց բանաւոր բանսարկուին համբե֊
րութեամբ զերծանի, և այնպէս հաստատուն և առողջ
զյոյսն ստացեալ է, մինչև զականջս իւր ոչ թողա֊
ցուցանէր կնոջն, որ ասէր նմա, եթէ «Մինչև ցե՞րբ
համբերեսցես ասելով, թէ ահաւասիկ անսացից փոքր
միւս ևս ժամանակ, ակն ունելով յուսոյ փրկութեան
իմոյ»։ Այլ զի՞նչ ասէր ցնա, ոչ կամելով ելանել ի
յուսոյն բարութեանց․ «Որպէս ի կանանց անզգամաց
խօսեցար»։ Զի որ զամ մի զյոյսն որ առ Աստուած
է՝ մատնէ, միոյ անզգամին և այս նման է, որ ա֊
ռաւել ի վեր քան զամենայն անզգամս, որ զանցա֊*
392 *նելով զպատուիրանաւն Աստուծոյ, յանկարծակի
յայնչափ բարեաց անկաւ։ Ի վերայ այսոցիկ ոչ ա֊
նիրաւութիւն ինչ կայր ի բերանի Յովբայ, այլ ա֊*

մենայն արդարութեամբ լի էր. քանզի զամենայն
մարմինս նորա ապականել մատնչին թողացուցանե֊
լով Աստուծոյ, մինչ զի և կերպարանք արդարոյն
ոչ լինէին ծանուցեալ. ուստի և բարեկամացն տե֊
սեալ զնա՝ ոչ ծանեան։ Բայց այս ոչ երևի եթէ
զլեզու նորա ապականել կարաց. ուստի և յոյժ
տրտմեցուցանէր զաներևոյթ նետաձիգն, և վասն
այսորիկ բարեկամացն այսպէս տայր խօսել ընդ նը֊
մա. մինչ զի և ի բանիցն դադարեսցէ, և կամ աշ֊
խատելով հրաժարեսցէ։ Քանզի ուսանիկ որպիսի ա֊ 393
ծէ դարձեալ ի վերայ Եղիփազ։

«Երանեալ է մարդ զոր յանդիմանեաց Տէր ի
վերայ երկրի, և զխրատ ամենակալի մի ուրանար։
Զի նա ցաւեցուցանէ, և միւսանգամ անդրէն հաս֊
տատէ. հարցէ՝ և ձեռք նորա բժշկեսցեն»։ Բայց ոչ
զայս ասելով ակն ունէր երանել զՅովբ, և պակել
զճգնողն վասն բարեպաշտութեանն. այլ զի՞նչ. յայտ
առնէ որ զկնիս գայ։

«Վեցիցս ի վշտաց փրկեսցէ զքեզ, և յեւթնե֊
րորդումն ոչ մերձեսցի առ քեզ չար»։ Եթէ ոք
յայնցանէ էր Յովբ՝ որ խրատէին յԱստուծոյ և
յանդիմանէին առ ի յուղղութիւն, և ոչ յայնցանէ՝
որք ի տանջանս և յապականութիւն հարկանին, վե֊
ցիցս թերևս փրկէր զնա Աստուած ի վերայ եկելոց 394
վշտացն, կամ իբրև զծառայ, կամ իբրև զսիրելի,
կամ իբրև զզօրական. իսկ յեւթներորդին ոչ դի֊
պէր նմա չար, յորժամ պահէր զնա Աստուծոյ օգ֊
նութիւնն։ Բայց այժմ ոչ այսպէս երևի. այլ զա֊
ռաջինն հասին քեզ վիշտք՝ կիզումն ոչխարացն, եր֊
կրորդ՝ յափշտակութիւն եզանցն, երրորդ՝ կորուստ
իշոցն, չորրորդ՝ գերութիւն ուղտուցն, հինգերորդ՝
մահ խաշնարած ծառայիցն, վեցերորդ՝ անժամ կո֊
րուստ ուստերացն և դստերացն. եհաս քեզ այսու֊
հետև չարն եւթներորդ, ցաւք մարմնոյդ և վէրք
անդամոցդ. բայց Աստուած զքեզ և այդպէս ոչ
փրկեաց, որ հարկանէ և անդէն բժշկէ, որ ցաւե֊ 395

*ցուցանէ և դարձեալ հաստատէ, և արժանաւորս*
*առնէ աստուածային այցելութեան: Զայս ասէր Ե-*
*ղիփաս՝ ձգելով զՅովբ առ ի յուսահատութիւն. ոչ*
*գիտէր եթէ այն առաւել ևս քաջալերել տայր ճըգ-*
*նողին: Քանզի զվեցեսին վիշտս՝ որ այժմ թուեցաք,*
*էած թշնամին ի վերայ Նորա: Իսկ Աստուած խնա-*
*յելով զարդարն՝ յառաջագոյն այսպիսի սահման դը-*
*նէր. «Ահա զամենայն որ ինչ է Նորա՝ ետու ի ձեռս*
*քո, բայց ի Նա մի՛ մերձենար»: Քանզի յերկրորդ*
*պատերազմին՝ ձեռն էարկ ի Նա, և զեւթներորդ*
*խրատ ածեալ ի վերայ ճգնողին՝ թողացուցանել*
396 *խնդրեաց: Լուր զի՞նչ սահման և ի վերայ այսր եդ*
*Աստուած. «Ահաւասիկ տամ զնա ի ձեռս քո, բայց*
*միայն զոգի Նորա պահեսցես». այսինքն է, զի*
*միայն զարտաքինսն ունիցիս, և ի ներքինսն մտել՝*
*քեզ ոչ հրամայէ բնաւ. ապականեա՛ զկաւն, բայց*
*զոսկին կողոպտել ոչ առնում յանձն: Մի՛տ դիր՝ զի*
*յառաջագոյն պահէ Աստուած զՅովբ ի փորձանացս*
*յայսմանէ, և ընդունայն խօսի Եղիփաս զառաջինսն*
*և զկնիսն ընդ Յովբայ:*
*«Ի սովի՝ փրկեսցէ զքեզ ի մահուանէ, և ի պա-*
*տերազմի՝ ի ձեռաց երկաթոյ: Ի տանջանաց լեզուի*
*փրկեսցէ զքեզ, և մի՛ երկիցես ի չարեաց որ ի վե-*
397 *րայ գան. զանիրաւս և զանօրէնս այպանեսցես: Ի*
*գազանաց վայրենեաց երկրի ոչ երկիցես դու, զի*
*ընդ քարինս վայրի դաշինք քո, և գազանք վայրի*
*խաղաղեսցին ընդ քեզ: Ապա գիտասցես՝ եթէ խա-*
*ղաղութիւն է ի տան քում, և այցելութիւն վայել-*
*չութեան քո մի՛ վրիպեսցի: Եւ գիտասցես զի բա-*
*զում է զաւակ քո, և որդիք քո եղիցին իբրև զա-*
*մենայն բանջար վայրի: Եւ երթիցես ի գերեզման*
*իբրև զցորեան հասեալ՝ ի ժամանակի իւրում հըն-*
*ձեալ, կամ իբրև շեղջ կալոյ ի ժամանակի ամփո-*
*փեալ»: Իսկ եկայք այժմ ի ժամու ասասցուք ցԵ-*
*ղիփազ և կամ ցնա՝ որ զնայն չարժէ. եթէ այսք*
398 *երանելի զխրատեալն ցուցցեն, առանց երկմտու-*

թեան ունի զերանութիւնն Յովբ։ Քանզի աւասիկ՝
թէպէտ առ հարկի՝ և թէպէտ կամօք՝ սովելով և
յամենայն յաստի սեղանոցս ի բաց դարձեալ, մին-
չև գոչելով ասէր՝ թէ «յառաջ քան զկերակուր իմ
եհաս ինձ հեծութիւն», բայց սակայն ոչ մեռանի.
զայն բանն Աստուծոյ հաստատութեամբ կնքելով,
եթէ «Ոչ միայն հացիւ կեցցէ մարդ, այլ ամենայն
բանիւ՝ որ ելանէ ի բերանոյ Աստուծոյ»։ Այլ և
այնչափ համբերեալ փորձութեանց, յափշտակու-
թեան ընչիցն, ազատ մնաց յերկաթոյ և ի սրոյ
պատերազմողացն, և ի տանջանաց լեզուի այնչափ
է ծածկեալ, մինչև ոչ ինչ վիշտ եհաս նմա յայն-
մանէ. և ոչ իսկ ըմբռնեցաւ, ոչ ի կնոջէն և ոչ ի 399
ձերոց բանից։ Այլ և ոչ ի վերայ չարեաց եկելոցն
երկնչի. քանզի ո՞ւմ իսկ (ըն)կալցի ակն. ընչի՞ցն յա-
փըշտակութեան, որ միանգամ գոհութեամբ համբե-
րեաց. այլ զորդւո՞ցն զպակասութիւն՝ զորոց զմահն
իբրև զպատարագ մատոյց։ Բայց զի զանօրէնս և
զամբարիշտս այպանէ, յայտ յայնմանէ է, ուստի
զինքն իսկ զմատնիչն՝ զառաջնորդն ամենայն անի-
րաւութեանց և անօրէնութեանց, և զձեզ՝ զնորա
գործի՝ այպանելով ոչ դադարէ։ Նա ի վայրենի գա-
զանաց՝ ոչ յերևելեաց և ոչ յիմանալեաց ոչ երկնչի.
յայնմանէ և արտաքոյ քաղաքին համարձակեալ նըս-
տի. և փոխանակ ամենայն զինու՝ զբարեպաշտու- 400
թիւնն էր ստացեալ. բաւական համարեալ առ ի
յօգնութիւն երևելի և աներևոյթ գազանացն։ Բայց
ունի դաշինս և ընդ քարինս վայրի. քանզի զանըղ-
գայս ի մարդկանէ՝ որք քարինք ագարակիս մերոյ
յիրաւի անուանեալ են, առ ինքն կոչէ, և ի ձեռն
փորձանացն համբերութեան՝ զգայունս առնել կամե-
ցաւ։ Խաղաղին ընդ նմա և գազանք վայրի. յայտ
է թէ դևք՝ ոչ ըստ կամաց, այլ ի հարկէ հնազան-
դեալք. և զայս ամենայն քաջութեամբ և համբե-
րութեամբ կազմեաց։ Գիտէ խաղաղեցուցանել զիւր
զտունն. քանզի Յովբայ մարմինն ընդ ոգւոց ոչ 401

*պատերազմի, և ոչ չարժմունք մարմնոյ նորա ընդդիմանան օրինաց հոգւոյ. ուստի և այցելութիւն վայելչութեան տան նորա ոչ վրիպեսցէ, տաճար Աստուծոյ եղեալ: Եւ գիտէ զի բազում զաւակ բատացեալ է յայնմ յաւիտենի. անդ ունի որդիս՝ իբրև զամենայն բանջար ի վայրի, որք բազում յամենայն քաղաքաւորութեանց նորա պատահեցան. յաղքատս և ի ծառայս, յորբս և ի տկարս, և յայլս՝ որ զամ մի պէտք էին այցելութիւնք յերևելիս և յաներևոյթս: Քանզի և ի ժամանակի իւրում իսկ է հնձեալ, հասեալ իբրև զցորեան՝ այսու առաքինութեամբ, և ի չեղջ կալոյն երկնից երթայ ի ժա-*
402 *մանակի իւրում ամփոփեալ, այսինքն է, ի ժամու իւրում: Վասն զի աղքատութեամբն և մեծութեամբ փորձեալ է. և ոչ միայն բազմորդութեամբն՝ այլ և անորդութեամբն երևեցաւ աստուածասէր, զի և Եղիփազու ըստ կարգի բանքս Յովբայ ջատագովէին:*

*«Ահաւասիկ զայս այսպէս քննէաք, այս է զոր լուաքն. բայց դու գիտասջիր յանձն քո՝ զինչ գործեցեր»: Զի եթէ յԱստուծոյ լուայք, կամ եթէ որպէս Աստուած կամի՝ քննեցէք ընդ Աստուծոյ զասացեալդ. ունելիս ասէ զայս ընդ Յովբայ, եթէ դու գիտասջիր յանձն քո զինչ գործեցեր՝ այսինքն է, թէ դու լեր քեզ դատաւոր, և իրաւարար խղճի*
403 *մտացդ քոց, և ամբաստան՝ զգաղտնեաց քոց. քանզի յանդիմանել զքեզ ճառս ամաչէ դէմ յանդիման: Այլ Յովբայ յայտնիքն պայծառ են, և գաղտնիքն՝ առաւել ևս պայծառագոյնք. քանզի վասն յայտնեացն վկայէ պատերազմն՝ որ ի թշնամւոյն եկն ի վերայ նորա: Իսկ գաղտնեացն՝ Աստուծոյ վկայութիւնն՝ որ ոչ ընդ վայր գրեցաւ, և ոչ միայն յառաջագիտութենէ՝ այլ և յիրացն իսկ ի փորձոյ: Որովք երանի է որ գտանի ի փորձ, և ծառայէ այնպէս Աստուծոյ՝ որպէս և ինքն հրամայէ. որում հատուցումն լինի ըստ բարեացն ակնկալութեան, որպէս գիտացաք զիւրաքանչիւր ոք ի բարեպաշտացն, որ վկայե-*

ցան Հայրապետք, մարգարէք երեւեցան. որպէս ա- 404
ռաքելոցն վարք դեռ ևս այժմ փայլեն, և յետ այս-
չափ ծննդոց՝ նոցա իւղոցն անուշահոտութիւն ոչ դա-
դարէ. որպէս զի և մեք պատահեսցուք այնմ ա-
նուշահոտութեան, և եւղ անուշահոտ եղիցուք ի
կենաց ի կեանս Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյ. ո-
րում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## Թ

«Կրկնեալ անդրէն Յովբայ ասէ. Եթէ կշռելով
կշռէ(ր) ոք զբարկութիւն իմ, և զցաւս իմ միանգա-
մայն բառնայր ի լուծ կշռոց, զի քան զաւազ ծո-
վափնեայ ծանրագոյն են. այլ որպէս երեւի՝ բանք
իմ անարգ են։ Զի նետք Տեառն ի մարմնի իմում
են, որոց սրտմտութիւնն ծծէ զարիւն իմ. յորժամ 405
սկսանիմ խօսել՝ կոտեն զիս։ Մի՛ եթէ տարապար-
տո՞ւց ինչ խանչիցէ էշ ի վայրի, բայց եթէ կերա-
կուր խնդրիցէ. կամ թէ գոչիցէ՞ եզն առ մսուր՝
յորժամ ունիցի զկերակուր. կամ ուտիցի՞ հաց ա-
ռանց աղի, կամ գուցէ՞ համ ի բանս ունայնս։ Դա՝
ոչ կարէ հանդարտել անձն իմ, զի շարաւ տեսա-
նեմ զկերակուր իմ, իբրեւ զհոտ առեւծու։ Զի եթէ
տացէ՝ և եկեսցեն ինձ խնդրուածք իմ, և զյոյս իմ
տացէ՝ Տէր։ Սկսաւ Տէր խոցոտել զիս, բայց ի սպառ
մի՛ սպանցէ զիս։ Եղիցի ինձ քաղաքն իմ գերեզ-
ման՝ յորոյ ի վերայ պարսպաց ճեմէի. քանզի ո՛չ 406
ստեցի ի բանս սրբոյն Աստուծոյ իմոյ։ Զի՞նչ է զօ-
րութիւն իմ զի համբերից, կամ զի՞նչ ժամանակ՝
զի հանդարտեսցէ անձն իմ։ Մի՛ եթէ զօրութիւն
վիմա՞ց իցէ զօրութիւն իմ, կամ մարմինք իմ պղն-
ձի՞ք են. կամ թէ ո՞չ ի նա ապաւինէի։ Արդ օգ-
նութիւն իմ մերժեցաւ յինէն, և ողորմութիւն հրա-
ժարեաց յինէն, և այցելութիւն Տեառն անտես ա-
րար զիս։ Ոչ հայեցան յիս մերձաւորք իմ, իբրեւ

*Հեղեղատք զի պատքին, և իբրև ալիք անցին զինև։
Որք սարսէինն յինէն՝ արդ աւասիկ հասին ի վերայ
իմ։ Իբրև զձիւն կամ զսառն պաղեալ՝ որ հալիցի ի
հատանելոյ ջերմութեան և ոչ ճանաչիցի թէ ո՛րպէս
407 էր, նոյնպէս և ես լքայ յամենեցունց, կորեայ և
տնանկացայ։ Տեսէք զճանապարհս Թեմնացւոց և
զշաւիղս Եսեբոնայ, որք տեսանէք՝ ամաչեցէք ամօ-
թով, և ոյք հայիքդ՝ պարտական գտցիք՝ որք ի քա-
ղաքս և ի գանձս յուսացեալ իցեն։ Դա՝ և դուք
աւադիկ անողորմ հասէք ի վերայ իմ. հայեցեալ ի
վէրս իմ՝ երկերուք։ Արդ ես խնդրեցի՞ ինչ ի ձէնջ,
կամ ձերո՞վ զօրութեամբդ կարօտեալ իցեմ ապրե-
ցուցանել զիս ի ձեռաց չարաց, կամ ի ձեռաց հզօ-
րաց փրկել զիս։ Ուսուցէք զիս՝ և ես լռեցից. եթէ
մոլորեալ ինչ եմ, ասացէք ինձ։ Այլ ուրեմն խոտան
408 են բանք ճշմարտի. քանզի ոչ եթէ ի ձէնջ խնդրեմ
բան կամ զօրութիւն։ Եւ ոչ կշտամբանք բանից ձերոց
լռեցուցանեն զիս, և ոչ բարբառոյ բանից ձերոց ան-
սացից։ Բայց զի իբրև ի վերայ որբոց յարուցեալ
էք, և ոտն հարկանէք ի վերայ բարեկամաց ձերոց»։*

*Ամենայն առաքինութիւնք ընտիր ի փորձութեան
կացուցանեն զճգնողն, և պայծառ ակնկալութեամբ
տան տեսանել մշակին զպտուղս հնձոցն. այլ և զօ-
րականին Աստուծոյ պսակաւ տան դառնալ ի պա-
տերազմէն ի տուն։ Բայց սակայն առաքինութիւն
զառաքինութեամբ առաւելեալ՝ փորձ գտանի, իսկ
409 համբերութիւնն քան զամենայն։ Քանզի սա ունի
յինքեան զիւրաքանչիւր գործոց ստացուածս, և ոչ
հեղգութեամբ զայսս ապականել տայ, և ոչ ընդ վհա-
տութեամբ անկանել, և ոչ յուսահատութեամբ յայլ
ճանապարհ տայ դառնալ՝ որ տանի ի մահ։ Եւ միան-
գամայն ասելի է, եթէ աթոռ, ցուպ և նեցուկ հաս-
տատութեան է համբերութիւնս՝ առաքինութեանցն։
Այսու մարտուցեալ և Յովբ՝ բաւական եղև տանել
առ ամենայն նենգութիւնս թշնամւոյն. և ի ծախել
մեծութեանն՝ ինքն կայր մեծատուն, և ընդ յափշ-*

*տակել եզանցն՝ ինքն մնաց զուարակ ազատ, որ գոր-*
*ծէր զայգին առաքինութեանց. և ի կորստեան իշոցն՝*
*ինքն էր բանաւոր բեռնաբարձ, որ զօրէնսն Աստու- 410*
*ծոյ բառնալ ոչ դադարէր։ Այրեցան հօտքն, այլ*
*Յովբ մնաց գառն անարատ, որ ոչ մեկնէր յաջոյն*
*Աստուծոյ. զուղտսն գերեցին, որք սրտին ի վերայ*
*եկին, այլ Յովբ զուղտսն ինչ ոչ համարէր, վասն զի*
*ինքն ուժգնագոյն բառնայր զբեռինս չարչարանացն.*
*որդիքն անկան ընդ ապականութեամբ, այլ Յովբ*
*ոչ ինչ զգայր այնմ ախտից, վասն զի և զպատուի-*
*րանսն համարէր իւր որդիս. վասն զի հաւասարեալ*
*թուով էին որդիքն և դստերքն պատուիրանացն.*
*ախտանայր մարմինն և տակաւին ապականէր, բայց*
*ինքն զանդամս հոգւոյն ընդ զգուշութեամբ ունէր.*
*թարախեալ կաթէին մարմինքն, բայց նա աղօթէր 411*
*զի և յայլոց անդամոցն մեկնեսցի. նախատէին բա-*
*րեկամքն, բայց նա երկայնմտութեամբ անցանէր*
*ընդ սաստկութիւն խորոց նախատանաց, և դատա-*
*ւոր և իրաւարար խնդրէ, և աղօթէ՝ զի եկեսցէ ին-*
*քեան կշռօղ սրբութիւն իւրոյ արդարութեանն, և*
*զյոյժ անմտութիւն իւրոյ կշռոյն կամի ցուցանել։*
*Իսկ այժմ ոչ եթէ առանց դիմաց ինչ հանէ զբանս,*
*որպէս յառաջագոյն հանէր, և իբրև յատենի և ի*
*ճգունս լուծանէ զբարեկամացն յանդիմանութիւնս.*
*վասն այսորիկ յիրաւի ասաց՝ թէ «կրկնեալ Յոբրայ*
*պատասխանեաց», քանզի այսպէս կայ ի սքանչելի 412*
*պատմութեան մատենիս։*

*«Կրկնեալ Յոբրայ ասէ»։ Քանզի բարեկամքն*
*կրկնելով ի բանս իւրեանց՝ պատասխանէին, ակն*
*ունելով, եթէ ընկրկեսցուք զՅովբ։ Իսկ Յովբ կըր-*
*կնեալ պատասխանէ, ոչ վասն այնորիկ զի ընկրկեա-*
*ցէ, այլ զի մի՛ ընկրկեսցի։ Մանաւանդ զի զնոսա*
*կամէր ուղղել որք զնայն կամէին ընկրկել. որք յիւ-*
*րեանց բանից մղեալք անկանէին. և կամէր եթէ*
*չինեսցէ զնոսա ի վերայ վիմին, յորում և ոչ իմա-*
*նալի ծովուն ալիք կարասցեն խռովեցուցանել զնա։*
*Իսկ զի՞նչ արդեւք կրկնեալ պատասխանիցէ։*

413 «Եթէ կշռելով ոք կշռէր զբարկութիւն իմ, և զցաւս
իմ միանգամայն բառնայր ի լուծ կշռոց. զի քան զա-
ւազ ծովափնեայ՝ ծանրագոյն են»: Յամբաստէք, ա-
սէ զՅովբ, իբրև թէ բարկութեամբ խօսիցի, և կամ
սրտմտեալ ճարտարաբանիցէ, այլ եթէ զբարկութիւն
բանից իմոց կշռիցէք ընդ չարչարանս ախտիցն, ոչ
մի մի, այլ միանգամայն կշռելով՝ ծանրագոյն գտա-
նիցէք քան զաւազ ծովափնեայ զվիշտս իմ: Քանզի
տրտմեցուցանէր. զՅովբ ոչ ապականութիւն ստա-
ցուածոցն, ոչ կորուստ ընչիցն, և ոչ հարուածք որդ-
ւոցն, և ոչ աղբերք թարախոյ՝ որ սահէին ի վիրաց
անտի. այլ որ յետ այնորիկ այսպիսի ինչ դժնդակ
414 է բարբառ կնոջն. այսպէս և դուք նախատէք: Որչափ
ինչ են վիշտքն Յովբայ, իբրև զաղ թացեալ և իբ-
րև զաւազ ծովու ծանրագոյն ևս է. զի՞նչ ծանրա-
գոյն են ամենայն երևելիք ծովու ալիքս քան զբանս
ձեր, որ փչեալ ելանեն ի սահմանաց թշնամւոյն.
զամպարշտութեան կարծիս կամիք արկանել ի վե-
րայ արդարոյն:
«Այլ որպէս երևի՝ բանք իմ անարգ են»: Ոչ
յինքենէ՝ այլ ի վշտացն երևին անարգ. ոչ զօրու-
թեամբ բանիցն, այլ յայտմանէ զի վիրաւորեալս
եմ. բայց բանքս իմ պայծառ են ճշմարտութեամբ,
և լի ամենայն իմաստութեամբ:
«Զի նետք Տեառն ի մարմնի իմում են, որոց
սրտմտութիւնն ծծէ զարիւն իմ, յորժամ սկսանիմ
415 խօսել՝ խոցոտեն զիս»: Այնու նետիւք նեղի Յովբ,
զոր Դաւիթ սաղմոսարանաւն երգէր. «Նետք քո
հարան ի մարմինս իմ, և յիս հաստատեցաւ ձեռն
քո»: Քանզի երկոքին ասեն զվշտացն՝ զոր ածեն
ի վերայ նոցա թշնամիքն, թոյլ տալով Աստուծոյ.
և վասն այսորիկ զայսպէս փորձանս՝ նետս Տեառն
անուանեն. յայտմանէ ասէ Յովբ, եթէ «ծծէ զա-
րիւն իմ»: Եւ որպէս թէ մաշին ստացուածք ան-
ձին իմոյ, ոչ ժուժալով կալ համարձակութեամբ ա-
ռաջի նախատողացն պայծառ դիմօք. քանզի յոր-

ժամ սկսանի խօսել՝ յայնժամ խոցի ցաւովքն. մա-
նաւանդ յերկարաբանել լեզուաւն, յայտ է թէ
սաստկագոյն յուզին վէրքն. և ապա սանձել հար- 416
կաւորի զբանսն, երկուցեալ մի՛ եթէ Աստուած ու-
րեք ոչ հաճիցի ընդ այնս: Իսկ որպէս յաւելու ի
բանսս, ասիր. հաւատացուցանելով եթէ բարուք և
պատշաճ ասացան՝ առաջին բանքն Նորա:

«Մի՛ եթէ տարապարտո՞ւց ինչ խանչիցէ էշ ի վայ-
րի, բայց եթէ կերակուր խնդրիցէ. կամ թէ գոչիցէ՞
եզն առ մսուր՝ յորժամ ունիցի զկերակուր»: Մի՛
եթէ դարովիցէ՞ ոք զէշ ի վայրի, յորժամ սովեալ
խանչիցէ. կամ իցէ՞ ուրեք եթէ յագեալ՝ արձակիցէ
զբարբառ. կամ եթէ եզն զքաղցելոյ բարբառ ար-
ձակիցէ՞, յորժամ կայցէ առաջի Նորա կերակուր:
Մի՛ եթէ հեծիցէ՞ արդար, քանզի Նա է էշ վայրենի.
քանզի ազատ է յամենայն չար քաղաքավարութենէ 417
մարդկան. դոյն և եզն է, որպէս զի գործէ զագա-
րակն առաքինութեանց: Մի՛ եթէ հեծիցէ՞ երբեք,
բայց եթէ առ ի չգոյէ կերակրոյն. իսկ կերակուր
արդարոցն է դատաստանք Աստուծոյ. քանզի այնու
կերակրեալք, առ ի յաշխատութիւնս և ի ցաւս վասն
օրինացն և պատուիրանացն յօժարք են:

«Կամ ուտիցի՞ հաց առանց աղի, կամ գուցէ՞
համ ի բանս ունայնս», որպէս ձերքդ են առանց
աղի: Իսկ Յովբայ բանիցն հաց ոչ երբեք առանց
աղին բարեպաշտութեան էր, և ոչ համ բանից բե-
րանոյ արդարոյն՝ ընդունայն է. քանզի զոր ասացի
բարիոք մտօք և ի դէպ ժամու, և զոր պարտ էր՝ 418
զայն խօսեցայ. փութալով ելանել յայսմ ընդունայ-
նութեան կենացս՝ զի ոչինչ ունի ցանկալի բարեպաշ-
տաց. բայց ինձ և ցուք ես են վասն վշտացս ի վե-
րայ հասելոց:

«Դա՝ ոչ կարէ հանդարտել անձն իմ, զի շարաւ
տեսանեմ զկերակուր իմ՝ իբրև զհոտ առեւծու»:
Զազրահոտ լինի իմ ամենայն կերակուրս ի շարա-
հոտութենէ ձեռաց և ի վիրաց. ես ինքնին ինձ առ-

*նեմ ապականելով զմարմինս իմ, և զխեցի ի գործ արկանեմ փոխանակ ժանեաց առեւծու, որովք յու-զի հոտ ապականութեանս, և բուրէ հոտ նեխութեան՝ որպէս և ի*[1] . . . . . . . . . . . . .

1. յՕր. պակասէ տետր մի (Թուղթ 12). գնեմք ըստ Վանականի։

«Դա՛ ոչ կարէ հանդարտել անձն իմ, զի շարաւ տեսանեմ ըզ-կերակուր իմ՝ իբրև զհոտ առիւծու»։ Ես ինձ առիւծ եմ՝ խեցեաւ քերելով զմարմինս. ապականեմ որպէս ատամամբք առիւծու, և ի նեխութենէ հոտոյն լինի կերակուր իմ որպէս հոտ՝ որ ելանէ ի քմաց շաղղակեր առիւծուն։ Ոչ կարէ հանդարտել անձն իմ. զայս որ ի կարգիս ասէ։

«Զի եթէ տացէ՝ և եկեսցէն յիս խնդրուածք իմ, և զյոյս իմ տացէ»։ Արդարև իմաստասէր այր ոչ խնդրէ աշխարհականս ինչ և անարժանս. այլ խաղաղութեամբ և բարեպաշտութեամբ զելս ի մարմնոյն. վասն այսորիկ առընթեր եդ զսա։

«Սկսաւ Տէր խոցոտել զիս, բայց ի սպառ մի սպանցէ զիս»։ Սկսաւ հարկանել զմարմինս, զի թշնամին առանց նորա ոչ կարէ խոցոտել զիս մահուամբ։ «Ի սպառ մի՛ սպանցէ» հոգևոր մա-հուամբն, այլ յառժամանակեայ մահուանէս ընկալցին կեանքն ճըշ-մարիտ։

«Եղիցի ինձ քաղաքս իմ գերեզման՝ յորոյ վերայ պարսպացն ճեմէի, և ի նա ոչ խնայեցից. քանզի ոչ ստեցի զբանս սրբոյն
(Եշա) Աստուծոյ իմոյ»։ Կրկին կամի Յոբ զօգուտ ազգին իւրոյ. զի ար-դարոյ որպէս կենդանի տեսիլն յօգուտ է, և յիշատակն շահ։ Ի պարսպին շրջելով՝ դիտէր զվայրսն և զաղքատութիւնս ուղղէր. իսկ մեռեալ գերեզմանաւն պարիսպ եղէց նմա, և ի ժամանակեայ կեանս ոչ խնայեցից և ոչ ստեցից Աստուծոյ իմոյ։ Ոչ ինչ հոգամ վասն մարմնոյ կենացս, զի մի՛ սուտ գտայց և ի սուտս հանից զԱստու-ծոյ վկայութիւնն վասն իմ. զի մարմնասէր մարդս այսքան վկայու-թիւն առնուլ ոչ կարէ յԱստուծոյ. քաղաք, դրախտ և գերեզման, վերստին մտանելն ի նա. զի ոչ ստէ Աստուծոյ՝ խրատու օձին։

«Զի՞նչ է զօրութիւն իմ զի համբերից, կամ զի՞նչ ժամանակ՝
(Եշա) զի հանդարտեսցէ անձն իմ»։ Մարմինս կաւ եղեւ և տկար, և ժա-մանակեայ կեանքս անցաւոր, այս լուծանէ զանձինս քաջութիւն, և յիրաւի դժուարիմ ի վիշտս։

«Մի՛թէ զօրութիւն վիմա՞ց իցէ զօրութիւն իմ, կամ մարմինք իմ պղնձի՞»։ Թէպէտ հաւասար պղնձոյ և երկաթոյ զօրաւոր էի, յան-դիմանէր փորձութիւնքս։ Զայս ոչ հայհոյութեամբ ինչ ասէ, այլ զի փութայր ելանել ի մարմնոյն և առ նա լինել որ վկայեացն նմա. և վասն փորձողին ասէ, համարի զերկաթ իբրև զոչինչ, և զպղինձ իբրև զփայտ փուտ։

«Կամ թէ ո՞չ ի նա ապաւինէի». զի առաւել ես յանկայի հա-

սանել նմա։ «Օգնութիւն իմ մերժեցաւ յինէն, և այցելութիւն հրաժարեցաւ, այցելութիւն Տեառն անտես արար զիս»։ Եւ ուստի՞ իցէ այս յայտ. վասն զի վիշտք մարդկան սովոր են զթշնամիս ի գութ խոնարհեցուցանել, և ի վշտակցութիւն ածել. իսկ իմ բարեկամքս և ընդ վշտացս ի վերայ յարուցեալ են. քանզի ասէ.

«Ոչ հայեցան յիս մերձաւորք իմ, իբրև հեղեղատ պակասեն, և իբրև զալիս անցին զինև»։ Որպէս հեղեղատ զի ընդ դադարելն ցամաքէ, և եզերք զորով սփռի ալիք, այնպէս և բարեկամքս իմ ի վշտանալս իմ. զի առաւել պէտս ունէի սիրոյ և ցաւակցութեան. փոխանակ այնմիկ նախատեն զիս։

«Որք սարսէին յինէն՝ արդ ահաւասիկ հասին ի վերայ իմ։ Իբրև զձիւն կամ իբրև զսառն պաղեալ՝ որ հալիցի ի հասանել ջերմութեան. նոյնպէս և ես կորեայ յամենեցունց և տնանկացայ»։ Ի բարեկամացն օրէնք սիրոյ խափանեցան, և ի հնազանդելոց ահն բարձաւ, և թագաւորս որ զծիրանիսն զգեցեալ էի, ի վշտակրութենէս և ի տառապանացս՝ իբրև պաղ հալեալ որոյ հետք ոչ երևին, այնպէս իսկ եմ։ Առ ի յուղղութիւն ածելոյ զբարեկամս և խրատելոյ զլսողսն, տես թէ որպիսի՛ դէմք դնէ բանիս։

«Տեսէք զճանապարհս Թեմնացւոց՝ որք զշաւեղս Եսեբոնայ հայէիք, որ տեսանէք ամաչեցեալ ամօթով, և որ հայիք պարտապան զոլիք, որք ի քաղաքս և ի զանձս յուսացեալ էք»։ (Եւս) Քանզի Թեմնացւոց թագաւոր էր Սոփար, և զաշխարհն Եսեբոնայ ստացեալ էին ամենեքեան՝ զդրացին Հնդկաց, զբազմօսկին տեսէք, ասէ. կամ զհարկատուն ասէ կամ. զմերձակայ զաւառն, և զճանապարհ նոցա՝ զվարսն։ Թէպէտ ի մեծութիւն և ի բազմութիւն ընչիցն հպարտացեալ էին, ունէի և ես յոլովս. և զի անցաւորք էին՝ ի չընչել փորձութեանն անյայտ եղեն։

«Դա՝ և դուք անողորմ հասէք ի վերայ իմ. հայեցեալ ի վէրս իմ՝ երկերուք»։ Թէպէտ և յայլս դարձուցի զասացեալս, այժմ ձեզ ասեմ. անողորմ հասէք ի վերայ իմ։ Հայելով ի վիշտս իմ՝ զարհուրել արժան էր, զի և յարդարոց վերայ զան այսպիսի փորձանք. և եթէ մեղաւոր՝ երկնչել առաւել ի փորձանաց արդարոց. «զի թէ արդարն հազիւ կեցցէ, մեղաւորն ո՞ւր երևեսցի»։

«Արդ ես խնդրեցի՞ ինչ ի ձէնջ, կամ ձերո՞վ զօրութեամբ կարօտեալ ինչ իցեմ՝ ապրեցուցանել զիս ի ձեռաց հզօրաց, կամ ի ձեռաց թշնամեաց փրկել զիս»։ Եթէ ծանրացայ ինչ ձեզ՝ խնդրելով ինչս կամ օգնականութիւն, և ձեզ ոչ լինէր, կամ տալն յիրաւի դժուարէիք պատճառելով. բայց թէ ես գիտեմ յումէ՛ փորձանքս, կամ ո՛յր թոյլ տալով, և համբերութեամբ տանիմ՝ յուսալով յօգնականութիւն Աստուծոյ, դուք ընդէ՞ր զչարիս իբրև հարեալք յինէն, որ ոչ ինչ նեղեցի զձեզ։

«Ուսուցէք զիս՝ և ես լռեցից. եթէ մոլորեալ ինչ եմ, ասացէք ինձ»։ Ուսուցէք, զի տեսանէք որ լռութեամբ լսեմ և ոչ լինիմ անհաւան վասն վշտիս, և ի խրատս անխրատիմ. այլ թէ իբրև զմոլորեալ յանդիմանէք, պարտ էր ձեզ խրատ յանդիմանութեան ունել, և փոյթ առ ի դառնալ տեսջիք զիս։

«Այլ որպէս երեւի՝ խոտան են բանք ճշմարիտք», առ այնոսիկ որ ոչ են ճշմարիտք. զի իմանամ զձեզ ոչ պիտանացուս, յուսահատ ի ձէնջ լինիմ։

«Զի ունիմ զայն որ կարողն է զօրաց(ուցա՛)նել զիս. և ոչ կըշտամբանք բանից ձերոց լռեցուցանեն զիս, և ոչ բարբառոյ բանից ձերոց անսացից»։ Քանզի սովոր եմ հաւանել դատաստանի, և ոչ ապականելի և անօգուտ բանից. ուստի և բանից ձերոց ընդունայն սասցելոց՝ ոչ հաւանեցայց։

«Բայց զի իբրև ի վերայ որբոյ յարուցեալ էք (և ոտն հարկանէք) ի վերայ բարեկամի ձերոյ»։ Աստուած է օգնական որբոց, և ընդ նախատանաց բանս ձեր Աստուած առաւել բարկանայ քան զիս։ «Եւ ոտն հարկանէք ի վերայ բարեկամի ձերոյ». բանիւքդ առաւել հարկանէք զիս քան ոտիւքդ, զբարեկամութեան օրէնսն խոտելով. և այս յանցանք յԱստուած համարեալ են, որ ոչ միայն սիրել ասաց զընկերն իբրև զանձն, այլ և ինքն իսկ սէր կոչիլ կամի։

## Ժ

«Բայց արդ հայելով յերեսս ձեր՝ ոչ ստեցից»։ Վասն զի թագաւորական պերճութեանդ ձեր ակն ոչ առնում. զի զոյին ինձ այդոքիկ, այլ էանց իբրև զծաղիկ խոտոյ. վասն որոյ բարեկամացն ոչ առնում յանձն շնորհ առնել զՃշմարտութիւն. Բայց դուք ընդ իս հայեցարուք սրտի մտօք, և ուսարուք զհամբերութիւն. զի «լաւ է երթալ ի տուն սգոյ քան ի տուն գինւոյ»։

. . . . . . . . . . . . . . . .

419 սցուք զխորհուրդս մեր, եթէ «Նստարուք, և մի եղիցի անիրաւութիւն ի դատաստանի»․ քանզի այս
ախտս թագաւորական է․ և դարձեալ ասէ, թէ «իրաւանց հաւանեսջիք»․ քանզի այսպիսի ժողով ի
մէջ հրեշտակաց և հրեշտակապետաց կացուցանէ
զմեզ․ այլ զի՞նչ յայտնանէ առաջի կարգեաց Յովբ
յարդի ընթերցեալս (?)։ Բայց դուք հայելով պարապեցէք ինձ։
«Եւ արդ՝ հայեցեալ յերեսս ձեր՝ ոչ ստեցից»։
Հայեցայք Յովբ, այլ պարապելով փութապէս, և
մտօք պարապելովք հայեցայք, քանզի այսպէս առնէ օգուտ՝ յորժամ տեսանի․ յորժամ ոչ միայն ընդ
արտաքին ընդ նոր մարդն հայի, այլ և ընդ ներքին․
420 յորժամ ոչ միայն տեսանէ զմարմնոցն զվէրս, այլ

յորժամ հայի ընդ մեծութիւն անձին նորա և ընդ
մարգարիտ ոգւոցն, և տեսանէ զծաղիկ համբերու-
թեանն, և զիմաստութեան հասակն, և զջերմ նա-
խանձ աստուածասիրութեանն։ Պարապեցէք՝ ինձ.
քանզի խրատիչ եղէց ձեզ առողջացդ ես հիւանդա-
ցեալս. պարապեցէք ինձ. վասն զի «լաւ է երթալ
ի տուն սգոյ քան ի տուն գինարբուաց»։ Ես առ ի
զղջումն շարժեմ զամենայն տեսօղս իմ. յորժամ
տեսանէ զիս մեղաւոր՝ ընթասցի յապաշխարութիւն,
իսկ արդարն առաւել ևս ի զգուշութիւն ընթասցի։
«Ցերեկս ձեր ո՛չ ատեցից». քանզի բարեկամաց ոչ
գիտեմ զառ ի փոխան շնորհս առնել. այլ և ոչ ա-
մաչեմ ի մեծութենէ ձերմէ, և ոչ ի թագաւորու- 421
թենէ ձերմէ ակն ածեմ. վասն զի և Յովբայ գոյր
այդ, սակայն ծաղիկ էր խոտոյ. վասն այնորիկ
վաղվաղակի ապականեալ էանց։

«Նստարուք իսկ, և մի՛ եղիցի անիրաւութիւն ի
դատաստանի, և դարձեալ իրաւանց հաւանեսջիք»։
«Նստարուք». քանզի որ չարաչար ընթանան՝ ի մի-
մեանց գլորին։ «Եւ մի՛ եղիցի անիրաւութիւն». քան-
զի որ սիրէ զանիրաւութիւն՝ ատեայ զանձն իւր։
«Եւ դարձեալ իրաւանց հաւանեցայք». զի և ձեզ հա-
ւանեսցի արդարն Աստուած։ Բայց բարւոք եդ առ-
ընթեր և «զդարձեալն». այսինքն է, եթէ ի սկզ-
բանէ ձեր արդարութեան ընթացք ինչ լեալ են, և
անտի զձեզ թշնամւոյն մոլորեցուցեալ՝ առ ի յանի-
րաւութեան ընթացս էած, յայնմանէ Նստարուք, 422
մեկնեցայք և դադարեցէք, առեալ անդրէն զառա-
ջին կամսն. հաւանեցարուք անդրէն արդարութեան
և կամակիցք եղերուք, և մի՛ թողուք զնա յափշտա-
կել չարութեան ախտիցն, մի՛ նախանձու, և մի՛ քի-
նու, և մի՛ հակառակութեան. և ապա ևս յայնժամ
բարիոք կարասցէք դատել զՅովբ։

«Քանզի ոչ գոյ ի լեզուի իմում անիրաւութիւն,
կամ կոկորդս իմ ոչ խոկայցէ յիմաստութիւն»։ Եւ
աթոռ անիրաւութեան ոչ եղև լեզուն Յովբայ, վասն

զի խորհի ի գիտութիւն Աստուծոյ, և զերկնից ի-
մաստութիւնն հանապազ բղխէ․ բարի գանձանակ
423 ունի ի սրտին, ուստի կոկորդն առնու զիրաւունս,
և տայ լեզուաւն իբրև յաղբերց վտակաց։ Բայց
վկայեսցէ իմոյ իմաստութեան և արդարութեան բա-
նիցս՝ և որ այժմս ասելոցս եմ։
«Ո՞չ ապաքէն իբրև զփորձութիւն են վարք մար-
դոյ ի վերայ երկրի, իբրև զաւօրեայ վարձս վարձ-
կանի կեանք նորա»։ Վասն է՞ր անգոսնէք զՅովբ,
եթէ հեծէ վասն աստի կենացս․ քանզի սակաւ և
առժամանակեայ են կեանքս, և այսչափ չար պա-
տահարօք լի են, մինչև ամենայն կեանքս փորձու-
թիւն են․ քանզի անհաստատ են պայծառութիւնքս,
և աշխատութիւնքս վշտագինք։ Անհաստատ են պայ-
ծառութիւնքս՝ քանզի մինչչև ուրուք վայելեալ է,
վաղվաղակի փախչի ի նոցանէն․ զի բազում անգամ
424 և ի մնաս իսկ փոխի։ Վշտագին են աշխատանքս՝ վասն
զի ամանն չէ հաստատուն, զի կաւն դիւրաւ փշրի։
Զայս ամենայն ասացեալ է վասն երկրիս և վասն այ-
սորիկ իբրև զաւօրեայ վարձկանս եմք․ քանզի և ոչ
մեք իսկ ունիմք իշխանութիւն հասանել ի վաղիւն,
որպէս և աւօրեայ վարձկանն ոչ ունի իշխանութիւն
գործել ի վաղիւն, որ ոչ ի տարիս և յամիս և ի
շաբաթս է վարձեցեալ։ Այլ միաբանս գտցես զՅա-
կովբ, զի ասէ նմանս Յովբայ, (և) ածէ զնովիմբ․ «Որք
ասէին, այսօր և վաղիւն երթիցուք յայս անուն քա-
ղաք, և եղիցուք անդ տարի մի, վաճառս բացցուք,
շահս շահեսցուք․ որք ոչ գիտէք զի՞նչ վաղիւն ձեզ
425 բերիցէ․ քանզի զի՞նչ են կեանք ձեր․ ծուխ, և առ
սակաւ մի երևելի, ապա յետ այսորիկ ապակա-
նեալ»։ Բայց սակայն, որպիսի՞ ինչ Յովբ յասացելոցս
ի վերայ էած առ ի ցոյց՝ զի անհաստատ են ամե-
նայն մարդկեղէն կեանքս․ իսկ նմա վհատել ևս տայ
վասն աստի կենացս ստէպ փորձանքս։
«Կամ իբրև զծառայ երկուցեալ ի տեառնէ իւր-
մէ, և պատահեալ ընդ հովանեաւ նորա։ Եւ իբ-

րև զվարձկան որ սպասիցէ վարձուց իւրոց, նոյն-
պէս և ես սպասեցի ամսոց սնոտեաց. գիշերք
ցաւագինք տուեալ են ինձ»: Եւ ոչ միայն աշխա-
տելի են կեանքս, այլ և ահագին. քանզի յոր-
մէ հետէ վիրաւորեցայ՝ երկուցեալ եմ ի Տեառնն
հարուածոց. և վասն այսորիկ այսր և անդր հար-
թուցեալ եմ ըստ նմանութեան ծառայից՝ որոց ըս- 426
պառնացեալ է տերանց իւրեանց. այլ և յամենայն
աւուրս ըստ օրինակի վարձկանաց, որք ակն ունին
վարձուց իւրեանց, և յոյս ստացուածոց իւրեանց և
կերակրոց՝ վարձն է: Գոյնպէս և ես ակն ունիմ
համբերութեանս հատուցմանց, բայց ոչ պատահիմ.
քանզի բազում ժամանակ է և չատ թիւք ամսոց
մաշեալ են. զի յամենայն աւուրս ակն ունելով
ծնկեալ եմ ընդունայն յուսով: Քանզի ոչ եղև վըշ-
տացս անց, և զգիշերս բազմադիմի վշտացս համ-
բերեմ. քանզի յայնժամ առաւելագոյն լինի ինձ
մարմնոյս ախտ. և խորհրդոցս պատերազմ սաստկա- 427
գոյն գայ ի վերայ իմ, և յորդեն յիշատակք տան-
ջանացն. վասն զի ոչ յոք սթափին խորհուրդք ան-
ձինս:

«Եթէ ննջեցից՝ ասեմ, ե՞րբ իցէ տիւ. և եթէ յառ-
նիցեմ՝ դարձեալ ե՞րբ իցէ երեկ. լի ցաւովք լինիմ
յերեկորեայ մինչև ցառաւօտ»: Ոչ ընդունայն ինչ
փութամ խզել զոստայն կենաց իմոց. և ի զուր
աղօթեմ յետ մտից արեգական, փութապէս ընթա-
նալ յարևելս, և յետ արևելից դարձեալ ի մուտս
փութապէս շրջեսցի անիւ կենացս իմոց. վասն զի
առ ի հասարակ կենացս հանգիստ՝ ինձ առ ի ցաւս
և ի հեծութիւնս տուեալ է:

«Թաթաւին մարմինք իմ զազրութեամբ որդանց,
մաշեցի զկոշտս երկրի առ ի զթարախ քերելոյ»: 428
Է՛ ինչ որ ես ապականեմ զմարմինս, և է՛ ինչ որ
որդունքս. և աղբ ի վերայ աղբոյ նստին մարմինքս,
և ծնանին մարմինքս որդունս յապականութենէ վի-
րացս. իսկ նոքա ծնեալք ապականեն զնշխարս ծնո-

դաց. քերելով կոշտիւք երկրիս՝ առաւել վիրաւորին
ի քերանացն. զի քերեալ զոսա ապականեն զքե-
րող մարմինս և ծծելով հոսեն աղբիւրս թարախոց։
Իսկ զի այսչափ ցաւագին են կեանքս, ընդէ՞ր դա-
դարեն յառժամանակեայ և յապականացու կեանս։
«Բայց կեանք (իմ) թեթևագոյն են քան զբանս,
և կորեան յունայնութեան յուսոյ»։ Յիրաւի մարդ-
429 կեղէն կեանքս թեթևագոյն քան զբանս թուին ար-
դարոյն. վասն զի բազում են բանք մարդկան որ ի
բազում ամս տևեցին և հասին ազգաց յազգս։ Թէ-
պէտ և թողցուք զբանս աստուածաշունչ արանց,
որչափ ինչ զարտաքին իմաստնոց զասացուածս մին-
չև ցայժմ գտանեմք, զի պահեալ է ազգէ յազգ։
Իսկ կեանք որ մարմնովս կեան՝ այս է, ուտել և ըմ-
պել և ժողովել գանձս, և հնազանդել մարմնոյ ցան-
կութեանց և ախտից, որ ըստ նմանութեան ծխոյ
անցանեն. մինչև քան զխօսս դիւրագոյն են յապա-
կանութիւն՝ կեանքս մարդկեղէնք։ Իսկ զՅովբ տըր-
մեցուցանեն, թող զհասարակաց կեանս, այլ և իւր
430 որ էին յոլովագոյն կեանքն։ Քանզի այլոց կեանքս
մաշեալ են, որք առին կամօք զպատրանս աշխար-
հիս. բայց նորայն ընդունայն յուսով, զի ակն ու-
նէր ճգանցն հատուցման և ոչ պատահէր, և ոչ
յոյսն ի գործ ևս հասանէր. և վասն այսորիկ փութայր
ի կատարած աստի կենացս։ Ոչ բնաւին յուսահատեալ
ի հատուցմանէն, այլ իբրև թէ աստէն այն ոչ դի-
պի, այլ անդր փութայր, ուր կարծէր թէ ամենայն
իրօք ընկալցի զհատուցումն. ուստի և բարիոք չինէ
ի վերայ ասացելոցս՝ որ ի կարգիս կայ։
«Յիշեա՛ զի փուք են կեանք իմ, և ոչ դարձցի
431 ակն իմ տեսանել զբարի»։ Փուք զայս ասէ՝ զոր
յօդոց աստի ծծեմք մարդիկս հանդերձ ամենայն
կենդանեօք. զի որ միանգամ սպառի՝ ոչ ևս այլ
անդրէն առ մեզ դառնայ, ուստի և մեք այլ ոչ ևս
դառնամք յաստի կեանս, և կամ ի բարիս յայս
ի քաղաքավարութեան. այսինքն է, թէ ոչ դառ-

նամք ի վայելչութիւն երկրիս և կամ որ յերկրէս է.
քանզի յայլ կեանս և յայլ աշխարհ է մեր փոփո-
խումնս, ուստի և զայս յիրաւի էած ի վերայ։
«Եւ ոչ հայեսցի յիս ակն տեսողի»։ Քանզի ոչ
ևս մարմնոց աչօքս որ մնացեալքս եմք, կարեմք
տեսանել զերթեալսն աստի. ոչ եթէ վասն այնորիկ
է թէ յանգոյութիւն անկանիմք յետ աստի գնա- 432
լոյն, այլ լուր զոր ասէ ի կարգիս։
«Աչք քո յիս՝ և ոչ ևս իցեմ, իբրև զամպ ջըն-
ջեալ յերկնից»։ Ո՛չ եթէ բովանդակ միանգամայն
ընդ ապականութեամբ անկեալ եմ, կամ ոչ վասն
այսորիկ առաջի գրեցաւ, եթէ «աչք քո յիս», զոր
գոլ իսկ և մնալ առանց ամենայն հակառակութեան
ցուցանէ. քանզի զիա՞րդ զապականելոյն և զմիան-
գամայն կորուսելոյն և ի վերայ չգոյացելոյն Աս-
տուած ակն ածիցէ. այլ ոչ եմ ըստ մարմնոյ և ըստ
քաղաքավարութեան կենացս այսորիկ։ Քանզի ասա-
ցեալ զայս՝ առ ի մեկնութիւն այսորիկ, «իբրև զամպ
ջնջեալ յերկնից», վասն զի ամպ ջնջեալ յերկնից՝ ոչ
ևս մնայ յայնմ ի տեղ ուստի գնաց հրամանաւ ա- 433
րարչին, բայց յայլում տեղւոջ է ուր հրամայեցաւ
նմա. բայց մեզ ոչ երևի զի գնացեալ է ի միջոյս,
այլ Աստուծոյ տեսանի, զի փոխեալ է ի տեղւոջէ ի
տեղի. այսպէս իմասցիս զէմ յանդիման որ ըստ
կարգիս կայ։
«Զի եթէ իջանիցէ մարդ ի դժոխս, և ոչ ևս ել-
ցէ»։ Յայտ է թէ յայսմ յորում եմք ի քաղաքա-
վարութեանս։ «Եւ ոչ ևս դարձցի ի տուն իւր, և
ոչ ևս ծանիցէ զնա տեղի իւր»։ Զի ոչ ևս դառնայ
ի տուն իւր, զոր շինեալ է ի փայտից և ի քա-
րանց և յայլոց ևս նիւթոց, և ոչ տեղի իւր ծա-
նեաւ զնա, զոր ի վաճառէ կամ յարուեստոյ կամ
այլովք հնարագիտութեամբ ստացեալ է։ Եւ զի՞նչ
ևս յաւել յասացեալսս։ 434
«Այսուհետև ոչ ես իսկ խնայեցից ի բերան իմ.
խօսեցայց մինչ իցեմ ի վիշտս հոգւոյ իմոյ. բացից

զբերան իմ դառնութեամբ անձին իմոյ տագնա֊
պեալ»: Զի այսք այսպէս են, և ոչ ինչ այլ ումեք
հարկաւորութիւն է յաստնոցս. բայց զի ինձ վշտա֊
գին է և լի ամենայն աշխատութեամբ. յիրաւի ոչ
խնայեցից բերանով իմով ամբաստան լինել զաւիթ
երկայն կենացս, և ո՛չ դադարեցից կոչել՝ խնդրելով
զաստի հրաժարմունս. այլ իբրև ի վիշտս եղեալ, և
նեղեալ ոգւով և պատեալ բազմութեան չարեօքս,
բացից (զ)դառնութիւն անձին իմոյ. այսինքն, բացից
435 զվիշտս անձին իմոյ, և զոր ի միտս խորհիմ՝ զայս
լեզուաւս դնեմ առաջի արարչին իմոյ դատելով, զի
ոչ եհան զիս վաղվաղակի առ ի ընթերակայ կենա֊
ցըս. և ընդէ՞ր եթող զիս Տէր, զի պատեալ պահես֊
ցէ զիս թշնամին:
«Մի՛ եթէ ծո՞վ իցեմ կամ վիշա՞պ, զի կարգեցեր
զինև պահ»: Ոչ զօրութիւն ունիմ իբրև զծովու,
քանզի զնա մեծագոյն արարեր ի տարերցս. և վասն
այսորիկ պահապան եդիր զնովաւ զաւազ, որ քոյով
հրամանաւ բեկանէ և կապէ զնա ի չափու իւրում,
եթէ «մինչև ցայս տեղի եկեսցես, և ոչ ելցես ըստ
սահման քո, ի քեզ այդրէն փշրեսցին ալիք քո»:
Այլ ոչ զչարութիւն ունիմ զայնր վիշապի, ընդ ո֊
436 րում եդիր թշնամութիւն ազգի մարդկան. որ հրա֊
մայեցեր նմա իբրև ի թշնամւոյ զգուշանալ ի մարդ֊
կանէ, հրաման տուեալ այսպիսի վասն նորա. «Ե֊
դից թշնամութիւն ի մէջ քո և ի մէջ կնոջդ, և ի
մէջ զաւակի քո և ի մէջ զաւակի դորա. նա սպա֊
սեսցէ քում գլխոյ, և դու սպասեսցես նորա գար֊
շապարի»: Բայց սակայն պահպանութիւն կարգե֊
ցեր ի վերայ իմ. այսինքն է պահպան չար կացու֊
ցեր զմատնիչն ի վերայ իմ, որ պահէ զամենայն
զգործս իմ և զբանս իմ, այլ և քննիչ է խորհրդոց
իմոց, և զայս ամենայն մատնէ: Այլ մանաւանդ և զայս
ևս ասէ վասն իմ ամբաստանութեամբ, զոր երբեք իմ
չի՛ք խորհեալ. քանզի ես զքո զպատուիրանս ոչ
437 վասն առ ժամանակեան բարեացս պահեցի, այլ վասն

առ ի յապա կենացն եղէ աստուածասէր՝ իբրև ըդ-
հաւատարիմ ծառայ. և պահպան կացուցեր ար-
դարոյս զթշնամին՝ չարաչար փորձանօքս դառնապէս
պահպանութեամբ կապեալ և պատառեալ. և նմա
ձեռն տաս և ինձ ոչ, առ ի հասանել ի վերայ իմ
փորձութեանցս։
«Ասացի եթէ մխիթարեսցեն զիս մահիճք իմ, և
վճարեսցից յինէն զբանս իմ յանկողնի իմում։ Ըն-
դէ՞ր զարհուրեցուցանես զիս երազովք, և տեսլեամբք
հարկանես զիս»։ Ոչինչ ժամանակ կային ինձ հան-
գըստեան, և ոչ ինչ է թողեալ մասն մխիթարութեան՝
ոչ ի տուէ և ոչ ի գիշերի. այլ և ակն ունելով
մխիթարութեան՝ եթէ ի գիշերի հանգիցեն յանկո- 438
ղինս իմ վէրք իմ, և զայս խորհուրդ զմտաւ ածե-
լով յանկողնի իմում՝ եթէ նորոգեսցի քաջութիւն
իմ և զօրասցի համբերութիւն իմ ի պատահարաց.
յերազոց անտի՝ խռովիմ, և ի տեսլեանց զարհու-
րեալ՝ անկանիմ ընդ երկիւղիւ։ Այս փութացուցա-
նէ զիս առ ի կոչել առ իս զելս առ ի ժամանա-
կեան կենացս, և զայս բանս արձակեալ առ քեզ՝
որ ի կարգիս կան։
«Թափես յանձնէ իմմէ զկենդանութիւն իմ, և ի
մարմնոյ զշունչ իմ, և ի մահուանէ զոսկերս իմ
մերժեսցի. զի ոչ յաւիտեան կեամ, եթէ երկայնա-
միտ եղէց»։ Շունչ այժմ յայտնի զօդս կոչեաց.
«զշունչ իմ» ասէ, քանզի իւրաքանչիւր ոք զայս ծծե- 439
լով ունի զկենդանութիւն, ուստի կամի թափել
զանձն, վասն զի ցանկացեալ է աստի փոփոխման։
Քանզի ասէ թէ «ի մահուանէ». այսինքն է թէ ի
ցանկութենէ և յակնկալութենէ մահուան. և «զոս-
կերս մերժել՝» վասն զի արհամարհէ զնոքօք։ Վասն
այսորիկ ընդ ապականել մարմնոյն՝ ոչինչ հոգ տանի
մերկութեան ոսկերացն։ Եւ վասն է՞ր է այս. քան-
զի առժամանակեան ասէ զառընթերակաց կեանս.
«Քանզի ոչ յաւիտեան կեցից»։ Յայտ է զի զեր-
կրաւոր կեանս ասէ։ Իսկ «զի՞րդ երկայնամտե-

*ցից» ի վերայ այսորիկ. քանզի միայն երկայնա-
440 մտութեան և համբերութեան արժանի են հանապա-
զորդ բարիքն, յայտ է թէ հանդերձեալքն։ Ապա ի
վերայ ածէ նմանս ի Դաւթէս երգեցելոցն. քանզի
նա ասէր. «Ի բաց արա՛ յինէն զտանջանս իմ, զի
ի զօրութենէ ձեռին քո ես պակասեցայ». իսկ սա,
«Ի բաց կաց յինէն՝ զի ընդունայն են կեանք իմ»։
Ոչ զԱստուծոյ զխնամսն՝ այլ զխրատսն աղաչէր
մերժել առ ի յինքենէ, զի աշխատէր այնուիկ վասն
բնութեան տկարութեան մարմնոյս։ Եւ վասն այսո-
րիկ ասէր, թէ ընդունայն են կեանք իմ. յայտ է
զի զմարմնաւոր կեանս առակելով ասէր, զտկար և
զապականացուս և զանհաստատս և որ ոչս մնայ, և
441 ոչ զնշանս ունի զյաւիտենականին։ Ուստի և զազգ
մարդկան յիրաւի անգոսնելով, լուր որպիսի ահա-
ւասիկ դարձեալ նմանս Դաւթայ ասէ։*

*«Քանզի զի՞նչ է մարդ՝ զի մեծացուցեր զնա,
կամ զի նայիցիս ի նա մտօք»։ Իսկ զի՞նչ տացին
նմանս երգեալ Դաւիթ. «Ո՞վ է մարդ՝ զի յայտնե-
ցար դու նմա, կամ որդի մարդոյ՝ թէ համարիս ինչ
զնա»։ Բայց վասն է՞ր իսկ զայս զմարդկանէ ասէր,
կամ առ ի՞նչ հայելով, զայս ի կարգէ աստի եցոյց.
«Մարդ ընդունայնութեան նմանեաց, և աւուրք նո-
րա իբրև զհովանի անցին»։ Վասն է՞ր որ այսպէս
տկարս է՝ այնչափ մեծացուցանէ, մինչև ամենայն
442 ստուգութեամբ հայի յաւաջիկայս մարդկան։ Հար-
ցանեն ցԱստուած արդարքն, ոչ գիտելով իւրեանց.
նախ զարմանան, որպէս երևի, և յոյժ հիանան, և
ապա զմեզ ուսուցանել կամին ի ձեռն հարցուածոցն։
Բայց զի՞նչ ուսուցանեն. քանզի ոչ ատելով՝ այլ
յոյժ սիրելով զազգ մարդկան, մինչ այց առնէ, և
հանապազ զմիտս ի նոսա ունի վասն բարերարու-
թեան։ Քանզի այս ինքեան է Աստուծոյ բարերարի
և մարդասիրի, զի որոց բարիս առնէ՝ նոցա ստէպ
ստէպ այցելութիւնս և յոյժ խնամարկութիւնս շնոր-
հէ. վասն այսորիկ և Դաւիթ ի վերայ ածէ. «Տէր*

խոնարհեցոյց զերկինս և էջ»։ Ի ձեռն այսորիկ
յայտնէ, թէ որչափ է փոյթ Աստուծոյ վասն մարդ֊
կան, զի խոնարհեցուցեալ զերկինս՝ ինքն գայ առ 443
մեզ. Բանն մարմին եղեալ, զի ի ձեռն մերոյ ազ֊
գակցութեան զօրացուսցէ զօրաւորն զմեր տկարու֊
թիւնս։ Բայց Յովբ բաւականութեամբ եցոյց, եթէ
ո՛րչափ բարի է մարդկան յիշիլ ի միտս Աստուծոյ,
և տեսանիլ և քննիլ ի Նմանէն, ասելով՝ թէ «Զի՞նչ
է մարդ՝ զի մեծացուցեր զնա, կամ հայիցիս ի նա
մտօք»։ Ուրեմն հայելով Աստուծոյ ի մարդ՝ մե֊
ծանայ. և հարցուածն զպատասխանիս ստացեալ է,
և որովք չգիտեն՝ այնու ուսուցանէ. բայց գիտա֊
ցուք հայելով ի կարգս։
«Կամ այցելութիւն առնիցես նմա առաւօտու, և
ի հանգիստ դատիցիս զնա»։ Զի այս իսկ են պա֊
տասխանիքն յառաջագունացն. մի՛ եթէ վասն այսո֊ 444
րի՞կ, ասէ, հայիս ի նա մտօք, զի այցելութիւն նմա
արասցես մինչև ի հանդերձեալ յաւիտեանսն։ Քան֊
զի զայն ժամանակ առաւօտ պարտ է կոչել, վասն
զի բովանդակ լոյս է, և բառնայ զգիշեր առընթե֊
րակայ կենացս։ «Զի ի հանգիստ դատիցիս զնա».
այսինքն է՝ թէ ոչ ի տանջանս՝ այլ ի փափկութիւն
և ի հատուցումն բարեաց։ Քանզի որ այժմ այցե֊
լութեանն Աստուծոյ հանապազ արժանի լինի, նա
զդատաստանն յայնժամ ի հանգիստ ընկալցի՝ ընդ
արդարս դատեալ. այսինքն է՝ թէ ընդ արդարսն
մտեալ, զի համեմատութեամբն ծանիցի թէ ո՞յր բա֊
ժին պատշաճ է նմա, կամ յո՞ւմ վիճակ. ի հայ֊ 445
րապետա՞ց կամ ի մարգարէի՞ց կամ յառաքելո՞ց կամ
ի մարտիրոսա՞ց պարտ է կարգել զնա։ Քանզի թէ֊
պէտ և յամուսնութեան ոք է, և կամ ի մեծութեան,
կամ ի կուսութեան, և կամ յանստացուածութեան,
և կամ ի կեանսն մինչև ի հասակ ծերութեանն, և
կամ եթէ մահու և արդարութեան վասն Աստուծոյ
ճգնիցի, գոցէ ընդ որում պարտ է նմա համեմա֊
տել ի թուեցելոցն աստուածազգեաց մարդկան։ Բայց

*բովանդակ իմաստասիրութեամբ լի է մեծ և յաղ-
թող հգնողս, ուսուցանելով զմեզ, եթէ ոյք սիրեն
զօրէնս Աստուծոյ, որ հասանել կամին յետ սակաւ
ժամանակի բարեացն հատուցմանց, թէպէտ և լիցին
446 ի փորձանս, այլ սակայն այցելութեան Աստուծոյ և
խնամոցն հանապազ պատահեն, մինչև անցցեն ընդ
ճանապարհ ծովուս, առընթերակայ կենացս: Եւ ի
հասարակաց մարդկան դիմացս յինքն և յԱստուած
Բանն փոխէ զբանսս:*

*«Մինչև ցե՞րբ ոչ թողուցուս զիս, և ոչ ընդարձակի-
ցես ինձ, մինչև ցաւովք կլանիցեմ զտողիս»: Թէ
որպէս միանգամ ասացաք, թէ հարցուածս պատաս-
խանիս ունի: Քանզի ասելով եթէ «մինչև ցե՞րբ ոչ
թողուս զիս», ցուցանէ զփորձանացն և զխրատուցն
ցաւագնութիւն. այլ և զայն՝ զի ի գլխաւոր կատա-
րելութիւն հասանեն խրատու: Եւ զի մի՛ մատնես-
ցուք զմեզ թշնամւոյն ի ձեռն փափկութեան և
447 հանգստի, վասն այսորիկ ասէ. «և ոչ ընդարձա-
կիցես ինձ», այսինքն է՝ ոչ մատնես զիս: Ապա
զայս բանս վասն է՞ր առընթեր եդ ի վերայ ածելով,
«մինչև կլից զտողիս իմ», յայտ է թէ մինչև յաս-
տի հրաժարմանէս: Քանզի որք աստի հրաժարեն
ի ձեռն անջատման մարմնոյ, վասն զի ոչ ևս
բարբառին, ասին թէ կլանեն զտողիս իւրեանց:
Այլ զիւր արդարութիւնն կամեցեալ ցուցանել և
զբարեկամացն զբամբասանս յանդիմանել, իբրև ոչ
թէ զնա այնչափ յանդիմանէին, որչափ Աստուծոյ
ընդդէմ յանդգնէին. և յիրաւի ըստ կարգիս ի վե-
րայ ածէ:*

*«Զի եթէ ես մեղայ՝ զի՞նչ կարիցեմ առնել քեզ,
448 որ գիտես զմիտս մարդկան»: Ո՞չ դու անուանեցեր
զիս, ասէ, «անարատ՝ ճշմարիտ՝ արդար՝ աստուա-
ծապաշտ, որոշեալ յամենայն իրաց չարաց». և զայս
ոչ անգիտութեամբ վկայեցեր, քանզի գիտես զբո-
վանդակ մարդն, զի դու ստեղծեր զնորա ներքին և
զարտաքին. իսկ եթէ այնչափ արդարութիւնս գոր-*

ծեալ՝ մինչև այնպէս վկայութիւնս ընկալայ ի քէն,
մեղայ՝ որպէս սոքա նախատեսս և անգոսնեն, «զի՞նչ
կարիցեմ առնել քեզ». ընդ որո՞վք օրինակօք վարե-
ցայց որ զամենայն լցի. զորո՞ց պատուիրանաց ըղ-
ձետ երթայց, քանզի ըստ կարգի զամենայն կատա-
րեցի։ Զինչ և յանցեաւ Յովբ, ոչ է ինքն պատճառ.
զի որ և գամ մի հրամայեցաւ նմա՝ ոչ եթող ան- 449
կատար. և վասն այսորիկ առընթեր եդ, եթէ
«Ընդէ՞ր եդիր զիս քեզ ոսոխ», որպէս կարծեն
բարեկամքս, «և իցեմ քեզ բեռն»։ Քանզի ոչ գի-
տեմ զանձին իմոյ զչարութիւն. այլ և ի քո վկա-
յութիւնդ վստահացեալ՝ առնեմ առ քեզ հակառա-
կութիւն. վասն որոյ այլքս նախատեն զիս և ան-
գոսնեն, իբրև[1] թէ երկայնամտութեամբ տեղի տամ
հպարտացն՝ բամբասել զարդարս։ Իսկ որ քեզ այս-
պիսիս հակառակ բեզ համարին տկարութեամբ լսելով,
իսկ «իցե՞մ քեզ բեռն», պահանջելով զդատաստանն, և
փութացուցանելով զօր ի հանդերձեալ դատաստանն
պահեցեր։ Այլ զի՞նչ ևս յաւել, եթէ
«Ընդէ՞ր ոչ արարեր մոռացումն յանցուածոց իմոց, 450
և սրբութիւն անօրէնութեանց իմոց։ Արդ ահա յեր-
կիր դառնայցեմ, քան առաւօտ է, և ես այլ ոչ ևս
իցեմ»։ Զի եթէ զխրատն վասն յանցանացն ընկա-
լայ, որպէս Եղիփազ զմեզ նախատեաց, «Ես տեսի
զի անզգամաց արմատս արձակեալ էր. այլ նոյնժա-
մայն մաշեցան յարկք իւրեանց», որ ըստ կարգի նոցա
է, «ընդէ՞ր ոչ արարեր մոռացումն յանցուածոց ի-
մոց». զի բազում անգամ իսկ և վասն այսորիկ ստէպ
ստէպ բարեխօսութիւնս մատուցանէի քեզ։ Ընդէ՞ր
ոչ արարեր «սրբութիւն անօրէնութեանց իմոց». քան-
զի վասն այսորիկ պատարագ մատուցանել ոչ դա-
դարեցի. այլ և զորդիսն զամենայն աւուրս աղօթիւք 451
և պատարագօք սրբէի, ըստ թուոյ նոցա մատուցա-
նէի պատարագս Տեառն։ Ըստ[2] արդարոյ «յերկիր

1. յՕր. որ և թէ. եդաք ըստ Վ.։
2. յՕր. պակասէր, յաւելաք ըստ Վ.։

*զառնայցեմ», ըստ քոյում հրամանի. «քան առաւօտ է
և ես այլ ոչ եւս իցեմ». ոչ յանգոյութիւն անկանիմ.
այլ զի՞րդ հատանէի յառաւօտ, զո՞ր լոյս տեսանէի,
կամ զո՞ր առաւօտ, եթէ բնաւին ապականեալ էի,
այլ առաւօտ առնեմ ի հանդերձեալ յաւիտեանն:
«Եւ ոչ եւս իցեմ» յաստի կեանս, ուր են ամբար-
տաւանքս, որք զարդար անգոսնեն, ոչ ունեալք ըզ-
վասն Աստուծոյ դատաստանն, այլ բամբասեն իբրև
զմեղաւորս, և հաւատալի լինին ըստ կարծեաց իւ-
452 րեանց: Վասն զի այժմ Աստուծոյ օգնութեանն ոչ
պատահեաց. վասն զի պարտ է արդարոյն վայելել
ի փափկութեան բարիսն, բայց ապականացուիս չէ
արժան, որպէս ցուցին Եղիփազու յառաջագոյն բան-
քըն, որովք ձգտէր ընդ Յովբայ. «Արդ յիշեա՛, ո՞
ոք սուրբ էր և կորեաւ, կամ երբեք ճշմարիտք ար-
մատաքի խլեցան. որպէս տեսի զայնոսիկ որ զան-
պատեհսն արօրադիր առնէին»: Այլ մեք ի Նորա
բանսն մի՛ հայեսցուք, այլ յԱստուծոյն. «Զի զոր
սիրէ Տէր՝ խրատէ, գանալից առնէ զամենայն զոր-
դի զոր յանձն առնու. երանեալ է այր՝ որ համբերէ
փորձութեանց. զի ընտիր գտեալ՝ առցէ զպսակն կե-
նաց, զոր խոստացաւ սիրելեաց իւրոց»: Նմա փառք
յաւիտեանս. ամէն:*

## ԺԱ.

453 *Կրկնեալ անդրէն Բաղդադայ Սաւքեցւոյ ասէ.
«Մինչև ցե՞րբ խօսիցիս զայդ, և հոգի մեծաբանու-
թեան ի բերան քում: Մի՛ թէ անիրաւ դատիցի
Տէր, և կամ որ զամենայնն արար՝ պղտորիցէ՞ զի-
րաւունս: Եթէ որդիքն քո մեղան առաջի Նորա, ա-
ռաքեաց ի ձեռին զանօրէնութիւնս նոցա: Բայց դու
կանխեա առ Տէր ամենակալ աղօթիւք. եթէ սուրբ
և ճշմարիտ իցես՝ աղօթից քոց լուիցէ: Դարձուսցէ
քեզ զյարկն արդարութեան, և լինիցին առաջինք*

*քո սակաւ, և վերջինք քո անբաւ։ Բայց աղէ
հարց զազգն առաջին, և քննեա ըստ տոհմից հարցն։
Զի երեկեանք եմք, և ոչ գիտեմք. քանզի ստուեր
են կեանք մեր ի վերայ երկրի։ Կամ թէ ոչ նոքին* 454
*իսկ ուսուցեն զքանս և պատմեսցեն զհանճար ի-
մաստութեան, և ի սրտից ուսուսցեն զքեզ բանս։
Մի՞ եթէ կանաչանա՞յ պրտու առանց ջրոյ, և կամ
բարձրանայցէ՞ կնիւն առանց ըմպելոյ։ Մինչդեռ յար-
մատոյն է, և ո՞չ հնձեսցի. յառաջ քան զարբենալ
ամենայն բանջար եթէ ոչ ռոգանի՝ ցամաքի։ Այս-
պէս եղիցի ամենեցուն կատարած որ մոռանան
զԱստուած. քանզի յոյս ամպարշտի կորիցէ։ Անշէն
լիցի տուն նորա, նուաղեսցի իբրև սարդի ոստայն
յարկ նորա։ Թէպէտ և մութիւք զտունն հաստա-
տեսցէ՝ ոչ կացցէ, յարկանել ձեռին նորա՝ մի հան-
դարտեսցէ։ Քանզի խոնաւութիւն է յարեգակնէ, և* 455
*ի նեխութենէ նորա ելցէ շառաւեղ իւր։ Ի վերայ
կարկառի քարանց ննջեսցէ, և ի մէջ մանրախիճ
քարանց կեցցէ. և եթէ կլցէ զնա տեղին՝ ստեսցէ։
Եւ ո՞չ տեսեր այսպիսի ինչ. զի կործանումն ամպա-
րըշտի այսպիսի է, իսկ յերկրէ այլ բուսցի։ Զի Տէր
ոչ մերժեսցէ զանմեղն, զամենայն պատարագ ամ-
պարշտի ոչ ընկալցի։ Բերանք ճշմարտից լցցին ծա-
ղու, և շրթունք նոցա խոստովանութեամբ։ Թշնա-
միք նոցա զգեցցին զամօթ, և յարկք ամպարշտի ոչ
ևս իցեն»։*

*Զամենայն չարութիւն բարերար Աստուած ար-
համարհէ, և ի վերայ ամենայն յանցանացն՝ հրա-
մայէ պատրաստել իւրում զօրականին, իբրև ապա-
կանչի հոգւոց և մարմնոց. զէն տուեալ մեզ զառա-* 456
*քինութիւնս, և յաւելեալ զպատուիրանս՝ որովք ա-
մենայն ազգք առաքինութեանց կան. այլ յամպար-
տաւանութենէ առաւել ևս դարձուցանէ զերեսս իւր,
իբրև յանդրանիկ ծննդոյ բանսարկուին, և որ առ-
նու զոգի և առաջնորդէ առ ի չարաչար կորուստ,
և քարավէժ առնէ. ուստի միանգամ անկեալ՝ ան-*

դրէն ելանել ոչ կարէ։ Եւ վասն այսորիկ Քրիստոս
կանգնեաց մեզ իբրեւ զարձանս զվարսն իւր, ուստի
մեզ ամենայն առաքինութեանց են ստացուածք. եւ
նորոգեաց մեզ այժմ զամենայն բարիսն առաջինս.
եւ կամեցեալ ուսուցանել աշակերտացն՝ այսպէս ա-
457 սէր. «Ուսարուք յինէն՝ զի հեզ եմ եւ խոնարհ սըր-
տիւ, եւ գտջիք հանգիստ անձանց ձերոց»։ Առաւել
եւս ի վերայ այլոց չարեաց, ամպարտաւանութիւնն
ունի զմեծ աշխատութիւն. ընդ վայր աշխատի եւ
ընդունայն ջանայ ձգտել ի բարձունս՝ ըստ նմա-
նութեան աքաղաղոց ամբարձեալ զպարանոցս իւ-
րեանց ամպարտաւանութեամբ։ Ի վերայ աւազոյ շի-
նէ զաշտարակն իւր, եւ խոտ ի վերայ խոտոյ դիզու.
կաւեղէն բլուր շինէ զմիտս իւր. բայց խոտն ոչ կա-
րէ կեալ առաջի հրոյն շնչման. իսկ կաւն որչափ ինչ
եւ իցէ, յանդիմանի յորժամ հարկանիցին ընդ նա
առհանք ջուրց. այսպիսի են ստացուածք ամպարտա-
458 ւանից։ Ուստի եւ Դաւիթ Աստուծոյ զայս մեծ պա-
տարագ աղօթից մատուցանէր. «Մի եկեսցէ ի վե-
րայ իմ ոտն ամբարտաւանից, եւ ձեռք մեղաւորաց
մի դողացուսցեն զիս»։ Եւ թէ ընդէ՞ր զայս ասէր՝
զայդ լուր. «Անդ անկցին ամենեքեան ոյք գործեն
զանօրէնութիւն, մերժեցան եւ այլ մի կարասցեն
հաստատել»։ Բայց մեզ պարտ է ճգնել առ ամե-
նեսին հեզութեամբ. մի զարդարն անգոսնել, եւ մի
զմեղաւորն դատապարտել. այլ միումն լինել վշտա-
կից, եւ զմիւսն փառաւորել. միումն առաջնորդել, եւ
զմիւսն պսակել, զորս զբանսն գթութեամբ ընդու-
նել, եւ զնորա խօսս աստուածաբանութիւն համարել.
459 իբրեւ զխորիսխ մեղու ընդունել զծնունդս լեզուի
նորա. եւ իբրեւ զպատուական տաղանդս ոսկւոյ։ Եւ
մի երբեք ծանրանալ ընդ բանս արդարոյ, թէպէտ
եւ զԱստուծոյ զդատաստանն կոչիցէ, եւ զաստի
կեանս արհամարհիցէ, թէպէտ եւ զիւր արդարու-
թիւնն առ ի յայլոց օգուտ եւ ի նախանձ ցուցանի-
ցէ, թէպէտ եւ նեղիցի՝ տեսանելով ստէպ ստէպ ձը-

գեալ զնետսն գաղտնիս Թշնամւոյն ի վերայ Նորա.
և մի՛ ասել ցնա. «Մինչև ցե՞րբ խօսիցիս զայդ, և
հոգի մեծաբանութեան ի բերան քում», որպէս և
իշխեաց ասել ցՅովբ Բաղդադ բանաւոր Սաւքեցւոց,
զոր ոչ ընդունայն բանաւոր անուանեաց Հոգին Ա-
տուծոյ՝ ի Թիւս բարեկամաց արդարոյն. այլ վասն 460
զի ամպարտաւանութեամբ և յոյժ բանաւորութեամբ
անուցեալ էր զկամս իւր. և յայտ անտի է, զի այն-
պէս ջերմ անօրէնութեամբ բանիւք պատահեաց
Յովբայ: Քանզի ասէ՝ Թէ «կրկնեալ անդրէն Բաղդա-
դայ Սաւքեցւոյ և ասէ».
«Մինչև ցե՞րբ խօսիցիս զայդ, և հոգի մեծաբա-
նութեան ի բերան քում»: Հարցանես զիս Թէ մին-
չև ցե՞րբ. ցայն վայր՝ մինչև յուսացեալ կամ յար-
դարութիւնն Աստուծոյ, և սուրբ և անխիղճ մտօք
պարծիմ: Եւ ասէ՝ Թէ «հոգի մեծաբանութեան ի բե-
րան քում». և զի՞նչ չար է այս. քանզի ոչ եթէ Ա-
տուած ի բազում խօսելոյ դարձուցանէ զերեսս, այլ
ի չար խօսելոյ: Ո՞չ ի տուէ և գիշերի ի հրապարակս 461
և յանկողինս և առ սեղանս խօսել հրամայեաց Ա-
տուած զօրէնսն ի ձեռն Մովսէսի. իսկ եթէ այժմ
խօսեցի Յովբ արտաքոյ քան զօրէնսն, ոչ միայն
զբազմախօսութիւն Նորա պարտ է բամբասել, այլ
զբնաւին իսկ՝ Թէ ընդէ՞ր ի սկզբանէ խօսեցաւ. իսկ
եթէ օրինաւոր և իմաստուն և բանս փրկութեան
բարբառեցաւ, ոչ ոք զբազմութիւն բանից Նորա կա-
րէ մեղադրել: Իսկ այլ զի՞նչ ածէ Բաղդադ ի վերայ:
«Մի՛ եթէ անիրա՛ւ դատիցի Տէր, կամ որ զամե-
նայնն արար՝ պղտորիցէ՞ զիրաւունս»: Ոչ ամենևին
և յայսմ ևս յուսացեալ Յովբայ՝ կոչէ զդատաստանն 462
Աստուծոյ, և համարձակութեամբ բազում ինչ ճար-
տարաբանէ. վասն զի կայ առաջի Թագաւորական
ատենին. բայց Աստուած ոչ անիրաւ դատի, և ոչ
պղտորէ զիրաւունս, այլ դուք անիրաւէք և պղտո-
րէք: Քանզի Աստուած անաչառ, ճշմարիտ, արդար
կոչէ զիւր ծառայն, և այժմ մեծագոյն ևս պատուով

*բարբառի ընդ նմա, քան յայնժամ՝ յորժամ ու-
նէր զթագաւորութիւնն ի ձեռին։ Բայց դուք ոչ
այդպէս, այլ պղտորէք զիրաւունս. վասն զի զմար-
դըն արտաքին տեսանէք ապականեալ, վասն այնո-
րիկ անգոսնէք և զներքին մարդն. բայց սակայն որ-
463 չափ ապականի մարդս արտաքին, նոյնչափ նորոգի
ներքին մարդն։ Բայց սակայն պարտ է քննել ըզ-
բանս Բաղդադայ, և որ ի կարգիս կայ։*

*«Եթէ որդիքն քո մեղան առաջի նորա, առա-
քեաց ի ձեռին զանօրէնութիւնս նոցա»։ Եւ զի՞
զայս ցՅոբ ասիցես։ Մի՞ եթէ լուա՞ր ի նմանէն՝ ե-
թէ վկայեաց ի վերայ որդւոցն իբրև ի վերայ ար-
դարոց. ո՞չ և պատարագս վասն նոցա օր ըստ օրէ
մատուցանէր, թէ գուցէ երբեք չարութիւն ինչ ե-
դին ի մտի իւրեանց. այսպէս կարծէր զնոցանէն
վասն տկարութեան մանկութեանն նոցա։ Այլ Բաղ-
դադ զի՞նչ ածէ ի վերայ առացելոցս.*

*«Բայց դու կանխեա առ Տէր ամենակալ աղօ-
464 թիւք. եթէ սուրբ և ճշմարիտ իցես՝ աղօթից քոց
լուիցէ։ Դարձուսցէ քեզ զյարկսն արդարութեան, և
լինիցին առաջինքն քո սակաւք, և վերջինքն քո
անբաւք»։ Զեր արդեւք վարդապետութիւնդ պի-
տո՞յ իցէ Յոբայ. ո՞չ յամենայն ի կեանս իւր միշտ
է յաղօթս, և դու ասես՝ եթէ կանխեա՛ առ Տէր ա-
մենակալ. բայց նա ոչ միայն կանխելով, այլ ընդ
առաւօտս, ի տուէ և ի միջօրէի փութալով յաղօթս
առ Աստուած ոչ դադարէր. եւթն անգամ յաւուր
օրհնէ զնա, մանաւանդ եթէ ի տուէ իսկ և ի գի-
շերի. քանզի և ոչ յանմտութիւն է այս նմա։ Եւ
ցուցցէ զայս վախճան փորձանացս, և ելք ճգնու-
465 թեանցս։ Յայնժամ եղիցի Յոբայ զոր դուքդ այժմ
ակամայդ մարգարէանայք. և բարիքն՝ զոր յապա
ընդունելոց է յԱստուծոյ, սակաւագոյնքն յորժամ
համեմատեսցին՝ առաւելագոյն քան զառաջինսն գըտ-
ցին։ Յայնժամ արասցէ նմա յարկս պայծառս.
յայնժամ սքանչելի վկայութիւն գիտութեամբ հան-*

ցէ ի վերայ արդարոյն, և զարմանալի ջատագովու-
թիւն տացէ ի վերայ ճշմարտին, և ի ձեր վերայ
ածցէ բամբասանս, զի ոչ յիրաւի անգոսնեցէք ըզ-
ճգնողն. և ոչ անգէտ յայտմանէ է Յովբ, զոր դու
առ ի բամբասանս արդարոյն ասես և ոչ ի փառա-
բանութիւն Աստուծոյ։
«Բայց աղէ հարց զազգն առաջին, և քննեա ըստ 466
տոհմից[1] հարցն։ Զի երէկեանք եմք, և ոչ գիտեմք.
քանզի ստուեր են կեանք մեր ի վերայ երկրի։ Կամ
թէ ոչ նոքին իսկ ուսուսցեն զբանս, և պատմեսցեն
զհանճար իմաստութեան, և ի սրտից ուսուսցեն քեզ
բանս»։ Եւ զի՞նչ իցէ այս. այլ զի ամենայն իրօք
քաջ մարդկան առաջինքն՝ փոքունք են, և վերջինքն՝
մեծամեծք. փոքր էր Աբելի առաջինքն, քանզի ըզ-
հօտն արածէր, իսկ մեծամեծք էին վերջինքն ար-
դարոյն. ո՞ր. վկայութիւնքն առ ի յԱստուծոյ, և
վրէժխնդրութիւնք դատաւորին, արիւնն խօսող՝ որ
հաստուցանէր զբարբառն մինչև յերկինս, որպէս և 467
ասէր Աստուած ցԿային սաստելով։ Յորմէ և ոչ դուք
ինչ ընդհատ էք. զի նա ի վերայ եղբօր յարձակե-
ցաւ ոտն հարկանելով, և դուք ի վերայ բարեկամի՝
որոյ ոչ է ընտրութիւն յեղբօրէ, վասն ստուգու-
թեան և ջերմն սիրոյ։ Քանզի նա տեսանելով զար-
դարն ընկեցեալ յերկիր, կարծէր չիջեալ զարդա-
րութիւնն և զհամարձակութիւն զոր ունէր առ Ա-
տուած. այլ ծանեաւ զինքն պատրեալ, յորժամ եկն
ի վերայ նորա վկայութիւնն առ ի յԱստուծոյ. որ-
պէս դուք տեսանելով զՅովբ զի նստի ի վերայ աղ-
բևաց և մոխրոյ, համարիք զնա իբրև զամպարիշտ
և զանօրէն։ Բայց գիտասջիք՝ եթէ պատրեցայք և
սուտ կարծէիք, յորժամ առ ի յԱստուծոյ եկեսցէ 468
վկայութիւնն ի վերայ նորա, և զձէնջ բամբասանք
և ամպաստանութիւն։ Զայս Յովբ՝ թէպէտ և երի-
կեան է՝ գիտէ, և զատի կեանս բազում անգամ

1. յՕր. զտոհմից։

*իբրև զստուեր ողբացաւ։ Այլ ոչ անգիտելի է ար-
դարոյն և որ ի կարգիս կայ։*

*«Մի՞ եթէ կանաչանայ՞ պրտու առանց ջրոյ, և
կամ բարձրանայ՞ կնիւն առանց ըմպելոյ, մինչդեռ
յարմատոյն է»։ Բայց Յովբ զի գիտէ զայս, յայս-
մանէ յայտնի է, ուստի և զվարս իւր ամենայն ար-
դարութեամբ պահեաց. և պրտու ոչ էր, բայց ար-
մաւենի ծաղկեալ և ձիթենի պտղալից էր։ Եւ որ ա-
սէ «առանց ջրոյ», յայտ է թէ առանց Աստուծոյ օգ-
469 նութեանն ոչ ծաղկէր։ Այլ և ոչ կնիւն էր, քանզի
ոչ ինչ եղեալ էին առ նմա գործք խոտեղէնք։ Բայց
էր կերակուր իմանալի եգանց իբրև արդար արդա-
րոց, և իբրև ըմպելեաւ օրինօքն Աստուծոյ էր ար-
բեցեալ, և ըստ կարգին բարձրացեալ, որ ոչ մնաց
յարմատի անդ առանց հնձելոյ. այսինքն է, թէ ոչ
չորացաւ՝ մինչ ոչ բողբոջեալ բովանդակ էառ զաճումն.
և ոչ մնաց չոր յարմատի՝ որ ոչ բողբոջեալ հնձեցաւ,
և ոչ տհաս կորոյս զառաքինութիւնն։ Այլ յառաջեաց
իբրև զայր կատարեալ, և եհաս ի պտղաբերութիւն
բարեաց, և կենդանաբեր գործոց։ Յայնժամ ոչ յա-
պականութիւն հնձեալ, այլ ի պսակաբերութիւն.
470 քանզի լոկ զցողունն և զյարդն էառ թշնամին, բայց
զցորեանն թագաւորին պահեաց Յովբ, և ի կալն եր-
կնից առակեաց։ Յետ այսորիկ հարցանէ Բաղդատ
ցՅովբ.*

*«Ամենայն բանջար եթէ ոչ ոռոգանի՝ մի՞ թէ ո՞չ
ցամաքի»։ Այլ ամենայն բանջար ցամաքի մինչև
արբեալ է, և հասանիցէ ի նա սաստկութիւն խոր-
շակի. իսկ Յովբ ոչ միայն սակաւագոյն արբեալ էր,
այլ յոյժ արբեցեալ էր, որպէս և ասէ Դաւիթ. «Ար-
բեցին ի պարարտութենէ տան քո, և զուղխս փափ-
կութեան քո արբուսցես նոցա»։ Եւ վասն այսորիկ ոչ
նուաղեցաւ յիմանալի խորշակէն, ուստի և ոչ ինչ
մուտ ունի ի վերայ նորա և որ ի կարգիս գայ, թէ*

*«Այսպէս եղիցի ամենեցուն կատարած՝ որ մո-
471 ռանան զԱստուած»։ Քանզի նա ոչ իսկ մոռացաւ*

զԱստուած, որ մինչ դեռ ևս ի մուխս չարչարանացն
էր, զօրհնութիւն և զգովութիւնն առաջի կարգեաց.
վասն որոյ և վերջինք արդարոյն ոչ համեմատին ընդ
բանջարոցն չորացելոց ի խորշակէն: Բայց նմանեաց
ծառոյն տնկելոյ ի գնացս ջուրց, որ զպտուղ իւր ի
ժամու տացէ, տերև նորա մի թափեսցի: Քանզի
ընդ պահել զպտուղ առաքինութեանցն, և զաշխար-
հական զլիութեանն զտերևսն փթթեաց. ո՛չ ինքն
այնմ ինչ ցանկացեալ և կամ պիտոյ էր նմա, այլ
զի յանդիմանեսցին բանքս Բաղդադայ, որ ի կար-
գիս գայ:
«Քանզի յոյս ամպարշտի կորիցէ, անչէն լիցի տուն
նորա և ճանապարհ նորա. նուաղեսցի իբրև սարդի- 472
ոստայն յարկ նորա: Թէպէտ և մութիւք զտունն
հաստատեսցէ՝ ոչ կացցէ, յարկանել ձեռին նորա՝
մի հանդարտեսցէ»: Եւ զի՞ զայս ցՅովբ ասէք. մի՛
եթէ արդէն իսկ գիտէ՞ք զելս ճգնողին, զի անչէն
զտուն նորա կոչեցէք, և սարդիոստայն զյարկս նո-
րա: Բայց դուք զտուն նորա կարծէք ի փայտից և
ի քարանց, այլ նա յառաքինութեանց է ստացեալ.
դուք զյարկս նորա յերկրէ աստի համարիք, և վասն
այսորիկ իբրև զսարդիոստայն կորնչել կարծէք.
բայց նորա յարկք յերկինս են պատրաստեալ: Սա
զՊաւղոսին ասէ. «Քանզի գիտեմք իսկ, եթէ եր-
կրաւոր յարկք տաճարիս մերոյ քակտեսցին, շինուած 473
յԱստուծոյ ունիմք տաճար յաւիտենական, առանց
ձեռագործի յերկինս. և վասն այսորիկ հեծեմք, զի
զբնակութիւնն մեր առ ի յերկնից փափագեմք ըզ-
գենուլ»: Վասն որոյ և Յովբ հառաչէր, բայց դուք
զնորա զհեծութիւնսն կարճամտութիւն և հայհոյու-
թիւն կարծէք: Սա «հաստատեաց մութիւք զտունն
իւր»: Ոչ մութիւք երևելեօք, այլ իմանալեօք. վասն
որոյ յառակսն ասացեալ է զիմաստութենէ, եթէ
«Իմաստութիւն շինեաց իւր տուն, և կանգնեաց ի
նմա սիւնս եւթն»: Վասն այսորիկ յորժամ բուռն
զյարկացն նորա եհար փորձիչն, և ձգեաց զձեռն

474 *իւր ի Նա՝ Թուղացուցանելով Աստուծոյ, համբերեաց*
*Յովբ և ոչ ետ դղորդ զտաճարն ներքին, և ոչ ե֊*
*թող զհամարձակութիւնն զոր ունէր առ Աստուած,*
*այլ ևս քաջապէս համբերէ թշնամւոյն՝ ընդունայ֊*
*նացուցանելով զմրցմունսն նորա. զի թէպէտ և դար֊*
*ձեալ յարձակեսցի, սակայն և զայն լի արութեամբ*
*ընկալցի։ Վասն զի ոչ ամենևին ինչ երկեաւ յայս֊*
*մանէ, որ ըստ կարգիս ասացեալ է Բաղդադայ ա֊*
*ռակաւ վասն մատնչին. ոչ իւր գիտելով, այլ բամ֊*
*բասելով առակաւ զամպարիշտս, կարծէր զկծեցու֊*
*ցանել զՅովբ. այլ թէպէտ և ակամայ, սակայն ող֊*
*բայր զայն՝ որ գրգռէրն զնա բամբասել զՅովբ։ Միտ*
475 *դիր ասասիկ՝ եթէ ոչ յայտնի զիմանալի թշնամին*
*կերպարանէ, և զայս իսկ զբանս ողբերգելով ասէ.*
*«Քանզի խոնաւութիւն յարեգականէ է, և ի նե֊*
*խութենէ նորա ելցէ շառաւեղ իւր». ուստի և թա֊*
*գաւորէ ամենայնի որ ի ջուրսն է. յայտ է թէ թա֊*
*թաւելոյն ի տղմի յապականութեան գայռին որ լի*
*է շարաչարութեամբ։ Յետ սակաւ ժամանակի ասա֊*
*ցեալ է Աստուծոյ ցՅովբ՝ այսպէս նշանակելով. «Ոչ*
*ինչ է ի վերայ երկրի նման նմա, արարեալ ի խա֊*
*ղալիկ հրեշտակաց իմոց. զամենայն բարձունս տե֊*
*սանէ, և ինքն է իշխան ամենայնի որ ի ջուրս են»։*
*Բայց գէջ է յիմանալի արեգականէ անտի, զոր այս֊*
476 *պէս եցոյց մեզ Մաղաքիէլ մարգարէ. «Ծագեսցէ*
*ձեզ երկիւղածաց անուան իմոյ արեգակն արդարու֊*
*թեան՝ որ ունի բժշկութիւն ի թևս իւր»։ Այլ վասն*
*այսորիկ ասի, եթէ Քրիստոս գիջացուցանէ զմատ֊*
*նիչն, վասն զի յանդիմանէ զգիջութիւն նորա, և*
*յայտնէ զգաղտնիս նորա. որպէս և Պաւղոս զնա*
*իսկ և զկնուորեալսն ընդ նմա կերպարանելով՝ գը֊*
*րէր. «Քանզի և գաղտնիքն որ լինին ի նոցանէն՝*
*զայն և խօսել աղտեղի է, բայց ամենայն յանդի֊*
*մանեալք ի լուսոյն՝ յայտնի լինին»։ Զոր օրինակ*
*արեգակն յանդիմանէ զգաղտնիս՝ որ ի գիջի անդ*
*է, ձգելով երևեցուցանէ արտաքս զգիջութիւնն, որ֊*

պէս զմոմոյ և զպանրոյ, և կամ զայլոց այսպիսեաց, 477
որ յետ այսորիկ չորացուցանէ, դոյնպէս և Քրիս֊
տոս զգազանի չարութիւն մատնչին յայտնէ և յան֊
դիմանէ, և յետ այնորիկ չորացուցանէ, զի առաքէ
զնա ի գեհեն հրոյն, ուր նա չորանայ և ոչ ունի
զօրութիւն ի վերայ մեր. զի սորա չառաւեղք ոս֊
տոցն ելանեն ի նեխութենէ: Քանզի զի՞նչ զազրա֊
գոյն քան զմեղս իցէ, և կամ զի՞նչ չարահոտ քան
զամպարշտութիւն, կամ զի՞նչ անարգ է քան զցան֊
կութիւն ապականութեան. բայց յիրաւի պատշաճին
այժմ և որ ըստ կարգիս կայ:
«Ի վերայ կարկառի վիմացն ննջեացէ, և ի մէջ
մանրախիճ քարանց կեցցէ». զայնոցիկ վասն որոց
և Իսային ասէ. «Ճանապարհ արարէք ժողովրդեան 478
իմոյ, և զքարինս ի շաւղաց նոցա ի բաց ընկեցէք»,
և դարձեալ՝ «Սրբեցէք առաջի նորա զճանապարհս֊
և ի բաց արարէք զխոչ ի շաւղաց ժողովրդեան ի֊
մոյ»: Քանզի ի միջի նոցա քունէ և կեայ, վասն զի
յորոգայթի ստացեալ է զհանգիստ իւր, և ի գայ֊
թագղութեան ունի զկեանս իւր. վաստակի և վախ֊
ճանի զանազգողական զմահն՝ յորժամ յորոգայթից
և ի գայթագղութեանց սրբեսցուք զճանապարհս մեր:
«Եւ եթէ կլցէ զնա՝ տեղին ստեսցէ»: Ընկլումն
ասա զայն ասէ՝ զոր ասաց Եսայի մարգարէ. «Ե֊
կուլ մահ յաղթութեամբ». և դարձեալ՝ «Եհատ
Աստուած զամենայն արտօսր յամենայն երեսաց», 479
վասն այսորիկ «ստեաց նմա տեղին նորա». վասն
զի ընկլումն որով զԱդամն եկուլ, չարժելով զնա ի
պատուիրանազանցութիւն Աստուծոյ, առ ի բնաւին
ապականել զնա եկուլ: Բայց ստեաց նմա տեղի նո֊
րա. ո՞ր. այլ թերևս մահ. քանզի տեղի մատնչին
մահ է. վասն այսորիկ ասացես՝ եթէ ստեաց մատ֊
նչին տեղի իւր. քանզի Քրիստոս զնա ի կեանս
փոխեաց, և եհատ զամենայն արտօսր յամենայն ե֊
րեսաց: Քանզի զԱդամ ի ձեռն իւրոյ խաչելութեանն
և մահուն և յարութեամբն եցոյց փառաւորագոյն,

և զչարութիւն բանսարկուին անդրէն դարձոյց ի վե-
րայ թշնամւոյն։ Ադամ ազատի և անէծքն բառնան
480 ի վերայ նորա, յորոյ վերայ յոյժ պատշաճ է որ
ըստ կարգիս կայ։

«Եւ ո՞չ տեսեր այսպիսի ինչ. զի կործանումն ամ-
պարշտի այսպիսի է. իսկ յերկրէ այլ բուսցի։ Զի
Տէր ոչ մերժեսցէ զանմեղն, և զամենայն պատա-
րագս ամպարշտի ոչ ընկալցի»։ Ամպարիշտդ բնա-
կան անուն բանսարկուին է. քանզի նա է հայր
ամպարշտութեան. նորա կործանումն չար է, վասն
զի ծնկեալ ի մերոց բարեացս, ընկրկեաց ի մեզս
զնախաստեղծ մարդն, և անդրէն յերկիր դարձոյց։
Այլ ի նմին երկրէ յոր (զ)նայն դարձոյց, այլ նոր Ա-
դամ անդրէն Քրիստոս նորոգեաց ի ձեռն իւրոյ
481 մարմնաւորութեանն։ Իսկ նմա՝ կործանումն, կատարած
և խաւար արտաքին զգեհեննն ետ, վասն զի իբրև
բարերար և արդար և մարդասէր՝ ոչ ի բաց ընկէց
զաւանց չարութեանն զպատրեալն յայլմէ. վասն զի
ոչ էր արժանի նմա պատրիլ, քանզի պարտ էր նմա
միշտ ունել զմիտս իւր ի պատուիրանս Աստուծոյ։
Բայց սակայն ողորմելով՝ զտկարն անդրէն եստեղծ,
և զանկեալն վերստին ստացաւ։ Իսկ մարդոյն յան-
մեղութենէ և ի պարզմտութենէ յանցուցեալ, թո-
ղութիւն շնորհեաց. ուստի Ակիւղաս և Թէոդոտի-
ոն «անչար և պարզամիտ» գրեցին, իսկ Սիմա-
քոս «անմեղ» գրեաց. և զառաջի անկեալն ընկա-
482 լաւ։ Բայց որ բնութեամբ ամպարիշտն կոչի բան-
սարկուն, և ոչ պատարագ մատուցանելով ընդունի,
զխտելով զնորա չարութիւն, ուսուցանէ մեզ, զի մի՛
ամենևին նմա հաւանեսցուք, յորժամ կարծիցի ա-
սել ազնիւ ինչ և խոստանայցէ բարի. քանզի խոստ-
մամբքն առ չար և առ կորստական ինչ վարէ։
Քանզի և ասէր իսկ, եթէ «Զայս ամենայն քեզ
տաց, եթէ անկեալ երկիր պագանիցես ինձ»։ Իսկ
նա իբրև ծառայի չարի և ապստամբի ի վերայ
էած. «Ե՛րթ յետս իմ, սատանայ, քանզի գրեալ է՝

եթէ Տեառն Աստուծոյ քում միայն երկիր պագցես,
և զնա միայն պաշտեսցես»: Բայց ոչ է Յովբ ամ-
պարիշտ և ոչ զօրական ամբարշտի. բայց եղիցի
Նմա զոր Բաղդադ էած ի վերայ, ոչ գիտելով եթէ 483
ջատագովէ որում էրն ամբաստան, և որովք զամ-
պարիշտն ողբայր՝ նեռաձիգ լինէր թշնամեացն Յով-
բայ, և որովք Աստուծոյ ջատագովէր՝ բարձրացու-
ցանէր զեղջիւր արդարոյ. քանզի զի՞նչ իսկ եդ առ-
ընթեր:

«Բերանք ճշմարտից լցցին ծաղու, և շրթունք
նոցա գնծութեամբ»: Մի՛տ դի՛ր, ով Բաղդադ, և
ստէպ ստէպ նայեաց և կշռեա զբանս քո. մի՛ եթէ
ասացե՞ր՝ եթէ զճշմարիտ բերանս ելից ծաղու. այլ
բան(ք)ս լցցին իսկ ապա ուրեմն ի հանդերձեալ յա-
ւիտենին, անդ ուրեմն յիրաւի շնորհին ակն ունի
Յովբ իբրև զճշմարիտ. անդ ստասցի և զշրթունսն
լի խոստովանութեամբ, յայտ է թէ առ Աստուած 484
գոհացողութեամբ: Քանզի այժմ յայս առակեալ է
զխոստովանութիւն, ուստի Ակիւղաս և Թէոդոտիոն
«աղաղակ» գրեցին, և Սիմաքոս «նշան»: Բայց
յայտնագոյն յայսց երկոցունց լինի գոհութիւն ի
վերայ յաղթութեան, զոր մատուցանեն արդարք՝
յորժամ տեսանեն զնշան յաղթութեան իւրեանց:

«Թշնամիք նոցա զգեցցին զամօթ». հանդերձ իմա-
նալեօք և յայտնիքս, վասն զի ազդեալք յիմանա-
լեացն՝ ընդ երևելիս ունին թշնամութիւն: Զգեցցի
զամօթ այսուհետև եգիպտացին այն, յորժամ տեսա-
ցէ զՅովսէփ՝ որ ի նմանէն զրպարտեցաւ, վկայեալ
ի դատաւորէն, և Յեզաբէլ յորժամ տեսանէ զԵ-
ղիայ, յորժամ ունի զմեծ բաժին սրբոյն, զոր ինքն 485
բռնաւորութեամբն հալածեաց: Այլ և իմանալի թըշ-
նամիքն Յովբայ յորժամ տեսանեն զՅովբ ի մէջ
հրեշտակաց վայելեալ, որ այժմ յորդանց ուտի:

«Եւ յարկք ամպարշտի ոչ ևս իցեն»: Ո՛վ առա-
ւել իմաստութիւն Աստուծոյ. զի ի ձեռն թշնամեացն
ընդդէմ թշնամեացն խօսի, և ջատագովս արդարոյն

զնոսա ցուցանէ՝ որք պատերազմին ընդ նոսա. «Յարկք
ամպարշտից, ասէ, ոչ ևս իցեն». վասն զի արդարն և
բարեպաշտն համարձակութեամբն ճանաչի. և զդա֊
տաւորն ոչ աչագինս ընկալցի, և ոչ սպառնացեալ,
ոչ ոգէտ և ոչ բարկացող, այլ իբրև որդւոյ և բա֊
րեկամի և ընտանւոյ խրատիչ, և որ ամենայն քաղ֊
ցրութեամբ դատի, որ ամպարշտին այս ոչ լինիցի։
486 Քանզի զո՞ր համարձակութիւն կալցի ամպարիշտն
յորժամ դատիցի, որ ոչ ընդ արդարսն է և ոչ մօտ
առ արդարոց, այլ դատեսցի ընդ ամպարիշտս և
ընդ անօրէնս. յաղագս որոյ և Դաւիթ ասէ. «Վասն
այսորիկ ոչ յարիցեն ամպարիշտք ի դատաստանի».
ցուցանելով՝ եթէ նոքա յառաջ քան զդատաստանն
են դատապարտեալ. և յետ այսորիկ՝ եթէ ընդ ար֊
դարս ոչ լինի հարցուած նոցա, և վասն այսորիկ ի
վերայ ածէ. «Եւ ոչ մեղաւորք ի խորհուրդս արդա֊
րոց»։ Այլ մեք եղիցուք ի միասին և ի վիճակի ար֊
դարոց. անձամբք իսկ վարելով ամենայն արդարու֊
թեամբ. և որք վարին արդարութեամբ՝ զնոսա գո֊
վելով և պսակելով և փառաւորելով, գործովք և
487 բանիւք յարգեսցուք, որչափ զօրութիւն է. թէպէտ
և ի նեղութեան իցեն, կամ եթէ ի փորձութեան
իցեն, և կամ եթէ ի հիւանդութեան, և կամ այ֊
լովք պատահարօք մաշեալ իցեն։ Քանզի այսպէս և
բաժանորդք եղիցուք պսակացն նոցա, այնպէս և
նոցա՝ որ ճգնութեամբք է յաղթութիւնն, հաղորդք
եղիցուք, յորժամ առ հասարակ ազգիս ճգնադիրն
հատուցանէ ըստ իւրաքանչիւր ըստ գործոց իւրոց,
և առաւել այնոցիկ՝ որք համբերութեամբք գործեն
զբարիս և խնդրեն փառս և պատիւ և անապակա֊
նութեան կեանս յաւիտենից։ Նմա փառք Հօր և
Որդւոյ և սուրբ Հոգւոյն այժմ և միշտ և յաւի֊
տեանս յաւիտենից. ամէն։

## ԺԲ

Կրկնեալ Յովբայ ասէ. «Ճշմարտիւ գիտեմ եթէ
այդ այդպէս է. քանզի զիա՞րդ լինիցի մարդ արդար 488
առաջի Տեառն։ Զի եթէ կամիցի դատել ընդ Նմա՝
ոչ լուիցէ Նմա. զի և մի բան ի հազար բանի պա-
տասխանի ոչ տայցէ։ Զի իմաստուն է մտօք՝ զօրա-
ւոր և մեծ. ո՞ խստացաւ ընդդէմ Նորա, և հանդար-
տեաց։ Ո հնացուցանէ զլերինս և ոչ գիտեն, որ
տապալէ զնոսա բարկութեամբ։ Որ շարժէ զաւ ի
ներքոյ երկնից ի հիմանց, և սիւնք Նորա դողան։
Որ ասէ արեգական չծագել և ոչ ծագէ, և ընդդէմ
աստեղաց կնքէ։ Որ ձգեաց զերկինս միայն, և գը-
նայ ի վերայ ծովու իբրև ի յատակի։ Որ արար
զբազմաստեղս և զգիշերավարն և զայլն և զշտե-
մարանս հարաւոյ։ Որ առնէ զմեծամեծս և զան-
քնինս և զփառաւորս և զհրաշակերտս՝ որոց ոչ գոյ 489
թիւ։ Եթէ վերասցի քան զիս՝ ոչ տեսից, և եթէ
անցցէ զինև՝ և ոչ այնպէս գիտացի(ց)։ Եւ եթէ սա-
տակեսցէ՝ ո՞ դարձուսցէ, կամ ո՞ ասիցէ ցնա եթէ
զայդ զի՞նչ արարեր։ Զի Նա դարձաւ ի բարկու-
թենէ, և ի Նմանէ սասիցեն կէտք՝ որ ի ներքոյ
երկնից։ Իսկ եթէ ինձ լուիցէ և ընտրեսցէ զբանս
իմ։ Եթէ իցեմ արդար՝ ոչ լուիցէ ինձ. և զդատաս-
տանս Նորա աղաչեցից։ Եւ եթէ կարդացից և ան-
սացէ՝ ոչ հաւատամ եթէ լուաւ ձայնի իմում. և
ոչ միգով սատակեսցէ զիս։ Բազում են հարուածք
զոր արար ինձ տարապարտուց, և ոչ տայ ինձ հանգ-
չել. զի լցոյց զիս դառնութեամբ. քանզի հզօր է՝
բռնանայ. իսկ արդ ո՞վ է, որ դատաստանի Նորա 490
կացցէ հակառակ։ Իսկ եթէ իցեմ ես արդար, սա-
կայն բերան իմ ամպարշտեսցէ. և եթէ իցեմ անա-
րատ, կամակոր գտանիցիմ։ Քանզի եթէ ամպարըշ-
տեցի՝ ոչ գիտեմ, բայց զի բառնան յինէն կեանք
իմ։ Մի է վասն որոյ ասացին, եթէ զմեծն և զհզօր

կորուսանէ բարկութիւն։ Քանզի, ասէ, չարք հրաշալի
մահու կորիցեն. այլ արդարք ծաղր լինին յերկրի,
քանզի մատնին ի ձեռս ամպարշտի։ Զերեսս դա-
տաւորաց նորա ծածկեսցէ. և եթէ ոչ նա է՝ ո՞վ ի-
ցէ։ Այլ իմ կեանք թեթևագոյն են քան զսուրհան-
դակ. փախեան և ոչ տեսին բարի։ Կամ թէ իցեն
491 նաւաց հետք ճանապարհի, և կամ արծուոյ թռու-
ցելոյ որ խնդրիցէ զկերակուր։ Եթէ ասեմ եթէ
խօսեցայց՝ մոռանամ, զերեսս իմ ի վայր արկեալ՝
հեծեծեցից։ Շարժեալ եմ ամենայն անդամովք ի-
մովք, զի գիտեմ եթէ անարատ զիս ոչ թողուցուս։
Որովհետև ամպարշտէի, և ընդէ՞ր ոչ մեռայ։ Եթէ
լուացայց ձեամբ, և սրբեցայց ձեռօք սրբեցելովք,
սաստկացեալ աղտով ներկէր զիս, զազրացոյց զիս
պատմուճան իմ։ Զի ոչ ես իբրև զիս մարդ՝ ընդ
որում դատեցայց, եթէ հասարակ եկեսցուք ի դա-
տաստան։ Իսկ յանկա՞րծ գոյր միջնորդ մեր, և որ
յանդիմանէր և ընտրէր ի մէջ երկոցունց։ Ի բաց
արասցէ յինէն զգաւազան իւր, և ահ նորա զիս մի՛
492 զարհուրեցուսցէ, և մի՛ երկեայց ի նմանէն, այլ խօ-
սեցայց. քանզի ոչ գիտեմ զանձին զանիրաւութիւն։
Հեծելով թողից ի վերայ զբանս իմ, և խօսեցայց
անձամբ դառնացելով զբանս իմ ի նեղութեան ի-
մում։ Եւ ասացից ցՏէր, մի՛ ուսուցաներ զիս ամ-
պարշտել. և ընդէ՞ր այսպէս դատեցար զիս։ Կամ
թէ բարւո՞ք թուիցի քեզ՝ թէ ամպարշտեցից. զի
մերժեցեր զգործս ձեռաց քոց, և ի խորհուրդս
ամպարշտաց հայեցար։ Մի՛ եթէ որպէս հայի՞ այր՝
հայիցես, կամ որպէս տեսանէ՞ մարդ՝ տեսանիցես,
կամ կեանք քո մարդկորէ՞ն իցեն, կամ թէ ամք քո
իբրև զա՞ռն, զի վերստին խնդրեցեր զանօրէնութիւն
իմ և զմեղս իմ քննեցեր։ Քանզի գիտես եթէ ոչ
493 ամպարշտեցի. այլ ո՞վ է որ ի ձեռաց քոց հանիցէ»։
Աքանչելի մեզ ճգնող ցուցին զՅովբ շնորհքն Աս-
տուծոյ. առ ի գովութիւն Աստուծոյ իսկ, և ի նա-
խանձ առաքինութեանցն որովք նայն վարեցաւ.

քանզի սիրտ Նորա սուրբ էր, և լեզու Նորա զուղ֊
զութիւն խօսէր և զիրաւունս բարբառէր. և միտք
հաստատուն էին, և խորհուրդք զուարթք, և ակըն֊
կալութիւնքն լի յուսով, և հոգւովքն միշտ զԱստու֊
ծոյն խոկայր. և մեզ բարիոք է հայել ի Նա, և
բանիւքն Նորա իբրև խորտկօք կերակրիլ: Քանզի
բանիւքն Նորա տեսանեմք զնա սրբութեամբ և քա֊
ջութեամբ բարբառեալ. վասն զի իբրև Նուէրս մա֊
տոյց Աստուծոյ զվարսն իւր, ըստ փառաց Նորա
պատշաճէ զբանս իւր: Թէպէտ և յինքենէ խօսի, 494
թէպէտ և ի կնոջէն գրգռի, թէպէտ և ի բարեկա֊
մացն սրտմտի, թէպէտ և ինքն բանսարկուն խեղ֊
դեալ հարկաւորէ զնա առ ի հայհոյութիւն, բայց
սակայն արդարն ի փառաբանելոյ ոչ դադարէ: Այլ
և զնախատիչ բարեկամացն զբանս ուղղէ, և զոր
Նոքա բամբասելով և անգոսնելով զճգնողէն բարբա֊
ռեցան, զայս ի բարեբանութիւն Աստուծոյ դարձու֊
ցանէ մեծն Յովբ: Բայց թէ ասիցես՝ թէ ըստ որո՞ւմ
օրինակի, զայդ ուսիր: Քանզի ի բանսն իւր Բաղ֊
դադ իբրև ստնհարութեամբ այսպէս սկսաւ յառաջա֊
բանել. «Մի՞ եթէ անիրաւ դատիցի Տէր, և կամ որ
զամենայն արար, պղտորիցէ՞ զիրաւունս»: Զի՞նչ առ 495
այս ասիցէ Յովբ. զիա՞րդ կրկնեաց անդրէն փոխա֊
Նակ ընդդիմամարտին, և աքանչելապէս ընկրկեաց
զնա, որ ակն ունէր զլորել զՅովբ: Եկ այսր և միտ
դիր, քանզի պատասխանի ետ Յովբ և ասէ.
«Ճշմարտիւ գիտեմ եթէ այդ այդպէս է»: Այս֊
ինքն է, զի դուք թէպէտ և այդպէս ասէք զԱս֊
տուծոյ, այլ ճշմարտութեամբ ոչ գիտէք զասացեալ֊
սըդ, և ոչ զանբաւ Աստուծոյ արդարութիւնն գիտէք:
«Քանզի զիա՞րդ լինիցի մարդ արդար առաջի
Տեառն»: Զի՞ Նախատէք զՅովբ՝ իբրև թէ չիցէ ար֊
դար. զկաւոյս զարդարութիւն ընդ արարչին արդա֊
րութեան համեմատէք. ոչ ոք է մարդ առաջի Տեառն
արդար. ոչ եթէ զամենեսին մեղաւորս ունի, այլ ի 496
հարցանել և համեմատելով առընթեր դնել՝ ոչ ոք

է արդար. Թէպէտ և զՆոյէ ասիցես կամ զԱբրա-
համէ, կամ եթէ զայլ ումեքէ ասիցէք որ արդարու-
թեամբ վկայեցան։

«Զի եթէ կամիցի դատել ընդ նմա՝ ոչ լուիցէ
նմա, զի մի բան հազարաց պատասխանի ոչ տացէ»։
Յայսմ ի տեղ յայտնապէս հրաժարէ զարդարսն ի
դատաստան ընդ Աստուծոյ մտանել, և զնմանսն
Դաւթայ բարբառի՝ եթէ «Մի՛ մտաներ ի դատաս-
տանի օտխ ընդ ծառայի քում, քանզի ոչ արդա-
րանայ առաջի քո ամենայն կենդանի»։ Իսկ եթէ
ընդ ումեք ընդ արդարոցն Աստուած կամիցի մտա-
նել ի դատաստան, նա ոչ լուիցէ. և հրաժարէ և ա-
497 ղաչէ՝ զի մի՛ ամենևին մտցէ ի դատաստան ընդ ա-
րարչի իւրում։ Նաև Յովբ իսկ, յորժամ ասէր ցնա
Տէր, «Մի՛ եթէ բաւակա՞ն իցես ի դատաստանի
տալ տեղի», յանդիմանելով զԱստուած՝ նմանս
այժմու ասացելոցս դնէ և զպատասխանիսն առ Աս-
տուած. «Ընդէ՞ր ևս ես դատիմ խրատեալ, յանդի-
մանելով զՏէր՝ լսելով զայսպիսիս. զի ոչ ինչ եմ
ես. զի ես իսկ առ այս զի՞նչ տաց պատասխանի.
ձեռն եդից ի վերայ բերանոյ իմոյ. մի անգամ խօ-
սեցայ և յերկրորդում ոչ յաւելից»։ Վասն է՞ր. զի
մի՛ տացէ պատասխանի նմա ի միոյ բանից հազար
բանի. քանզի և ոչ իսկ կարէ. ոչ միայն Աստուծոյ
բազում և անթիւս վասն մեր ի յիւրաքանչիւր առ
ի յօգուտս ասելով, այլ առաւել իմաստութեամբ
498 զօրութեան և անչափ մեծութեամբ ի վեր է քան
զամենայն արարածս։

«Զի իմաստուն է մտօք՝ զօրաւոր և մեծ»։ Զի-
մաստութիւն Նորա առանց ամենայն երկբայութեան
ցուցանեն պայծառութիւնք արարածոցս, յարմա-
րանք և կարգաւորութիւն. բայց ոչ յուսմանէ ունի,
այլ զի ինքն բնութեամբն իմաստութիւն է. բայց
որ իմաստուն մտօք զնա անուանեաց, զի ցուցցէ ի
մեզ զարդարև իմաստութիւնն, և զԱստուծոյ միտսն
իսկ՝ մեծութիւնն։ Վասն զի այսչափ և այսպիսի տա-

րերք երևելի արարածոցս, մանաւանդ և աներևոյթ֊
քըս իբրև կաթիլ մի ի դուլէ՝ կախին զնորա զօրու֊
թենէ աջոյն. իսկ զօրութիւն՝ զի կանն ի սահմանի
որպէս արար և կարգեաց: Բայց որ անցանել զսահ֊ 499
մանաւն յանդգնեցաւ, գիտաց զայն՝ եթէ որչափ
է չար. զի վանեալ ի վերջին ապականութիւն եհաս:
«Ո՞ խստացաւ ընդդէմ նորա, և կարաց հան֊
դարտել»: Ոչ ոք միայն ի մարդկանէ, այլ և ոչ
ինքն բանսարկուն, որ էր յայնչափ ի վայելչութեան
և ի պատուի և ի զօրութեան, մինչև արուսեակ և
կնիք գեղեցկութեան անուանեցաւ և այլ այսպիսի՝
որովք նշանակէր զառաջին պատիւ նորա. այլ սա֊
կայն զի իշխեաց զսիրտ իւր խստացուցանել ամ֊
բարտաւանութեան մտօք ընդդէմ Աստուծոյ, բայց
հանդարտել ոչ կարաց, այլ և յերկնից անկաւ, և
յերկրիս տակաւին հալածի:
«Որ մաշէ զլերինս և ոչ գիտեն, որ տապալէ
զնոսա բարկութեամբ»: Քանզի մաշէ իսկ զայս զե֊ 500
րևելի լերինս, յորժամ կամի փոխել զդէմս զերե֊
ւելի զարարածոցս: Այլ ոչ ինչ է զարմանալի, եթէ
մաշելով սոքա՝ ոչ գիտեն. քանզի ոչ իսկ են բա֊
նաւորք, որպէս ազգ մարդկան և կենդանի հրեշ֊
տակք: Իսկ ուրեմն լերինս անուանեաց զզօրութիւն
ամբարտաւանութեան դիւաց, ուստի և զբանսար֊
կուն անուանեաց Եզեկիէլ մարգարէ «Լեառն ապա֊
կանութեան որ ապականէ զամենայն երկիր»: Քանզի
ապականութիւնք դիւաց անարգ են, թէպէտ և բա֊
զում խորամանկութեամբք լի են. բայց սակայն ոչ
կարեն հասանել խորհրդոցն Աստուծոյ՝ յորժամ կամի
թաքուցանել ի նոցանէն. ուստի և ոչ գիտեն զկործա֊ 501
նումն իւրեանց՝ որ գան առ ի նմանէն: Բայց տարա֊
ցոյց այսորիկ եղիցի՝ զոր ասէր Պաւղոս. «Զիմաստու֊
թիւն խօսիմք ընդ կատարեալս. զիմաստութիւն ոչ
զաշխարհիս այսորիկ, և ոչ զիշխանի յաւիտենից այ֊
սորիկ՝ որ խափանելոցս է, այլ խօսիմք զիմաստութիւնն
Աստուծոյ, որ ի խորհրդի անդ ծածկեալ էր, զոր

յառաջ քան զյաւիտեանս սահմանեաց Աստուած ի փառս մեր, զոր ոչ ոք յիշխանաց յաւիտենիս այսո-րիկ կարաց գիտել. զի եթէ գիտացեալ էր՝ ոչ ար-դեւք զՏէր փառացն խաչէին». որ մաշեաց զնոսա ի ձեռն խաչելութեանն խորհրդոյ իւրոց չարչարա-նացն, և հաստատեաց իսկ և խափանեաց զնոսա։
502 Եւ ոչ միայն խափանեաց, այլ և կործանեաց բար-կութեամբ իւրով զգոհարանս նոցա, և գլորեաց ըզ-բագինս նոցա, և փշրեաց զարձանս նոցա։ Այլ յի-րաւի իսկ եհան զփառս նոցա ի նոցանէն. զի ոչ միայն զփառսն յափշտակէին, որ ոչ անկ էր նոցա, այլ և զազգ մարդկան ապականէին։ Բայց ե՞րբ հասցէ նոցա արդար և ճշմարտութեամբ կորուստն և բովանդակ բարկութիւնն. յորժամ վախճանեսցին երևելիքս։ Բայց եթէ ասիցես՝ եթէ զիա՞րդ լինիցի այս, ըստ կարգի գրոցս ծանիցես։

«Որ շարժէ զառ ի ներքոյ երկնից ի հիմանց, և սիւնք նորա դողան»։ Զայս և Անգէոս մարգարէ ասաց, և Պաւղոսի առաքելոյ մեկնեալ է, քանզի
503 այսպէս ասէ առ Հեբրայեցիս, և զԱնգէի մարգա-րէութիւն նորին բանիւ դնէ. «Այժմ խոստացեալ (է) և ասէ. դարձեալ միւս ևս անգամ շարժեցից, ոչ միայն զերկիր՝ այլ և զերկինս. դարձեալ գուշա-կէ զշարժելոցն իբրև զեղելոց փոփոխումն. զի մնաս-ցեն անշարժքն»։ Բայց սակայն և ըստ կարգիս միտ դիցուք։

«Որ ասէ արեգական չծագել՝ և ոչ ծագէ, և ընդ-դէմ աստեղաց կնքէ»։ Յայտ է զի և այս ի ժա-մանակի կատարածին լիցի. կամ թէ ո՞չ լուաք ի փրկչէն, զի ասէ, եթէ «Յետ նեղութեան աւուրցն այնոցիկ արեգակն խաւարեսցի, և լուսին մի՛ տացէ զլոյս, թօթափեսցին աստեղք յերկնից, և զօրու-թիւնք երկնից շարժեսցին»։ Այլ ցուցանել կամե-ցեալ Յովբայ՝ մանաւանդ թէ որ առ նմա Ոգին էր,
504 եթէ որչափ ինչ է ի նմա բազմութիւն գիտութեան վասն Աստուծոյ փառաբանութեան, ասաց եթէ որ-

պիսի ինչ եղիցի ի ժամանակի կատարածին։ Ու-
սեալ յարարչէն յիրաւի եդ առ ընթեր՝ եթէ որպիսի՛
ինչ եղև ի նմանէն ի սկզբանէ արարածոց, և որ-
պիսի՛ ինչ ի ժամանակին յայնմ՝ որ վասն մեր տըն-
տեսութիւն եղև, զի եղիցի յայտնի ընթերցողացն
եթէ զայս և զայն որ միայնն է՝ արար։ Ասէ իսկ։
«Որ ձգեաց զերկինս միայն, և գնայ ի վերայ
ծովու իբրև ի յատակի»։ Եւ ո՞ գնայ ի վերայ ծո-
վու իբրև (ի) յատակի, բայց եթէ Քրիստոս, զի գնայր
ի վերայ ծովուն և մեզ պատմեցաւ. զի յորժամ
տեսին այլ աշակերտքն և զարհուրեցան, բայց Պետ-
րոս միայն համարձակեցաւ ասել. «Տէր, եթէ դու 505
ես, հրամայեա՛ ինձ զի եկից ի վերայ ջրոցս»։ Եթէ
դու ես. ո՞ դու այլ, բայց թէ նա՝ զոր Յովբ մարգա-
րէական հոգւոյն բարբառով յառաջագոյն ասաց. «Որ
ձգեաց զերկինս միայն, և գնայ ի վերայ ծովու իբրև
ի յատակի». զայն քարոզելով վկայէր, եթէ ոչ գնայր
Քրիստոս ի վերայ ծովու իբրև ի յատակի, եթէ ոչ
միայն նա էր արարիչ։ «Որ ձգեացն զերկինս».
այսինքն է պարզեաց և հաստատեաց, որպէս Դա-
ւիթ ասէ, թէ «Բանիւ Տեառն երկինք հաստատե-
ցան»։ Եթէ երկինք, յայտ է թէ երկիր և ծով. և վասն
այսորիկ այսպիսի տարր նմա այնչափ հնազանդե-
դեցաւ՝ մինչև զբնութիւնն իւր փոխեաց. քանզի
նմա իսկ վայել են այսպիսի Յովբայ փառաբանու- 506
թեան բանքս։

«Որ արար զբազմաստեղս և զգիշերավարն և
զսայլն և զշտեմարանս հարաւոյ։ Որ առնէ զմեծա-
մեծս և զանքնինս և զփառաւորս և զհրաշակերտս՝
որոց ոչ գոյ թիւ»։ Սայլն ասացեալ և գիշերավար
և զբազմաստեղս և շտեմարանս հարաւոյ, եցոյց զա-
մենայն չափս երկնի՝ զաստեղաց և որ ի նմա կան։
«Զմեծամեծս և զանքնինս, փառաւորս և հրաշակերտս՝
որոց ոչ գոյ թիւ»։ Ասէ իսկ զամենայն իւրաքանչիւր
ազգաց՝ որ ի նմանէն նշանագործութիւնք եղեն.
բայց մանաւանդ առաւել զայնմանէ ասէ, որ ի վե-

րայ մեր եղեն Նորա տնտեսութիւնք, զի այս իսկ
507 են մեծամեծք և ի վեր քան զբնութիւն. իսկ ան-
քնինք, վասն զի վերագոյնք են քան զմարդկեղէն
մտաց հասանելոյ. փառաւոր դարձեալ, վասն զի ի
ներքին արարածոցս առնոյր զպաշտօն, և վերինն
լի սքանչելեօք. քանզի որպէս է հրաշակերտ, այս-
ինքն եթէ յոյժ բարձրեալ, և թէ որպէս թիւ ոչ
կայ, աստուածաբանն Յոհան մեզ յայտնեաց. «Է և
այլ ինչ բազում՝ զոր արար Յիսուս. եթէ և զամե-
նայն ինչ գրեալ էր ի գիրս, և ոչ բովանդակ աշ-
խարհս կարծեմ եթէ տանէր զգիրսն»: Ոչ միայն
զի ի վեր է քան զթիւ, այլ զի բարձր էին և ոչ
կարէին հանդարտել լսելիք աշխարհիս: Իսկ զի՞նչ
յաւել յայս:
«Եթէ վերասցի քան զիս՝ ոչ տեսից, և եթէ անց-
508 ցէ զինև՝ և ոչ այնպէս գիտացի. և եթէ սատա-
կեսցէ՝ ո՞ դարձուսցէ, կամ ո՞վ ասիցէ ցնա թէ զի՞նչ
արարեր»: Ի վեր բարձրանայ Աստուած իւրաքան-
չիւր ումեք ի մէնջ, յորժամ զդատաստանն որ ի
վերայ մեր է՝ տակաւին յապաղէ: Իսկ անցանէ
դարձեալ զմեւք՝ այսինքն է, թէ առ մեւք անցանէ.
ուստի և Թէոդոտիոն «զմեւք անցանել» գրեաց, և
Սիմաքոս «անց(ց)է, յորժամ այց առնէ մեզ». այլ ոչ
զառաջինն մարմնաւոր աչօք կարեմք տեսանել, և ոչ
յերկրորդումն մտօք կարեմք հասանել. քանզի զորս
յօրինէ ինքն, ոչ միայն քան զաչս՝ այլ և քան զմիտս
սրագոյն են. և ժամանէ այց առնել մարդոյ՝ մինչև
509 մեր կարացեալ է առնուլ ի միտ զնորա զայցելու-
թիւնն. մանաւանդ եթէ կամիցի ինչ վաղվաղակի
գործել. քանզի թերևս այս իցէ սատակելն: Իսկ ո՞
դարձուսցէ, այսինքն է փրկեսցէ. այլ և կարասցէ
ոք ոչ ասել, թէ զի՞նչ արարեր: Քանզի նախ ոչ
իսկ իշխեսցէ, և ապա ժամանեսցէ իսկ ոչ. վասն
զի յառաջ են ազդմունքն: Բայց սակայն բնու-
թեամբ է այս Աստուծոյ Բանին. քանզի ոչ ոք իսկ
կարաց տեսանել զնա, յորժամ ելանէր յերկինս և

ի վեր քան զերկինս. բայց յայտ է թէ յայնժամ
այսպիսիս բարբառէին, յորժամ երևեցան հրեշտակ֊
քըն առաքելոցն, յորժամ ի վերայ մեր ընդ օդս
անցանէր. զի՞նչ ասեն. եթէ «Արք գալիլեացիք, զի՞
կայք հայելով ընդ երկինս»։ Այլ և ոչ «անցեալ ընդ 510
մեզ». բայց յայտ է եթէ ընդ կեանս մեր էանց տըն֊
տեսութեամբ մարմնաւորութեանն և չարչարանօք
խաչին, զարմանալի յարութեամբն. քանզի այնոքիւք
էանց ընդ կեանս մեր։ Եւ գիտել ո՞ բաւեաց, եթէ
զի՞արդ մարդ էր կամ զիա՞րդ Աստուած էր, կամ
զիա՞րդ չարչարէր և զչարչարանս լուծանէր, և զիա՞րդ
զմահ ճաշակէր իբրև զմարդ, և իբրև զԱստուած
հնազանդէր զդժոխս, և կողոպտէ զմահ։ Սա զեր֊
ծոյց յանիծիցն յայնմանէ և ի մեղաց չարեաց զազ֊
գըս մեր, և դարձուցանել այսրէն ի մեզ զբեռինսն
որ ոչ կարէ, զոր նա թօթափեաց ի մէնջ։ Այլ և ոչ
ասել ոք նմա իշխէր, եթէ զի՞նչ գործեցեր, և կամ
վասն է՞ր զմեղաւորս արդարացուցեր, և որ ընդ ա֊ 511
նիծիւքն էր, արարեր ընդ օրհնութեամբ։ Նախ իբրև
Աստուծոյ և յիշխանութենէ վայելչութեան Աստուծոյ,
զի զօրութեամբ գործէր. և ապա զի թաղեաց յեր֊
կրի զմեղաց մերոց պարտիս, և այնպէս ի բաց դար֊
ձոյց ի մէնջ զբարկութիւն, և ընդ ձեռամբ իւ֊
րով կալաւ զթշնամւոյն զզօրութիւն, և ըստ նմա֊
նութեան ծովային կիտից որ սպանե(ա)լ կամէր կլա֊
նել զմեզ։ Վասն այսորիկ ի դէպ ժամու էած ի
վերայ։

«Զի նա դարձաւ ի բարկութենէ»։ Յայտ է թէ
որ էր ի վերայ մեր։ «Եւ ի նմանէն սարսեցին կէտք՝
որ ի ներքոյ երկնից են». բայց թերևս որ յօդս են
և բաջաղին ի ներքոյ երկնից. վասն որոյ ասէ Պաւ֊
ղոս. «Ոչ է մեզ պատերազմ ընդ մարմնոյ և ընդ 512
արեան, այլ ընդ աշխարհակալս խաւարիս չարու֊
թեան օդոյս երկնիս այսորիկ»։ Զայս յիրաւի ա֊
նուանեաց Յովբ կէտս՝ վասն ամբարտաւանութեան
և յոյժ սաստիկ գազանաբար հպարտութեանն. քան֊

զի Սիմաքոս փոխանակ կէտիցն գրեաց, «որք յեցեալ
են յամբարտաւանութիւն»։ Բայց խոնարհեցաւ ի
գալստեանն Քրիստոսի, քանզի ետ զնոսա առ ի կո֊
խան մեզ և յարհամարհանս։ Կամ թէ ո՞չ ինքն իսկ
ասէր առաքելոցն, թէ «Ահաւասիկ ետու ձեզ իշխա֊
նութիւն կոխել ի վերայ օձից և կարճաց, և ի վե֊
րայ ամենայն զօրութեանց թշնամւոյն»։ Քանզի այս֊
պէս ցուցեալ Յովբայ՝ եթէ որպէս ինքն փառաբանէ
513 մեծագոյնս և պայծառագոյնս քան զայն՝ զոր բա֊
րեկամքն ասէին, և այսք արգելուն զԲաղդադայ
պատմութեան բանս. քանզի նա ասաց. «Եթէ սուրբ
ես և ճշմարիտ՝ աղօթից քոց լուիցէ, և դարձուսցէ
զյարկս քո արդարութեամբ». այսինքն է զիրաւունս
և զգիտութիւն։ Բայց միտ դիր Յովբայ զի՞նչ ասէ։
«Եւ ի նմանէն սարսեցին կէտք՝ որ ի ներքոյ
երկնից։ Իսկ եթէ ինձ լուիցէ, ասէ, և ընտրեսցէ ըզ֊
բանս իմ. եթէ իցեմ արդար՝ ոչ լուիցէ ինձ, և ըզ֊
դատաստան նորա աղաչեցից»։ Ընդունայն, ասէ, նա֊
խատես զՅովբ, ի զուր ոմն հարկանես արդարոյս,
իբրև թէ յապաղիցեմ յԱստուծոյ դատաստանի.
բայց վասն խնայելոյ և վշտակցութեան իւրոյ զայս
514 գործէ. և (թէ)[1] ոչ լսէ և ոչ քննէ զբանս իմ, այս֊
ինքն է, թէ ոչ արկանէ ի քննութիւն զինէն ասա֊
ցեալս, ոչ եթէ մեղադրէ իբրև զմեղաւոր զՅովբ,
այլ վասն այնր, (զի) թէպէտ իցեմ արդար՝ առ մար֊
դիկս եմ արդար, և ընդ մարդկանս համեմատու֊
թեան։ Բայց ինձ պիտոյ են աստուածային դատաս֊
տանքն, և վերուստ վկայութիւնն, որ եթէ լցի
ըստ ստուգութեան դատաւորին, ոչ ոք կարասցէ
այնմ ստուգութեան համբերել։ Վասն այսորիկ զիա՞րդ
կարասցէ լինել մարդ արդար առաջի Տեառն. յառա֊
ջաբանութիւն արար առ այժմու ճարտարաբանու֊
թիւնս, վասն այսորիկ ոչ լուիցէ ինձ։ Այլ և զի՞նչ
ևս յաւել զոր ունի բարեպաշտութիւն առ Աստուած,
իբրև ծառայ ցուցանելով առ հզօր տէր։

1. Յաւելաք ըստ Վ.։

«Եթէ կարդացից և լուիցէ ինձ, ոչ հաւատամ 515
եթէ լուաւ ձայնի իմում. մի՛ եթէ միգո՞վ սատակես-
ցէ զիս»: Այնչափ երկիւղիւ հայիմ ի մեծ յահաւոր
դատաստանն Աստուծոյ, զի թէպէտ և կոչեսցէ զիս
ի դատաստան և լուիցէ ինձ, ոչ հաւատացից, եթէ
լուաւ ձայնի իմում. այսինքն է, թէ ոչ կարեմ հա-
մարձակել, եթէ ընկալաւ զայսպիսի խնդրուածս իմ,
ուստի զարհուրիմ և դողամ: «Մի՛ եթէ միգո՞վ սատա-
կեսցէ զիս», անգոսնեալ իբրև զյանդուգն և զյոխորտ.
և ուստի այսպէս երկնչիմ, յորմէ և այժմիկ պատա-
հեցին ինձ այսպիսիքս, թէպէտ և խստացեալ ոչ էր:
«Բազում են հարուածք, զոր արար ինձ տարա-
պարտուց»: Զիա՞րդ տարապարտուց. վասն զի ոչ 516
խնդրեցի յարկս արդարութեան, որպէս դուքդ ա-
սացէք. քանզի ոչ ես կոչեցի զԱստուծոյ քննութիւն
և ոչ դատիլ առ նմա խնդրեցի. այլ սակայն և այդ-
պէս բազում արար ինձ հարուածս:
«Եւ ոչ տայ ինձ հանգչել, զի լցոյց զիս դառ-
նութեամբ»: Զի բազում անգամ թողացուցանէ գալ
ի վերայ իմ փորձանս, և ոչ կարեմ զոգի առնուլ.
ստէպ ստէպ ածելով զճգունս ի վերայ իմ թշնամ-
ւոյն՝ լնում դառնութեամբ. ուստի և կինն և բա-
րեկամքն բամբասելով նախատեն զիս, և ոտնհա-
րութեամբ խօսին ընդ իս. բայց վասն այսորիկ և
զայս Աստուծոյ համարիմ, զի թողացուցանէ, թէ-
պէտ և կարող է արգելուլ: Բայց սակայն ես քարո- 517
զելով զարդարութիւն Աստուծոյ և զզօրութիւն նո-
րա պատմելով ոչ դադարեցից. զիա՞րդ իբրև ձեռամբ
պատեալ ունի զամենայն ինչ խնամովք իւրովք, և
ըստ նմանութեան կառավարաց ուղղէ իբրև երասա-
նակօք զտարերս աշխարհիս կամօք իւրովք. ուստի
և ոչ ողջախորհ ոք իշխէ անգոսնել զդատաստանս
նորա իբրև զարդարոյ և զհզօրի:
«Քանզի հզօր է՝ բռնանայ: Իսկ արդ ո՞վ է, որ
դատաստանի նորա կայցէ հակառակ»: Հզօր է՝ բռ-
նանայ, այլ սակայն արդարութեամբն յառաջ վարի

*քան զօրութեամբ, և արգելլով զզօրութիւնն՝ առաջի
դնէ զբարերարութիւնն. վասն որոյ և Ներբէ առ ի տան֊
518 ջել զմեզ՝ յորժամ մեղանչեմք, և բազում անգամ շնորհէ
բարիս առ այժմ որ պարտաւոր են չարեաց. ուստի և
ոչ ոք բաւէ ընդդիմանալ դատաստանի Նորա, զի ոչ
ոք կարէ ի դատապարտելոցն մեղադրել զդատաւորն,
վասն զի առ ամենեսին անբաւ մարդասիրութիւն ե֊
ցոյց: Բայց սակայն, զի հզօր է՝ բռնանայ, ցուցանէ
մեզ հանդերձ այլովքն և արեգակն, որ այնչափ և
այնպիսին է, այլ սակայն ոչ իշխէ անցանել ըստ
հրաման արդարոյն. ցուցանէ մեզ և լուսին, որ ըստ
Նորա օրինադրելոյ առնու զաճումն և զնուազումն.
քարոզէ և ծով, զի ոչ կարէ ելանել ըստ սահմանն,
519 յորում միանգամ վիճակեցաւ. և ընդդիմութիւն ա֊
ւազոյն զայնչափ սաստկութիւն ալեացն ցրէ: Վասն
այսորիկ և դատաստանի Նորա՝ ոչ ոք կարէ ընդդի֊
մանալ, այսինքն է, թէ ոչ ոք կարէ անցանել ըստ
Նորա դատաստանն: Բայց թէպէտ և զայս դատաս֊
տան ասիցէք՝ յորում զազգ մարդկան դատիցի, ո՞
ունիցի համարձակութիւն՝ որ կարիցէ ընդդիմանալ
Նմա: Թէպէտ և զԱբրահամէ ասիցես, այլ «հող և
մոխիր» կոչէ զինքն. Նոյնպէս և Դաւիթ, թէ «Անօ֊
րէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ, և իբ֊
րև զբեռն ծանր ծանրացաւ ի վերայ իմ»: Զայս
քնար հարկանելով ոչ դադարէ, զոր և մեծն գոչէ
520 Եսայի. «Վայ է ինձ, զի ես այր տառապեալ եմ, և
պիղծ շրթունս ունիմ, և ի մէջ պղծախօս ժողովր֊
դեան բնակեալ եմ»: Ուստի և ճգնողս յիրաւի էած
ի վերայ:*

*«Իսկ եթէ իցեմ ես արդար, սակայն բերան իմ
ամպարշտեսցէ»: Բայց եթէ ըստ որո՞ւմ օրինակի է՝
լուր: Նախ զի ոչ է դիւրին ումեք լինել անարատ գոր֊
ծովք և բանիւք, և վասն այսորիկ յիրաւի էած ի վերայ:*

*«Եւ եթէ իցեմ անարատ՝ կամակոր գտանիցիմ»:
Թէպէտ և գործովք կարծիցեմ եթէ ստացայ զանա֊
րատութիւն, սակայն բանիւք կամակոր գտայց. և*

կամ եթէ բանիւք անարատ գտայց, սակայն գոր-
ծովք յանդիմանեցայց: Դոյնպէս և թէ ոք արդար
է գործովք, և գոչելով բանիւք պատմիցէ զայս պեր-
ճացեալ, նորա բերանն ամպարշտէ, վասն զի յամ- 521
բարտաւանութիւն անկաւ, որ վայել է բանսարկուին՝
արդարև ամպարշտին. իսկ եթէ իցէ ոք անարատ,
և ոչ գիտէ ուստի՞ ունի զանարատութիւնն, և վասն
այսորիկ վստահանայ յանձն, և ուռուցեալ պերճա-
նայ, կամակոր եղիցի. յայտ է՝ եթէ թողեալ է ի
ձեռաց Աստուծոյ: Ուստի և Պաւղոս հարկաւորեալ
յիշէ զիւր զաշխատութիւնս և զվաստակս՝ ասելով.
«Առաւել քան զնոսա ամենեսին վաստակեցի». և
նոյն ժամայն ածէ ի վերայ, «ոչ ես՝ այլ շնորհքն
Աստուծոյ՝ որ են ընդ իս»: Քանզի որպէս և տունկ
ինչ, որ յոյժ գեղեցիկ է և սաստիկ քաջարեր, ոչ
այնչափ յիւր բնութենէ հասանէ ի քաջաբերութիւն,
որչափ և ի զգուշանալոյ մշակին, որ հոգաբարձու- 522
թեամբ յատանէ և ուղղէ և մութիւք հաստատէ,
զի մի՛ ծփեալ թիւրեսցի ի շնչմանց հողմոց, և մի՛
նեղեալ եղիցի ի չառաւեղացն՝ յորժամ թողցէ զնա
մշակն, այսպէս արդար և անարատ այր, եթէ ո՛չ
գիտասցէ՝ թէ ուստի՛ ունի զարդարութիւնն, և կամ
դոյզն մի ինչ հեղգասցի առ ի յուղղել զանարատու-
թիւնն, կամակոր եղիցի: Քանզի ոչ ևս գտցէ օգնու-
թիւն յԱստուծոյ, և նոյն ժամայն դարձցի ի խրա-
տըս չարին, և յապականութիւն անկցի: Այլ զի՞նչ
յաւել յայս Յովբ, միահաւանս բարբառելով առա-
քելական բանիցն. «Քանզի ոչ գիտեմ ես զխիղճ ան-
ձին իմոյ, այլ ոչ այսու արդարանամ. զի որ քննէն 523
զիս՝ արդար է»:

«Քանզի թէ ամպարշտեցի՝ ոչ գիտեմ անձամբ»: Վասն է՞ր. քանզի մոռացումն առնումք բազում ժամանակօքն զգործոց մերոց. բազում իսկ չարիս իբրև զբարի գործեմք[1], հարեալք ի գութ աշխարհիս, և վասն այսորիկ ի վերայ ածէ:

1. յՕր. գործս եմք:

*«Բայց սակայն բառնան յինէն կեանք իմ»։ Ցայտ
է թէ վասն այսորիկ նեղեալ էր, քանզի ինքն զան-
ձին խիղճ ինչ ոչ գիտէր, և բարեկամքն իբրև զմե-
ղաւոր նախատէին և չար ասէին զնմանէն՝ որ ոչ
ինչ գիտէր զիւր չարութիւն։ Բայց Աստուած զառ
ի յայտնի զդատաստանսն տակաւին յապաղէ։ Վասն
524 այսորիկ արդարն յոյժ փղձկէր, և հարկաւորեալ
բարբառէր։*

*«Վասն որոյ ասացի՝ եթէ զմեծն և զհզօր կորու-
սանէ բարկութիւն. քանզի, ասէ, չարք հրաշալի
մահու կորիցեն. այլ արդարք, ասէ, ծաղր լինին
յերկրի. քանզի մատնին ի ձեռս ամպարշտի»։ Աստ
«մեծ» ասէ զերևելին ազգաւն, զյղփացեալն մեծու-
թեամբն, զլցեալն առժամանակեան բարեօքս. այլ
և «զհզօրն՝» որ զաշխարհական զօրութիւնս ունի՝
կորուսանէ բարկութիւն, որ աճեն նմա յաշխարհա-
կան լիութենէս, և յոլովէն ի զօրութենէ աշխար-
հիս, և ընդդէմ պարկեշտացն և արդարոց լինի այս։
Բայց մի ինչ է վասն որոյ տանին այսմ. այսինքն
525 է, թէ մի են պատճառք վասն որոյ համբերեն ա-
սացելոցս։ Եւ զի՞նչ են պատճառք. «քանզի չարք
հրաշալի մահու կորիցեն. այլ արդարք, ասէ, ծաղր
լինին յերկրի», վասն զի մահ չարաց յոյժ չար է։
Քանզի «զհրաշալին» զայս իմացիս, զի ոչ է այն-
պէս որպէս այլում մարդկան. քանզի ի վերայ այ-
լոցն՝ մահ հանգիստ է մարդոյ. իսկ ի վերայ անօ-
րինացն՝ մահ չար է մեղաւորացն. քանզի սկիզբն է
ցաւոց և աշխատութեանց և հարուածոց և տանջա-
նաց, և առաջնորդ ի վերջին չարեաց։ Բայց չարքն
յայս ոչ նային, և զմահ և ոչ զյետ մահուն՝ տեսա-
նեն, այլ յայլ հային որ աստ լինի, և զարդարսն
ծաղր առնեն։ Եւ տեսանեն զի մատնեալ են ի ձեռս
ամպարշտի, և կամ յիշխանի կամ ի տեառն բռ-
526 նաւորի, և կամ յայլոց ուրուք ի չարիս, և ի չարիսն
փութան. այս պատճառք են կորստեան ամպարշտաց,
զոր յիրաւի համարեալ է արդարոցն։*

«Զերեսս դատաւորաց նորա ծածկեսցէ»: Ցայտ
է թէ զերկրիս. քանզի յապաղելն տանջանացն ա-
նարգաց և ի ծաղր և յայպն լինել արդարոցն և ընդ
ձեռամբ ամպարշտի, յիրաւի ծածկէ զերեսս դատա-
ւորաց երկրիս: Քանզի ակնառութիւն է ի նոսա, և
զարդարս արհամարհեն՝ յորժամ աղքատք իցեն, և
աչառին մեծամեծաց, թէպէտ ամպարիշտք և անօ-
րէնք իցեն: Իսկ ապա զի՞նչ յաւել առ ի ցոյցս՝ (թէ)
ճշմարտութեամբ են ասացեալքն ի նմանէ, և առանց
իրիք երկմտութեան, և ընդդիմաբանութիւն ոչ ու-
նին ամենևին:
«Եւ եթէ ոչ նա է, ո՞վ իցէ»: Եթէ ոչ այս այսպէս 527
իցէ, զի ընդունին զտանջանս մեղաւորք վասն առա-
ւել իւրեանց չարութեան, և արհամարհելով մեծա-
մեծացն՝ իւրեանց անօրէն զօրութեամբքն, բարկու-
թիւն ընդունին առ ի կորուստ անձանց իւրեանց:
Արդեւք նա՞ իցէ որ զայս հրամայիցէ կամ ասիցէ.
քանզի յերկուց՝ միումն հարկ է եթէ իցէ. կամ իւ-
րեանց կամօք անարգքն մտին ի չարութիւն, արհա-
մարհելով եթէ ոչ առընթեր է ի վերայ նոցա բար-
կութիւն. կամ եթէ սա ազդէ ի նոսա՝ յորոյ ձե-
ռանէ հաստատեալ է ամենայն ինչ: Բայց ո՛չ ազդէ,
վասն զի արդար է, բարերար և մարդասէր, և ոչ
ինչ յայնցանէ ազդէ. և զի մի՛ լիցին դատաստանք
ի վերայ նոցա՝ տանջանս քարոզեաց. բայց նոքա 528
արհամարհեն զառ յապա կեանսն, վասն զի յերե-
ւելիսս հարեալ են: Զայս ասացեալ Յովբայ, զմարդ-
կեղէն կենացս ողբայ զունայնութիւն. բայց ընդ
բանիւս զիւր դէմս մուծանէ[1]:

«Այլ իմ կեանք թեթևագոյն են քան զսուրհան-
դակ»: Վասն զի սուրհանդակ չափաւոր ինչ ընթացս
ընթանայ կամ համառօտս, և ոչ ևս դադարեցուցա-
նէ զոտս իւր՝ մինչև հասանէ ի տեղի ընթացիցն:
Բայց կենաց մարդկան անյայտ է վախճան, և ան-
ակնկալութեամբ է կործանումն:

1. Վ. լուծանէ:

«Փախեան և ոչ տեսին բարի»: Զմարդկանէս
ասէ, կամ զիրաց մարդկան՝ որ ոչ ինչ ունի յին֊
քեան զարդարև բարեացն, վասն զի յապականու֊
529 թեան կաւոյս վարի, և առժամանակեան կեանքս
ոչ ինչ ընդհատ են քան զփախչողս: Քանզի զայս
իսկ ասէ և Ամովս մարգարէ, իբրև յԱստուծոյ դի֊
մաց մեղադրելով զնոսա. «Որք վստահացեալ էին ի
կեանս աշխարհիս, այսպէս եղիցի զոր խորհեցանն
և ոչ իբրև թէ փախեան»: Բարիոք իսկ և Յովբ
զյանկարծակի ապականութիւնս ողբացաւ:

«Եւ կամ թէ իցեն նաւաց հետք ճանապարհի,
և կամ արծուոյ թռուցելոյ, որ խնդրիցէ զկերա֊
կուր»: Քանզի որպէս ծով ոչ ունի զհետս կարկու֊
րայից, և ոչ օդք զարծուոյ՝ որ խնդրիցէ զկերա֊
կուր, որպէս ոչ երևին հետք նոցա, դոյնպէս և
լիութիւնք աշխարհիս յորժամ անցանեն՝ ոչ ունին
530 նշանս բարեկենդանութեանն, այլ ի մոռացումն ան֊
կաւ նա և որ ի նմանէն են: Այսոքիւք զամենայն
կենացս տկարութիւն և զանհաստատութիւն անցա֊
նեաց, և զմեզ խրատեաց՝ զի մի՛ հայեսցուք ի նա.
և դարձեալ յինքն դառնայ այսպէս ասելով:

«Եթէ ասեմ եթէ խօսեցայց՝ մոռանամ, զերեսս
ի վայր արկեալ՝ հեծեծեցից. չարժեալ եմ ամենայն
անդամովք իմովք, զի գիտեմ եթէ անարատ զիս ոչ
թողուցու»: Իսկ ուրեմն յամենայն կողմանց ահա֊
գին է դատաստանն Աստուծոյ. այլ և արդարոց թէ
արդարև նոյն ժամայն մոռացումն առնուն զոր խօ֊
սինն, զարհուրեալք ի դիմաց Աստուծոյ, յորժամ
դատիցին առ նմա. ուստի և «զերեսս արկեալ ի
վայր՝ հեծեմ», և ոգի առնուլ առաջի Աստուծոյ՝ ոչ
531 կարեմ: Եւ յահէ անտի երերեալ տատանիմ. վասն
զի թէպէտ բազում և մեծամեծ ճարտարութիւն զիւ֊
րեանց գիտեն, այլ սակայն ոչ ինչ է առ Աստուած
արդարութիւնն՝ որ յառաջագոյն ցուցաւ մեզ: Ուս֊
տի ասէ, զի անարատ զիս ոչ թողցես յանդիմանե֊
լով, զի ամենայն արդար՝ առ մարդիկ է արդար.

բայց յԱստուծոյ արդարութիւնն յաղթեալ է. երա-
նելի ամենեւին ոչ կարաց ելանել, յորժամ ի դա-
տաստան մտցէ ընդ անչափ Աստուծոյ արդարու-
թեանն. իսկ հրաժարեալ ի դատ մտանել ընդ Ա-
ստուծոյ՝ յիրաւի զայս ասացեալս ի վերայ էած։
«Որովհետեւ ամբարշտէի, ընդէ՞ր ոչ մեռայ։
Ընդունայն աշխատիմ, եթէ լուացայց ձիւամբ և
սրբեցայց ձեռօք սրբեցելովք. սաստկացեալ աղտով 532
ներկէր զիս, և զազրացոյց զիս պատմուճան իմ»։
Գիտեմ, ասէ, զի նուաղ եմ յԱստուծոյ յանբաւ
յարդարութենէն, բայց մարդկանս՝ արդար եմ ըստ
քոյում վկայութեան. բայց սոքա հայելով ի փոր-
ձանս՝ ամպարիշտ զիս համարին. զի եթէ ամպա-
րիշտ եմ ըստ սոցա կարծեացս, ընդէ՞ր ոչ մեռայ.
բայց այսչափ յերկարեալ ինձ ի փորձանսս և ի
մարտնչել այսչափ ժամանակս, և զերծանել ինձ ի
սգալոյս և յիմանալի մահուանէն, ոչ ամպարիշտ
ցուցանէր զՅոբ առանց իրիք երկմտութեան։ Բայց
սակայն և այսպէս ընդունայն աշխատիմ, յորժամ
կամիցիմ ընդդէմ արարչին մտանել ի դատաստան
և ի հակառակութիւն. թէպէտ և յայտնի սրբու- 533
թեամբ վարեցայց, մինչ զի և քան զձիւն սպիտակ
եղէց. թէպէտ կատարեալ արդարութեամբ ճգնեցայց՝
առաջի դնելով գործս սուրբս. քանզի զայս ակ-
նարկեն «ձեռքն»։ Թէպէտ իբրև աղտով ներկէր զիս՝
զոր արարին յանցանքն Ադամայ. ուստի և պատ-
մուճան սրբութեան և համարձակութեան զազրա-
ցոյց զիս, զոր Ադամ ի դրախտին զգեցեալ էր և
ոչ ամաչէր ի մերկութենէ ապականելի պատմուճա-
նացս. բայց ամաչեաց և պիտոյ եղև նմա հանդերձ՝
յորժամ յանցուցեալ զազրացոյց զպատմուճանն ա-
նապական։ Յայնմ յաղտոյ՝ ասէ Յոբ՝ եթէ եներկ
Աստուած զմարդ իսկ, յորմէ հետէ աղտեղեալք պա-
տուիրանազանցութեամբ՝ ընդ աղտեղութեամբ ան- 534
կեալ է ամենայն ազգ մարդկան։ Իսկ Աստուծոյ
մարդասիրելով, ոչ կամեցեալ իսպառ կորուսանել

զԱդամ, և ոչ զգոյութիւն հասարակաց ազգի մերոյ,
այլ տանջեալ զնախաստեղծն՝ հրամայեաց ազգիս յա֊
ռաջ գալ, ընդունելով զաւակ ի միմեանց։ Քանզի
եկն որ սրբեաց ի մէնջ զառաջին աղտն և մաքրեալ
եցոյց մեզ զԱդամ. զոր յայտնի եցոյց մեզ Յովբ
ըստ կարգի բանիս ազգեալ յաստուածային Ոգւոյն։
«Զի ոչ ես իբրև զիս մարդ՝ ընդ որում դատե֊
ցայց, եթէ հասարակ եկեսցուք ի դատաստան»։
Իսկ առաջի այլոյ մարդկան ցուցանէ Յովբ զիւր
535 զարդարութեանն համարձակութիւն, և առաջի Աս֊
տուծոյ ոչ իշխէ, վասն այսորիկ ասէ. եթէ «ոչ ես
մարդ իբրև զիս, եթէ տաց քեզ պատասխանի». ոչ
ձեռն արկեալ այսու բանիւք հայհոյեմ, այլ միայն
զայս ասեմ, եթէ կամիս դնել դատաստան հասա֊
րակ ընդ մեզ. զի յորժամ դատիցիմք ի քէն, հա֊
մարձակեսցուք տալ քեզ պատասխանի, միանգա֊
մայն հաւասարութեամբ. քանզի հաւասարութիւն
անդ լինի, որ հոգւովք հաւասար միմեանց իցեն։
Կամ լեր իբրև զմեզ մարդ, զի դատեսցես իբրև
զԱստուած, և դատեսցիս հասարակ ընդ մեզ, թէ֊
պէտ իբրև զբարերար՝ սակայն իբրև զմարդ. բայց
այս յայտնագոյն ցուցանին յետ այսորիկ։
536 «Իսկ յանկա՞րծ գոյր միջնորդ մեր, և որ յանդի֊
մանէր և ընտրէր ի մէջ երկոցունց»։ Տեսանե՞ս, զի
խնդրէ զգալուստ Քրիստոսի, և ի դէմս աղօթից
մարգարէանայ զփրկչին խորհրդոյ, և զմիջնորդէն
մերոյ կենացս. վասն որոյ և ասէ Պաւղոս. «Մի է
Աստուած. և մի է միջնորդ Աստուծոյ և մարդկան,
մարդն Յիսուս Քրիստոս». զի է՞ր եթէ նա արդէն
մարմնացեալ էր, և յանդիմանէր զայն յանդիմա֊
նութիւն՝ զոր Եսային ասէր. «Լուացարուք սրբեցա֊
րուք և ընկեցէք զչարիս ձեր յանձանց ձերոց ա֊
ռաջի աչաց իմոց. դադարեցէք ի չարեաց ձերոց,
ուսարուք զբարիս գործել. խնդրեցէք զիրաւունս,
փրկեցէք զզրկեալն, դատ արարէք որբոյն, և իրա֊
ւունս արարէք այրւոյն. և եկայք յանդիման լիցուք

*ասէ Տէր»։ Այլ ընդէ՞ր միջնորդ ասի Քրիստոս.* 537
*վասն զի զմարդոյ և զԱստուծոյ զկերպարանս ունի.*
*զի պարտ է միջնորդին որ կարիցէ զթշնամիս ի հաշ-*
*տութիւն ածել, առնուլ զդէմս երկոցունց, զի այն-*
*պէս կարէ միաբանել և հաշտեցուցանել։ Եւ վասն*
*զի ընդ Հօրն իւրում զմարդ կամի հաշտեցուցանել,*
*զի Աստուած է և Մարդ եղև, և այսպէս ունի ըզ-*
*կերպարանս երկոցունց։ Բայց ցուցանէ իսկ և մարդ-*
*կան, թէ զի՞նչ պարտ է առնել յորժամ դատիցին,*
*և զիա՞րդ զդատաւորն ունիցին սիրելի, և բարեմիտ և*
*չարչարակից ստանան զիրաւարարն. և վասն այսո-*
*րիկ հրամայէ լուանալ, յայտ է եթէ մկրտութեամբ*
*լուանալ, զի սրբեսցուք զաղտն առաջին, ուստի ա-*
*ռաջնոցն մերոց յանցանք եղեն առ Աստուած. իսկ* 538
*ընկենուլն զչարիս յանձանց, ուստի իւրաքանչիւր ոք*
*ի մէնջ յիւրոց դիմաց ցասոյց զԱստուած։ Այլ յա-*
*մենայն ի գործս բարիս հրամայէ ձեռնարկել, և*
*դատել իրաւամբք առ ամենեսին, վասն զի և մեր*
*ազգս այսուիկ յանցուցեալ էր առ Աստուած, և*
*վասն այնորիկ այրիք և որբք էաք յերկնաւոր Հօ-*
*րէն. և վասն այսորիկ հրամայէ մեզ դատաստան*
*առնել որբոց, և իրաւունս առնել այրեաց, զի փու-*
*թով ազատեսցուք յանիրաւութեանց, և համարձա-*
*կութիւն կալցուք առաջի դատաւորին. և որ լսէ ի*
*մէջ երկոցունց մեր և ընքեան, ոչ դատապարտեսցէ*
*զմեզ, այլ իրաւունս արասցէ մարդկան. զոր յիրա-*
*ւի փութայր Յովբ, որ զայս ամենայն կատարեալ*
*էր։ Եւ*[1] *զի՞նչ յաւելու։* 539
*«Ի բաց արասցէ յինէն զգաւազանն իւր, և ահ*
*նորա զիս մի՛ զարհուրեցուսցէ»։ Քանզի մարմնա-*
*ցեալ և իբրև զմեզ եղեալ, ոչ գաւազանաւ հարկա-*
*նէ զմեզ, և ոչ ահիւ, եթէ ի շնորհս նորա և (ի) հա-*
*ւատս ընթասցուք. որ և յարուցեալ ի մեռելոց՝ ա-*
*սէր ցկանայսն, «մի՛ երկնչիք». այլ և աշակերտացն*

1. *Աստի ցվերջ մատենիս այլ գրչութիւն։*

*երևելով, զդոյն բարբառ արձակեաց։ Ըստ այսմ մտաց եդ և Յովբ ի կարգի աստ, թէ*

*«Խօսեցայց և մի՛ երկեայց ի նմանէն»։ Վասն զի զերկիւղն նա դադարեցոյց ի մէնջ, և զսէր օրինադրեաց։ Զոր և Յովհաննէս աստուածաբան գրեաց, եթէ «Սէր կատարեալ զերկիւղ ի բաց մերժէ»։ Զոր և Յովբայ զայս կատարելով համարձակի ասել.*

*«Քանզի ոչ գիտեմ զանձին զանիրաւութիւն»։ Աշխատեալ անձամբ իմով, այսպէս՝ որպէս բարեկամքս նախատեն, մանաւանդ որպէս կարծէր թշնամին։ Վասն այսորիկ համարձակեցաւ մարտնչել ընդ իս փորձութեանց պատերազմաւ, չգիտացեալ եթէ ունիմ զառ ի յԱստուծոյ սէրն, որ յոյժ թեթևացուցանէ ինձ զծանրութիւն վշտաց իմոց։ Զայս ասացեալ, յիրաւի ցուցանէ հեծեծելով զհամարձակութիւն բանից իւրոց։*

*«Հեծեծելով թողից ի վերայ իմ զբանս իմ, և խօսեցայց անձամբ դառնացելով զբանս իմ ի նեղութեան իմում։ Եւ ասացից ցՏէր. մի՛ ուսուցաներ զիս ամպարշտել, և ընդէ՞ր այսպէս դատեցար զիս»։ Լուա՞ր, զի ոչ ընդունայն և ոչ հպարտութեամբ, այլ ի սաստկութենէ վշտաց ըմբռնեալ՝ զայս բարբառի. ուստի և հեծէ, և խօսի ի վերայ իւր և նուաղէ դառնութեամբ անձին, յայտ է թէ տրտմութեամբ ըմբռնեալ. և ասէ ցՏէր. «Մի՛ ուսուցաներ զիս ամպարշտել». և թողցես այլոց տեսանել զմեծութիւն վշտաց, և եղիցիմ ողբալի և ծաղր կատականաց։ Վասն այսորիկ ասէ՝ թէ անիրաւապէս դատեցար զիս, այսինքն, եթէ հրամայեցեր ինձ լինել կոխան դատողաց։*

*«Կամ բարւո՞ք թուիցի քեզ՝ թէ ամպարշտեցից. զի մերժեցեր զգործս ձեռաց քոց, և ի խորհուրդս ամպարշտաց հայեցար»։ Զիա՞րդ և կամ վասն է՞ր ասաց զԱստուծոյ, եթէ ի խորհուրդս ամպարշտաց հայեցար. այլ թերևս վասն այսր, զի հաւանեցաւ բանսարկուին, զայս ասելով. «Մի՛ թէ ձրի՞ պաշտէր*

Յովբ զՏէր». կամ զիա՞րդ ասէ զնմանէն, եթէ «Մեր-
ժեցեր զգործս ձեռաց քոց». այլ թերևս վասն այսր, 541
թէ ընդէ՞ր մատնեցեր թշնամւոյն տանջել զստեղ-
ծուած քո. և վասն այսորիկ ասէ. «Կամ թէ բա-
րւո՞ք թուիցի քեզ՝ զի ամպարշտեցից»: Վասն զի
յայս ածէ բանսարկուն զճգնողն, և վասն այսորիկ
խնդրեաց զնա յԱստուծոյ, զի ամպարիշտս ինչ
բարբառեսցի, կամ թէ անիրաւս գործեսցէ: Բայց
Յովբ զայս բանս կարի իմաստութեամբ բարբառե-
ցաւ, փութացուցանելով ածել ի վերայ ինքեան զօ-
գնութիւնն Աստուծոյ, զի մի՛ տկարացեալ ի փոր-
ձութեանցն՝ խնդութիւն եղիցի թշնամւոյն: Բայց
պարտ է զարմանալ և որ ի կարգիս կայ:

«Մի՛ եթէ որպէս հայի՞ այր՝ հայիցիս, կամ որ-
պէս տեսանէ՞ մարդ՝ տեսանիցես, կամ կեանք քո
մարդկօրէ՞ն իցեն, կամ թէ ամք քո իբրև զա՞ռն,
զի վերստին խնդրեցեր զանօրէնութիւն իմ և զմեղս
իմ քննեցեր. քանզի գիտես զի ոչ ամպարշտեցի»:
Քանզի այս է զօրութիւն բանիցս, զի ոչ է լաւ
անիրաւել առաջի քո, այդ յայտ է, բայց ընդէ՞ր
մատնեալ եմ թշնամւոյն, զի հարկաւորեսցէ ինձ
զայս. այլ ոչ զննել և ոչ քննել պարտ է քեզ ըզ-
Յովբ, եթէ իցէ այդպէս՝ որպէս ասէ թշնամին. 542
վասն զի զամենայն յառաջագոյն գիտես իբրև զԱս-
տուած. և ոչ իբրև զմարդ տեսանես, եթէ քննեսցես
զփորձ իւրացն առնուլ. և ոչ կեանս մարդկեղէնս ու-
նիս, և ոչ ամս և աւուրս իբրև զմարդ: Քանզի մարդ-
կան կեանքս ի վերայ երկրի են, իսկ դու ի բար-
ձանց հայիս. մեր աւուրքս ժամանակեանք են, բայց
դու յաւիտենական և յաւիտեանս գիտես. վասն այ-
սորիկ զամենայն յառաջագոյն գիտես: Իսկ զիա՞րդ
վերստին խնդրես զանօրէնութիւնս իմ, և քննես
զյանցանս իմ, զոր դու գիտես, թէ ոչ կայ յիս,
և դու իսկ վկայես ինձ. զի ոչ յայտնի և ոչ գաղ-
տնի ոչ ամպարշտեցի:

«Այլ ո՞վ է որ ի ձեռաց քոց հանիցէ»: Այսինքն,

եթէ սակայն և ի քէն վկայեալ եմ, այլ ոչ եմ բա֊
ւական ապրել յիմմէ արդարութենէս. և ոչ յորժամ
հարկանել զիս կամիցիս՝ կարացից ապրեցուցանել
զիս. քանզի ո՞վ է որ կարասցէ ի ձեռաց քոց հզօ֊
րաց ապրեցուցանել զիս. որ զաջու ձեռանէ կախեալ
կան ամենայն արարածք. որում փառք յաւիտեան։

## ԺԳ.

«Ձեռք քո արարին զիս և ստեղծին զիս, և ապա
շրջեցար հարեր զիս։ Յիշեա՝ զի կաւ ստեղծեր զիս,
և յերկիր միւսանգամ դարձուցանես զիս։ Կամ թէ
543 ո՞չ իբրև զկաթն կթեցեր զիս, և մածուցեր զիս իբ֊
րև զպանիր։ Մորթ և միս զգեցուցեր ինձ, ոսկերօք
և ջլօք հանար զիս։ Զկեանս և զողորմութիւն եդիր
ի վերայ իմ, այցելութիւն քո պահեաց զհոգի իմ։
Զայս ունելով ի քեզ[1], գիտեմ զի յամենայնի կարող
ես, և ոչ ինչ տկարանայ քեզ։ Թէ և մեղանչեմ՝
պահես զիս, և յանօրէնութենէ անպարտ ոչ թող֊
ցես զիս։ Եթէ ամպարշտեցից՝ վա՜յ է ինձ, և եթէ
արդարացայց՝ ոչ կարեմ հայել ի վեր, զի լի եմ
անարգանօք, որսացեալ եմ իբրև զառեւծ ի սպա֊
նումն։ Դարձեալ կրկնեալ չարաչար սատակես զիս,
նորոգելով ի վերայ իմ զհարուածս իմ։ Բարկու֊
թեամբ մեծաւ ձեռն արկեր յիս. և յարուցեր ի վե֊
րայ իմ փորձանս։ Ընդէ՞ր հաներ զիս յորովայնէ և
ոչ անդէն մեռայ, և ական չէր տեսեալ զիս, և իբ֊
րև զչեղեալ լինէի։ Ընդէ՞ր յարգանդէ ի գերեզման
ոչ գնացի, կամ թէ ո՞չ սակաւ իցէ ժամանակ կե֊
նաց իմոց։ Թո՛յլ արա ինձ սակաւիկ մի հանգչել,
մինչ չև երթեալ յերկիր՝ ուստի ոչ դառնայցեմ՝
յերկիր խաւարին և մթին, յերկիր խաւարին յա֊
ւիտենից. ուր ոչ գոյ լոյս, և ոչ տեսանել զկեանս
մարդկան»։

1. յՕր. ի քէն։

Քանզի ամենայն իսկ կեանքս մարդկան արդարև
փորձութիւն են. որ ընթանայ ընդ նա միտ դնելով՝ 544
ոչ երբեք ելանէ առանց շահի, այլ պահէ զոտս իւր
առողջ: Բայց ինքն հանդերձ պսակօք և յաղթութեան
նշանակօք ելանէ, որ զգաւազանն Աստուծոյ յա-
մենայն ինչ և ընդ ամենայն տեղիս առաջի տանիցի.
յորժամ ապաւինիցի յայն ձեռն՝ որոյ նաւահանգիստն
հաստատուն է, և աշտարակն անշարժ: Կամ թէ
ախտակից լինել բնութեամբ, որ ապրեցուցանել և
փրկել ինքեան է: Քանզի խնայէ զորս ստեղծ ի
կաւոյ, և բաժանեաց մի ըստ միոջէ յաչս և յա-
կանջս, ի ձեռս և յոտս և յամենայն անդամս մեր
որ են ըստ կարգի. զոր արարչական նախախնա-
մութեամբն իբրև փքովք փչեաց և արար բանա-
ւոր կենդանի, և արձան թագաւորական փառա-
ւոր և պատուական պատկեր կանգնեաց, և կերպա-
րանս ըստ նմանութեան արարչին որպէս կամեցաւ
և յօրինեաց: Զայս իւրաքանչիւր ումեք մեզ պարտ
է փրկել միշտ իսկ, բայց առաւել ևս ի փորձու-
թեան. և զայս բարբառելով առ Աստուած, որ ածէ
իսկ զնա առ ի յիշատակ արարչութեան մերոյ. զի
ոչ իսկ երբեք է մոռացեալ զիւր արարչութիւն, այլ 545
կամօք իսկ լսէ ի մէնջ յորժամ ասասցուք սրբու-
թեամբ վասն մեր. յորժամ իբրև զՅովբ բարեմտու-
թեամբ խոնարհութեամբ ասասցուք, եթէ «Ձեռք
քո արարին զիս և ստեղծին զիս, և ապա շրջեցար
հարեր զիս. յիշեա՛ զի կաւ ստեղծեր զիս, և յերկիր
միւսանգամ դարձուցանես զիս»: Եւ զամենայն պատ-
մութիւնս Ադամայ ցուցանէ այժմ Յովբ. և սակաւ
բանիւք ուսուցանէ մեզ՝ որչափ Մովսէս եցոյց մեզ
բազում բանիւք. և զնորա մարգարէութեանն յի-
շատակ՝ սա համառօտ բանիւք գրեաց: Բայց թէ
ասես եթէ ըստ ո՞ւմ օրինակի, զայս լուր:
«Ձեռք քո արարին զիս և ստեղծին զիս»: Քան-
զի ոչ միայն ստեղծին, այլ և արարին: Քանզի այ-
լոց հաստատութեանցս միատեսիլ և միատարազ է

արարչութիւնն, և ասացեալ արարչին՝ եթէ եղիցի
լոյս, և բանն գործ եղև։ Նոյնպէս հաստատեցաւ և
մեծ և ամենապայծառ հաստատութիւնն, դոյնպէս և
երկրիս բոլորութիւն, և գոգք ծովու, և բոյսք ա֊
մենայն բանջարոց, և ծառք բազմատունկք և նշոյլք
546 լուսաւորաց, և բազմութիւնք անասնոց և ամենայն
թռչնոց, և ազգի ազգի թռչնոց, և ազգի ազգի ձը֊
կանց։ Բայց մարդն ոչ այսպէս. այլ նախ կրկին
սահմանէ. ոչ եթէ պէտք ինչ էին սահմանելոյ կամ
խորհելոյ, այլ զի և այսու ևս առաւել պատուել
կամեցաւ. ապա և զխորհուրդն յայտնեալ՝ ստեղծ
յերկրէ, և առեալ՝ արար մարմին։ Քանզի ասէ իսկ
Մովսէս, եթէ «Ստեղծ տէր Աստուած զմարդն հող
յերկրէ». ահաւասիկ յայտնի է՝ եթէ ձեռք քո ստեղ֊
ծին զիս. այլ զի՞նչ դարձեալ Մովսէս ի վերայ էած.
«Եւ փչեաց յերեսս նորա շունչ կենդանի»։ Իսկ
ասացեալ Յովբայ, թէ «Ձեռք քո ստեղծին զիս»,
ոչ ընդունայն ինչ էած ի վերայ բանիս, թէ «և ա֊
րարին զիս»։ Քանզի լուար, եթէ զիա՞րդ կրկին ա֊
րարչութիւն եղ Աստուած ի վերայ մեր. նախ զի
ստեղծ, և կրկին՝ զի փչեաց. նախ զարտաքին մարդս
մեր երևեցոյց, և ապա զներքին։ Եւ ոչ մինչև յայս
տեղի Յովբ իմաստնացաւ Հոգւով, այլ և որ ըստ
կարգին եղև Ադամայ՝ ցուցանէ իսկ և որ ի կար֊
գիս գայ։

«Եւ ապա շրջեցար հարեր զիս»։ Յորժամ ի պա֊
տուիրանէն դարձոյց զերեսս իւր ի պատուիրանա֊
զանցութիւն, յայնժամ շրջեալ զփափկութիւնն որ
ի դրախտին էառ՝ հարեր զիս. այս է «հարերն
547 զիս»։ Քանզի ոչ եթէ իբրև զդատաւոր հարեր, այլ
իբրև զհայր խրատեցեր։

«Յիշեա՛ զի կաւ ստեղծեր զիս, և յերկիր միւսան֊
գամ դարձուցանես զիս»։ Ըստ հրամանին՝ զոր ե֊
տուր՝ թէ «հող էիր և ի հող դարձջիր»։ «Եւ զի՞նչ
է այս. յիշեա՛ զարարչութիւնն ասէ, յիշեա՛ և զհը֊
րամանն. վասն այնր խնայեա, և վասն այսր ողոր֊

մեաց։ Մի՛ միայն զհասարակաց ծնունդն առնուր յուշ, այլ և զիւրաքանչիւր, զի ոչ եթէ քան զԱդամայ զարմանալի արարչութիւնն՝ կրտսերագոյն ինչ իցէ ի վերայ մեր իւրաքանչիւր արարչութեանս՝ որ եղեն նախախնամութիւնքս։ Որում միտ դիր զի՞րդ ամենայն իմաստութեամբ յանձնէ։

«Կամ թէ ո՞չ իբրև զկաթն կթեցեր զիս»։ Ցայտ է եթէ ի մարմնոյ ծնողիցն ժողովեցեր զծննդական սերմունսն, և մածուցեր զիս յարգանդի մօրն՝ իբրև զպանիր ի տիկս[1]։

«Մորթ և միս[2] զգեցուցեր ինձ»։ «Դու ինքն ետուր ինձ. քանզի ոչ էր բաւական հայրենի սերմն տալ մարմնոյս զգոյութիւն՝ առանց քոյոյ նախախնամութեան»։

«Ոսկերօք և ջլօք հանար զիս»։ Ընդ նմին ի
միջէն զխստութիւն և զկակղութիւն և զյօժ փափ- 548
կութիւն արարեր. զի յայտմանէ յայտ է՝ թէ ոչ ի
նիւթոյն, այլ ի քո զօրութենէ արարչութեանդ գոր-
ծէ մարմինս, զի գոյացուցանէ զնիւթն՝ և ի փո-
քունց անտի առնէ մեծամեծս։

«Զկեանս և զողորմութիւն եդիր ի վերայ իմ, այցելութիւն քո պահեաց զհոգի իմ»։ Զկեանս եդիր ի վերայ իմ, յորժամ զօրէնս քո միշտ պահեմ։ Իսկ «ողորմութիւն»՝ յորժամ յանցանեմ զօրինօք և ի ձեռն ապաշխարութեան զղջանամ։ Իսկ «այցելութիւն քո» ոչ մի անգամ, այլ բազում անգամ, որ այց արարեր մարդկան, «պահեաց զհոգի իմ». յայտ է, եթէ այն է՝ յորժամ ստեղծեալն զիս փչեցերն յիս՝ որ է շունչ հոգւոյս, և յետ այսորիկ հոգի իմաստութեան, արքայութեան և որդեգրութեան, հոգի՝ որ առնէ զերկրաւորս երկնաւոր։ Քանզի այս է հոգին՝ զոր յառաջագոյն շնչեալ վիշապին, և արար զհոգին իբրև անասնական։ Վկայէ

1. յՕր. ի տիպս, ուղղեցաք ըստ Վ.։
2. Վ. մազ։

իսկ և Դաւիթ, թէ «Մարդ ի պատուի էր և ոչ իմա-
ցաւ. հաւասարեաց անասնոց անմտից և նմանեաց
549 նոցա»։ Յետ այսորիկ արկանելով ընդ ականջս զչար
հոգին, փութացաւ կողոպտել զհոգին որ ի քէն։ Իսկ
քո այցելութիւնն, զոր սպառնացեալ էր Ադամայ՝
միանգամայն այց արարեր մարդկան ի ձեռն օրինաց
և մարգարէից, և ի ձեռն աւետարանական շնորհին
այց արարեալ՝ պահեաց զստացուածս որ յիս է։ Զոր
բազում անգամ յափշտակեաց թշնամին, այլ կորոյս
ակամայ. որովք յիրաւի իմաստասէր ճգնողն փա-
ռաբանելով էած ի վերայ։

«Զայս ունելով ի քեզ, գիտեմ զի յամենայնի
կարող ես, և ոչ ինչ տկարանայ քեզ»։ Զի այնպէս
արարչի զիա՞րդ ոչ իցէ ամենայն կարող. և կամ զի՞նչ
ամենևին անհնար իցէ։ Զի եթէ զկաւն պատկեր
Աստուծոյ արարեր, և զհողն բանաւոր կենդանի
կարգեցեր, և երկրաւորիս հաւասար երկնաւորացն
ետուր վայելել, և արդ առ իս սքանչելագործութեան
չիցե՞ս կարող. ուստի յոյժ և սաստիկ վայել է քեզ
ասել՝ որ ի կարգիս կայ։

«Թէ և մեղանչեմ՝ պահես զիս, և յանօրէնու-
թենէ անպարտ ոչ արարեր զիս»։ Թէ և յանցու-
550 ցեալ՝ պահես զիս, զի մի ի վերջին մեղաց զուբն
անգայց, և մի ամենևին մոլորեալ՝ ի բակէ քումմէ
տարեալ եղէց յորջս գայլոց. և յարդարագործու-
թեան ոչ անպարտ զիս առնես, այլ թողեր զիս պար-
տաւոր ընդ հայրենի անիծիւք, զի յիշելով զայն՝
տառապեցայց, և մի առաջնորդեալ ի հպարտութե-
նէ՝ լցեալ թունօք հոգիս ընդալցի զախտս, քանզի
գիտեմ որ ի կարգիս կայ։

«Եթէ ամպարշտեցից՝ վա՜յ է ինձ, և եթէ ար-
դարացայց՝ ոչ կարեմ հայել ի վեր, զի լի եմ ա-
նարգանօք»։ Զի «եթէ ամպարշտեցայց՝ վայ է ինձ»,
վասն զի ի հայրենի չարիսն ա՛յլ զիմ չարիս յաւե-
լում. «և եթէ արդարացայց՝ ոչ կարեմ հայել ի վեր»,
քանզի ոչ իսկ միանգամայն տան հայել ի վեր մար-

դոյ՝ յանցանքն Ադամայ, և ոչ պարծել ինքեամբ. և
վասն այսորիկ ի վերայ ածէ, եթէ «լի եմ անար-
գանօք»։ Որ կթէր զդրախտն՝ մշակ փշոց եղև. ուս-
տի և դիպի ինձ որ ի կարգիս կայ։
«Որսացեալ եմ իբրև զառեւծ ի սպանումն։ Դար-
ձեալ կրկնեալ չարաչար սատակես, նորոգես ի վե-
րայ իմ զհարուածս իմ»։ Առեւծ յիրաւի կոչի մար-
դըն, զի թագաւորական կենդանի է. և առաւել ևս
արդարն, վասն զի պահելով զկերպարանացն պա- 551
տիւ՝ ահագին է ընդդիմացողացն։ Վասն նորա իսկ
և ասացեալ է յառակս, թէ «Արդարն իբրև առեւծ
յանձնապաստան է». այլ եթէ խոնարհեսցի ի ցան-
կութիւնս՝ զոր մատուցանեն նմա թշնամիքն, նոյն-
ժամայն ի սպանումն որսացեալ լինի, և ծաղր լինի
որսողացն, որպէս առեւծն՝ որ ի նոցանէ պատրեալ
որսացաւ յայնժամ։ Դարձեալ Աստուծոյ յիրաւի ոչ
իբրև ընդ արդարոյ, այլ իբրև մեղաւորի ընդ այս-
պիսւոյն սկսանի ի կիր արկանել։ Քանզի այն իսկ
անհնարին կորուսանէ զնոսա՝ որովք զանցին զօրի-
նօք, և վասն այսորիկ համարի պարտական մահու.
և տարացոյց այսոցիկ եղիցի Դաւիթ. քանզի առեւծ
էր վասն արդարութեանն և թագաւորութեան, իսկ
յորժամ որսացեալն եղև ի մահ՝ ի ձեռն յանցանաց
շնութեանն և սպանութեան, առաքեաց առ նա Աս-
տուած զՆաթան, ունելով սրեալ զսուրն վրէժխըն-
դրութեան։ Այլ զայս առնէ Աստուած, ոչ միանգամ
և երկիցս, այլ բազում անգամ, որք մատնեալ լի-
նին, և վասն այսորիկ ասէ՝ թէ «Նորոգես ի վերայ
իմ զհարուածս»։ Քանզի թէ ոք յանցուցեալ՝ զար-
ժանի ապաշխարութիւնն առցէ ի ձեռն ի վերայ 552
յանցանացն, և յետոյ հեղգացեալ՝ դարձեալ մեղան-
չիցէ, նորոգէ անդրէն ի վերայ նորա զհարուածս,
յայտ է եթէ զքննութեան զդատաստանն։ Զոր օրի-
նակ եթէ հարկանիցէ ոք զոտն զքարի և ողջանայցէ,
և դարձեալ կրկնակի հարկանիցէ և նորոգիցէ ըզ-
վէրսն առաջինս, դոյնպէս յանցուցեալն և ապաշ-

խարեալն, յորժամ անդրէն մեղանչիցէ, նորոգէ ըզյանցանս իւր՝ որ միանգամ նմա թողեալ եղև։ Վասն որոյ և ասի, թէ որպէս և շուն դառնայ ի փսխած իւր, և խոզ թաւալի ի տղմի։ Այլ ուսիր, թէ զիա՞րդ Յովբ հանդերձ հասարակօք[1] և զիւրն դնէ առաջի Աստուծոյ. քանզի այնոքիւք կամի հասանել գթութեանցն։

«Բարկութեամբ մեծաւ ձեռն արկեր յիս, և ածեր ի վերայ իմ փորձանս»։ Մեծագոյն զբարկութիւնն անուանեաց, եթէ ոչինչ մեղուցեալ և մատնեցաւ թշնամւոյն. և նա բազում զանազան փորձանս մատուցեալ, իբրև արդար և աստուածազգեստ, գիտելով եթէ ոչ առանց թոյլ տալոյ Աստուծոյ զայս իշխէր թշնամին ածել ի վերայ արդարոյն։
553 Յիրաւի ասէ հեծելով, քանզի համարի եթէ թոյլ տալով Աստուծոյ եկն այս ամենայն ի վերայ նորա։

«Ընդէ՞ր հաներ զիս յորովայնէ, և ոչ անդէն մեռայ, և ական չէր տեսեալ զիս, և իբրև զչեղեալ լինէի. ընդէ՞ր յարգանդէ ի գերեզման ոչ վճարեցայ, կամ ո՞չ սակաւ իցէ ժամանակ կենաց իմոց»։ Այսինքն է, եթէ ստեղծանիլ ինձ ի քէն կարի փութալի է, և հաղորդակից լինել պատկերի քոյ, և լինել կենդանի այսպէս՝ որպէս և դու կամեցար ընդ լինել մարդոյ։ Բայց պատահել երկրիս կենաց՝ ուր այսչափ փորձութիւնք էին, ոչ ինչ էր ցանկութիւն. վասն այսորիկ մինչչև ելեալ էի յորովայնէ՝ կամէի հատուցանել զպարտիս մարդկեղէնս, և ոչ կամէի կենդանի տեսանիլ ի մարդկանէս. այլ հասարակ լինել չծնելոցն՝ մեռանելով յարգանդի մօր իմոյ։ Պարտ է միտ դնել թէ որչափ զգուշացաւ բանիւքս իւրովք Յովբ, և ոչ ասաց, եթէ ակն ոչ ետես զիս և չեղեալ լինէի, զի մի ոք կարծեսցէ զնա եթէ ամենևին ի չգոյութիւն լինել աղօթէր. այլ ասէ՝ թէ «իբրև զչեղեալ լինէի». այսինքն է, եթէ գոլ և լինել

1. Վ. ընդ հասարակացն։

կամէի, այլ յարգանդի մօր իմոյ վախճանել կամէի,
և մեռեալ ծնանել, այսուիկ հաւասար լինել չծնե֊
լոցն. վասն այսորիկ առընթեր եդ. եթէ «Ընդէ՞ր 554
յարգանդէ ի գերեզման ոչ վճարեցայ»: Զիա՞րդ որ
ոչն գոյր և ո՛չ լեալ էր, յարգանդէ ի գերեզման
յուղարկիւր. այլ այսու, զի ընդ ծնանելն միանգա֊
մայն վախճանէր ի կենաց աստի, և իբրև զչեղեալ
լինէր. այսինքն է, թէ մեռեալ, և այսպէս կամէր
նմանել չեղելոցն. և ընդ ոչ ինչ համարել զառըն֊
թերակայ կեանս: Եւ վասն այսորիկ ի վերայ ածէ,
թէ «Ո՞չ սակաւ իցէ ժամանակ կենաց իմոց»: Ցու֊
ցանէ՝ զի սակաւ են կեանք աշխարհիս այսորիկ, և
ոչ իւիք հաստատուն. և վասն այսորիկ ոչ ամենևին
ցանկութեան արժանի համարեցայ զսա. քանզի է
միանգամայն և անցաւոր և առժամանակեան յա֊
պականելի վայելչութիւնս: Բայց մեք և որ ըստ կար֊
գիս կայ միտ դիցուք:

«Թոյլ արա՛ ինձ սակաւիկ մի հանգչել, մինչչև
երթեալ եմ ուստի ոչ դառնայցեմ՝ յերկիր խաւա֊
րին և ի մթին, յերկիր խաւարին յաւիտենից. ուր
ոչ գոյ լոյս, և ոչ տեսանել զկեանս մարդկան»: Ոչ
ընդունայն խնդրէ արդարն զառ ի փորձութեանցն
հանգիստ, այլ զի մի՛ գայթագղեսցին բազումք տե֊
սանելով դադարեալ զկեանս նորա փորձութեամբք
և տրտմութեամբք, և վասն այսորիկ ասաց. «Մինչ 555
չև երթեա՛լ եմ, ասէ, ուստի ոչ ևս դարձայց», յայտ
է թէ ի մարդկեղէն կեանս: Քանզի թէ այսր դառ֊
նայի և աստ առնուի զաշխատանաց իմոց զհատու֊
ցումն, ոչ այսչափ աշխատէի, և ոչ հրաժարէի մար֊
տընչել մինչև ի մահ ի փորձանացս: Վասն զի որ
աստ գիտէին զիմ զարդարութիւն, այսրէն դարձեալ
տեսանէին աստէն զի առեալ էր իմ զհատուցումն. բայց
այժմ տեսանելով ի փորձանս զիս մեռեալ, կարծեն
կամ չար գոլ զՅովբ, և կամ ոչինչ համարին օգուտ
յարդարութենէ: «Քանզի գնացից յերկիր խաւարին
և մթին, յերկիր խաւարին յաւիտենից. ուր ոչ գոյ

լոյս, և ոչ տեսանել զկեանս մարդկան»։ Զտեղի
զժոխոցն ասէ, ուր ոչ գոյ ծաղր և ոչ ուրախու-
թիւն, զանդրևոյթսն և զտապացուցիչս, ուր ոչ լու-
սոյ վայելչութիւն կայ, և ոչ տեսիլ առընթերակայ
կենացս. և պարտ է երկնչել մարդոյ վասն երթա-
լոյ ի տեղիսն յայնս. և յոյժ զարհուրել և դողալ,
և զմտաւ ածել՝ եթէ որչափ ոք ինչ գանձեաց աստ,
անդ զայն ոչ կարասցէ առնուլ. և ոչ ընկալցի զայն՝
որովք տրտմեցուցանէ զարարիչն իւր, և բարկացու-
ցանէ՝ որ երթալոցն է ի խաւարին տեղիսն, և ոչ
556 ևս յայս աշխարհ դառնալոց՝ որ միանգամ աստի հը-
րաժարէ. այլ կոչել և ձգել ի դատաստանս յահա-
գինս, որ են վասն գործոց և բանից և խորհրդոց,
զոմանս յամօթն յաւիտենից, և զոմանս ի կեանսն
յաւիտենից. որպէս ասաց Դանիէլ՝ որ յարուցանէ
առ ի թաղմանէ երկրիս, մանաւանդ որ ի Դանիէլն
ազդեաց և ետ նմա յառաջագիտութիւն վասն յա-
պա լինելոցն։ Նմա փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն
սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից.
ամէն։

## ԺԴ

Կրկնեալ անդրէն Սովփարայ Մինեցւոյ ասէ. «Որ չատ խօսի՝ ապաքէն ըստ նմին և լսիցէ. կամ որ խօսողն իցէ՝ կարծիցէ՞ բանիւք արդարանալ։ Օրհնեալ է ծնունդ կանանց սակաւակեաց։ Մի՛ զբազում բանիւք անգանիր, զի ոչ գոյ որ տացէ քեզ պատասխանի։ Մի՛ ասեր թէ սուրբ եմ գործովք և անարատ առաջի Տեառն եղէ։ Այլ եթէ զիա՞րդ Տէր խօսեսցի ընդ քեզ, և բացցէ զշրթունս իւր ընդ քեզ։ Ապա պատմեսցէ քեզ (զ)զօրութիւն իմաստութեան. զի կրկին եղիցի քան զքոյն, և ապա գիտասցես՝ թէ արժանի ըստ որոց մեղարն անց ընդ քեզ ի Տեառնէ։ Եթէ զհետս Տեառն գտանիցես,

*կամ ի վերջինսն հասանիցե՞ս զոր արար ամենակալն։
Բարձր են երկինք, և զի՞ գործեսցես. խոր են դը- 557
ժոխք և դու զի՞ խելամտեսցես. երկայն է չափ
երկրի, քան զլայնութիւն ծովու[1]։ Եւ եթէ տապա-
լեսցէ զամենայն, ո՞վ ասասցէ ցնա եթէ զի՞նչ գոր-
ծեցեր։ Ինքն գիտէ զգործս անօրինաց, տեսեալ
զանարժանս՝ ոչ արասցէ անտես։ Բայց մարդ ի (խօ-
սել) ընդ վայր զուղի բանիւք. այր կանանցածին
հանգոյն ցռոյ անապատականաց։ Իսկ եթէ դու սուրբ
եդիր զսիրտ քո, տարածեսցես առ նա զձեռս քո։
Ապա թէ իցէ ի ձեռին քոյ անօրէնութիւն, հեռի
արա զայն ի քէն, և անիրաւութիւն ի յարկի քում
մի՛ ագցի։ Եւ ապա ծագեսցեն երեսք քո իբրև ըզ-
ջուր յստակ. մերկասցես զաղտեղութիւն՝ և ոչ երկի-
ցես, և մոռասցիս զաշխատութիւն իբրև զալիս ան-
ցեալս՝ և ոչ զարհուրեսցիս։ Աղօթք քո իբրև զարու-
սեակ, ի մէջօրէի ծագեսցեն քեզ կեանք, վստահա-
ցեալ լինիցիս՝ զի կայ քեզ յոյս, ի հոգոց և ի տա-
տամնութենէ երևեսցի քեզ խաղաղութիւն։ Հան-
դարտեսցես՝ և ոչ ոք իցէ որ պատերազմեսցէ ընդ
քեզ։ Դարձցին բազումք և աղաչեսցեն զքեզ։ Փըր-
կութիւն պակասեաց ի նոցանէն, զի յոյսն նոցա
կորուստ է անձանց իւրեանց. աչք ամպարշտաց հա-
լեսցին»։*

*Անանց են յիշատակք մրցողաց, մեծավայելուչ են 558
փառք արդարոց, անթառամ են պսակք՝ որ վասն
բարեպաշտութեան ՝ճգնին. որչափ ժամանակք ան-
ցանեն նոյնչափ յաւելուն ցանկութիւնք առ ի նոսա,
ամք մաշին և վարք հաստատացելոց ոչ հնանան։ Աշ-
խարհս ծերանայ, բայց առաքինութիւնք սրբոցն ման-
կանան։ Որչափ ազգաց յազգս յիշի Յովբ, որչափ
շրջանակք տարեաց ընթանան մինչև ցայժմ՝ ի ժա-
մանակէ ճգնութեանցն նորա։ Իսկ ըստ նմանութեան
հաստատեալ նորոյ պատկերի ցուցանի պատմու-*

1. Ի *լուսանցսն՝ լայն է ծով։*

*թեամբք աստուածաշունչ գրոցս, և պատերազմեալ՝ յաղթող գտաւ և պսակեալ։ Եւ որք ընկրկէին զնա ընկրկեցան ի նմանէն. և փշրեաց զաղեղունս թըշնամւոյն, և ցրուեաց զնետս նորա, կապելով զձեռս նորա, որք զաղտնի մարտնչէին ընդ նորա իբրև ի բարձանց։ Որչափ լեզուք ընդ միոյն մարտեան, այլ ոչ կարացին արգելուլ զնա. որչափ նիզք մարտեան ընդ միում աշտարակին, բայց ոչ կարացին շարժել զհիմն աշտարակին. որչափ մուրճս մանրեաց մի վէմն. որչափ խռիւք եղեգանց լուցեալ, ոչ կա-*
559 *րացին շիջուցանել զմի ճրագն։ Մի եթէ չէ՞ր փայտատք բարկութեամբ լցեալ՝ բանք բարեկամաց նորա. այլ և նիզք էին ի ներքուստ՝ որ յանդգնութեամբ կամեցան շարժել զնա ի հաստատուն սրտէն. այլ եղեն եղէգն և խոտ՝ վասն բազմութեան ընդունայնութեան իւրեանց. այլ փայտատք փշրին և նիզքն խորտակին, և եղէգնն հրով պատեալ՝ ի փոշի դառնայ։ Իսկ մի զարհուրիր տեսանելով զնա լուցեալ, և մի պատրիր, քանզի այսպիսի են բանքն Սովփարայ Մինեցւոյ առ սքանչելին և քաջն և զօրավարն հաւատոց, և առ անկեղծաւոր և իմաստասէր մարգարէն, զոր ասեմ զՅովբայ, զի յանդգնելով իշխէին ասել. բայց այնմ միտ դիր, զի ըստ նմանութեան ուռանց ստէպ ստէպ միմեանց վերայ գային ի վերայ նորա լեզուօքն, որպէս կռանք որ գան ի վերայ ոսկւոյ, մինչդեռ կայ ի վերայ սալի։ Իսկ նա զհամբերութիւնն ի ձեռն առեալ պայծառագոյն լինի կռելովն։ Վասն այսորիկ Ոգին այսպէս գրէ վասն Սովփարայ։*

*«Կրկնեալ անդրէն Սովփարայ Մինացւոյ ասէ»։ Կրկնեալ. յայտ է՝ թէ և սա ի Յովբայ բանիցն*
560 *ձգեալ գողանայ, ուստի կամեցաւ բամբասանս ինչ իմանալ վասն նորա յայնցանէ՝ զոր բարբառեցաւ սուրբն և անարատ, և ասէ այսպէս։*

*«Որ շատ խօսի՝ ապաքէն ըստ նմին և լուիցէ»։ Իսկ ուրեմն դուք բազումս և ընդունայնս խօսիք,*

*դու զնա և նա զքեզ, ի միմեանց առնուք պատաս-
խանիս. կամիք զարհուրեցուցանել զնա՝ որ ի գործս
իւր վստահ է։ Իսկ ուրեմն ի ձեր վերայ պատշաճէ
որ ի կարգիս կայ։*

*«Կամ որ խօսօղն իցէ՝ կարծիցէ՞ բանիւք արդա-
րանալ»։ Քանզի դուք պերճս խօսիք և մոլորեալս
բարբառիք. և զՋատագովութիւնդ կեղծաւորելով,
կարծիս արդարութեան զանձամբ կամիք արկանել.
բայց որ Աստուծոյ ջատագովէ և՛ արդարոցն ջատա-
գովէ. քանզի են նորա որդիք և զօրականք և ճըգ-
նօղք. և ի բազում դիմաց որ ի սոսա լինի գովու-
թիւն՝ ի նա ելանէ։ Այլ զի՞նչ ի վերայ այսոցիկ
յաւել Սովփար Մինացի։*

*«Օրհնեալ է ծնունդ կանաց սակաւակեաց»։ Եւ
այդ քեզ ո՞ւստ է, զի պերճանաս ի վերայ այդր
իբրև ի քոյոյ, որ ոչ քո է։ Քանզի զայս Յովբ յա-
ռաջաբանսն իւր ասաց. այլ անգոսնես զբանս ճըգ- 561
նողին՝ իբրև զոչ բարիոք ասացեալ. բայց այժմ ոչ
յանդիմանես, այլ անգոսնես, և զարդարոյն ամբաս-
տանես, զոր բարիոքն ասաց, իբրև զոչ բարիոք ա-
սացելոյ. և վասն այսորիկ ի վերայ ածես։*

*«Մի՛ զբազում բանիւք անգանիր, զի ոչ գոյ որ
տացէ քեզ պատասխանի»։ Վասն ո՞յր, քանզի Յովբ
ի վերայ աղբի(ւ)սացն նստի. իսկ դուք ի վերայ թա-
գաւորական աթոռոց։ Նա լի ախտիւք է, և դուք
յառողջութեան։ Նա է քամահելի. և դուք ի պա-
տուի։ ԶՅովբ թողին բարեկամք, և լքին սպասա-
ւորք և ուրացան ազգայինք։ Իսկ դուք այսու ամե-
նայնիւ լի էք, և զուարճացեալ ունիք զվայելչու-
թիւն խօսոյս։ Իսկ ընդէ՞ր դատիք ընդ Յովբայ.
այլ թերևս տեղի տալով փախչիք յարդարութենէ։
Բայց Սովփարայ միտ դիր որչափ աճէր ի բարբա-
ջանս, մինչև ըստ կարգիս որպէս բամբասէ զնա.*

*«Մի՛ ասէր եթէ սուրբ եմ գործովք և անարատ
եղէ առաջի նորա. այլ թէ Տէր խօսեսցի ընդ քեզ
և բացցէ զշրթունս իւր ընդ քեզ, ապա պատմեսցէ*

քեզ զզօրութիւն իմաստութեան, զի կրկին եղիցի
562 քան զքոյն. և ապա գիտասցես՝ թէ արժանի ըստ
որոց մեղարն անց ընդ քեզ ի Տեառնէ»: Քանզի
Յովբ զայս յառաջագոյն իսկ ասաց, զի եթէ իցեմ
ամպարիշտ՝ ընդէ՞ր ոչ մեռայ: Իսկ զիա՞րդ սուրբ և
կամ անարատ ասէր զինքն, զի ոչ են այս բանք
Յովբայ, այլ Աստուծոյ. զի նա անարատ գործովք՝
անուանեաց զնա, և որոշեալ յամենայն իրաց չա-
րաց: Իսկ ուրեմն դուք զԱստուծոյ վկայութենէն
ամբաստանէք: Ո՞չ զայս ի Յովբայ ասելոյ լուայք.
«Եթէ զիա՞րդ եղիցի մարդ արդար առաջի Տեառն,
քանզի եթէ կամիցի դատել՝ ո՛չ լուիցէ նմա. զի մի՛
տացէ պատասխանի ի հազար բանէ և մի բան:
Քանզի իմաստուն է միօք հզօր և մեծ»: Իսկ ու-
րեմն կարի ճշմարտագոյնս յառաջագոյն խոստացաւ
Յովբ, եթէ ոչ կարեմ խօսել ընդ Աստուծոյ: Ոչ
եթէ կրկին զօրութեամբ և իմաստութեամբ իբրև
զինքն համարէր զնա, որպէս Սովփար փոքր ինչ
զԱստուծոյ զմտաւ ածելով ասէ: Այլ Յովբ գիտէր զի
քան զամենայն մարդիկ իմաստութեամբ և զօրու-
թեամբ անհամեմատ է ի բարձունս: Իսկ զի՞նչ և
այլ ուսաք ի Յովբայ ասելոյն: «Քանզի գիտեմ ե-
թէ ոչ անպարտ զիս թողուցուս. զի եթէ իցեմ ար-
դար՝ բերան իմ ամպարշտեսցի. և եթէ իցեմ անա-
563 րատ՝ կամակոր գտայց»: Իսկ ընդէ՞ր բնաւ նախա-
տելով ասէք. «Եւ ապա գիտասցես թէ ըստ արժանի
ըստ որոց մեղարն անց ընդ քեզ ի Տեառնէ»: Յոր-
ժամ արդարն թէպէտ և ոչ գիտելով զխիղճ մտաց՝
ակն ունելով դատաստանին Աստուծոյ յոյժ երկըն-
չէր, և իբրև զմեղաւոր զինքն ցուցանէր, զայն զաս-
տուածաշունչ բանն պահելով՝ եթէ արդարն յառաջ-
նում պատասխանւոյն ամբաստանէ զանձնէ: Բայց
զիա՞րդ կամէր Սովփար պատասխանել ընդ Յովբայ
ի նորին ասացելոցն, ցուցցէ մեզ մանաւանդ՝ որ ի
կարգիս կայ, քան ընդ նորա ասելն՝ «եթէ իցեն հետք
նաւաց ծովու, և կամ արծուոյ թռուցելոյ որ խըն-

դրիցէ զկերակուր». մի՛տ դիր զիա՞րդ նայն պատա֊
խանէր։

«Եթէ զհետս Տեառն գտանիցե՞ս, կամ ի վեր֊
ջինսն հասանիցե՞ս զոր արարն ամենակալն»։ Այս֊
ինքն՝ է, եթէ զհետ նաւի և զարծուոյ թռուցելոյ ոչ
կարասցես գտանել, որպէս յառաջագոյն խոստացար,
(ո՞) զանտեսութեանն Աստուծոյ զհետս գտցէ, կամ ո՞
լիցի այնմ հասու՝ զոր առնէ առ յապա զնախա֊
խնամութիւնսն։ Յետ այսորիկ իբրև զհպարտ՝ առա֊
կաւ յանդիմանել կամի զՑոփր։

«Բարձր են երկինք, և զի՞ գործեսցես. խոր են 564
դժոխք, և դու զի՞ խելամտեսցես. երկայն է չափ
երկրի՝ քան զլայնութիւն ծովու։ Եւ եթէ տապալեսցէ
և փչրեսցէ զամենայն, ո՞վ ասասցէ ցնա եթէ զի՞նչ
գործեցեր»։ Եւ զի՞նչ են դէմք բանիցս այսոցիկ,
զոր իբրև նախատելով ինձ ցուցանէ Սովփար զՅով֊
բայ, եթէ հանդերձ այլովք առաքինութեամբք և
զհեզութիւնն ևս կրեսցէ խոնարհութեամբ, և ոչ
կամօք վերագոյն քան զինքն ցուցանէ զնոսա որ ի
վերայ երկնի են։ Այլ վասն զի յոյժ ի բարձունս
էին և ոչ կարէր հասանել, փորձի խնդրել զխորա֊
գոյնս դժոխոց, և ձգտի քան զմեծութիւն երկրի և
զլայնութիւն ծովու՝ հպարտութեան մտօք, ոչ ածելով
զմտաւ, զի թէպէտ և այսմ ամենայնի հասու լինի֊
ցի, այլ յԱստուծոյ կարի նուազագոյն գտանի։ Զի
եթէ տապալեսցէ և կործանեսցէ զամենայն, այս֊
ինքն է՝ եթէ կամօք ամփոփեսցէ, ոչ ոք գտցի՝ որ
ընդդիմասցի նմա։ Զի եթէ ամենայն արարածք ի
ներքս ի սոսա են, զիա՞րդ ոք գտցի յայնցանէ՝ որ
ի սմա իցեն. ո՞ կարասցէ իրաւաբանել և կամ բա֊
րեխօսել՝ յորժամ ամենայն արարածք ապականես֊
ցին։ Եւ զայս ասել վասն Աստուծոյ բարիոք է. բայց 565
ոչ սուրբ մտօք ասաց Սովփար, այլ առ յԱստուած
փառաբանութեամբն՝ բամբասէ զարդարն. և այսպէս
յօրինէ և կարգէ զբանս։

«Ինքն գիտէ զգործս անօրինաց, տեսանելով զան֊

արժանս՝ ոչ արասցէ անտես»։ Եւ այս բարիոք է.
զի ոչ ինչ է զոր ոչ գիտէ արարիչն մեր։ Իսկ գիտե-
լով զգործս չարաց, թէպէտ և առ սակաւ ինչ երկայ-
նամտեսցէ նոցա, այլ ոչ ամենևին անտես արասցէ։
Այլ վասն է՞ր կամ առ ի՞նչ ասաց զայս, ի կարգի
աստ գտցուք։

«Բայց մարդ ի խօսել ընդ վայր զուգի բանիւք»։
Որ քանզի դեռ ևս աներևոյթ առնէ բամբասանօքս
եթէ զՅովբայ ասէ, իսկ բամբասիչն ոչ անյայտս
եթող, և վասն այսորիկ ի վերայ էած։

«Այր կանանցածին հանգոյն է ցռոյ անապատա-
կանի»։ Յայտնագոյն զՅովբայ առակէ ի ձեռն այ-
սոցիկ. քանզի ցռոյ անապատականի նմանեցոյց
զինքն բանիւքս այսոքիւք. «Զի նետք Տեառն հա-
րեալ են ի մարմինս իմ, որոց սրտմտութիւնն իւ-
րեանց ծծէ զարիւն իմ. յորժամ կամիմ խօսել
կոտեն զիս». և յետ այսորիկ առ ընթեր եդ, «Մի՛
եթէ ի զո՞ւր ինչ աղաղակիցէ էշ ի վայրի, բայց ե-
566 թէ զկերակուր խնդրիցէ»։ Բամբասէ Սովփար եթէ
ընդէ՞ր այր կանանցածին, այսինքն է՝ մարդ ի մար-
դոյ, զի ինքն ի ցիռ անապատական առակեաց
զինքն, և վասն այսորիկ ասէր եթէ ընդ վայր զու-
գի բանիւք։ Ընդունայն և զուր բանիւք բաջաղի.
քանզի պարտ էր, ասէ, մի՛ աւելիս գոչել, և մի՛
ստէպ ստէպ հեծել. զի մի՛ մարդ գոլով՝ ի ցիռ
քաղցեալ առակեսցի, այլ առնել զայն՝ որ ի կար-
գիս կայ։

«Իսկ եթէ դու սուրբ եդիր զսիրտ քո, տարա-
ծեսցես առ նա զձեռս քո։ Ապա եթէ իցէ ի ձեռին
քում անօրէնութիւն, հեռի արա զայն ի քէն, և ա-
նիրաւութիւն ի յարկս քո մի՛ ժողովեսցի»։ Այսինքն
է՝ եթէ պարտ է սրբել զմիտս, և հեռի առնել ըզ-
գործս անօրէնութեան, և ամենևին անիրաւութեան
յարկակից լինել ոչ հաւանել։ Յայնժամ տարածա-
նելով զձեռս իւր առ Աստուած, այսինքն է ձգտե-
լով՝ ընդունէիր զաղօթս ո՛չ անպտուղս, այլ աւասիկ
այսպիսի շահս առնլոց էիր։

*«Եւ ապա ծագեսցին երեսք քո իբրև զջուր յս֊
տակ, մերկասցես զաղտեղութիւն՝ և ոչ երկիցես, և
մոռասցիս զաշխատութիւն իբրև զալիս անցեալս՝
և ոչ զարհուրեսցիս։ Աղօթք քո իբրև զարուսեակ,* 567
*ի մէջօրէի ծագեսցեն քեզ կեանք. վստահացեալ
լինիցիս՝ զի կայ քեզ յոյս, ի հոգոց և ի տառամ֊
սութենէ երևեսցի քեզ խաղաղութիւն։ Հանգարտես֊
ցես՝ և ոչ ոք իցէ որ պատերազմեսցի ընդ քեզ։
Դարձցին բազումք և աղաչեսցեն զքեզ»։ Եթէ սուրբ
սրտիւ զաղօթս մատուցեալ էր քո, և առանց իրիք
անարժան գործոց՝ որ հեծէիրդ զքէն առ Աստուած,
պատահելոց էիր այնմ. զի գալոց էին ի վերայ
տրտմութեանցդ քոց ուրախութիւն, և ընդ չարեացդ
ընդունէիր զբարիս, և ծագելոց էին երեսք քո իբ֊
րև զջուր յստակ։ Յայտ է թէ ընկալեալ զթագա֊
ւորական բարեկեցութիւն, և մերկանայիր զաղտ՝
զոր ներկին Թարախք վիրացդ, և ոչ ևս երկնչէիր
յայլ հիւանդութենէ. վասն զի Աստուած մերժեաց
ի քէն զհիւանդութիւնս, և մոռացումն զաշխատու֊
թեան առնուիր վասն եկելոցն ի վերայ քո հանգըս֊
տին, և ի փորձութեանց ոչ երկնչել, որպէս ոչ եր֊
կընչի յալեաց՝ որ կայ ի վերայ հաստատուն նաւա֊
հանգստի՝ որում ոչ կարէ վնասել ծովն։ Եւ զաղօթս
իբրև զարուսեակ ունել, որ մերժէ զգիշերն տան֊
ջանաց, և զկեանսն պայծառս ծագէ, և զլոյսն նո֊
րոգել իբրև ի մէջօրէի։ Եւ հասանէր յոյս բարեաց,* 568
*որ հեռի առնէր զհարկաւոր զյուսահատութիւնսն,
և զյառաջագոյն հասեալ հոգսդ դադարեցուցանէր։
Խաղաղութիւն և յայժ հանգիստ լինէր, յորժամ
կործանէին պատերազմունքն և ապականէր պատե֊
րազմիչն. և բազումք որ այժմ նախատեն զքեզ,
դարձեալ աղաչէին զքեզ, վասն զի տեսանէին զքեզ
յԱստուծոյ, եթէ որպէս փոխեաց զքեզ ի տրտմու֊
թենէն յուրախութիւն։ Եւ զայս առէր Սովփար
նմանեալ Բաղաամուն այնմ որ կոչեցաւ անիծանել
զԻսրայէլ, և օրհնութիւնս բարբառէր։ Սոյնպէս և*

սա կամեցաւ բամբասել զՅովբ, որ ընդ բամբասելն
յառաջագոյն ասէր, որ յետ սակաւ ժամու պատահե֊
լոց էր արդարոյն. ուստի և ոչ կարծեմ եթէ ըն֊
դունայնս ինչ գրեաց Հոգին Աստուծոյ զբանս նա֊
խատողացն։ Եւ զի ոչ միայն զհամբերութիւն ար֊
դարոյն ուսցուք, որ բաւական իսկ է ուսուցանել
զբազումս, այլ զի բազում անգամ և ի թշնա֊
մեացն պատահեցին օգուտք, յորժամ ակամայ ջա֊
տագով լիցին ճշմարտութեանն։ Բայց զի՞նչ վախ֊
ճան դնէ Սովփար բանիցն իւրոց։

«Աչք ամպարշտաց հալեսցին. փրկութիւն պակա֊
569 սեաց ի նոցանէն, զի յոյս նոցա կորուստ է ան֊
ձանց»։ Մի՛ եթէ փո՞քր ինչ չահից պատճառք են
բանքն Սովփարայ, և ո՞չ զդոյն խօսողն իսկ յանդի֊
մանէ, և զամենայն զչարսն ողբայ, և արդարոց ըզ֊
բարեացն յոյս առթէ։ Քանզի ամպարիշտ է որ ոչ
պաշտէ զԱստուած որպէս կամի պաշտել. քանզի
կամի փառաւորել ի ծառայից իւրոց՝ հանդերձ ըն֊
տրելովք իւրովք։ Ո՞չ Տէր ասէ, եթէ «Զփառաւո֊
րիչս իմ փառաւորեցից»։ Իսկ ուրեմն և Սով֊
փար ամպարիշտ էր, զի հայհոյէր զնա՝ զորոյ ըզ֊
փառսն Աստուած մեծապէս յարգէր։ Իսկ հալեա֊
ցին աչք նորա և այլոց որ նախատէին զՅովբ, յոր֊
ժամ տեսցեն զնա լիութեանն փառօք յոյժ նո֊
րոգեալ. և փրկութիւն ի նոցանէ այնչափ պակա֊
սեացէ, մինչ եթէ ոչ էր գտեալ օգնական զՅովբայ
բարեկամութիւնն, ոչ ապրէին ի ձեռանէ բարկու֊
թեանն Աստուծոյ։ Վասն զի որ ի նմանէն վկայե֊
ցաւ՝ ի սոցանէն թշնամանէր. և յայտ յայտմանէ է՝
ուստի սպառնալով Աստուած Եղիփասու զայս ասէր,
թէ «Մեղար դու և երկոքին բարեկամք քո. քանզի
ոչ ինչ ամենևին խօսեցայք առաջի իմ ճշմարտու֊
թեամբ՝ որպէս ծառայ իմ Յովբ»։ Ապա ի վերայ
ածէ. «Եթէ ոչ վասն դորա էր, կորուսանէի զձեզ.
վասն զի ոչ ինչ խօսեցայք ճշմարտութեամբ ա֊
570 ռաջի իմ զծառայէ իմմէ Յովբայ»։ Սոցա յոյս էր

կորուստ անձինն Յովբայ՝ որ պատուական Աստու֊
ծոյ էր. քանզի կարծեօք իւրեանց բաջաղէին, եթէ
կորիցէ նա. և ոչ ըստ կամացն Աստուծոյ խորհէին։
Եւ յոյս նոցա ընդդէմ կամաց իւրեանց դիպէր, և
ճգնօղն բարիոք մրցեալ՝ զանձն իւր ապրեցուցա֊
նէր. և կորնչէին նոքա որք անօրէնութեամբ զլե֊
զուս և զձեռս իւրեանց համբառնային ի վերայ նո֊
րա։ Այսց ամպարշտաց արդեօք աչք չիջանէին,
յորժամ տեսանէին զՅովբ զերծեալ ի վշտացն և
փոխեալ ի լիութիւն բարեաց։ Է՛ ինչ որ թերևս
վասն նախանձու, և է ինչ որ զղջանային, վասն զի
ընդունայնութեամբ թշնամանեցին զբարեպաշտու֊
թեան զբարիոք զօրականն, և ի բարեկամութենէ ի
թշնամութիւն դարձուցին զանձինս։ Այլ և ամենայն
ամբարշտաց աչք չիջցին ի հանդերձեալ դատաստա֊
նին, յորժամ տեսցեն զփառս արդարոցն, յորժամ
տեսցեն զնոսա եթէ եօթնպատիկ իբրև զարեգակն
ծագեսցեն, յորժամ կացցեն ընդ աջմէ Աստուծոյ,
և զայսպէս երանելի բարբառս լուիցեն, եթէ «Ե֊
կայք օրհնեալք Հօր իմոյ, և ժառանգեցէք զար֊ 571
քայութիւն, որ պատրաստեալ է ձեզ ի սկզբանէ
աշխարհի»։ Յայնժամ պակասեսցէ ի նոցանէն փըր֊
կութիւն, յորժամ լուիցեն՝ եթէ «Երթայք անի֊
ծեալք ի հուրն յաւիտենից, որ պատրաստեալ է
սատանայի և հրեշտակաց նորա»։ Եւ ընդէ՞ր է
«յոյս նոցա կորուստ անձանց». վասն զի վստահա֊
ցեալք էին ի բարիս աշխարհականս, և յուսացեալք
ի լիութիւն ցանկութեանցս այսոցիկ՝ որովք կուտի
ի վերայ նոցա ամենայն կորուստ անձանց։ Յորժամ
լուիցեն զայս սպառնալիս ամպարիշտքն՝ յայնժամ
ծաղկեսցեն բարեպաշտքն, և արդարք քաջալերես֊
ցին՝ թէպէտ և ստէպ ստէպ պատերազմեսցին, թէ֊
պէտ և սաստիկ փորձեսցին, թէպէտ և յանխրա֊
տիցն յուսահատեալք լքանիցին, տեսանելով զնա
պատեալ աշխարհական աշտարակ(օ)ք. և ի մեծութենէ
և ի փառաց և ի պարգևաց և յազգականաց և յա֊

մենայն բարեկենդանութեանց երկրիս զրկեալ. և
ասասցէ ցԱստուած՝ եթէ «Բարի է ինձ զի խոնարհ
572 արարեր զիս, որպէս ուսայց զարդարութիւնս» Հօր
և Որդւոյ և սուրբ Հոգւոյ. նմա փառք այժմ և միշտ
և յաւիտեանս յաւիտենից։

## ԺԵ

Կրկնեալ անդրէն Յովբայ ասէ. «Արդ և դո՞ւք
մարդիկ իցէք, կամ ընդ ձե՞զ վախճանիցի իմաս-
տութիւն։ Եւ իմ սիրտս իբրև զձերդ է։ Զի այր
արդար և անարատ եղև ի կատականս։ Ի ժամա-
նակի սահմանեալ պատրաստեցաւ, կործանել յօտա-
րէ՝ զտունս իւր եւես աւերեալս յանօրինաց։ Սա-
կայն մի՛ ոք որ չար իցէ՝ յուսասցի անպարտ լինել.
ամենայն որ միանգամ բարկացուցանեն զՏէր, եթէ
ո՞չ լինիցին նոցին խնդիրք։ Բայց աղէ հարց զչոր-
քոտանիս՝ եթէ ասասցեն քեզ, զթռչունս երկնից՝
թէ պատմեսցեն քեզ. ճառեա՛ երկրի, եթէ խեղա-
մուտ արասցէ զքեզ, և կամ պատմեսցեն քեզ ձը-
կունք ծովու։ Ո՞վ է որ ոչ գիտաց այսու ամենայ-
նիւ եթէ ձեռն Տեառն արար զայս։ Եւ եթէ ո՞չ ի
ձեռին նորա է շունչ ամենայն կենդանեաց և ոգի
ամենայն մարդոյ։ Զի ականջք զբանս ընտրեն, և
քիմք զկերակուրս ճաշակեն։ Բազում ժամանակաւ
իմաստութիւն, և ի բազում կեանս հանճար։ Ի
573 նմանէ է իմաստութիւն և զօրութիւն, նորա է խոր-
հուրդ և հանճար։ Եթէ կործանեսցէ՝ ո՞վ շինեսցէ,
և եթէ փակեսցէ ընդդէմ մարդկան՝ ո՞վ բանայցէ։
Եւ եթէ արգելցէ զջուր(ս)՝ ցամաքեցուցանէ զերկիր,
և եթէ թոյլ տացէ՝ կորոյս զնա կործանեալ զերկիր։
Ի նմանէ է զօրութիւն և ուժգնութիւն, նորա է
խրատ և հանճար։ Վարէ զխորհրդականս ի գերու-
թիւն, և զդատաւորս երկրի յիմարեցոյց։ Նստու-
ցանէ զթագաւորս յաթոռս, և ածէ զգօտիս ընդ

մէջ նոցա։ Առաքէ զքահանայս ի գերութիւն, և
զզօրաւորս երկրի կործանեաց։ Փոփոխէ զշրթունս
հաւատարմաց երկրի, և զհանճար ծերոց ծանեաւ։
Հեղու անարգութիւն ի վերայ իշխանաց, և զխո֊
նարհս բժշկեաց։ Յայտնէ զխորս խաւարի, և եհան
ի լոյս զստուերս մահու։ Մոլորեցուցանէ զազգս՝ և
կորուսանէ զնոսա, սփռէ զազգս՝ և առաջնորդէ նո֊
ցա։ Փոփոխէ զսիրտս իշխանաց ժողովրդեան եր֊
կրի, մոլորեցոյց զնոսա ի ճանապարհի զոր ոչ գի֊
տէին։ Շօշափեսցեն զխաւար և ոչ զլոյս, մոլորես֊
ցին իբրև զարբեալ։ Ահա զայս ամենայն ետես ակն 574
իմ, և լուաւ ունկն իմ։ Եւ գիտեմ ես՝ որչափ և
դուք խելամուտ էք, և ես ոչ անմտագոյն եմ քան
զձեզ։ Բայց սակայն ես ընդ Տեառն խօսեցայց,
յանդիմանեցայց առաջի նորա՝ եթէ կամեսցի։ Բայց
դուք ինձ բժիշկք մեղանչականք էք, և ողջացուցիչք
չարեաց ամենեքեան։ Եղիցի ձեզ համրանալ, և հա֊
մարեալ լիցի ձեզ յիմաստութիւն»։

Ձգունքս հասարակաց են, և ամենեցուն յօրի֊
նեալ կան ասպարէսքս, որք կամին ցանկութեամբ
ճգնել և ընթանալ վասն բարեպաշտութեան. ամե֊
նեցուն կայ առաջի պսակն, և նպատակն յայտնի
է. զամենեսեան կոչէ՝ որ կոչօղն է, և որ հանդի֊
սատեսն է՝ ամենեցուն առաջի դնէ զիւր բարիսն
առ ի կենդանութիւն։ Բայց ոչ ամենեքեան միապէս
ընթանամք ուժիւք, և ոչ միանմանս վաստակեմք
ձեռօք առ ի ճգնութիւնս. զի խոտորիմք ի ճանա֊
պարհէն, ոմանք յաջ և ոմանք յահեակ. և կարծե֊
լով հարկանել զթշնամիսն՝ ի վերայ մեր զայրացու֊
ցանեմք զձեռս բարեկամացն։ Յայտմանէ բազմաց
ճգնելով՝ սակաւք առնուն զպսակն[1]։ Եւ բազմաց 575
ընթացեալ՝ սակաւք կարեն հասանել ի կէտ նշա֊
նին. և բազմաց վառեալք ի պատերազմին՝ սակաւք
կարեն կանգնել զնշան յաղթութեանն. որք նման

1. յՕր. զնպատակն, ուղղեցաք ըստ Վ.։

*են Յովբայ, որք իմաստասիրութեամբն բանիւ գործոց վարին, որք զամենայն հնարագիտութիւն թըշնամւոյն մերժեն։ Եւ որք համարձակութեամբ խօսին ընդ այնոսիկ, որք բարձրաբանս խօսին, և զարդարութիւն արդարոց՝ իւրեանց նախատանօք չիջուցանեն։ Եւ Աստուծոյ ջատագովել կարծեն, որովք ընդրկեն զճգնօղն նորա, և լուծանեն զզօրականն նորա, և անգոսնեն զժառանգորդն նորա։ Նա է նման Յովբայ՝ որ համարձակութեամբ ասէ ցայնպիսիսն.*

*« Արդ և դո՞ւք մարդիկ իցէք, կամ ընդ ձե՞զ վախճանիցի իմաստութիւն »։ Բաւական են այս բանք և գյոյժ անմիտսն հաւանեցուցանել, և զանձինս քարեզէնս նորոգել առ ի յիշատակ բարեաց։ Իսկ քննելով՝ գիտասցուք զզօրութիւն նոցա։ Վասն այ-
սորիկ կրկնելով ասէ զՅովբայ ընդ բարեկամսն.
576 քանզի բարեկամքն վասն այսորիկ կրկնելով ասէին,
զի ընդրկել կամէին զՅովբ. իսկ Յովբ վասն այնո-
րիկ կրկնելով ասէր, զի զբանսարկուն ընդրկել կա-
մէր, և զնոցա ընդունայնութեան բանսն, որ իբրև
թէ առ Աստուած փառաբանութիւն առնէին, զայն
ուղղել կամէր. և զգեղեցիկ յօրինեալ բանս նորա
կարասցեն ցուցանել այժմ և որ ի կարգիս կայ։*

*« Արդ և դո՞ւք մարդիկ իցէք, կամ ընդ ձե՞զ վախճանեսցի իմաստութիւն »։ Սքանչելի յօրինուածս ասէ Յովբ, փոխանակ համառօտիւ ասել՝ եթէ չիցէք մարդիկ, հարցանէ զնոսա. և զի՞նչ հարցանէ։ «Արդ և դո՞ւք մարդիկ իցէք, կամ ընդ ձե՞զ վախճանեսցի իմաստութիւն»։ Այսինքն է՝ թէ արդեւք առողջ կացցէ՞ առ ձեզ բանաւորական պատիւն, եթէ գիտեցէ՞ք թէ որպիսի ինչ խրատս յօրինէ Աստուած վասն մեղաւորաց և կամ վասն արդարոց։ Քանզի մարդկան զայս է ճանաչել. զայս գիտէք, զի զարդարս վարժէ և մեղաւորաց երկայնամտէ։ Եւ վասն այսորիկ ոմանք ի լիութեան են, և ոմանք ի փորձութեան. զի ոմանց երկայնամտութիւնն եղիցի*

պատճառք առ ի զղջումն դարձի, իսկ ոմանց պա֊ 577
տերազմն եղիցի առիթ պսակին։ Զի թէ զայս գի֊
տէիք, ոչ ևս զարդարն դատապարտէիք՝ որ ի փոր֊
ձութեան, և ոչ զմեղաւորն արդար համարէիք՝ որ ի
լիութեան։ Այլ պարտ էր ըստ գործոցն դատել, ե֊
թէ զայս գիտէիք, և ոչ զայն պարտ էր ասել հան֊
դերձեալ դատաստանին։ Բայց դուք զայս ոչ արա֊
րէք, վասն որոյ ոչ էք դուք մարդիկ, և ոչ ընդ
ձեզ վախճանի իմաստութիւն. քանզի իմաստութիւն
աշխարհիս այսորիկ ոչ կարէ վախճանել ընդ մարդ֊
կան։ Վասն զի ո՞ւր են ընթացք աստեղաց, կամ
ո՞ւր են թռիչ հմայից, կամ ո՞ւր են պետք գէտից,
կամ ո՞ւր են ժամանակք խորհրդականաց, յորում է
արտաքին իմաստութիւն, մանաւանդ խօլութիւն և
սուտ յորջորջանք։ Ո՞ւր գտանիցին այնք յետ աստ
վախճանի։ Իսկ Աստուծոյ իմաստութիւնն ընդ ստա֊
ցողին երթայ. քանզի ըստ գիտութեանն Աստուծոյ
է և ըստ օրինացն Աստուծոյ. յայնժամ զերկոսին
անդ յստակապէս տեսանեն, զփառսն Աստուծոյ և
զզօրութիւն օրինացն, զոր տուեալ է նորա։

Քանզի «և իմ իսկ սիրտս իբրև զձեր է»։ Գի֊ 578
տեմ և ես, ասէ, նմանագոյնս ձեզ խորհել, մանա֊
ւանդ զի սիրտ մարդոյ ունիմ իբրև զձեզ. բայց դուք
զձերդ խաւարեցուցէք, իսկ ես զիմս պտղաբերեմ
օրինօք Աստուծոյ։ Վասն այսորիկ թէպէտ և սիրտ
ունիմ իբրև զձեզ, այլ տեսանեմ զայն զոր դուքն
ոչ կարէք տեսանել։ Զի եթէ ի ձէնջ անգոսնեցայց՝
ոչ ինչ է զարմանալի։

«Զի այր արդար և անարատ եղև ի կատականս»։ Ոչ եթէ ընդ ամենեցուն կատականօք, այլ յայտ է թէ ընդ մեղաւորաց. ոչ զգաստոց՝ այլ արբեցողաց. քանզի սովորութիւն է արբեցոց ծաղր առնել զզգաստասէրս։ Քանզի բազում անգամ մանկունք այպանեն զծերս. ծաղր առնէ և մեղաւորն զարդար, քանզի տեսանէ զնա զի արտասուօք և ցաւովք սերմանէ, և ոչ ևս զմտաւ ածէ զհանդերձեալ պտուղսն,

*և զայն զի յարտասուացն (ի) խնդութիւն փոխի, և ի ցաւոցն յանչափ մեծութիւն. և ոչ զի արդարոցն տրտմութիւնք առ ժամանակեայ են։*

*«Ի ժամանակ սահմանեալ պատրաստեցաւ, կոր-*
579 *ծանել յօտարէ՝ զտուն իւր եւեւ աւերեալս յանօ-*
*րինաց»։ Ժամանակ սահմանեալ. ո՞րչափ ինչ. որ-*
*չափ և Աստուած սահմանեաց, որ փոփոխէ զժամս*
*և զժամանակս ըստ կամաց իւրոց, փոխելով այսր*
*և անդր զիւրաքանչիւր ոք. որ գիտէ զչափս մարդ-*
*կան, որք են ի փորձութեան, եթէ որչափ ժամա-*
*նակս ոք կարենայ պատերազմել։ Նա սահմանեաց*
*զժամանակս կործանել յօտարաց. այսինքն է՝ թէ ի*
*մեղաւորացն չարչարիլ արդարոյ, զի յայտնի եղիցին*
*մեղաւորքն, եթէ զի՞նչ անցս անցուցանեն ընդ ար-*
*դարս, և զիա՞րդ վարին բարեկենդանութեամբ։ Իսկ*
*արդարքն զիա՞րդ համբերութեամբ կան, և զիարդ*
*ներեն աստի տրտմութեանցս։ Եւ ոչ ընդունայն ինչ*
*թողացուցանէ աւերել ամբարշտացն զտունս արդա-*
*րոց, և ոչ զարդարսն անտես առնէ. և ոչ ակն ածել*
*ինչ նոցա բաւականութեամբ՝ որպէս ոք կարծիցէ։*
*Քանզի ոչ ինչ է նոցա յայսմ աւերածոյ վնաս.*
*վասն զի առընթերակայ կենացս բնակութիւնք և*
*յարկք աշխարհիս այսորիկ ապականին, թէպէտ և*
*ոչ յափշտակիցին։ Իսկ ուրեմն զոր կարծեմք եթէ*
*վնասիմք՝ զայս յայտնագոյն շահիմք. վասն զի զհամ-*
580 *բերութեանն վարձս և զաշխատութեանն զհատու-*
*ցումն առնումք, և փոխանակ երկրային բնակու-*
*թեանս զերկնային օթեվանսն ժառանգեմք, ուր բը-*
*նակելոց եմք ընդ հրեշտակս և հրեշտակապետս. և*
*կատարի յայտնապէս որ ի Պաւղոսէ առ Կորնթա-*
*ցիսն գրեցաւ. «Քանզի գիտեմք եթէ երկրային*
*տաճար բնակութեանս մերոյ քակ(տ)ելոց է. զի շինած*
*յաւիտենական յԱստուծոյ ունիմք առանց ձեռագոր-*
*ծի յերկինս»։ Այլ զայս Պաւղոս ասէ. բայց և Յովբ*
*իսկ սքանչելի և յոյժ օգտակար բանիւք զայս ասէ։*

*«Սակայն մի՛ ոք որ չար իցէ՝ յուսասցի անպարտ*

*լինել»: Մի՛ ոք անարգեսցէ զԱստուծոյ զերկայն֊*
*մտութիւնն, և մի՛ արհամարհեսցէ զհանդերձեալ*
*դատաստանն, և մի՛ ոք կարծեսցէ զարդար դատա֊*
*ւորէն՝ եթէ առանց տանջանաց թողցէ զգործս ամ֊*
*պարշտաց: Եւ խրատեսցեն զքեզ Փարաւոնի իրքն,*
*և Նաբուգոդոնոսորայ, և Յեզաբելի, և սկայիցն, և*
*որդւոցն Կորխայ, և ժողովուրդն Դադանայ, և քա֊*
*ղաքացն Գոմորայ և Սոդոմայ, և ամենայն ազգք՝*
*որ այժմ դատին, զի զայնց ազգաց զտանջանս տե֊*
*սանելով որք անցինն, կոխան համարելով զերկայ֊* 581
*նամտութիւնն Աստուծոյ, հայելով ընդ նոսա՝ նմանս*
*նոցին ակնկալցուք, զորմէ սաստիկ զժտութիւն և*
*զանբան արարածոցս յիրաւի պատմէ արդարն:*
*«Բայց աղէ հարց զչորքոտանիս՝ եթէ ասիցեն*
*քեզ, զթռչունս երկնից՝ եթէ պատմիցեն քեզ. ճա֊*
*ռեա՛ երկրի, եթէ խելամուտ արասցէ զքեզ, կամ*
*պատմեսցեն քեզ ձկունք ծովու: Ո՞վ է որ ոչ գի֊*
*տաց այսու ամենայնիւ եթէ ձեռն Տեառն արար*
*զայս: Եւ եթէ ո՞չ ի ձեռին նորա իցէ շունչ ամե֊*
*նայն կենդանեաց և ոգիք ամենայն մարդոյ»: Հարց*
*ասէ և յանձայնսն, թերևս փոխանակ լեզուի՝ բնու֊*
*թեամբն և զգայութեամբն նշանակեսցեն քեզ՝ եթէ*
*զո՛ գիտեն իւրեանց արարիչ, կամ զո՞ խոստանան իւ֊*
*րեանց ստեղծիչ, կամ զո՞ ունին իւրեանց պատճառս*
*գոյացութեանն: Հա՛րց իսկ և զչորքոտանիս՝ եթէ*
*ո՞յր հրամանաւ խօսեցաւ էշն Բաղաամու: Նոյնպէս*
*հարց և զթռչունս՝ եթէ վասն է՞ր կերակրէր ագ֊*
*ռաւն զԵղիա: Հարց զերկիր՝ թէ ո՞յր հայելով ի նա՝*
*շարժի: Հարց զձկունս ծովու՝ ո՞վ հրամայեաց կի֊*
*տին կլանել զՅունան, և պահեաց զնա ի ցոյցս ա֊*
*մենեցունց, եթէ (ոչ) ձեռն Տեառն արար զայս ամե֊* 582
*նայն: «Եւ թէ ոչ ի ձեռին նորա է շունչ ամենայն*
*կենդանեաց». իսկ զի՞րդ աղաղակէին առ նա ա֊*
*մենայն ձագք ագռաւուց, զի՞րդ գազանքն յԱս֊*
*տուծոյ կերակուր խնդրէին, որպէս երգեաց դաւ֊*
*ձեալ Դաւիթ. «Կորիւնք առիւծուց մռնչելով յա֊*

փրչտակեն, և խնդրեն յԱստուծոյ զկերակուր իւ֊
րեանց»։ Իսկ եթէ նոքա այսպէս մտանեն ի հա֊
մար արարչին, որչափ ևս մեք, վասն որոց զնոսա
էած ի գոյացութիւն։ Եւ ո՞վ ոչ գիտէ, եթէ «ոգի
ամենայն մարդկան» զձեռանէ Աստուծոյ կախեալ
կայ, որ ի սկզբանէ իսկ փչեաց ի մեզ. և Դաւիթ
զայս մարգարէական երգովքն յայտնագոյն եցոյց.
«Հանես զոգի ի նոցանէն, պակասեն և ի հող իւ֊
րեանց դառնան»։ Իսկ եթէ նոքա գիտեն զդատաս֊
տան Աստուծոյ, որչափ ևս առաւելագոյն է մարդ֊
կան գիտութիւն քան զնոցա. վասն զի և բա֊
նաւորական գիտութիւն ունին, և ըստ նմանութեան
ծամելոյ և որոճալոյ, պարտ է մեզ զայս գիտել ըս֊
տուգութեամբ։ Եւ վասն այսորիկ ի վերայ էած։
«Զի ունկն զբանս քննէ, և քիմք զկերակուրս
ճաշակեն»։ Ոչ զմարմնոյս զունկն ասէ, այլ զոգւոյ.
583 քանզի երևելի ականջօքս մեր զհնչմունս բանից լը֊
սեմք. իսկ ներքին ականջօք՝ և զխորհրդոց և զբա֊
նից ունիմք զընտրութիւնս։ Եւ զոր օրինակ քիմք
զկերակուրս ճաշակեն, այսինքն է՝ փորձելով զնա
առ ի վայելչութիւն իւր, դոյնպէս և հոգւոց առ ի
յօգուտ իւր ունի զընտրութիւն։ Իսկ ապա ցուցա֊
նելով եթէ զի՞նչ որոշումն է ընդ Աստուած և ընդ
իմաստութիւնն, զոր մեք ի նմանէ առնումք, տես
զի՞նչ առընթեր եդ։
«Բազում ժամանակաւ իմաստութիւն և ի բա֊
զում կեանս հանճար»։ Վասն զի ուսմամբ հասանեմք
իմաստութեան, և ուսուցանելով են խրատք մարդ֊
կան։ Իսկ առ Աստուծոյ ո՛չ այսպէս, վասն զի ինքն
իսկ իմաստութիւն է, և պատմիչ խրատու։ Բայց
եթէ ըստ որո՞ւմ օրինակի է՝ ուսիր։
«Զի ի նմանէ է իմաստութիւն և զօրութիւն,
նորա է խորհուրդ և հանճար»։ Ոչ ինչ ամենևին
առանց վկայութեան Յովբ և ոչ կարօտս ջատագո֊
վութեան բարբառի. բայց որչափ ինչ ասէ՝ զարա֊
րածս վկայ ածէ. քանզի զԱստուծոյ զիմաստութիւնն

և զմեծ զօրութիւն ցուցանեն երևելի տարերցս գե-
ղեցկութիւնք։ «Զխրատ, ասէ, և զհանճար»։ Զի 584
ոչ ինչ է քակտելի զոր կամօքն կատարել կամի։ Ի
վերայ այսորիկ վայել էր Յովբայ իբրև ճշմարտի և
անարատի, և իբրև սուրբ ամանոյ իմաստասիրու-
թեան, նմանս յառաջագոյն բարբառեալ աւետարա-
նական շնորհացն։ «Ի նմանէ է, ասէ, զօրութիւն և
իմաստութիւն»։ Վասն զի Քրիստոս՝ Աստուծոյ ի-
մաստութիւն և զօրութիւն. որ է Հօր էակից Որդի.
և հաւատալ (զ)ի «Ի նմանէն է խորհուրդ և հանճար»,
ի նմանէն է Հոգին՝ յորմէ են այս ամենայն ազդ-
մունք։

«Եթէ կործանեսցէ՝ ո՞ շինեսցէ, և եթէ փակեսցէ ընդդէմ մարդկան՝ ո՞ բանայցէ»։ Պայծառ տարացոյցս ունիմք և զայսոցիկ. քանզի ո՞ կարասցէ շինել որ ի նմանէն կործանեցաւ Սոդոմ, կամ ո՞ զԵրուսաղէմ շինեսցէ, զոր նոյն աւերեաց, կամ ո՞ եբաց զդրախտն՝ զոր նա փակեաց ի նախաստեղծ մարդոյն։

«Եթէ արգելցէ զջուրս՝ ցամաքեցուցանէ զերկիր,
և եթէ թոյլ տացէ՝ կորոյս կործանեալ զերկիր»։
Աւասիկ և այսորիկ առընթեր է յանդիմանութիւնս.
զի զերկրորդն նշանակեաց մեզ ջրհեղեղն՝ որ եղև ի
ժամանակի սկայիցն։ Իսկ զառաջինն բազում ան-
գամ խրատք որ հասին ի վերայ երկրի ի բարկու- 585
թենէն Աստուծոյ, առաւել ևս այն՝ յորժամ Եղիա
փակեաց զերկինս։ Այլ զփառաբանութիւն Աստու-
ծոյ ի ձեռն առնուլ կամեցեալ աւասիկ դարձեալ
այսպիսիս սկսանի ասել։

«Ի նմանէ է զօրութիւն և ուժգնութիւն, նորա է խրատ և հանճար»։ Թէպէտ և ոք ունիցի զօրութիւն և ուժգնութիւն, և կամ հանճար և խրատ տացեալ է, այլ յԱստուծոյ առեալ է՝ որ տայ աննախանձ որք կամին առնուլ։ Բայց յայտ է, եթէ յորմէ կամի անդրէն դարձուցանէ. և ուսուցէ քեզ ի բազմաց մի տարացոյցն ՙՆաբուգոդոնոսորայ, որոյ

այնչափ ինչ էր զօրութիւն, մինչև Դանիէլ ասաց
ցնա. եթէ «Մեծացար, ուժգնացար, և զօրութիւն
մեծութեան քո եհաս մինչև յերկինս և տէրութիւն
քո մինչև ի ծագս երկրի»։ Այլ սակայն վասն զի
այսմ ամենայնիւ հպարտացեալ վերացաւ նա, ոչ
միայն ի զօրութենէն և ի թագաւորութենէն, այլ ի
խորհրդոյ և ի հանճարոյ անգաւ, և ի մարդկանէ
հալածեցաւ. և զխոտ իբրև զարջառ ճարակէր, գա-
զանապէս խորհէր և ոչ մարդկապէս։ Բայց վասն
որո՞յ պատահեցաւ նմա, զայն յայտնագոյնս ասաց
586 նմա Դանիէլ։ «Եւթն ժամանակ փոխեսցին ի վե-
րայ քո, մինչև ծանիցես թէ տիրէ բարձրեալն ի
վերայ թագաւորութեան մարդկան, և որում կամի
տացէ զնա»։ Իսկ յորժամ զայս ծանեաւ, հանդերձ
թագաւորութեամբն անդրէն առնու զմիտսն։ Իբրև
թէ գովութիւն իմն և փառաբանութիւն առ Աս-
տուած եղեալ ի նմանէն ցուցանէ։ Բայց մեք վերբս-
տին առցուք զբանս Յովբայ։ «Ի նմանէն է զօրութիւն
և ուժգնութիւն, նորա է խրատ և հանճար». այլ
առ ընթեր այսոցիկ վայել է դնել՝ և որ ի կարգիս
կայ։

«Վարէ զխորհրդականս ի գերութիւն, և զդատա-
ւորս երկրի յիմարեցոյց։ Նստուցանէ զթագաւորս
յաթոռս, և ածէ զգօտի ընդ մէջ նոցա։ Առաքէ
զքահանայս ի գերութիւն, և զզօրաւորս երկրի կոր-
ծանեաց։ Փոփոխէ զշրթունս հաւատարմաց, և ըզ-
հանճար ծերոց ծանեաւ։ Հեղու անարգութիւն ի
վերայ իշխանաց, և զխոնարհս բժշկեաց։ Յայտնէ
զխորս խաւարի, և եհան ի լոյս զստուերս մահու։
Մոլորեցուցանէ զազգս՝ և ցրուէ զնոսա, սփռէ զազ-
գըս՝ և առաջնորդէ նոցա։ Փոփոխէ զխորհուրդս իշ-
587 խանաց ժողովրդեան երկրի, մոլորեցոյց զնոսա ի
ճանապարհի զոր ոչ գիտէին։ Շօշափեսցեն զխաւար
և ոչ զլոյս, մոլորեսցին իբրև զարբեալ»։ Բայց զի
այս ամենայն գոյ ի մարդկան կեանս՝ և ի պայ-
ծառ ժամանակս և զանազան տեղիս լինի, զոր պարտ

*է համարել Աստուծոյ ձեռինն և իմաստութեան։ Եւ
զի միայն ըստ կամաց փոփոխէ զամենայն ինչ, և
զի բանից թարգմանութեան ոչ է կարօտ, այն յայտ-
նի է. և զի միանգամայն ըստ բանի բանի որ եղեն
նախախնամութիւնքս փրկչին ի վերայ երկրի, ի
ժողովուրդս հրէականս և հեթանոսականս, ըստ ա-
սացելոցս որ երևի՝ եթէ զայս Յովբ յառաջագոյն
մարգարէացաւ բարբառեալ Հոգւովն. և յիրաւի
փութացաւ բանս ցուցանել զայս։ Բայց թէ որչափ
ինչ է Քրիստոսի զօրութիւնն և ուժգնութիւն, և
խրատ և հանճար, զայն և ասել իսկ աւելի է։ Յոր-
ժամ տեսանեմք ի վերայ նախատանաց խաչին, զի
յաղթեաց ամենայն ազգիս թագաւորութեան։ Վասն
այսորիկ և յիրաւի ասացեալ է։*

*«Վարէ զխորհրդականս ի գերութիւն»։ Այսինքն
զխորհրդականս և զխորամանկս, զոր և Սիմաքոս
դոյնպէս «խորհրդականս» գրեաց, զնմանէն իսկ
զբանսարկուէն։ Վասն որոյ Պաւղոս ասէ՝ եթէ «Ոչ* 588
*անտեղեակք ինչ եմք խորհրդոցն նորա». և զպա-
տաւոր նորա զխորամանկ դևսն ի գերութիւն վա-
րեաց մարմնաւոր գալստեամբն։*

*«Եւ զդատաւորս երկրի յիմարեցոյց»։ Վկայէ
իսկ և Պիղատոս, որ այնչափ հիացաւ և սարսեաց
յարդարութենէ փրկչին, մինչև զձեռս լուացեալ ա-
սէր, եթէ «Անպարտ եմ ես յարենէ արդարոյս այ-
սորիկ»։*

*«Նա է որ նստուցանէ զթագաւորս ի վերայ ա-
թոռոց»։ Յայտ է եթէ զառաքեալս, որք առաքի-
նութեամբ թագաւորեցին և հրաշալի արդարութեամբ
վարեցան ի վերայ ամենեցուն։ Բայց յաթոռն յայ-
նոսիկ նստոյց զնոսա զորոց ինքն ասաց, թէ «Յոր-
ժամ եկեսցէ որդի մարդոյ փառօք իւրովք, նստջիք
և դուք յերկոտասան աթոռ դատել զերկոտասան
ազգ Իսրայելի»։*

*«Եւ գօտի ած ընդ մէջ նոցա». զայն՝ զոր յա-
ռաջագոյնն ինքն էած։ Քանզի վասն նորա ասէ Ե-*

*սայի. «Եւ եղիցի արդարութիւն ածեալ ընդ մէջ
իւր. և ճշմարտութեամբ օծեալ զկողս իւր»: Հրա-
մայեաց ածել գօտի և դասուն առաքելոց, այսպէս
ասելով ցնոսա, եթէ «Եղիցին գօտիք ձեր ածեալ
589 ընդ մէջ ձեր, և ճրագունք ձեր լուցեալ, և դուք
նման լինիջիք մարդկան որ ակն ունիցին տեառն իւ-
րեանց»:*

*«Եւ առաքէ զքահանայս ի գերութիւն, և զզօ-
րաւորս երկրի կործանեաց»: Յայտնապէս զՀրէից
քահանայս և զիշխանս: Բայց բանիցս ջատագովու-
թիւն չէ պիտոյ, քանզի տեսանեմք զնոցա քահա-
նայսն յամենայն երկրի իբրև զգերիս ցրուեալս, և
զբռնաւորս նոցա կործանեալ յանարգութիւն. այլ
զբռնաւորութիւն նոցա ի ծառայութիւն փոխեալ է,
վասն զի բռնաւորութիւն նոցա հաճեալ էր ընդ
բռնաւորութիւն աշխարհիս:*

*«Նա է որ փոփոխէ զշրթունս հաւատարմաց»,
յանթլփատութենէ և ի թլփատութենէ, հակառակե-
լով ընդ միմեանս օրինացն և վարդապետութեանց:
Փոփոխեաց տիրել շնորհին ի վերայ երկոցունց.
բայց թէ զի՞րդ կամ ըստ որո՞ւմ օրինակի, ցուցա-
նէ և որ ի կարգիս կայ:*

*«Եւ զհանճար ծերոց ծանեաւ»: Արդեօք զայնո-
ցի՞կ ասիցէ, որ հանդերձ առաքելովքն գրէին յեկե-
ղեցին Անտիոքացւոց. «Առաքեալքն և երիցունք եղ-
բարք՝ եղբարց մերոց որ յԱնտիոք և յԱսորիս և ի
Կիլիկիա որք են ի հեթանոսաց՝ խնդալ: Վասն զի
590 լուաք եթէ ոմանք ի ձէնջ խռովեցուցին զձեզ բա-
նիւք՝ զորս ոչ որոշեցաք: Բայց հաճոյ թուեցաւ մեզ
միաբանութեամբ ընտրել արս և առաքել առ ձեզ»:
Եւ ապա յետ սակաւ ժամանակի՝ այսոցիկ ի վերայ
էած, եթէ «Հաճոյ թուեցաւ սուրբ Հոգւոյն և մեզ,
մի՛ ինչ աւելի ծանրութիւնս դնել ի վերայ ձեր,
բայց միայն որ են հարկաւորքն, խորշել ի զոհելոյ
կռոց և ի հեղձուցիկ արենէ և ի պոռնկութենէ»:
Այս է յայտնապէս հանճար ծերոց, և ի ձեռն այ-*

առցիկ «փոփոխեաց զշրթունս հաւատարմաց». վասն զի կամեցաւ դադարեցուցանել զնոսա ի հակառակութենէ յօրինաց գրոյն։

«Հեղու զանարգութիւն ի վերայ իշխանաց նոցա», և ի վերայ այնոցիկ՝ վասն որոյ Դաւիթն ասէր. «Իշխանք ժողովեցան ի միասին վասն Տեառն և վասն օծելոյ նորա. խզեսցուք զկապանս նոցա, և ընկեսցուք ի մէնջ զլուծ նոցա»։

«Եւ զխոնարհս բժշկեաց»։ Թէպէտ զամենեսեան որք իցեն ի հեթանոսաց, թէպէտ և զմեղաւորս ասիցես. զի զերկոսին գտեալ ի ցաւս տառապանաց՝ բժշկեաց, առ ամենեսեան ասելով. «Եկայք առ իս աշխատեալք և ծանրաբեռինք և ես հանգուցից ըզձեզ»։ Այլ և զայս ևս առ ընթեր եդեալ, եթէ «Ոչ ինչ պիտոյ է բժիշկ ողջոց՝ այլ հիւանդաց»։

«Յայտնէ զխորս խաւարի»։ Զո՞ր խորս. այլ ըզ- 591
գաղտնիսն, որ ոչ յայտնի են խորհուրդք։ Վասն
այսորիկ ասէ ի խաւարի, վասն որոց ոչ է յայտ-
նեալ, իբրև ի խաւարի համարեալ են նոցա գաղտ-
նիքն։ Քանզի ինքն իսկ Քրիստոս նովին բանիւք
կնքեալ հաստատեաց զբանսն Յոբայ, և ասէ ցա-
ռաքեալսն, եթէ «Ոչ ինչ է գաղտնի՝ որ ոչ յայտ-
նեսցի, և ոչ ինչ է ծածուկ՝ որ ոչ ծանիցի»։ Որոց
և միտ դիր զի՞նչ առ ընթեր եդ. «Զոր ասեմ ձեզ
ի խաւարի՝ ասացէք զայն ի լոյս, և զոր լուայք
յունկանէ՝ քարոզեցէք ի վերայ տանեաց»։

«Եւ եհան ի լոյս զստուերս մահու»։ Ստուեր մահու մեղք են. զոր օրինակ ստուերն երևեցուցանէ զմարմինն ոյր ստուերն իցէ, դոյնպէս և մեղք նշանակեն զմահ, որոյ են խայթոցք իւր և ստացուածք։ Այլ այս ստուեր մահուս բազմացան, յայտ էր յառաջագոյն։ Իսկ Քրիստոս եկեալ որպէս զիւր խորհուրդսն յայտնեաց ազգիս մարդկան, և զարդարութիւնն երևեցոյց, դոյնպէս և զմեղս մերկացոյց և ոչ ետ նմա ծածկել զինքն։ Զի գիտելով զնորա անվայելչութիւնն, և զի ոգւոց է ապականիչ, փա-

խիցեն ի նմանէ ամենեքեան. և վասն այսորիկ վասն
ժողովրդեանն Հրէից ասէր. «Եթէ ոչ էր եկեալ իմ
592 և խօսեցեալ ընդ նոսա՝ ոչ գոյին նոցա յանցանք».
յայտ է թէ չգիտելով նոցա զզօրութիւն մեղաց.
ապա ի վերայ ածէ. «Բայց այժմ ոչ ինչ ունին
պատճառս վասն մեղաց», վասն զի զաղտեղութիւն
և զզազրահոտութիւն և զչարութիւն նորա ծանեան,
ըստ համեմատութեան արդարութեանն, որոյ գե֊
ղեցկութիւն նորա բազմաց անյայտ էր յառաջագոյն.
յիրաւի յոյժ վնասակարութիւն մեղացն ծանուցեալ
եղև։

«Մոլորեցուցանէ զազգս՝ և կորուսանէ զնոսա.
սփռէ զազգս՝ և առաջնորդէ նոցա»։ Զազգս մոլորե֊
ցուցանէ և կորուսանէ. ոչ ինքն մոլորեցուցանէ,
այլ թողացուցանէ առ ի մոլորել և անգանել ընդ
կորստեամբ, ի մոլորութենէն որք ոչ կամին դառնալ
ի հաւատս նորա։ Իսկ «սփռէ», այսինքն է, հար֊
թէ և առաջնորդէ, որք կամին ընթանալ ի լոյս քա֊
րոզութեան նորա։ Եւ ոչ ուրեք զանցանէ զարդա֊
րութեամբ, այլ որք ունին զանհաւատութիւն և որք
ունին զհաւատարմութիւն, իւրաքանչիւր ըստ նոցա֊
նէն վարի. և վասն այսորիկ Շմաւոն ձեռօքն ի վեր
առեալ զմանուկն տէրունական՝ ասէր. «Սա կայ ի
593 կանգնումն և ի գլորումն բազմաց»։

«Փոփոխէ զսիրտս իշխանաց ժողովրդեան եր֊
կրիս»։ Ժողովուրդ երկրիս զհրէականն պարտ է
իմանալ, վասն զի (յ)երկրաւորս սփարի. քանզի վասն
նոցին և Պաւղոս ասէ՝ եթէ «Որք զերկրաւորսն խոր֊
հին, սոցա իշխանքն էին քահանայքն և դպիրք և
փարիսեցիք»։ «Փոփոխեաց զսիրտս» նոցա, այսինքն
է՝ թէ շրջեաց, քանզի աստ փոխանակ շրջելոյն՝ զփո֊
փոխելն էառ։

Այլ և «Մոլորեցոյց զնոսա ի ճանապարհ(ի) զոր ոչ
գիտէին», յորժամ առեալ դաս մի զինուորաց և
կնքէին զգերեզմանն տէրունական, և ինքեանք իսկ
վասն Տեառն ասէին ցՊիղատոս. «Յիշեցաք զի մո֊

լորեցուցիչն այն ասէր՝ եթէ յետ երից աւուրց յառ֊
նեմ»։ Իսկ «մոլորեցան ի ճանապարհի զոր ոչ գի֊
տէին». քանզի զոր փութային առնել ի նենգութիւն
փառաց փրկչին, այս լինէր առ ի յաճախումն և
յայտնութիւն նորա. վասն զի զինուորքն էին վկայք
յարութեան փրկչին։ Քանզի որպէս ասէ Մատ֊
թէոս, եթէ «Եկեալք ի քաղաքն պատմեցին քա֊
հանայապետացն զամենայն որպէս զիարդ եղև».
յայտ է թէ զտէրունական գերեզմանէն։ Բայց նոքա 594
ոչ հաւատարմութեամբ հայեցան, թէպէտ և ի թըշ֊
նամեաց տեսանէին քարոզել զյարութիւն Քրիստո֊
սի. ուստի յիրաւի էած զանէծսն ի վերայ նոցա
Յովբ՝ որ ըստ կարգիս կայ։

«Շօշափեսցեն զխաւար և ոչ զլոյս. մոլորեսցին
իբրև զարբեալ»։ Վասն է՞ր. «զի առաւել սիրեցին
զխաւար քան զլոյս», որպէս զի Տէր իսկ ամբաս֊
տան զնոցանէն զտանի. ընդէ՞ր սիրեցին զխաւար
առաւել քան զլոյս, «վասն զի էին գործք նոցա չա֊
րութեամբ»։ Քանզի որք ունին զչարութեան գործս՝
պարտ է նոցա մոլորել իբրև զարբեալս։ Քանզի որ֊
պէս արբեալք ոչ գիտելով այլ ընդ այլոյ գործեն,
փոխանակ բարեաց՝ չարիս։ Քանզի զոր արդարն ա֊
նիծանէ՝ թէպէտ և տրտմելի թուի, այլ օգուտ բերէ
այնոցիկ՝ որոց մարգարէութեամբն անիծանէ. զոր
օրինակ և Աստուած թէպէտ և տանջիցէ զմեղա֊
ւորս, այլ առ ի յօգուտ նոցա լինի տանջանացն
տնտեսութիւն։ Այլ և զի՞նչ յարեաց Յովբ ի վերայ
բանիցս այսոցիկ։

«Ահա զայս ամենայն ետես ակն իմ, և լուաւ
ունկն իմ. և գիտեմ ես՝ որչափ և դուք խելամուտ
էք, և ես իսկ չեմ անմտագոյն քան զձեզ»։ Խո֊
նարհութեամբ բարբառի Յովբ զասացեալս, քանզի 595
յոյժ բարձրագոյնս իմանայ սա և ասէ քան զայն՝
որ բարեկամքն բարբառջէին։ Բայց սակայն և խո֊
նարհութեամբ միտ դիր որպէս առաւելագոյն զտա֊
նի՝ զոր մարգարէական ոգւովն առակէ։ Քանզի և

*ասէ. «զայս ամենայն ետես ակն իմ». յայտ է թէ մարգարէական տեսլեամբն։ «Եւ լուաւ ունկն իմ». զոր սուրբ գտեալ Աստուծոյ՝ առ ի լսել զխորհուրդս իւր վիճակեցոյց։ Եւ ապա զի՞նչ առ Նմին դնէ. «Եւ գիտեմ ես որչափ և դուք խելամուտ էք»։ Այսինքն է, եթէ ոչ միայն այնմ խելամուտ եմ, զոր մարգարէական օրէնքն ուսուցանեն, այլ և որչափ դուք գիտէք։ Քանզի որ զմեծագոյն գիտութիւնն ունի, զփո՞քր ոչ ունի և զչափաւորն։ Բայց խրատելով զհըպարտութիւնն և զմեզ ուսուցանելով, Նմանս յարեաց ի նոյն. «Զի և ես իսկ ոչ եմ անմտագոյն քան զձեզ»։ Բայց որչափ մեծ էր Յոբայ իմաստութիւնն քան զնոցա, բաւական են ցուցանել բանք նորին։ Բայց պարտ է մեզ հայել յայն՝ որ գայ զկնի ասացելոցն։*

*«Բայց սակայն ես ընդ Տեառն խօսեցայց, յան֊*
596 *դիմանեցայց առաջի Նորա՝ թէ կամեսցի»։ Այսինքն է, եթէ գիտեմ և ես զԱստուծոյ զառաւել մեծութիւն և զանչափ իմաստութիւն արարչին և զանհընարին զօրութիւն. այլ և զայս գիտելով, խօսեցայց ընդ Տեառն. քանզի գիտելով զզօրութիւն Նորա, գիտեմ և զարդարութիւն։ Իսկ վասն զի արդար է, տանի այնոցիկ որք ոչ ամբաստանն լինին՝ այլ խօսին ընդ Նմա։ Եւ այս ուսուցանէ զմարդիկս, զի թէպէտ և յոյժ իցեն արդարք, այլ պարտ է համբերել այնոցիկ՝ որք դատին ընդ Նոսա։ Վասն այսորիկ «յանդիմանեցայց առաջի Նորա՝ եթէ կամեցի»։ Քանզի եթէ ոչ կամեսցի՝ լռեցից. վասն զի գիտեմ զծառայական պատիւս, և հրամանաւ Տեառն խօսեցայց, և այնչափ համարձակեցայց՝ մինչև յանդիմանել փորձեցայց. վասն որոյ վհատեցի՝ ոչ ի զուր վհատեցի, և վասն որոյ հեծեցի՝ յիրաւի հեծեցի։ Եւ այս իսկ վայել է արդարոց։*

*«Բայց դուք ինձ բժիշկք մեղանչականք էք, և ողջացուցիչք չարեաց ամենեքեան»։ Բժիշկք վնասակարք՝ որք զհիւանդութիւնս անդրէն նորոգէք. և*

ողջացուցիչք չարեաց՝ որք աճեցուցանէք զվէրս քաղ-
ցրագոյն դեղովք. դոյնպէս և դուք կարծելով ջա- 597
տագովել Աստուծոյ, և քաղցր բանս բարբառեալ
բերանով, խաթարէք զախտս փորձեցելոյս, և ձեռն
տայք թշնամւոյն աճեցուցանելով զայտմունս վիրաց՝
որք ի նմանէ վիրաւորեցան. և ոչ բարիոք է ձեզ
այսու բանիւք համարձակել։

«Եղիցի ձեզ համրանալ, և համարեալ լիցի ձեզ
յիմաստութիւն»։ Քանզի որպէս լաւ է խօսել զբա-
րիս, դոյնպէս և լռել ի չարեաց. և ո՛չ միայն նա է
իմաստուն՝ որ խօսի զբարիս և խրատ տայ զպիտա-
նացուս և քարոզէ զօգտակարս ամենեցուն և զփրկ-
չականս, այլ և որ սանձեալ չբարբառի զընդդէմս
այսոցիկ, և որ ոչ գրգռեալ սրտիւ զխորհուրդս չարս
բանիւք բղխէ, և ոչ ի սպասաւորութիւն այնորիկ
զլեզու իւր մատնէ, այլ և այլոց չարաչար խօսելով՝
ինքն ոչ գրգռի բարբառել նման նոցին, և ոչ ջա-
տագովել կամի չարաց, և պատճառս ջատագովու-
թեան իմանալ չարեացս այսոցիկ ո՛չ առնու յանձն,
այլ պահէ իսկ զայն՝ զոր Դաւիթ սաղմոսիւք եր-
գեաց. «Դի՛ր տէր պահապան բերանոյ իմոյ, և 598
դուռն ամուր շրթանց իմոց, զի մի՛ խոտորեսցի սիրտ
իմ ի բանս չարութեան, պատճառել զպատճառս մե-
ղաց. և մի՛ եղէց կցորդ ընդ ընտրեալս նոցա»։ Ընդ
ո՞յր, բայց եթէ ընդ այնոցիկ՝ որք մեղօք[1] վա-
րին. «ընտրեալ» է սատանայ առ ի նուէր չարի, և
զօրականք նորա դևք, և որք միանգամայն ամբա-
ցան ի բանակի նորա։ Յորոց մեք ամենեքին հրա-
ժարեսցուք, թէպէտ և կարծեսցեն երբեք ջատագո-
վել Աստուծոյ. ոչ զի փառաւորեսցեն զԱստուած,
այլ զի զարդարութեան մշակն բամբասեսցեն, զի
մատնեսցեն զզօրականն բարեաց. և մի՛ ամենեքին կը-
ցորդ եղիցուք նոցա, և մի՛ ախորժեսցուք զմիաբա-
նութիւն ընդ նոսա։ Քանզի ի չարաց և ի բարեկա-

1. յՕր. մեղաւորք։

մութենէն պարտ է փախչել, և խոտորել ի գովու֊
թենէ նոցա։ Իսկ բարեաց և զյանդիմանութիւնսն
որ լինին ի նոսա՝ յանձն առնուլ, և բազմապատիւ
599 համարել զշարախօսութիւնսն՝ որ լինին զնոցանէն,
և փութալի համարել զամբաստանութիւնս զնոցա֊
նէն։ Քանզի ամենայն ինչ առ շահս և օգուտս նո֊
ցա լինի. և վաղվաղակի հասանեն գովութեանցն
Աստուծոյ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյ՝ որում
փառք և այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից.
ամէն։

## ԺԶ

«Լուարո՛ւք զյանդիմանութիւն բերանոյ իմոյ, և
զդատաստանի շրթանց իմոց անսացէք։ Ո՞չ ապաքէն
առաջի Տեառն խօսիցիք, և յանդիման նորա նեն֊
գութիւն բարբառիք։ Կամ թէ թանգուզիցէ՞ք[1]. դուք
ամենեքեան դատաւորք լերուք։ Զի բարիոք է եթէ
քննեսցէ զձեզ։ Զի եթէ զամենայն արարեալ յաւե֊
լուցուք ի նա, ոչ ինչ սակաւ կշտամբեսցէ զձեզ։
Եւ եթէ ի ծածուկ աչառիցիք, ո՞չ ապաքէն արհա֊
ւիրք նորա զարհուրեցուցանիցեն զձեզ, և ահ նորա
անզանիցի ի վերայ ձեր։ Եւ դիպիցին պերճութիւն֊
քըդ ձեր հանգոյն մոխրոյ, և մարմին կաւեղէն։
Կարկեցարուք՝ զի խօսեցայց ես, և հանգեայց ի
սրտմտութենէ։ Առեալ զմարմինս իմ յատամունս իմ,
և զոգի իմ եդից ի ձեռին իմում։ Եթէ արկցէ ըզ֊
ձեռն իւր զինև հզօրն, քանզի և սկսեալ իսկ է. ե֊
600 թէ ո՞չ խօսեցայց և յանդիմանեցայց առաջի նորա։
Եւ այն դիպեսցի ինձ ի փրկութիւն, քանզի ոչ
մտցէ առաջի նորա նենգութիւն։ Լուարուք, լուա֊
րուք բանից իմոց, զի պատմեցից ձեզ լուիլու։ Զի
ահաւասիկ մերձեալ եմ ի դատաստան իմ, և գի֊
տեմ զի արդար երևելոց եմ։ Զի ո՞վ է օսոխ իմ որ
պատասխանեսցէ ինձ. զի՞րդ կարկեցայց և պակա֊

1. յՕր. յանդուգն իցէք։

նեցայց։ Երկու ինչք պիտոյ են ինձ, և յայնժամ
յերեսաց քոց ոչ թագեայց։ Զձեռն քո ի բաց արա
յինէն, և ահ քո մի՛ զարհուրեցուսցէ զիս։ Եւ ապա
կոչեսցես զիս, և լուայց քեզ. և եթէ խօսեսցիս, և
ես տաց քեզ պատասխանի։ Քանի՞ ինչ են մեղք և
անօրէնութիւնք իմ, ուսո՛ ինձ՝ քանիո՞ն իցեն. ըն-
դէ՞ր թագուցանիցես յինէն։ Համարիցի՞ս զիս քեզ
'ոսոխ, կամ եթէ ի հողմաշարժ տերևո՞յ երկնչիցիս,
կամ իբրև հողմավա՞ր խոտոյ կայցես ինձ հակառակ։
Զի գրեցեր զինէն չարիս, և արկեր զինև զմեղս
մանկութեան։ Եդեր զոտն իմ ի պաշարման, պա-
հեցեր զամենայն զգործս իմ, և յարմատս ոտից ի-
մոց հասեր, որ իբրև զտիկ հնացեալ են, կամ թէ
իբրև զձորձ ցեցակեր։ Զի այր կանանցածին սակա-
ւակեաց է և լի բարկութեամբ։ Որ իբրև զծաղիկ 601
ծաղկեալ՝ թօթափեցաւ, խոյս ետ իբրև զստուեր, և
մի՛ կայցէ։ Ո՞չ ապաքէն և այնմ համար առնիցես,
և նմա արարեր մտանել ի դատաստան առաջի քո»։

Մեծ շնորհ ետ Աստուած մարդկան զբարեպաշ-
տութիւն, զոր ուրուք առեալ մեծապէս հարստանայ.
և ոչ ստացուածոց և ոչ ընչից կարօտանայ, և ոչ
են պէտք նմա աշխարհս, և ոչ ազգի և ոչ ծառայից
բազմութիւն, և ոչ մարմնոյ առողջութիւն. այլ ոչ
ինչ ունելով, իբրև թէ զամենայն ունիցի. արհա-
մարհեալ զերկիր և որ ինչ իրք ի նմա իցեն. այլ
մեծութիւն զԱստուած համարի, և աշխարհ իւր՝
զերկինս, և աւելի պէտս շահից ի տարերցս ընդունի
քան ի ծառայից, առեալ ի սպասաւորութիւն զտա-
րերսս։ Ոչ ինչ է պիտոյ նմա 'առողջութիւն մար-
մնոյ, քանզի ոչ ինչ իսկ է վստահ ի խոստս և ոչ հա-
ւաստայ ապականութեանս։ Գիտէ զի ընդունայն օ-
ծանէ զկաւս. թէպէտ և բազում անգամ օծցէ, այլ
յերկիր դարձցի, և ամենևին ի հող լուծցի, և ան-
դրէն դարձցի ի նոյն բնութիւն, մինչև անդրէն նորո-
գել կամեսցի զանդամս մեր՝ որ ստեղծն ի սկզբանէ։
Ուստի և Յովբ յետ մեծութեանն այնպէս խօսի՝ 602

որպէս եթէ իցէ ի մեծութեանն, և առ բարեկամսն
համարձակի՝ որպէս և ոչ ի թագաւորութեանն հա-
մարձակէր։ Ո՞չ միտ դնես, զի և այժմ այսպիսի
բարբառէր ճգնողն առ Սոփար.

«Լուարուք զյանդիմանութիւն բերանոյ իմոյ. և
դատաստանի շրթանց իմոց անսացէք»։ Մի արհա-
մարհէք ասէ զխօսօղս, եթէ մերկ երևի ձեզ ի թա-
գաւորական պատուէն։ Մի հայիք ի լեզուս Յովբայ,
այլ ընդ Աստուած որ շարժէն զնա, այլ յՈգին որ
ազդէ և յորդորէ զնա. և մի անգոսնէք զճարտա-
սանս՝ որ նստի ի վերայ աղբեւաց, քանզի զերկինս
յօրինէ՝ որ ի սմայս բարբառի։ «Լուարուք զյան-
դիմանութիւն բերանոյ իմոյ»։ Յանդիմանեմ՝ զի
խրատեցից, զի ողջախոհ արարից զյանդիմանեալն.
զի և նա ուղղել կարասցէ յանդիմանե(ա)լ և խրա-
տե(ա)լ զայլս։ «Եւ դատաստանի շրթանց իմոց ան-
սացէք»։ Զի ոչ ինչ յանդգնութեամբ առնեմ, այլ
սուրբ սրտիւ դատիմ. զի ոչ առանց խոտորելոյ և
խղճի մտաց է առ իս դատաստանս, իբրև թէ այս
ի նոսա ոչ գոյ։ Վասն այսորիկ ի վերայ էած։

«Ո՞չ ապաքէն առաջի Տեառն խօսիցիք, և յան-
608 դիման նորա նենգութիւն բարբառիք»։ Քանզի որ
զարդարն անգոսնէ՝ զընդդէմս Աստուծոյ խօսի. որ
զքաջն բամբասէ՝ տրտմեցուցանէ զթագաւորն. որ
զմարգարիտն մատնէ՝ վնասէ վաճառականին առանց
իրիք երկբայութեան։ Ուստի և եթէ ձեզ ուղիղ
թուեցին ձեր բանքդ, սակայն Աստուած ի նեն-
գութիւն, ի պատրանս և ի չարութիւն համարի,
վասն զի բամբասէք զքաջ նահատակս նորա, և ան-
գոսնէք զմեծութիւն նորա, և զստացուածս նորա
հայհոյէք։ Բայց ոչ ինչ շահ գտցէք ի չար հնարա-
գիտութեանցս այսոցիկ։

«Կամ թէ թանգուզիցէ՞ք դուք լինել դատաւոր»։
Այսինքն է, թէ ոչ ինչ եղիցի ձեզ օգուտ յասա-
ցելոցս, որովք ընդունայնս զնարատն բամբասէք։
Քանզի ոչ փախչիք ի դատաստանէն Աստուծոյ, և

ոչ տացէ ձեզ զերծանել ի հանդերձեալ դատաստա-
նացն՝ ամբաստանութիւնք արդարոց։ Վասն որոյ
դուք խսկ լերուք դատաւորք՝ եթէ կարասցէք ապրե-
ցուցանել զմեղաւորն ի դատաստանէ. վասն բարւոյն՝
բամբասանք, և վասն արդարոցն՝ ամբաստանու-
թիւնք։

«Զի բարիոք է եթէ քննեսցէ զձեզ»։ Քննեսցէ 604
հանդերձ գործովք և զբանս, հանդերձ լեզուաւ և
զսիրտս։ Ուստի միտ դիցէ զննելով զհետս ձեր, ե-
թէ ունկնդրութեամբ ունիք զօրէնս նորա, և եթէ
անունկնդրութեամբ՝ յայնժամ ծանիջիք զընտրու-
թիւն ձեր և զՅովբայ։ Եթէ դուք ընդունայն բամ-
բասէք զիս, և զձէնջ յիրաւի ամենայն արարածք
ամբաստանեն։ Այլ զի՞նչ այսոցիկ եդ առընթեր։ Իբ-
րև թէ առ հասարակ ի վերայ ամենայն կեղծաւո-
րաց կամեցաւ ածել զամբաստանութիւնն, և ի վե-
րայ այնոցիկ՝ որ լոկ միայն ձևովք կամէին հաճոյ
լինել Աստուծոյ և ոչ իրօք։

«Զի եթէ զամենայն արարեալ յաւելուցուք ի
նա, ոչ ինչ սակաւ կշտամբեսցէ զձեզ»։ Այսինքն է՝
եթէ ոչ բազմադիմի, մանաւանդ եթէ բազմատեսակ
խորամանկութիւնս պատրաստիցէք. ոչ որ Աստուծոյ
հաճոյ իցէ, այլ որչափ գայ ի սիրտս ձեր խօսիցիք,
առ ի զերծանել յԱստուծոյ դատաստանէն, թէպէտ
և այլոյ գործոյ հաւատեաւ քննիչք և փորձք լինի-
ցիք։ «Եւ զայս ամենայն առնելով յաւելուցուք ի
նա». յայտ է թէ յԱստուած. բայց ոչ ինչ այսու
արժանի փառաբանութեանց գործեալ, յանդիմա- 605
նեսցէ զձեզ Աստուած. և որ գործով արդարութիւն
է՝ բամբասէք, և բանիւք զանարժանս բարբառիք։
Բայց գիտելով հաստատութեամբ զգաղտնիս սրտի,
յոյժ յիրաւի առ նմին կարգեաց Յովբ։

«Եւ եթէ ի ծածուկ աչառիցիք, ո՞չ ապաքէն ար-
հաւիրք նորա զարհուրեցուցանեն զձեզ. և ահ նորա
անկանիցի ի վերայ ձեր»։ Ո՞յր. բայց եթէ նորա՝
որ զամենայն ինչ հաստատութեամբ գիտէ, և որում

*գաղտնիք սրտի յայտնի են։ Ո՞ւմ չնորհս առնէք,
իբրև գործակիցք Նոցա և խորհրդակիցք, և դաս-
վանօք և բամբասանօք ունիք զարդարս՝ որք յԱս-
տուծոյ վկայեցան. «Եւ գաղտնի աչառիք այնոցիկ»՝
ընդ որոց պատերազմ արդարոցն է. որք և յԱս-
տուած հայհոյել ոչ դադարեն, և կարծեն եթէ եր-
կիւղիւ փառաբանեն զնա՝ բայց ոչ միամտութեամբ,
զի մարտնչին ընդդէմ արարածոց Նորա։ Որպէս և
դասն դիւաց՝ որ ասէին ցՔրիստոս, եթէ «Որդի ես
Աստուծոյ», վասն աՀին տանջանաց որ եկեալ էին
ի վերայ Նոցա։ Բայց իբրև Հրամայեցաւ Նոցա մտա-
նել յերամակն խոզից, նոյն ժամայն քարավէժ ա-
606 բարեալ սատակեցին զնոսա, և յանդիմանեցան՝ եթէ
զիա՞րդ առ ամենայն արարածս ունին թշնամութիւն,
բայց առաւել ևս առ մարդն յերևելի արարածոցս.
Նոցա աչառիք դուք, որպէս և Նոքա Աստուծոյ։ Եւ
է ուրեք զի կարծեն փառաւորել զԱստուած, և գու-
մարին ի վերայ արարածոց Նորա։ Դոյնպէս և դուք
կերպարանիք ջատագովել Աստուծոյ. բամբասէք զայ-
նոսիկ՝ զորս Նա իւր տաճար ունի և բարեկամս գի-
տէ, և որդիս և ժառանգորդս Համարի։ Բայց սա-
կայն ոչ ինչ կարէք առնել առանց Նորա գիտու-
թեան։ Զի՞նչ Հնար է թագչել ի Նմանէն, որ աւա-
սիկ զայս ասէ. «Մի՛ եթէ թագչիցի՞ ինչ յինէն», և
դարձեալ, «Մերձ եմ ես, ասէ տէր, և ոչ Հեռի, և
իցէ՞ թէ թագիցէ ուրեք մարդ և ես ո՛չ տեսից։ Մի՛
եթէ ո՞չ լնուցում զերկինս և զերկիր, ասէ Տէր»։
Այս է, եթէ «արՀաւիրք Նորա զարՀուրեցուցեն
զձեզ». յայտ է՝ եթէ պղտորեսցէ և խառնակեսցէ, և
բազում տղմաւք յածեցուսցէ։ Եւ ըստ Նման ար-
Հաւրաց՝ որք Հարկանիցին գաւազանօք ի Նմանէ ա-
Հիւ Նորա, որ իբրև եկեսցէ ի վերայ ձեր, յայնժամ
ծանիջիք որ ի կարգիս կայ։
607 «Եւ եղիցին պերճութիւնքդ ձեր Հանգոյն մոխրոյ,
և մարմին կաւեղէն»։ Վասն զի և այժմ երկրային
է Հպարտութիւնդ, այլ սակայն յանդիմանի տանջա-*

նօք. մանաւանդ որ հպարտութեամբ մեծամեծս բար֊
բառին և անօրէնութեամբ խրոխտանան, և առանց
Աստուծոյ պերճանան։ Ցանկարծակի խոնարհեալ ի
պատուհասիցն Աստուծոյ՝ եղեցին հանգոյն մոխրոյ՝
որ կոխի յամենեցունց և ցրուի ընդ ամենայն տե֊
ղիս։ Սոցա և մարմինք կաւեղէնք են, քանզի դոյզն
ինչ երկրայինք են, և ոչ ինչ ամենևին ունին երկ֊
նայինս, վասն որոյ լռութեամբ յիրաւի դասէ զնոսա։
«Համբացարուք զի խօսեցայց ես, և հանգեայց ի
սրտմտութենէ, առեալ զմարմինս իմ յատամունս
իմ»։ Լաւ է երկրայնոյն լռել և երկնաւորին խօսել,
զի նոքա խօսելով ապականեն զլսօղսն, քանզի «ա֊
պականեն զբարս քաղցունս բանք չարք»։ Իսկ սա
որչափ և խօսիցի՝ առ ի յօգուտ լինի լսողաց, և
զարթուցանէ յօգուտս առաքինութեանց, եթէ «բանք
իմաստնոցն են իբրև զխթան եզին»։ Վասն որոյ ա֊
սէ՝ թէ «կարկեցարուք», ի վերայ ածէ՝ թէ «խօ֊
սեցայց»։ Վասն զի ոչ է պարտ ընդ քաղցր ջրոյն 608
խառնել զաղին և զյուրին։ Ոչ ընդունայն ինչ առ
ընթեր եդ՝ եթէ «ես», այլ զձգնողէն Աստուծոյ ա֊
սէ, զքաջ զօրականէն, որ համբերութեամբ տարաւ
ամենայն փորձութեանց թշնամւոյն, որ զամենայն
ստացուածս ի բաց ընկէց, և փոխանակ ամենայնի՝
համարեցաւ մեծութիւն զԱստուած։ Իսկ վասն է՞ր
հրամայէ նոցա լռել։ Զի դադարեսցէ, ասէ, ի սրտ֊
մտութենէ, և առանց բարկութեան խօսեսցի. զոր
և սրել հարկաւոր էր, տեսանելով զսուտ բանս նոցա՝
իբրև արդարութեամբ գունեալս։ Վասն որոյ այն֊
չափ նախանձէր և այնչափ զուարճանայր ի բար֊
կութիւն, և ախտանայր զոր Դաւիթն ախտացաւ.
«Ո՞չ զատելիս քո Տէր ատեցի, և ի վերայ թշնա֊
մեաց քոց մաշեցայ»։ Զիւր մարմինն առեալ ա֊
տամամբքն՝ իբրև թէ ծամել կամէր։ Քանզի սովո֊
րութիւն է այս լինել աստուածազգեստաց, յորժամ
տեսանեն զմեղաւորս, զի մեծամեծս խօսին. և լե֊
զուօք կամին ընգրկել զարդարս, մանաւանդ յոր֊

*ժամ զձեւս բարեկամաց ունիցին. և վկայեսցեն
այսմ Երեմիայի բանքն, եթէ «Եղև իբրև զհուր զի
609 վառի ի բորբոքել ոսկերօք իմովք, և պակուցեալ
եմ յամենայն կողմանց, և ոչ կարեմ տանել, զի
լուայ զպարսաւանս բազմաց, որ ժողովէին շուրջա-
նակի»։ Զի՞նչ ասէին կամ զի՞նչ գործէին, ըստ
կարգիս պատմեաց։ «Միաբանեալ ժողովեցարուք
զնովաւ ամենայն բարեկամք նորա, և պահեցէք ըղ-
կամս նորա. եթէ պատմեսցի, և զօրեսցուք նմա, և
առցուք ի նմանէ զվրէժխնդրութիւն մեր»։ Վասն
այսորիկ առնոյր աստամամբք զմարմինս իւր Յովբ,
վասն խղխայթեալ և ստեղծուածոց բանից նոցա՝
բարկութեամբ գրգռեալ ասէր, քանզի հանգիցէ։
Հրամայէ նոցա՝ եթէ լռեցէք, քանզի այս է «կար-
կեցարուքն», որպէս և Սիմաքոսի գրեալ գտանի։
Իսկ սա ընդ Աստուծոյ խօսել համարձակութեամբ
խոստանայ։*

*«Եւ զոգի իմ եդից ի ձեռին իմում։ Եթէ արկցէ
զձեռն իւր զինև հզօրն, քանզի և սկսեալ իսկ է.
եթէ ո՞չ խօսեցայց և յանդիմանեցայց առաջի նորա։
Եւ այն դիպեսցի ինձ ի փրկութիւն, քանզի ոչ մտցէ
610 առաջի նորա նենգութիւն»։ Այնչափ անգոյութեամբ
բարբառիմ, մինչև դնեմ զոգի իմ ի ձեռին իմում.
այսինքն է՝ ի ճգունս տամ և յահագին վիշտս մատ-
նեմ։ Բայց զայս առնեմ, զի թերևս զօրաւորն Աս-
տուած վասն առ ի նա համարձակութեան բանից՝
անգոսնեալ արկցէ զձեռն իւր զինև, որպէս դուք
կարծէք. և օգտեսցէ, վասն զի սկսաւ իսկ զայս, հա-
րեալ զամենայն մարմինս և տանջեալ վիրօք։ «Բայց
սակայն ես խօսեցայց և յանդիմանեցայց առաջի
նորա». և այս ոչ ի թշուառութիւն և ոչ ի վիշտս
ինչ լինի, որպէս դուք բաջաղիք, այլ ի փրկութիւն
և ի կեանս։ «Քանզի ոչ մտցէ առաջի նորա նեն-
գութիւն», զոր դուք խնդրէք. այլ կամ զանստեղծ
բանս և զճշմարտութեամբ համարձակութիւն ախոր-
ժէ, և ոչ ցաւչի ծառայից իւրոց մտանել ի դատաս-*

տան, յորժամ սուրբ սրտիւ իրաւունս ցուցանեն։
Այսու բանիւք հաստատեալ Յոբայ զինքն, և հա-
մարձակեալ պատմէ և որ ի կարգիս կայ։
«Լուարուք, լուարուք բանից իմոց, զի պատմե-
ցից ձեզ լու ի լու»։ Ոչ մի անգամ միայն, այլ և
երկիցս հրամայեաց լսել, զի միտ դնելով լուիցեն 611
բանիցն, զի հանդերձ արտաքին ականջօքն և զներ-
քինսն մատուցեն. զի մի միայն զբանսն լուիցեն,
այլ և զբանին զմիտսն քննեսցեն։ «Լուարուք, լուա-
րուք բանից իմոց, զի պատմեցից ձեզ լու ի լու»։
Թէպէտ և նախանձու հարկանիք, և ի լսոյ բանից
իմոց գայթագղիք, տկար ունելով զաչս սրտից ձե-
րոց, բայց ես ոչ ունիմ յանձին՝ նախանձել իմոց
բանիցս այսպէս լռոց։
«Զի ահաւասիկ ես մերձեալ եմ ի դատաստան
իմ»։ Իսկ ապա դադարեցուցանել պարտ է զլեզու
իւր ոսոխին, և միայն դատաւորին պարտ է խօսել.
ամփոփեսցէ զձեռս իւր ոսոխն, քանզի ճգունքն պա-
տահեցին ի դատաստանի, և հանդիսատեսին ժամա-
նակ է համարել զճգունս ծառայի իւրոյ. բայց հա-
մարեսցին իսկ և որ յառաջագոյն եղեն վասն նորա
վկայութիւնքն։ Բայց գիտելով Յոբայ զայս, սկը-
սանի այսոքիւք և որ ի կարգիս կայ։
«Եւ գիտեմ զի արդար երևելոց եմ»։ Վասն զի
կատարեցի զամենայն օրէնս, և զամենայն պատուի- 612
րանս ըստ կարգի կատարեցի, և ոչ վասն անգի-
տութեան մեղաց անփոյթ արարի, և զոր կամօքն
մեղանչէի՝ զայն աղօթիւք և արտասուօք սրբէի։
«Գիտեմ ես զի արդար երևելոց եմ»։ Թէպէտ և այժմ
կամի ծածկել թշնամին զարդարութիւն իմ, զրգռելով
զբարեկամսն ամբաստան զինէն, սակայն և այնպէս
երևեցայց արդար. յորժամ բացցի առագաստ առ
ընթերակայ կենացս, յորժամ փարատեսցէ ամպ
քաղաքավարութեան կենացս այսոցիկ։ Բայց և այժմ
իսկ երևեցայց արդար, յորժամ համբերութիւնս
մինչև ի վախճան հասցէ, և զքաջութիւն առ ի

*փորձանան՝ մինչ ի սպառ ցուցից։ Բայց որպիսի՞ ինչ
առ ընթեր այսոցիկ եդ։*

*«Զի ո՞վ է օսոխ իմ որ մտցէ ընդ իս ի դատաս-
տան. զիա՞րդ կարկեցայց և պակասեցայց»։ Եթէ
մարդ ոք խոստանայր մտանել ի դատաստան ընդ
Յովբայ, ոչ այնպէս կայր մինչև լռութիւն խնդրէի,
երկնչելով ի նմանէ ի դատաստանի։ Ոչ ումեք յազ-
613 գակցաց թոյլ տալ անարատն, ոչ յումեքէ երկու-
ցեալ էր արդարն և աստուածապաշտ՝ մտանել ի
դատաստան ընդ ցեղին իւրում, ոչ երկրորդ ինչ
յարդարոցն է հրաժարելն յամենայն իրաց չարաց,
այլ դատաստան ընդ Աստուծոյ է։ «Սակայն և այն-
պէս ոչ լռեցից, և ոչ նուաղեցից ի խօսելոյ»։ Բայց
առաւել յայնժամ ունիմ զվստահութիւն բանից, զի
Աստուած ոչ միայն արդարոց, այլ և մեղաւորաց
հրամայէ խօսել. զի իւր են այս բանք, որ ասացան
ի ձեռն Եսայեայ մարգարէի. «Ասա դու նախ զա-
նօրէնութիւնս քո, զի արդարասցիս». և դարձեալ
ասէ. «Եկայք յանդիմանեսցուք, ասէ Տէր, և եթէ
իցեն մեղքն ձեր իբրև զգոյն արմաւու, իբրև զձիւն
սպիտակ արարից, և եթէ իցեն իբրև զորդան կար-
միր, իբրև զասր սպիտակ արարից»։ Բայց թողով
զձեզ՝ զբանս առ ի նա դարձուցից։*

*«Երկու ինչ պիտոյ են ինձ, և յայնժամ յերե-
սաց քոց ոչ թագեայց»։ Եւ զո՞ր զերկուս խնդրէ
Յովբ յԱստուծոյ, որոց թէ պատահեսցէ՝ ասէ ոչ
թագեայց յերեսաց դատաւորին. բարիոք է մտա-
614 դիւրութեամբ ուսանել, քանզի գտցուք զնա իմաս-
տութեամբ լարբառեալ և զայս՝ որպէս և զայլն ա-
մենայն։*

*«Զձեռն քո ի բաց արա յինէն, և ահ քո մի
զարհուրեցուսցէ զիս. և ապա կոչեսցես և լուայց
քեզ. և եթէ խօսեսցիս, և ես տաց քեզ պատասխա-
նի»։ Զի եթէ հանդարտեցուսցես զերկուսս, և ըզ-
ցաւս դադարեցուսցես, մի զայրացուսցես զվէրսս և
յարուսցես զցաւս. զայն ձեռն ի բաց արասցես յի-*

նէն՝ որ հարկանէն և խրատէ, վասն որոյ Դաւիթ
ասէր. «Ի բաց արա՛ յինէն զտանջանս քո զի ի զօ-
րութենէ ձեռին քո պակասեցայ»։ «Եւ ահ քո մի՛
զարհուրեցուսցէ զիս»։ Զի դու անապական ես՝ և
ես ապականացու. դու տէր՝ և ես ծառայ, դու յա-
ւիտենական՝ և ես քան զխոտ տկարագոյն. այլ հը-
րամայեցեր խօսել առանց երկիւղի զոր գիտեմ, և
առանց իրիք սարսելոյ ասել՝ զոր կամիմ. այլ յոր-
ժամ դու կոչեցես, ես լուայց՝ իբրև զբարեկամ և
զծառայ, իբրև զպատրաստեալ ճգնօղ, իբրև զկազմ
զօրական։ Դու խօսեցիս, իսկ ես պատասխանի
տաց, ոչ իբրև ընդդիմաբանել իշխելով, այլ իբրև 615
իմաստնանալ և ուսանել կամելով ընդ ասելն և ընդ
լսել։ Այլ զի մի՛ կարծեսցի զայս հպարտութեամբ
խօսել, որ հանդերձ իւրովք առաքինութեամբքն և
ի խոնարհութեանն՝ ճգնեցաւ, յիրաւի այս բանք ի
կարգի կան։

«Քանի՞ ինչ են մեղք իմ և անօրէնութիւնք իմ.
ուսո՛ ինձ՝ քանիօ՞ն իցեն, ընդէ՞ր թագուցանիցես յի-
նէն»։ Քանզի եթէ ուսայց՝ յապաշխարութիւն ըն-
թացից, և յաղօթս ապաւինեցայց, և հասից ի փըր-
կութիւն, որով կարացից սրբել, և բերեմ փրկանս
դատաւորին, ընդ որ հաճի յառնուլն։ Եւ ընդէ՞ր
ասէ զայս Յովբ վասն ինքեան, և ընդէ՞ր զբազմու-
թիւն յանցանաց ուսանել կամի։ Զի սակաւ ինչ
քան զայս յառաջագոյն ասաց, եթէ «գիտեմ զի
արդար երևեցայց». «կամ ո՞վ է ոսոխն իմ ընդ ո-
րում ի դատաստան մտից»։ Յայտնապէս եցոյց
բառ կարգիս. «ուսո՛ ինձ՝ քանիօ՞ն իցեն, ընդէ՞ր
թագուցանիցես յինէն»։

«Համարիցի՞ս զիս քեզ ոսոխ. կամ եթէ ի հող- 616
մաշարժ տերևո՞յ երկնչիցիս, կամ իբրև ի հողմավա՞ր
խոտոյ կայցես ինձ հակառակ»։ Յայտնապէս պարտ
է վայելել յօգնութեան Աստուծոյ, ոյք կատարեն
զօրէնս Նորա։ Մի՛ եթէ ո՞չ վայելէր Նոյ ի խօսից
քոց. յԱբրաամու և ի տաղաւարն մտեր, և ընդ

*Յակովբայ կոուել արժանի համարեցար. և յինէն
յետ այսչափ ճգնութեան՝ Թագչիս, և ոչ ինչ խօսիս
ընդ իս, որ ի սկզբանէ ակն ունէի բարեաց պսակին։
Մի՛ եթէ ուրեք անգէտ մե՞ղք իցեն Յովբայ՝ վասն
որոյ Թագչիս յինէն, և համարիցիս զիս քեզ օտար,
զզօրականս՝ որ ոչ երբեք զանգիտեցի վասն օրինաց
Թագաւորիդ։ Եւ ոչ ասէ, եթէ երկնչելով ի Յովբայ՝
չյայտնես ինձ զքեզ. քանզի եմ ես իբրև զտերև՝
որ չարժի ի հողմոյ. վասն զի կեանքս մարդկան
ծառոյ նման են. և որ ի սմա են տերևքս, որք ան-
գանին ի սաստիկ հողմոյ թօթափեալ, և այլ դար-
ձեալ ի տեղի նորա բուսանին։ Որպէս մարդիկս, զի
617 ոմանք անգանին յերկիր իբրև ի շնչեալ հողմոյ, և
այլք ի տեղի նոցա երևին յաշխարհիս. այլ զայս
ծառ դու ծաղկեցուցանես, և ի քէն ունի զաճումն,
և յօրինաց քոց պարարի։ Մինչև հրամայես՝ կայ
ծառն և բերէ զբազմութիւն տերևոցն. իսկ յորժամ
ակնարկես՝ իբրև փայտատաւ կտրին ամենայն կեան-
քս. իսկ եթէ ի քէն են կեանք մեր և ապականու-
թիւնս, զի՞րդ ոք կարծէ երկնչել քեզ ի տերևոյս։
Եւ ոչ միայն տերևոյ նման են կեանք մարդկանս,
այլ և խոտոյ՝ որ ի շնչել հողմոյ այսր և անդր երե-
րին. այլ շունչն քո է։ Զի՞րդ կացցես հակառակ
ընդ սմա, զոր ուր կամիս փոխես. քանզի ոչ ունի
իշխանութիւն մարդ ճանապարհաց իւրոց, և ոչ կե-
նաց իւրոց՝ թէ զի՞րդ յօրինեսցին։ Ոչ կամօք ոք
մեծանայ, և ոչ ըստ կամաց է առողջութիւն մար-
618 մնոյ, և ոչ կամօք իւրովք լինի հայր որդւոց. այլ և
ոչ յորժամ կամի բնակել յայսմ երկրի, կամ եր-
թալ յայլ աշխարհս, աջողի նմա առանց քո օգնու-
թեան։ Վասն այսորիկ յիրաւի յօրինէ ի վերայ այ-
սոցիկ որ եղև մեզ ի պատուիրանազանցութենէ նա-
խաստեղծին, վասն որոյ տերևոց և խոտոց նմանե-
ցաք, որպէս և Եսայի ասէր. «Ամենայն մարդ իբ-
րև զխոտ է, և ամենայն փառք մարդոյ իբրև զծա-
ղիկ խոտոյ»։ Իսկ ուրեմն և որ ի կարգիս կայ պատ-*

չած է ի վերայ մարդկան. վասն այսորիկ այսպէս
բանիւք ասաց։
«Զի գրեցեր զինէն զչարիս, և արկեր զինև ըզ-
մեղս մանկութեան։ Եդիր զոտն իմ ի պաշարման,
պահեցեր զամենայն զգործս իմ, և յարմատս ոտից
իմոց հասեր, որ իբրև զտիկ հնացեալ են, և կամ
թէ իբրև զձորձ ցեցակեր»։ Զգիր չարեաց՝ զայն ա-
սէ, «Անիծեալ լիցի երկիր ի գործս քո, և տրտմու-
թեամբ կերիջիր զդա զամենայն աւուրս կենաց քոց.
փուշ և տատասկ բուսուսցէ քեզ, ի քիրտն երեսաց
քոց կերիցես զհաց քո, մինչև դարձցիս յերկիր
ուստի առար. զի հող էիր և ի հող դարձջիր»։ Ընդ 619
այսու ամենայնիւ անգեալ է ազգ մարդկան, ուստի
և յիրաւի ասի՝ եթէ այս ի վերայ արդարոց և մե-
ղաւորաց գրեցաւ։ Դոյնպէս եդ ի վերայ իւրաքան-
չիւր ումեք զմեղս մանկութեանն Ադամայ. քանզի
դեռ ևս յերիտասարդութեան էր Ադամ յորժամ ճա-
շակեաց ի զժնեայ կերակրոյն։ Վասն որոյ ոչ միայն
նա, այլ մեք որ ի նմանէն եմք՝ արգելեալ եմք կթել
զծառն կենաց՝ որ է ի դրախտին։ Եւ վասն այսորիկ ա-
սէ, եթէ «Եդիր զոտն իմ ի պաշարման». քանզի
արգելան ոտք մեր յերթալոյ ի բարիս դրախտին, քան-
զի պահեաց զամենայն զգործս մեր։ Քանզի ոչ եթէ
հայելով ի պատուիրանազանցութիւնն Ադամայ՝ թէ
միանգամայն դատապարտեաց զազգն որ ի նմանէն
է. բայց վասն զի բարերար է և մարդասէր, պահէ
զամենայն զգործս մեր։ Զի եթէ իցեն չար գործք՝
անձանց համարեսցուք, և անցցուք ընդ պատուհա-
սիւն՝ որ եկն ի վերայ նորա, նմանեալք հին Ադա-
մայ։ Իսկ եթէ իցեն բարիք՝ փրկեալք եղիցուք յա-
նիծիցն, և ազատեսցուք ի պատուհասիցն նորա՝ 620
նմանեալք նոր Ադամայ, և ի ձեռն նորա զառաջին
չարեացն հրաժարումն ընկալցուք։ Եւ զիա՞րդ. ըստ
կարգի պատմէ զդիպուածսն Ադամայ իւրաքանչիւր
ի վերայ մեր։ «Ուստի և յարմատս ոտից իմոց հա-
սեր, որ իբրև զտիկ հնացեալ են, կամ թէ իբրև

զձորձ ցեցակեր»: Արմատս ոտից մերոց, զգոյու-
թիւնս՝ որ ի յերկրէս է՝ անուանեաց. վասն զի ո-
տիւք մերովք կոխեմք զերկիր: Իսկ արմատ մեր՝
է յերկրէ մարմինս, որով և զծննդականութիւնս ա-
ռաք: Քանզի առեալ Աստուծոյ հող յերկրէ, ստեղծ
զմարդն. սա է որ մաշի ըստ նմանութեան տկի,
քանզի տիկ հնացեալ ոչ կարէ ունել զփուք. սոյն-
պէս և մարմին որ յերկրէս եղև յորժամ հնասցի՝
ոչ կարէ ունել յինքեան զշունչ մարդկեղէն: Բա-
րիոք իսկ նմանեցոյց զսա և ցեցակեր ձորձոյ. քան-
զի ցեց ապականութիւն է ձորձոյ, զի ի նմանէն
ծնանին և ի նմանէն կերակրին: Զոր օրինակ և
մեղք ի մէնջ ծնեալք և ի մէնջ կերակրեալք՝ ցեցա-
621 կերս առնեն զմեզ, տկարս և ապականացուս: Եւ
յո՞րժամ եհաս յարմատս ոտից մերոց արարիչն. յոր-
ժամ արարն զմեզ յերկրէ, և ասաց ցԱդամ թէ
«Հող էիր և ի հող դարձջիր»: Բայց զի զայս ածե-
լով Յովբ զմտաւ, յայտնագոյնս ցուցանէ և որ ըստ
կարգիս կայ:
«Զի այր կանանցածին սակաւակեաց է և լի
բարկութեամբ: Որ իբրև զծաղիկ ծաղկեալ՝ թօթա-
փեցաւ, խոյս ետ իբրև ստուեր, և մի՛ կացցէ»:
Սակաւակեաց է մարդ որ ի կնոջէ ծնանի, վասն զի
յերկիր անդրէն դառնալ հրամայեալ է նմա: Իսկ
«լի բարկութեամբ», յայնժամ՝ յորժամ հրամայե-
ցաւ նմա պահել զպատուիրանն, և նա պատուիրա-
նազանց եղև. յայնժամ «իբրև զծաղիկ ծաղկեալ՝
թօթափեցաւ». այնչափ ծաղկեաց ի դրախտին, մին-
չև ամենայն կենդանեաց եդ անուանս: Բայց թօ-
թափեցաւ՝ յորժամ հրապուրեցաւ ի պատրանս վի-
շապին. յայնժամ յայտնապէս ետ խոյս իբրև ըս-
տուեր, քանզի մերկացեալ փախեաւ յԱստուծոյ, և
622 թագեաւ ընդ ծառով դրախտին. յորժամ կոչէր զնա
Աստուած, թէ «Ադամ, ո՞ւր ես», և ոչ գտանէր:
Քանզի ոչ էին բանքս այս իբրև զհաստատուն կա-
լոյ, եթէ «Զձայն քո լուայ ի դրախտին. և քանզի

*մերկ էի թագեայ»: Իսկ ապա ուրեմն կորեաւ յոյս
մեր, և վասն անգանելոյ ի դրախտէն՝ զրկեցաւ մար-
դիկս ի բարեաց, և բնաւին ապականեցաւ. վասն
զի միանգամ դատապարտեցաւ իբրև զանգեալ, բայց
ոչ ևս կայ մեզ յոյս դատաստանի: Իսկ եթէ դա-
տաստանի յոյս կայ, ապա և պսակաց յոյս կայ:
Խրատիչ ասացելոցս այսոցիկ զՑովբ առ ասող:*

*«Ո՞չ ապաքէն և այնմ համար առնիցես, և նմա
արարեր ի դատաստան մտանել առաջի քո»: Այնմ.
որո՞ւմ. սակաւակեցի՞ն, որ այնչափ բարկութիւն
շարժեաց ի վերայ իւր, որ թօթափեցաւ իբրև զծա-
ղիկ ապականեալ. և այնմ համար արար Աստուած,
այսինքն է՝ թէ ոչ միայն Ադամայ յառաջ քան ըզ-
յանցանսն. քանզի նմա տանի խնամ զի մի յանցա-
նիցէ, և մի զրկեսցի ի դրախտէն: Վասն այսորիկ* 623
*յառաջագոյն պատուիրէր, «Ցամենայն ծառոյ՝ որ ի
դրախտի այդր է ուտելով կերիջիք, բայց ի ծառոյն
գիտութեան բարւոյ և չարի մի կերիջիք, քանզի
յորում աւուր ուտիցէք մահու մեռջիք»: Նոյնպէս
և մեզ արար համար, և օրէնս եդ գրով, և մարգա-
րէս ևս յաւել: Եւ զի՞նչ պարտ է ասել. և զաւե-
տարանական շնորհսն ետ մեզ, որով եցոյց մեզ եթէ
զի՞րդ պարտ է մեզ առնուլ զառաջին պատիւն, և
զի՞րդ պարտ է փախչել ի սպառնացեալ գեհենէն.
կամ թէ զի՞րդ պարտ է ստանալ զվայելչութիւն
դրախտին, յետ սակաւ ժամանակի: Եւ հրամայեաց
մարդոյն մտանել ի դատաստան, զի զարժանի զհա-
տուցմունսն առցէ ըստ վարուց իւրոց: Զոր տեսա-
նելով մեր՝ պարտ է ուղիղ վարուք անցանել ընդ
կեանս մեր, քանզի իւրաքանչիւր ոք ի մէնջ տան-
ջի ըստ գործոց իւրոց և պսակի: Զի որք նման են
Ադամայ՝ զնորա պատուհասն կրեն, զի ոչ խրատե-
ցան ի նորա պատուհասիցն: Իսկ որ պահեն զպա-
տուիրանս օրինացն, լաւագոյն ցուցեալ զմեզ ի ձեռն* 624
*պատուիրանապահութեանն, կրկին հատուցմանց ար-
ժանի լիցուք յարդար դատաւորէն, զի պատուհա-*

սին Ադամայ գոհութեամբ համբերեցաք, և ըստ
ուժոյ նմանեցաք Նոր Ադամայ։ Քանզի այսպէս կա֊
րասցուք վայելել ի Թագաւորութեան և ի փառս
Աստուծոյ, Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյ՝ նմա
փառք այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․
ամէն։

## ԺԴ

«Իսկ արդ ո՞վ իցէ սուրբ յաղտոյ, այլ և ոչ ոք,
թէպէտ և միօրեայ իցեն կեանք նորա ի վերայ
երկրի։ Համարեալ են ամիսք նորա առ ի նմանէ․
ժամանակ եդիր՝ ոչ անցցէ։ Ի բա՞ց լեր ի նմանէն՝
զի դադարեսցէ և հաճոյացուսցէ զկեանս իբրև ըդ֊
վարձկան։ Զի գոյ յոյս ծառոյ․ զի թէպէտ և կը֊
տրեսցի՝ միւսանգամ ծաղկեսցէ, և շառաւեղ նորա
մի՛ պակասեսցէ։ Եւ (եթէ) ծերասցի[1] յերկրի ար֊
մատ նորա՝ և ի քարի վախճանեսցի բուն նորա, ի
հոտոյ ջրոյ ծաղկեսցի, և արասցէ հունձս իբրև զնո֊
րատունկ։ Բայց այր վախճանեալ գնաց, անգեալ
մարդ՝ ո՛չ ևս իցէ։ Զի ժամանակաւ անօսրի ծով, և
գետ աւերեալ ցամաքեցաւ․ և մարդ ննջեաց՝ և ոչ
625 յարիցէ։ Մինչև երկինք իցեն՝ ոչ կարկատեսցի, և
ոչ զարթիցեն ի քնոյ իւրեանց։ Երանի՛ թէ ի դը֊
ժոխս պահէիր զիս, և թագուցանէիր զիս մինչև
անցանէր բարկութիւն քո․ և ժամանակէիր ինձ ժա֊
մանակ՝ յորում առնէիր ինձ յիշատակ։ Եթէ մե֊
ռանիցի մարդ՝ կեցցէ, վախճանեալ զաւուրս կենաց
իւրոց։ Սպասեցից մինչ միւսանգամ լինիցիմ․ ապա
կոչեսցես զիս, և ես տաց քեզ պատասխանի։ Զգոր֊
ծըս ձեռաց քոց մի՛ մերժեր․ թուեցեր զգնացս իմ,
և մի՛ անցցէ ինչ զքեւ ի մեղաց իմոց։ Կնքեցեր
զանօրէնութիւնս իմ ի քսակի, և նշանակեցեր եթէ

1. յՕր․ ծաղկեսցի

*ակամայ ինչ յանցեայ։ Սակայն և լեառնն որ փլանելոց իցէ՝ փլցի, և որմ հնացի ի տեղւոջէ իւրմէ։ Զքարինս ողորկեցին ջուրք, և ողողեցին ջուրք ըղդաշտս թանձրութեանն երկրի։ Եւ զակնկալութիւն մարդոյ կորուսեր. մերժեցեր զնա ի սպառ, և գնաց. հաստատեցեր ի վերայ նորա զերեսս՝ և արձակեցեր։ Թէպէտ և բազում որդիք լինիցին նորա՝ ոչ գիտէ. և եթէ սակաւք առնիցին՝ ոչ ճանաչէ. այլ մարմինք նորա ախտացան[1] ի վերայ իւր, և ոգի նորա սգացաւ զինքն»։*

*Քանզի Յովբ ոչ ի լեզուի գովութենէ ցուցանէ* 626
*զասպարէզն՝ այլ ի գործոց. քանզի գովութիւն են նորա ախտքն և վէրքն և նպատակքն. և մերկ թագաւորն գեղեցկագոյն է քան որ զգեցեալ է զոսկեհուռն և զբեհեզն. և անգողինս արկեալ է նմա աղբ, այլ պայծառագոյն է քան որ վայելեն յոսկին և յականս պատուականս։ Քանզի այժմ և Աստուած խօսի ընդ նմա, և հրեշտակք առընթեր կան, և ամենայն արարածք փառաւորեն զճգնօղն, և զձեռս ոչ կարկառու, և կործանէ զընդդիմամարտիկն։ Սաքըն բեւեռեալ էին վիրօքն, և զընդդիմացօղն ոչ միանգամ և երկիցս՝ այլ բազում անգամ ընգըրկեաց, և երկայնամտութեամբն թողացոյց զթշնամին, և լուծանէր զպատերազմօղն, և զամենայն չնչեալ մրրիկս ձմերանւոյն տկարացեալս յանդիմանէր։ Քանզի զմեծութեանն կորուստ՝ իբրև զտերևոց թօթափումն այպանէր։ Յափշտակեալ լինէին ուղտքն հանդերձ իշովքն և եզամբք, և ընդ նոսին ոչխարքն հրով պատեալ այրէին. իսկ նա զներքին մեծութիւնն*
*անկողոպուտ տեսանելով՝ ոչ ինչ ախտանայր վասն* 627
*արտաքին մեծութեանն։ Ուստերքն նորա և դստերք ի միում ժամանակի և ի միում տեղւոջ ապականեալ անգանէին, այլ և ոչ այնպէս Յովբ հեռանայր յիմաստասիրութենէն. բայց քուն համարէր զորդ-*

1. յՕր. տարացան։

ւոցն մահ, և զապարան որդւոյն երիցու՝ իբրև զայ֊
գի պտղալից համարէր։ Տանջեցաւ, ասէ, մարմինն,
այլ նա պայծառագոյն շնորհակալութիւն պատարա֊
գէր, քանզի տեսանելով զոգիսն առողջ՝ որ են մեծ
ստացուածք, սակաւ ինչ համարէր զկաւեղէնսս, և
երկայնամտելոյ արժանի համարէր՝ ընդ մաշել մար֊
մնոյն։ Կինն նախատէր առ ի հայհոյանս գրգռելով,
իսկ նա իմացեալ զայն՝ որ չարժէր զլեզու կնոջն, և
գիտացեալ եթէ դարձեալ նա է՝ որ զԵւա չարժեաց
ի վերայ Ադամայ, ի բարիոք ժամու սաստէ և դա֊
դարեցուցանէ զաղդօղն, և ուղղէ զպատրեալ ամանն։
Բարեկամքն բամբասէին զՅովբ վասն համարձակու֊
թեանն, այլ Յովբ ոչ դադարէր, այլ զամբաստա֊
նութիւնն բովանդակ ի բաց մերկանայր. և վարդա֊
628 պետ լինի ամենայն ազգի մարդկանս, որովք խրա֊
տէ և օրինադրէ, զի մի՛ զառժամանակեայ կեանս
սիրեսցուք։ Զի մահ, ասէ, մարդոյ հանգիստ է, զի
երկուցեալք ի նմանէ՝ փախիցուք ի դատաստանաց
նորա։ Ո՞չ, ասէ, թէ «փորձութիւն են կեանք մար֊
դոյ ի վերայ երկրիս». և բազում ինչ այսր նման
ասէր, զի մի՛ իշխեսցուք ընդդիմանալ տերունա֊
կան հրամանացն. ո՞ խստացաւ ընդդէմ նորա և
համբերել կարաց։ Եւ բարբառէր զայս պայծառ հա֊
մարձակութեամբ, զի մի՛ ի մոռացումն առցուք զա֊
րարիչն, այլ գիտասցուք թէ ո՞վ արար զմեզ, և ո՞
ստի հանէ զմեզ յերկիր դարձուցանելով՝ արարչա֊
կան ակնարկութեամբն։ Լո՛ւր որպիսիս ինքն ասէր
առ Աստուած և զմեզ ուսուցանէր. «Յիշեա՛ Տէր,
զի հող ստեղծեր զիս, և անդրէն յերկիր դարձու֊
ցես զիս»։ Զի մի՛ երբեք վստահացեալ յանձանց
արդարութիւն՝ հպարտասցուք, այլ հայեցեալ ի
մեղս մեր, և զհին Ադամայ զաղտն՝ որ է ի վերայ
մեր՝ ի միտ առնլով խոնարհեսցուք։
629 «Իսկ արդ ո՞վ իցէ սուրբ յաղտոյ, այլ և ոչ ոք,
թէպէտ և միօրեայ իցեն կեանք նորա ի վերայ եր֊
կրի»։ Ահաւասիկ ի լսելիս եկեղեցւոյ գոչեաց։

*Քանզի բազում լինի աղտս որ ի գործոց և ի բանից և ի խորհրդոց, և ոչ ոք կարասցէ պարծել թէ յայտնանէ սուրբ իցեմ. բայց միայն Քրիստոս (որ) ոչ արար մեղս, և ոչ գտաւ նենգութիւն ի բերան նորա։ Եւ մանուկ միօրեայ՝ որ աղտեղութիւն ինչ ոչ ունի, վասն զի ոչ գիտէ զընտրութիւն բարւոյ և չարի, բայց սակայն ունի զաղտ հին Ադամայ, որ է ի վերայ մեր։ Այլ շնորհք նորոյս՝ որ մերկացոյց ի մէնջ զհին Ադամն, և ի ձեռն լուացման վերըստին ծննդեան սրբեաց զաղտն մեր։ Եւ զի՞նչ յաւել ի վերայ այսոցիկ։*

*«Համարեալ են ամիսք նորա առ ի նմանէ»։ Յայտ է թէ յԱստուծոյ, առ որ դարձոյց զբանս՝ որ ի կարգիս կայ։*

*«Ժամանակ եդիր՝ և ոչ անցցէ»։ Քանզի ամենայն մարդոյ ոչ միայն ամք, և ամիսք, և աւուրք, և ժամք թուեալ են առ արարչին մերում. քանզի նա ի սահմանեալ ժամանակ եդ զմեզ, որ ոչ ամենևին անցանէ։* 630 *Ո՞չ գիտես զի բազումք ի մահարեր հիւանդութեանց ապրեցան, և այլք որ ողջ էին՝ յանկարծակի յափշտակեցան յառժամանակեան կենացս. և այլք դարձեալ ի բարձր վերնատանց անգեալ՝ առողջ ապրեցան. և այլք մինչդեռ գնային՝ ընդ գայթագղելն մեռեալ գտան. և այլք դարձեալ ընդ բեկանել նաւի՝ ի միոյ տախտակի վերայ հեծեալ՝ առողջք ապրեցան. և այլք դարձեալ մօտ ի նաւահանգիստ՝ ծակեալ նաւին՝ մահու կորեան, զի մի՛ ոք ըստ պատահարաց համարիցի զմահ, այլ ըստ կոչի արարչին։ Դարձեալ որպիսիս ինչ ի վերայ էած։*

*«Ի բաց լեր ի նմանէն՝ զի դադարեսցէ և հաճոյացուսցէ զկեանս իբրև զվարձկան»։ Այսինքն է՝ թեթևացո՛ զխրատ, և ներեա՛ տանջանացն, զի հանդարտութեամբ կեցցէ արդարն. մի՛ ևս խրատեալ բարիոք համարէ ինքնընթաց կենացս քոյով հաճութեամբ՝ մինչև ելցէ ի մարմնոյս, և ակն ունի հա֊*

631 *տուցմանց, ըստ ասպի վարուցս իբրև իմաստուն
վարձկան՝ որ գիտելով զժամանակ վարձուց՝ համ-
բերէ վշտաց, թեթև համարեալ զաշխատութիւն՝
ժամանակին վարձուցն յուսով: Սոյնպէս և արդարն
համբերէր աստի ճգնութեանցս՝ հայելով ի հանդեր-
ձեալ հատուցմունսն: Բայց սքանչելի են և որ ի
կարգիս կան, և ի ձեռն բարի և օգտակար տարա-
ցուցացս ցուցանէ մեզ՝ թէ կայ յոյս յարութեան.
իսկ եթէ յարութեան յոյս՝ ապա և հատուցմանց՝
ըստ աստի վարուցս:*

*«Զի գոյ յոյս և ծառոյ. զի թէպէտ և կտրեսցի՝
միւսանգամ ծաղկեսցէ, և շառաւեղ նորա մի պա-
կասեսցէ. և եթէ ծերասցի յերկրի արմատ նորա՝
և ի քարի վախճանեսցի բուն նորա, և ի հոտոյ
ջրոյ ծաղկեսցի, և արասցէ հունձս իբրև նորա-
տունկ»: Ստուգապէս ե՛կ ընթերցցուք զասացեալս,
քանզի կայ յոյս ծառոյ. զի եթէ հատցի՝ ծաղկես-
ցէ, և շառաւեղ նորա մի պակասեսցէ: Զի եթէ
երևելի ծառոյս յոյս անդրէն կենդանութեան կայ
յետ կտրելոյն, յորժամ արմատն հաստատուն կայ,*
632 *որչափ ևս առաւել իմանալի ծառոյն: Քանզի որպէս
այսմ ծառոյ փայտատս է, դոյնպէս և իմանալի ծա-
ռոյս, յայտ է եթէ մարդկան՝ վախճան կենաց. և
որպէս նորա շառաւեղն ծաղկէ, դոյնպէս և արդա-
րոյն: Քանզի յայտնապէս վասն արդարոյ ասէ զայս.
քանզի սա է ի բարիոք երկրի ի վարս առաքինու-
թեանց: Այլ և յանշարժ վիմին տնկեալ է ի հա-
ւատան Աստուծոյ: Սա ծաղկէ ի հոտոյ ջրոց, որպէս
ասէ Դաւիթ յառաջնումն սաղմոսին. «Եղիցի նա իբ-
րև ծառ որ տնկեալ է ի գնացս ջուրց, որ զպտուղ
իւր ի ժամու տայցէ, և տերև նորա մի թափեսցի.
զամենայն զոր արասցէ՝ յաջողեսցի նմա»: Արդեօք
այս պատահիցէ՞ արդարոց որպէս և ծառոցս. քան-
զի ծառ որ ի պարարտ երկրի՝ տնկեալ է ի վերայ
վիմի. քանզի այսպիսի ծառքն գեղեցիկ սնանին,
քանզի հողովն պարարին և վիմաւն զօրանան, թէ-*

պէտ և առ սակաւ մի պաքին ի ցրտոյ[1], և կամ ի
տօթոյ տկարանան, սակայն բուն նորա ծաղկեսցի
ի հոտոյ ջրոյ և հունձս տացէ, յայտ է թէ պտուղս
իբրև զնորատունկ՝ որ տնկեալ է ի պարարտ երկրի 633
և ի վերայ վիմին հաւատոց Աստուծոյ։ Նորա եթէ
հնպացի արմատն և վախճանեսցի, ըստ հասարակաց
ազգի մարդկան ծերութեան, և ըստ սահմանեալ
մահու, սակայն բուն նորա ծաղկեսցէ ի հոտոյ ջրոյ
լուացման վերստին ծննդեան՝ ի ժամանակի յարու-
թեանն ի մեռելոց։ Քանզի վասն շնորհի մկրտու-
թեան ունիմք զյոյս յարութեանն, յորմէ և հունձս
ընկալցուք իբրև զնորատունկ, քանզի Նոր Ադամ
յառնեմք և ոչ ևս հին։ Իսկ եթէ ի հեղգութենէ՝
ծերութիւնն հասցէ, և ի մեղաց՝ մահ դիպեսցի նմա,
զայն արասցէ՝ զոր Դաւիթ և կամ Պետրոս և կամ
այլ ոք յարդարոց ի հոտոյ ջրոյ, այսինքն՝ յարտա-
սուաց։ Քանզի հոտ մկրտութեան յիրաւի ոք ասէ
զապաշխարութեան արտասուսն, և ծաղկէ և հունձս
տայ հաւասար այնոցիկ որ նորապէս աշակերտեալ
են օրինաց։ Բարւոք ասէ, թէ արմատն վախճանի և
բունն ծաղկէ· վասն զի թէպէտ ըստ վախճանի կե-
նացս և թէպէտ ըստ հեղգութեան՝ անգանիմք ընդ
մահու՝ ըստ նմանութեան արմատոյն, այսինքն է
առաջին մարդոյն։ Ըստ երկոցունց ըմբռնեալ եմք.
որ պարտի կամ ի ձեռն ապաշխարութեան կամ ի 634
ձեռն յարութեանն կեցցէ մարդ։ Քանզի որպէս ի
բուն ի հին արմատոյն նոր բուսանի, դոյնպէս և
սա նոր մարդ յառնէ ի հնացելոյն։ Այլ ասացեալ
եթէ զիմ՞րդ պարտ է յուսալ և հաւատալ յարու-
թեան մեռելոց, աւասիկ ի վերայ ածէ թէ ե՞րբ և
յումէ՞ տացէ։

«Այր վախճանեալ գնաց», ընդ ճանապարհն ընդ որ հրամայեցաւ գնաց։ «Անկեալ մարդ՝ ոչ ևս իցէ»,

1. Ի չոռատեցուն՝ ի հեղգութենէ։

յայտ է թէ յառ ի ընթերակայ կենացս. բայց եթէ
ո՞յր փոխեալ զնա՝ ուսիր։
«Զի ժամանակաւ անօսրի ծով»։ Բայց թերևս
նորա ակնարկելով՝ որ սպառնալով ծովու՝ ցամաքե-
ցուցանէ զնա։ «Եւ գետ աւերեալ ցամաքեցաւ»։
Ոչ ասաց թէ գետք՝ այլ գետ. քանզի ամենեքին մի
են. որպէս ցուցանեն պատմութիւնք որ կան ի
Ծննդոց գիրս. «Աղբիւր մի ելանէր յերկրէ և ոռո-
գանէր զերեսս երկրի»։ Զի որ յայնժամն ետ զնա,
նոյն և այժմ ցամաքեցուցէ. և կամելով ինքեան՝
արասցէ աներևոյթ, յորժամ զծով կամօք իւրովք
մաշեսցէ, և զայլ տարերսս երևելի արարածոցս վախ-
ճանեսցէ։ Զի եթէ իբրև զեղելոց ասաց՝ որ յապա
635 լինելոցն է՝ չէ ինչ զարմանալի. քանզի վասն Աս-
տուծոյ ասէ, որում հանդերձեալքն իբրև զեղեալ և
զանցեալ համարեալ են՝ զոր միանգամ սահմա-
նեաց. և չէ հնար ըստ հրամանն անցանել՝ որ միան-
գամ սահմանեցաւ յարարչական ձեռանէն։ Ոչ ըն-
դունայն ինչ յիշեաց զայսմանէ, այլ առ ի ցոյց՝
թէ յորժամ երևելի տարերքս անցանիցեն, և ա-
րարածքս նորոգիցին, յայնժամ և իշխան տանս
նորոգեսցի որ տուաւ սմա յԱստուծոյ։ Քանզի դէմ
յանդիման զայս նշանակէ՝ որ ի կարգիս կայ։
«Եւ մարդ ննջեաց՝ և ոչ յարիցէ». լուր մինչև
յե՞րբ. «Մինչև երկինք իցեն՝ ոչ կարկառեսցի, և
ոչ զարթիցեն ի քնոյ իւրեանց»։ Քուն անուանեալ
զմահ՝ յայտնի ետ մեզ՝ զյոյս յարութեան։ Բայց
ոչ ասէ՝ յարիցուք մեք մինչև կայցեն երևելի երկին-
քըս։ Եւ այս յայտնի է, քանզի պարտ է նմա գա-
լարել իբրև զմագաղաթ, որպէս և ասէր Եսայի՝
թէ պարտ է շարժել ամենայն զօրութեանց նորա,
և արեգական և լուսնի խաւարել, և աստեղաց թօ-
թափիլ իբրև զտերև։ Յայնժամ ի ձայն փողոյ յա-
636 րուսցեն զմեզ հրեշտակքն ի մահուանէ՝ իբրև ի քնոյ,
յայտ է թէ հրամանաւ և ակնարկութեամբն Աս-
տուծոյ։ Քանզի զայս բանս զՏեառն գտցես կար-

գեալ, յորժամ խօսի ընդ աշակերտսն, վասն կատա֊
րածի խօսի. «Արեգակն խաւարեսցի և լուսին ոչ
տացէ զլոյս իւր, և աստեղք թօթափեսցին յերկնից,
զօրութիւնք երկնից շարժեսցին»: Ապա յիշելով ըզ֊
լինելոց զնշան խաչին և զիւր գալստեանն, ի վերայ
ածէ. «Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր ի ձայն փո֊
ղոյ մեծի, և ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից
հողմոց, ի ծագաց մինչև ի ծագս երկրի»: Բայց մեք
և կարկատելոյս միտ դիցուք, քանզի ասէ վասն
մարդոյ. «Մինչև երկինք իցեն՝ ոչ կարկատեսցի»:
Ցուցանէ թէ յորժամ երկինքս այս անցցեն, յայն֊
ժամ է մեզ յարութիւն: Բայց լինի յարութիւն, որ
այժմ լուծեալ և ցրուեալ անդամքս են յերկրի, և
ի հող դարձեալ, և հրամանաւ Աստուծոյ յայնժամ
զգացեալ կարկատին: Քանզի ոչ եթէ այլ մարմին
առնէ մեզ արարիչն, այլ դոյն իսկ է որ այժմս է.
բայց ոչ դոյնպէս, այլ անապականութեամբ և ան֊ 637
մահութեամբ յարուցանէ: Եւ այնպէս յարուցանէ՝
որպէս Պաւղոս ասէ. «Զի պարտ է ապականա֊
ցուիս այսմ զգենուլ զանապականութիւն, և մահկա֊
նացուիս այսմիկ զգենուլ զանմահութիւն»: Զայս ի
միտ առեալ Յովբայ և զհանդերձեալ կենացն և
զմշտնջենաւոր փառսն, և զառընթերակայ կենացս
յոյժ անարգութիւն զմտաւ ածեալ, յափշտակէ զփո֊
փոխումն յաժամանակեան կենացս, և յուսով հան֊
դերձելոյն զայս բարբառի:

«Երանի՛ թէ ի դժոխս պահէիր զիս». իբրև ըզցորեան ի շտեմարանս քո պահէիր զիս, մինչև գայր ժամանակ յայտնել զնա:

«Եւ թագուցանէիր զիս մինչև անցանէր բարկութիւն քո», որով բարկացար Ադամայ. և մահկանացու արար(եր)[1] զազգս մեր:

«Եւ ժամանակէիր ինձ ժամանակ՝ յորում առնէիր ինձ յիշատակ»: Զի երկայնամտութեամբ տանէի

1. Յաւելեալ ըստ Վ.:

*տրտմութեանցն յիշելով զքո խոստմունսն։ Բայց
զի մի՛ կարծեսցի խնդրել զանհնարսն, իբրև թէ
զայն խնդրէ յԱստուծոյ՝ զոր ոչ են կամք Նորա
վասն ազգի մարդկան, յիրաւի ըստ կարգիս ի վե-
րայ էած։*

*«Եթէ մեռանիցի մարդ՝ կեցցէ վախճանեալ զա-
638 ւուրս կենաց իւրոց»։ Կեցցէ բանս ոչ կայ ըստ
կարգի, և այսպէս պարտ է իմանալ զառաջիկայ
բանսս, զի եթէ մեռանիցի մարդ վախճանեալ զա-
ւուրս կենաց իւրոց՝ կեցցէ թերևս ըստ աստուա-
ծային սահմանին և ըստ կամաց արարչին, որ եդ
վասն մեր ամենեցուն հասարակաց։ Վասն որոյ և
առ ընթեր եդ։*

*«Սպասեցից մինչ միւսանգամ լինիցիմ»։ Զյա-
րութիւնն միւսանգամ լինելութիւն կոչեաց։*

*«Ապա կոչեսցես զիս, և ես տաց քեզ պատաս-
խանի»։ Որպէս և ծառայ տեառն՝ որ կոչէ զնա
զարթուցեալ ի քնոյ։ Այլ զի՞նչ էած ի վերայ այ-
սոցիկ բարեխօսելով, վասն առ հասարակ մարդկան
դիմաց։*

*«Զգործս ձեռաց քոց մի՛ մերժեր»։ Ոչ եթէ Աս-
տուած մերժէ. այլ կամի զարթուցանել զնա ի վըշ-
տակցութիւն իւր. բայց եթէ վասն է՞ր՝ ուսիր։*

*«Թուեցեր զգնացս իմ, և մի՛ անցցէ ինչ զքեւ ի
մեղաց իմոց. կնքեցեր զանօրէնութիւնս իմ ի քսա-
կի, և նշանակեցեր եթէ ակամայ ինչ յանցեայ»։
Այսոքիւք յայտնապէս պատմէ զտուգութիւնն Աս-
տուծոյ, զի ոչ ինչ անցցէ զնովաւ ի գործոց մերոց
և ի գնացից մերոց։ Եւ այնպէս ստուգութեամբ
գիտէ, որպէս և զթուեալ. և վասն այսորիկ ասէ.
639 քանզի որ թուէն՝ գիտէ եթէ ո՛ր առաջին է և ո՛ր
երկրորդ և ո՛ր երրորդ, և զիւրաքանչիւր ոք ըստ
կարգի՝ եթէ ո՛ր ըստ որմէ իցեն։ Եւ վասն այսորիկ
ասէ, եթէ «զգնացս իմ թուեցեր». վասն զի գիտէ
զիւրաքանչիւր վարուց՝ զոր գործեմք, և զոր ակըն-
կալութեամբ վարիմք. քանզի ճշմարտութեամբ վարք*

այս են. ո՞վ, վասն ո՞յր, և վասն որո՞յ, ո՞ր որոյ ազգական. զի՞րդ բազում անգամ զկարծեցեալ զառաքինութիւնն գործեմք. և փութամք վասն չարութեան իրիք անցելոյ, և կամ որ ի հետ գայ՝ կամ որ հեռագոյն է։ Վասն որոյ և առընթեր եդ. «Եւ մի անցցէ ինչ զքև ի մեղաց իմոց»։ Քանզի անքուն ականն, ոչ միայն մեր գործքս մոռացեալ ոչ լինին, այլ և վասն որոյ իրաց գործեցեալ էր՝ գիտէ, և ի վերայ այսոցիկ, ստուգութեամբ վասն այսոցիկ զյիշատակն պահէ, և վասն այսորիկ ասէ. «Կնքեցեր զամենայն անօրէնութիւնս իմ ի քսակի»։ Եւ ոչ միայն արդեւք վասն ստուգութեան և անկողոպուտ յիշատակին, իբրև ի քսակի, ասէ, կնքել զմեղս մեր. այլ որ կնքէ զքսակն վասն այսորիկ կնքէ, զի պահեսցէ զայն որ ի նմայն կայ, և ըստ ժամանակի ի կիր արկցէ կամ ըստ պիտոյից ծախեսցէ։ Նոյնպէս կնքէ Աստուած յիշատակս և զմեր գործս, և այժմ ոչ խնդրէ զպարտիս նորա. ներելով հաշէ և մաշէ զնոսա, եթէ մեք եկեսցուք ի զղջումն զուարթութեամբ. կամ զժամանակ դատաստանին յառաջ ածէ։ Բայց սակայն զարդարութիւն միանգամայն և զվշտակցութիւն ցուցանելով դատաւորին մերոյ՝ առասիկ զայս կարգ ի վերայ էած։

«Եւ նշանակեցեր թէ ակամայ ինչ յանցեայ»։ Քանզի և այս մարդասիրութեանն և արդարութեանն Աստուծոյ նշանակ է, և զոր ակամայ մեղանչեմք նշանակէ, զի մի ակամայ մեղաց մերոց իբրև կամաւ գործեցելոց՝ պահանջեսցէ զդատաստանս։ Բայց զայս զի մի միայն զՑովբայ կարծեսցուք, և ոչ ի վերայ դիմաց առ հասարակ ամենայն մարդկան, յիրաւի ըստ կարգիս էած ի վերայ, քանզի այսոքիւք յիշեցոյց զպատահեալսն առ Ադամայ։

«Սակայն և լեառն՝ որ փլանելոցն իցէ՝ փլցի, և վէմ հնասցի ի տեղւոջէ իւրմէ։ Զքարինս ողորկեցին ջուրք, և ողողեցին ջուրք զդաշտս թանձրութեան երկրի։ Եւ զակնկալութիւն մարդոյ կորու-

սեր․ մերժեցեր զնա ի սպառ, և գնաց․ հաստատե-
ցեր ի վերայ նորա զերեսս՝ և արձակեցեր»։ Լե-
րին և վիմի և հաստատուն քարանց առակեաց ըզ-
641 մարդոյն ի դրախտին կալ։ Բայց զփլումն լերին, և
զհնութիւն վիմի, և զողողանս ջրոց, և զողորկանս
քարանց, զԱդամայ պատահեալ գայթագղումն ա-
նուանեաց, և կարի յիրաւի նմանեցոյց։ Քանզի
լեառն, ասաց, թէ որպէս մեծապէս ունի զփլումն,
դոյնպէս և Ադամ մեծապէս ընկալաւ զգայթագ-
ղումն։ Եւ դարձեալ, լեառն փշրէ զոր ի ներքոյն
ունի, որպէս և Ադամ գլորեալ մանրեաց զներքոյսն
իւր․ քանզի կարի տկարագոյն արար քան զինքն
զարարածս․ ուստի և Պաւղոս յիրաւի ողբալով եր-
գէր զդէմս նորա իբրև հեծելով։ Եւ վէմ հնացեալ
դիւրաքակ և բեկտու լինի․ այս և Ադամայ պատա-
հեաց հնացելոյն մեղօք։ Վէմ հնացեալ՝ անվայելուչ
լինի շինուածոյ, մինչև պատահեացէ արուեստագի-
տի որ գիտիցէ շինողական գործով ընտրել և ի բաց
որոշել զանպիտանն։ Դոյնպէս և Ադամ՝ անգեալ ի
դրախտէն, ոչ էր վայելուչ հոգևոր շինուածոյն, մինչ
պատահեաց Քրիստոսի՝ որ իւրով նախախնամու-
թեամբքն ի բաց որոշեաց զտկարութիւնս հին մար-
դոյն։ Եւ քարինք ողորկեալք բազում ջրովք փոխեն
642 զդէմս իւրեանց, որպէս Ադամ և Եւա ողորկեալք,
յայտ է թէ քակտեալք չար մեղաց ջրովն։ Վասն
որոյ Դաւիթն ասէ․ «Կեցո՛ զիս Աստուած, զի
հասին ջուրք յանձն իմ»։ Զառաջինն մաքուր դէմս
մերոյ ստեղծուածոյս՝ յայտ է թէ զպատկերն Աստու-
ծոյ՝ ստուերագուցեալ փոխեցին ըստ բազում մասանց։
«Քարինք ողորկեալք ի ջրոց և ողողեալք ի թանձրու-
թեան երկրի»։ Այսինքն է, թէ որք ի խորոց բըղ-
խեն, իբրև զի թէ ոչ ուրուք ունելով զնոսա յերեսս
քարշին։ Դոյն օրինակ Ադամ և Եւա յայնց ի տա-
րածեալ ջրոց քարշեալք եղեն ի դաշտի, զոր յայտ-
նապէս եցոյց մեզ Դաւիթ սաղմոսերգն․ «Ընգլայ ես
ի խորս անդնդոց՝ ուր ոչ գոյր հանգիստ»։ Ընդդէմ

մեղաց և յանդիման անօրէնութեանցն քարշէին։
Այլ ընդէ՞ր ասէ ցԱստուած. «Եւ զհամբերութիւն
մարդոյ կորուսեր»։ Վասն զի ահագին էած ի վե-
րայ նորա զանէծսն. «Փուշ և տատասկ բուսուսցէ
քեզ երկիր, և ի քիրտն երեսաց քոց կերիցես զհաց
քո», և յաւել ևս, թէ «Հող էիր և ի հող դարձջիր»։
Քանզի հանեալ ի դրախտէն, և զոր ունէր համբե-
րութիւնն՝ այսինքն է, յոյս և ակնկալութիւն, եհան
ի պատուիրանազանցէն։ Քանզի և Սիմաքոս փո- 643
խանակ համբերութեանն՝ «ակնկալութիւն» գրեաց։
Քանզի զո՞ր համբերութիւն, կամ զո՞ր ակնկալու-
թիւն ունէր, յետ այնչափ անիծից պատուհասի,
զոր յայտնագոյնս եցոյց ըստ կարգիս։

«Մերժեցեր զնա իսպառ և գնաց»։ Մերժեցաւ միան-
գամայն և հալածեցաւ, յորժամ մերկացեալ գնայր ի
դրախտէն։ Ոչ իւրովք կամովք գնայր անտի, այլ
աստուածային սպառնալիքն հարկաւորէին զնա։ Զոր
և Յովբայ ոչ(ետ)տանալ[1] Հոգին, քանզի ասէ. «Հաս-
տատեցեր ի վերայ նորա զերեսս քո՝ և արձակե-
ցեր»։ Հաստատեաց ի վերայ նորա զերեսս իւր,
յորժամ ասաց ցնա, թէ ո՞ւր ես. բայց արձակեաց՝
յորժամ հրամայեաց հանել զնա ի դրախտէն։ Քան-
զի այսպէս գրեալ է ի կարգի՝ ի գիրս Արարածոց.
«Եհան զնա Տէր Աստուած ի դրախտէն փափկու-
թեան՝ գործել զերկիր ուստի առաւն»։ Առանց ի-
րիք երկբայութեան և որ ի կարգիս կայ՝ վասն նորա
ասէ։

«Թէպէտ և բազում որդիք լինիցին նորա՝ ոչ գի-
տէ, և եթէ սակաւք ունիցին՝ ոչ գիտասցէ վասն
նոցա. այլ մարմինք նորա ախտացան ի վերայ իւր,
և ոգի նորա սգացաւ ի վերայ ինքեան»։ Քանզի 644
տարեալ ի դժոխս ըստ նորա հրամանին, ոչ գիտէ
զբազմութիւն որդւոց իւրոց, յայտ է թէ զմարդկա-
նէ ասէ։ Այլ և եթէ ապականեսցին՝ ոչ գիտասցէ.

1. Վ. Զոր ետ Հոգին անսալ Յովբայ։

*բայց միայն զինքն ողբայ։ «Եւ ախտացան ի վերայ
իւր մարմինքն իւր», յորժամ ասաց, եթէ «Հող էիր
և ի հող դարձջիր», և լուծեալ ի հող և յերկիր՝ ու-
սաւ փորձիւն։ «Եւ սգացաւ զնա ոգի իւր», յոր-
ժամ մտանէր ընդ դրունս պղնձիս և ընդ նիգս
երկաթիս մահու։ Զոր և մեք գիտելով եթէ ոչ ինչ
են օգուտ աստիքս՝ յետ հրաժարելոյ. այլ թէպէտ
և աճեսցեն՝ որ մնացեալքս մնին ի մէնջ, և կամ
ապականեսցին, և գիտել ոչ կարասցուք թող թէ
վայելել. այլ մարմինքս ցաւեսցեն և զոգիս սգաս-
ցուք, պահանջեալք զպարտիս՝ ըստ աստի վարուց
մերոց. և զայն առցուք ի միտ զամենայն աւուրս,
թէ[1] «Զի՞նչ օգուտ է մարդոյ, եթէ զաշխարհս ամե-
նայն շահեսցի և զանձն իւր կորուսցէ, կամ զի՞նչ
տացէ մարդ փոխանակ անձին իւրոյ»։ Իսկ երկու-
ցեալք յայնմանէ, որ կարէ կորուսանել զոգիս և
645 զմարմինս գեհեննին, մարմնովք և ոգւովք միանգա-
մայն՝ սրբութեամբ վարեսցուք. և արհամարհեալ
զամենայն կեանս, անձանց փրկութեան պարապես-
ցուք, և արհամարհեսցուք զտերևս՝ զի զայն ոչ կը-
րեն ի հնձան ընդ ողկուզոյն։ Եւ զմեր ողկոյզս բա-
րիոք աճեցուսցուք, այլ և պահեսցուք սուրբ և ան-
վթար, և արդելցուք զյարձակմունս շանց ի վերայ
սոցա։ Քանզի այսպէս առեալ հրեշտակաց զողկոյզ
ոգւոց մերոց, ըստ նմանութեան կթողաց, տարցին
ի հնձանս արքայութեանն երկնից, Հօր և Որդւոյ
և սուրբ Հոգւոյ՝ նմա փառք այժմ և միշտ և յա-
ւիտեանս յաւիտենից. ամէն։*

1. յՕր. և։

## ԺԲ

Կրկնեալ անդրէն Եղիփազու Թեմնացւոյ՝ ասէ. «Ա-
պաքէն հանճարեղն ոգւով՝ իմաստութեամբ տացէ
պատասխանի. և լնուցու աշխատութեամբ որովայ-
նի, յանդիմանել բանիւք՝ որ ոչ իցեն արժան, խօ-
սիւք՝ որ ոչ իցեն յօգուտ։ Զորոյ և դու զերկիւղ
մերժեցեր, և գումարեցեր զայդպիսի բանս առաջի
Տեառն։ Պարտաւորեցար բանիւք բերանոյ քոյ, և
ոչ քննեցեր զբանս հզօրաց։ Կշտամբեսցէ զքեզ քո
բերան՝ և ոչ ես, շրթունք քո հպկառակ քեզ վկա-
յեսցեն։ Իսկ արդ զի՞րդ. մի՞ եթէ առաջի՞ն քան
զմարդիկ ծնեալ իցես, կամ յառա՞ջ քան զբլուրս 646
հաստատեցար։ Կամ զհրաման Տեառն լուա՞ր, եթէ
ի քե՞զ եհաս իմաստութիւն։ Զի՞նչ է՝ զոր գիտես,
և մեք ոչ գիտեմք. կամ զի՞նչ դու իմանայցես՝ և ոչ
մեք։ Նա և ի մեզ ծեր և հին աւուրց քոյ, և երի-
ցագոյն քան զհայր քո աւուրբք։ Սակաւս քան զոր
մեղարն տանջեցար, և առաւել մեծաբանս խօսեցար։
Ընդէ՞ր յանդգնեցաւ սիրտ քո, կամ ընդէ՞ր լկնե-
ցան աչք քո. զի թափեցեր զսրտմտութիւն առաջի
Տեառն, և հաներ ի բերանոյ քումմէ զբանս այդ-
պիսիս։ Ո՞վ ոք իցէ մարդ որ եղև անարատ, կամ
ո՞վ ոք կանանցածին լինելոց իցէ արդար։ Զի եթէ
սրբոց ոչ հաւատայ, և երկինք չեն անարատ առաջի
Նորա, թող թէ այր գարշ և անսուրբ՝ որ ըմպէ զա-
նօրէնութիւնս հանգոյն ըմպելւոյ։ Պատմեցից քեզ,
լուր ինձ. զոր ինչ տեսի պատմեցից քեզ, զոր ի-
մաստունք ասեն, և ոչ թագուցին հարք իւրեանց։
Նոցա միայն տուաւ երկիր, և ոչ եկն օտարածին ի
ի վերայ նոցա։ Ամենայն կեանք ամպարշտի և նա
հոգովք. ամք թուով տուեալ են հզօրի, և ահ Նորա
յականջս Նորա։ Յորժամ համարի(ցի) թէ ի խաղաղու-
թեան իցէ, եկեսցէ կործանումն Նորա։ Մի՛ հաւա-
տասցէ դառնալ ի խաւարէ, զի հրամայեալ է ար- 647

*դէն ի ձեռս երկաթոյ։ Կարգեալ է ի կերակուր ան-
գեղաց. գիտէ ի միտս իւր՝ թէ մնալոց իցէ (ի) կործա-
նումն։ Օրն մթին զարհուրեցուսցէ զնա, անձկու-
թիւն և նեղութիւն հասցէ նմա՝ իբրև զօրավար
յառաջակաց կործանեալ։ Զի ամբարձ ձեռս ընդդէմ
Տեառն, և առաջի Տեառն ամենակալի ընդվզեցաւ։
Ընթացաւ առաջի նորա հպարտութեամբ, թանձրու-
թեամբ վահանի իւրոյ։ Զի ծածկեաց զերեսս իւր
ճարպով իւրով, և արար երկսայրի յազդեր իւրում։
Բնակեսցէ[1] ի քաղաքս աւերակս, մտցէ ի տունս
անբնակեալս. զոր նոքա պատրաստեցին՝ այլք տար-
ցին։ Մի մեծասցի, և մի մնասցեն ինչք նորա, և
մի արկցէ յերկիր ստուեր, և մի ապրեսցի ի խա-
ւարէ։ Զբողբոջ նորա թառամեցուսցէ հողմ, թօթա-
փեսցի ծաղիկ նորա։ Մի հաւատասցէ՝ եթէ հանդար-
տիցէ. սնոտիք պատահեսցեն նմա։ Կտրօն նորա
տարաժամ հարցի, և շառաւեղ նորա մի թխեսցէ։
Իբրև զխակակութն տարաժամ կթեսցի, թօթափես-
ցի իբրև զծաղիկ ձիթենոյ։ Զի վկայութիւն ամպա-
648 րշտի մահ է. հուր այրեսցէ զտունս կաշառառուաց։
Յղասցի ցաւս, դիպեսցին նմա սնոտիք. որովայն
նորա կրեսցէ զնենգութիւն»։*

*Բարիոք է մարդկան համեստութիւն լեզուի, և
օգտակար են սանձք բերանոց, և պիտանացու են
ճաշակք բանից, և փրկութիւն են բանք խորհրդոց,
և անկողոպուտ մեծութիւն ոգւոց է՝ պահպանու-
թիւն բերանոյ, և նաւահանգիստ առանց ալեաց է
մտաց՝ զհանճար դնել դուռն[2] շրթանց, զի մի զխոր-
հուրդս մատնեսցուք թեթևութեամբ բանից, և մի
բան առանց հանճարոյ հանցուք, որով ապա բամ-
բասեսցուք զանձինս իբրև զյանդգունս և զյոխորտս,
յորժամ այլոց զմտաւ ածեալ՝ պարսաւեսցեն։ Մի
եթէ հաւատարմագո՞յն ոք գտանիցի քան զՊետրոս*

1. յՕր. Ընգեսցէ։
2. յՕր. զդուռն։

զգլխաւոր առաքելոցն, մի՛ եթէ բարձրագո՞յն ոք ի-
ցէ քան զայն լեզու, մի՛ եթէ ա՛յնպէս ոք սուրբ
միտս ստացաւ, մի՛ եթէ ա՛յնպէս ոք ջերմ սիրող
գտանիցի՝ որպէս նա իւրում վարդապետին։ Այլ
սակայն զի Քրիստոս ասէր առ ամենայն դասս ա-
ռաքելոցն. «Ամենեքեան դուք գայթագղելոց էք յի-
նէն յայսմ գիշերի». և նորա ոչ զմտաւ ածելով,
եթէ ո՞վ էր որ խօսեցաւն, զի Տէր էր և Աստուած,
և Տեառն ընդդիմաբանել ոչ է առանց վնասու, և 649
զԱստուծոյ զյառաջագիտութիւնն արհամարհել անօ-
րէնութիւն է. և առանց հանճարոյ հան զբանն ի
լեզուէ իւրմէ. «Եթէ ամենեքին գայթագղեսցին՝ ես
ոչ գայթագղեցից ի քէն»։ Ուսաւ փորձիւ յառաջ ճա-
շակել զբանս, և ապա բանալ զդուռն լեզուի, և ի
բաց առնուլ զպահպանութիւն բերանոյ, յորժամ ու-
րացաւն և ելաց դառնապէս։ Զայս բարեկամք Յով-
բայ ո՛չ ունէին ի մտի[1]. կարի յոյժ ցուցանէին ըզ-
բանիցն յանդիմանութիւն և զսաստիկ մեծաբանու-
թիւն։ Ամօթ համարին թոյլ տալ մարգարէութեան
արդարոյն, և յաղթիլ ի նմանէն չար համարէին.
յորմէ փախուցեալ մատնիչն, և թողեալ իւր զմար-
տընչելն ընդ նմա, նոքօք խօսէր իբրև քնարաւ։
Իսկ նոքա և ասեն բազում ինչ, և բամբասեն ան-
հաւատալիս, և զրպարտեն զՅովբ՝ վասն որոյ ոչ է
պիտոյ յանդիմանութիւն և ոչ խնդիրք ամբաստա-
նողաց. եցոյց իսկ Եղիփազ՝ որ այժմ խրոխտալովս
խօսի։

«Կրկնեալ անդրէն Եղիփազու Թեմնացւոյ ասէր»։
Բազումք պատասխանեն միոյն, որպէս զմարտիկ մի՝
զի առնուցուն բազում հակառակորդք, և մին առ-
նուցու զձեռանէ, և միւսն ունիցի զոտանէ, և միւսն 650
ըմբռնիցէ զունկանէ։ Եւ ոչ միայն այս, այլ վասն
զի նախատեաց զնոսա Յովբ, եթէ ոչ իմաստու-
թեամբ խօսեցան յառաջնում ատենին իւրեանց,

1. յՕր. ի միտ, ուղղեցաք ըստ Վ.։

այսպէս ասելով. «Արդ և դուք ևս մարդի՞կ իցէք,
կամ եթէ ընդ ձե՞զ վախճանիցի իմաստութիւն».
և վասն այսորիկ յառաջաբանէ իւրմէ կամի զամ-
բաստանութիւն զնովաւ արկանել: Այլ քաջ ճգնողն
թօթափեալ զնոսա ամենեսին՝ յերկիր կործանեաց,
և ինքն իբրև զհաստատուն յաղթող եկաց՝ ունելով
դնչան յաղթութեան. որ ոչ ինչ վնասեալ էր ի
մարտնչելոյ ընդ նոսա, այլ ևս պայծառագոյն ե-
րևեցաւ: Քանզի և Յովբայ իսկ ոչ վնասեցին յոր-
ձանք բանից նոցա, զոր առնուին ի նորա բանիցն,
և իբրև թէ բուռն հարկանելով ասէին: Բայց ըն-
թերցեալ ըստ կարգիս՝ իմացուք զբանս նոցա:
«Ապաքէն հանճարեղն ոգւով՝ իմաստութեամբ
տացէ պատասխանի. և լնուցու աշխատութեամբ ո-
րովայնի, յանդիմանել բանիւք՝ որ ոչ իցեն արժան,
և խօսիւք՝ որ ոչ իցեն յօգուտ»: Մեղադրէ զՅովբ,
իբրև թէ ոչ իցէ իմաստուն բանիւք, և ոչ իմաստ-
նոյ և համբերողի են արժանի բանքն. և յօրինէ
651 զբանսս իբրև հարցանելով, և այսպէս փորձի ցու-
ցանել, կամ իբրև թէ չէ հնար պատահել իմաստ-
նոյ որ Յովբայս պատահեաց, որպէս կարծէր Եղի-
փազ. վասն այսորիկ ասաց. «Ապաքէն իմաստունն
տացէ պատասխանի հանճարեղ հոգւով». քանզի հան-
ճարեղ ոգւովն ոգի է. վասն զի պատասխանել հան-
ճարեղ ոգւով՝ իմաստնոյն է վայելուչ: Եւ սորին նը-
մանս ի վերայ ածէ. «Եւ լնուցու աշխատութեամբ
որովայնի, յանդիմանել բանիւք որ ոչ իցեն արժան»:
Իբրև թէ ոչ ևս այս իմաստնոյ լինի և ոչ լնու.
այսինքն է՝ թէ լցուցանելով զցաւս ոգւոց արգանդի,
յայտ է թէ զսրտի. զի ցաւք նորա են սրտմտու-
թիւնք և տրտմութիւնք, յորմէ լեզուս գրգռի ասել
զբանս՝ որ ոչ է պարտ. և իբրև յատենի և ի դա-
տաստանի ասէ բանս՝ որ ոչ ինչ օգուտ ունին. և
յանդիմանել կարծէ նոքօք, զոր ոչ կարէ: Ընդ այ-
սոքիւ անգեալ Յովբ, ընդունայնս կարծէ զինքն ի-
մաստուն, և զուր նախատէ զայլս՝ իբրև զոչ իմաս-

տունս, քանզի ախտացաւ ոչ արժանիս իմաստնոց։
Այլ Սովփարայ ամբաստանութիւնն սաստիկ էր,
բայց ոչ կարացէ յայտ առնել զայն՝ որպէս ցուցա֊
նէ մեզ որ ըստ կարգիս է։
«Զորոյ և դու զերկիւղ մերժեցեր, և գումարեցեր
զայդպիսի բանս առաջի Տեառն. և պարտաւորեցար 652
բանիւք բերանոյ քո»։ Այսպիսի խօսեցար, ասէ, ոչ
ինչ են պէտք վկայից. և պարտաւորեալ ցուցցեն զքեզ
բանք լեզուի քո. և վասն է՞ր ասէ զայս. այլ զաներկիւ֊
ղութիւն նորա առ Աստուած և զմեծաբանութիւն
նորա առ Տէր տեսանելով՝ բամբասէր. վասն զի ա֊
սէր իսկ, եթէ «Գիտեմ զի արդար երևեցայց. քան֊
զի ո՞վ է օսոխն իմ, որ պատասխանի տացէ ինձ».
և դարձեալ «զի՞ թաքչիս յինէն»։ Համարիս զիս
իբրև օսոխ քեզ, վասն որոյ զաներկեղութիւն նորա
առ Աստուած՝ և զմեծաբանութիւն նորա առ Տէր՝
բամբասէ։ Քանզի մերժել նորա զերկիւղ Աստուծոյ՝
այսինքն է ուրանալ և մատնել և գումարել զբանս
առաջի Աստուծոյ, զի ցուցցէ եթէ ոչ յաջող խոր֊
հրդոց, այլ ի հնարագիտութեանց ոգիտութիւնս
բարբառի. վասն այսորիկ ասաց զնա պարտաւոր
բանիւք, իբրև զհամարձակեալ առաջի Աստուծոյ։
Այլ զայս ոչ ճշմարտութեամբ բամբասէր Եղիփազ,
և ոչ վասն Աստուծոյ նախանձու ասէր, այլ վասն
ինքեան և վասն բարեկամացն իւրոց, իբրև յայտ֊
նապէս յանդիմանեցելոց, որպէս ցուցանէ մեզ ըստ
կարգիս։
«Եւ (ոչ) քննեցեր զբանս հզօրաց»։ Ապա ուրեմն
ոչ առ Աստուած մեծաբանեալ էր Յովբայ. այլ վասն
զի զնոսա համարձակութեամբ յանդիմանէր, ընդ 653
այն զչարէին և վիրաւորէին. և զի վստահացեալ
յարդարութիւն՝ ոչ ինչ համարէր զընդունայն ամ֊
բաստանողացն զօրութիւն. և զայս ամաչելով յան֊
դիմանել զնա յառաջաբանն իւր, մեծաբանել ասէր
զնմանէն ընդդէմ Աստուծոյ, իբրու թէ ընդունայնս
բարբաջէր և ի զուր ակն ունէր. և ոչ յետ այսո֊

*րիկ կարացեալ համբերել, հարկաւորեցաւ զպատճառն յայտնել՝ վասն որոյ զՅոմբն բամբասէր։ Բայց էր զի ոչ ինչ համարէր զբանս հզօրաց։ Զայս ասէ ամաչելով Եղիփազ, զայն ոչ բերէ յառաջ, որով զնոսա բամբասելով ասէր. «Եւ դուք էք բժիշկք մեղանչականք, և ողջացուցիչք չարեաց ամենեքին». քանզի ցՅոմբ ասէ, թէ դու ես քեզէն անձին յանդիմանիչ և ամբաստան։*

*Ասէ թէ «Յանդիմանեսցէ զքեզ քո բերան՝ և ոչ ես։ Շրթունք քո հակառակ քեզ վկայեսցեն»։ Եւ ընդէ՞ր ոչ զայն ասեն որ է ի բնութեանն[1] իւրեանց՝ որպէս և զուր բամբասողաց և անիրաւ բարկացողաց։ Եւ իբրև ոչ կարացեալ պարտաւորել զՅոմբ, որպէս զանիրաւ խօսեցեալ, ապա ի դարձվանս հատանին, որ է անմտաց և հպարտաց։*

654 *«Իսկ զի՞րդ. մի՞ եթէ առաջի՞ն քան զմարդիկ ծնեալ իցես, կամ յառա՞ջ քան զբլուրս հաստատեցար»։ Բայց զայս Յոմբայ ուրեք չէ ասացեալ, և թէ ոչ ուրեք երևի պերճացեալ արդարն, եթէ յառաջ քան զամենայն մարդիկ լեալ իցէ։ Այլ և որչափ ուրեք խօսի, վասն ի սկզբանէ պատահելոցս ազգի մարդկանս, զառ հասարակաց զմարդկանս դէմս առնու։ Եւ ամբաստանել կամեցեալ Եղիփազու ըզՅոմբայ, վասն զի զբարձրագոյն և զաստուածայինն խօսի, լուր որպիսի՛ ի վերայ ածէ։*

*«Կամ զհրաման Տեառն լուա՞ր, եթէ ի քե՞զ եհաս իմաստութիւն»։ Բայց զայս ասէ անգոսնելով և հեգնելով, իբրև թէ ոչ իցէ լուեալ արդարոյն զոր հրամայեաց Աստուած, և ոչ այնպէս իմաստութիւն ունի որ կարասցէ նմա ցուցանել զայն. իբրև թէ ոչ է պարտ նմա համբաւել զինքենէ, եթէ աւելի ինչ գիտութիւն ունիցի քան զմարդկան բնութիւն. և վասն այսորիկ ասէ.*

*«Զի՞նչ է՝ զոր գիտես, և մեք ոչ գիտեմք. կամ*

1. յՕր. ի բնակութեանն, ուղղեցաք ըստ Վ.։

*զի՞նչ դու իմանայցես՝ և ոչ մեք»: Քանզի յառաջա֊
գոյն իսկ սաստեաց նոցա, եթէ կարկեցարուք զի
խօսեցայց. բայց զի նուազագոյն երևեցուսցէ զՅով֊
բայ իմաստութիւնն, իբրև թէ մանկագոյն իցէ ժա֊* 655
*մանակօք, ուստի լինիցի բազում գիտութիւն մարդ֊
կանս, դարձեալ լուր որպիսի ինչ ասէր:*

*«Նա և ի մեզ ծեր և հին աւուրց գոյ, և երի֊
ցագոյն քան զհայր քո աւուրբք». այսինքն հնա֊
գոյն: Բայց տակաւին սակաւ սակաւ ջեռեալ Եղի֊
փազու առ ի յանդգնագոյն դարովանս ձգի:*

*«Սակաւս քան զոր մեղարն տանջեցար»: Վասն
է՞ր. զի «առաւել մեծաբանս խօսեցար». ասա՛ թէ
զո՞ր: «Ընդէ՞ր յանդգնեցաւ սիրտ քո, կամ ընդէ՞ր
լկնեցան աչք քո»: Այս զմտաց ասէ, իբրև թէ զի
իշխեցին խօսել՝ զոր ոչ պարտ էր: Վասն է՞ր և կամ
զո՞ր:*

*«Զի թափեցեր զարտմութիւն առաջի Տեառն, և
հաներ ի բերանոյ քումմէ զբանս այդպիսիս»: Թե֊
րևս յայնժամ՝ յորժամ ասէր ցԱստուած Յովբ.
«Զձեռն քո ի բաց արա՛ յինէն, և ահ քո մի՛ զարհու֊
րեցուսցէ զիս. և ապա կոչեսցես զիս՝ և ես լուայց
քեզ, և եթէ խօսեսցիս՝ և ես քեզ տաց պատաս֊
խանի. քանի՛ ինչ են մեղք և անօրէնութիւնք իմ.
ուսո՛ ինձ՝ քանի՞ն իցեն»: Եւ այսպէս բարձրացու֊
ցեալ և աճեցուցեալ զբամբասանսն Յովբայ և զամ֊
բաստանութիւնն, եթէ իբրև ընդունայն սրտմտու֊
թեամբ եղեալ: Զի որպէս զնայն բամբասէր, դար֊* 656
*ձեալ ինքն ի նոյն անգեալ գտանի, քանզի սրտմտու֊
թեամբ հայհոյէր զարդարն. և անմտութեամբ ոչ
իմանայր, թէ վասն որո՛յ օրինակի զայն ասացեալ
էր Յովբայ: Որպիսի ինչ ի վերայ էած՝ ուսիր:*

*«Ո՞վ ոք իցէ մարդ որ եղև անարատ, կամ ո՞ ոք
կանանցածին լինելոց իցէ արդար»: Սակայն և
զայս Յովբայ յայտնագոյնս ասացեալ է այսու բա֊
նիւք. «Իսկ արդ ո՞վ իցէ սուրբ յաղտոյ, այլ և ոչ
ոք՝ թէպէտ և միօրեայ իցեն կեանք նորա ի վերայ*

*երկրի»։ Քանզի ոչ եթէ անգէտ էր Յովբ տկարու-
թեան ազգիս մերոյ. այլ և գիտելով՝ ոչ թագուցա-
նէր, այլ քարոզէր, որպէս և լուար, մեծաւ բարբա-
ռով։ Քանզի ինքն յառաջագոյն ասաց՝ որով Եղի-
փազս պերճանայր. քանզի ասաց որպէս և պարտ
էր. վասն զի իմաստութեամբ և հանդարտութեամբ
բարբառեցաւ։ Վասն որոյ ոչ ամբաստանութեան
արժանի է այլ գովութեան, վասն զի ոչ այնպէս
ինչ առընթեր եդ, որպէս և Եղիփազ այժմ բար-
բաջելով ասէ։*

*«Զի եթէ սրբոց ոչ հաւատայ, և երկինք ոչ են
անարատ առաջի նորա»։ Եւ վասն զի սուրբ է, ոչ
միայն հաւատայ սրբոց, այլ և հանգչի ի նոսա. և
657 երկինք զիա՞րդ ոչ են սուրբ, վասն զի բնակութիւն
են սրբոյն Աստուծոյ։ Այլ այս բարբաջանք են. այլ
անգոսնէր զՅովբ, եթէ ընդէ՞ր իշխեաց համարձա-
կութեամբ ասել, եթէ «Ո՞վ է ատեան իմ ընդ ո-
րում դատեցայց»։ Այլ և տեղի իսկ միանգամայն
կամեցեալ թողուլ բամբասանացն՝ զոր ըստ կարգիս
ի վերայ ածէ։*

*«Թո՛ղ թէ այր գարշ և անսուրբ՝ որ ըմպէ զանօ-
րէնութիւնս հանգոյն ըմպելւոյ»։ Եւ ոչ ամաչէ զայս
ասելով զՅովբայ, զոր և ոչ ինքն բանսարկուն իշ-
խէր ասել. ուստի և սա զանունն զարդարոյն լռէ,
ամաչելով. բայց սակայն զնա ակնարկէ, թէպէտ և
առանց դիմաց հանէ զբամբասանսն։ Վասն որոյ և
այժմ ի նա կոյս դարձեալ, միտ դիր որպիսի սահ-
ման դնէ վասն ամբարշտացն, զի ընդ նոսին և ըզ-
Յովբ թուեսցէ։*

*«Պատմեցից քեզ, լուր ինձ. զի որ ինչ տեսի պատ-
մեցից քեզ»։ Եւ զի՞նչ պէտք են նմա ասել, եթէ
լուր ինձ և պատմեցից քեզ. եթէ ոչ հարկանել կա-
մէր զՅովբ ի ձեռն այսոցիկ՝ որ ըստ կարգիս կայ,
և զի հաւատացուսցէ տեսանել՝ զոր ասելոցն է իբ-
րև հաստատուն զօլ. վասն որոյ և առընթեր եդ։*

658 *«Զոր իմաստունք ասեն». քանզի դու, ասէ, ոչ ի-*

մաստուն ես. «Եւ ո՛չ թաքուցին հարք իւրեանց». այսինքն թէ մեք՝ զոր դուդ բամբասեցեր, իբրև թէ ոչ ունիցիմք իմաստութիւն. ոչ միայն իմաստունք եմք, այլ իմաստնոց որդիք. և հարք՝ իբրև թէ որդիք մեր՝ ոչ թաքուցանեն զմեզ, այլ և յորդւոց և յաշակերտաց մերոց լսեմք, որչափ ինչ է յիմաստութեան:

«Նոցա միայն տուաւ երկիր», բայց քեզ ոչ տուաւ. «և ոչ եկն օտարածին ի վերայ նոցա», որպէս ի քո վերայ եկին, որք յափշտակեցին զմեծութիւնն:

«Ամենայն կեանք ամպարշտի, և նա հոգովք է»: Սուտ է բանս, քանզի զբազումս տեսանեմք յամբարշտաց, մանաւանդ զբազմագոյնս ի լիութեան և յանհոգութեան, թէպէտ և ոչ յամենայն ի կեանս իւր, այլ զբազում մասն կենացն լիութեամբ: Բայց սա շրջել կամի զՅովբայ ասացեալսն, զի այպանէր զլիութիւնն ամպարշտաց. միանգամայն և զինքն կամի ցուցանել, իբրև թէ ոչ իցէ ամպարիշտ, զի ի լիութեան էր:

«Ամք թուով տուեալ են հզօրի»: Եւ ոչ զայս
ճշմարիտ ասէ. քանզի յորժամ կամի Աստուած դա-
դարեցուցանէ զիշխանութիւնս հզօրի. քանզի ոչ
թուով ծառայէ և ոչ ժամանակաւ հարկաւորի: Վասն
զի Յովբայ ասացեալ էր, եթէ «Այր արդար և ան- 659
արատ եղև ի նախատանս. քանզի սահմանեալ ժա-
մանակաւ պատրաստեցաւ կործանել յօտարէ, և ըղ-
տունս նոցա աւերեալ յանօրինաց»: Զայն ժամա-
նակ ասէ, յորում թողացուցանէ Աստուած չարչա-
րիլ արդարոց ի մեղաւորաց, ըստ ուժոյ իւրեանց:
Զի ըստ իւրաքանչիւր չափու փորձեալք, և երե-
ւեալք եթէ վասն առաքինութեան ճգնեցան՝ պսա-
կեցին: Բայց սա ընդդէմ Յովբայ ասէ, եթէ
«Թուով ամս տուեալ է հզօրի». բայց և այս սուտ
է և որ ի կարգիս կայ:

«Եւ ահ նորա յականջս նորա»: Եւ զի՞րդ ու-

*նիցի յականջս իւր զահ՝ որ ոչ տայ զլսելիս իւր աստուածային օրինաց, և զականջս իւր ոչ տայ այնոցիկ՝ որ կարեն ցուցանել նմա զահ Աստուծոյ։*

*«Յորժամ համարիցի թէ ի խաղաղութեան իցէ, եկեսցէ կործանումն նորա։ Մի հաւատասցէ դառնալ ի խաւարէ»։ Ճշմարիտ է այս, բայց ոչ քո՝ այլ Յովբայ է. մի եթէ ո՞չ սա զայս յառաջագոյն ասէր. «Սակայն մի ոք որ չար իցէ՝ յուսասցի անպարտ լինել». ամենայն որ միանգամ բարկացուցանեն ըզՏէր՝ եթէ լինիցին նոցա խնդիրք։ Բայց ըստ կարգի ասացեալս Եղիփազու ոչ լինի, վասն զի ոչ եթէ ամենայն իրօք ընդ այսու անգանին ամպարիշտք։*

660 *«Զի հրամայեալ[1] է արդէն ի ձեռս երկաթոյ. կարգեալ է ի կերակուր անգեղաց»։ Զբազում ամպարիշտս տեսանեմք առանց երկաթոյ վախճանեալ ի կենաց. այլ և գեղեցիկ գերեզմանաց պատահեալ, և ոչ անգեղաց տուեալ։ Վասն զի ոչ ամենայն ամպարիշտք ըստ հատուցանեն զպարտիս։ Բայց և որ ի կարգիս կայ՝ յոյժ աւելիք թուին։*

*«Գիտէ ի միտս իւր՝ թէ մնալոց է ի կործանումն, որ մթին զարհուրեցուցէ զնա, անձկութիւն և նեղութիւն հասցէ նմա»։ Զայս թէպէտ և գիտէ ամպարիշտն, վասն զի գիտէ իսկ լսելով յարդարոցն, կամ ի բնական օրինէն[2] շարժեալ, այլ սակայն անձամբ ոչ գիտէ. քանզի ոչ ունի առ ընքեան զվասն այսոցիկ գիտութիւնս, այլ ախտանալով ի չարիս՝ մերժէ յինքենէ զայսպիսի գիտութիւն և զհաւատս, զոր համեմատեալ ընդ Յովբայ՝ բաջաղեալ Եղիփազու ըստ կարգիս, ասէ՝ որ բանսարկուին պատշաճ է. իսկ Եղիփազ զՅովբաւ արկանէ, իբրև թէ վասն մոլեգնութեան նմա նմանեաց[3], որպէս ինքն կարծէր։*

*«Իբրև զօրավար յառաջակաց կործանեալ, զի*

1. Վ. *համարեալ է անդրէն։*
2. Վ. *օրինացն։*
3. Վ. *զնա կործանեաց։*

*ամբարձ զձեռն իւր ընդդէմ Տեառն, և առաջի*
*Տեառն ամենակալի ընդվզեցաւ: Ընթացաւ առա-* 661
*ջի նորա թշնամանօք, թանձրութեամբ վահանի իւ-*
*րոյ: Զի ծածկեաց զերեսս իւր ճարպով իւրով, և*
*արար երկայրի յազդեր իւրում»: Զիա՞րդ պատշա-*
*ճէր Յովբայ, կամ ըստ որո՞ւմ օրինակի ասել(ի) է*
*վասն Յովբայ. քանզի ընդդիմամարտիկ է բանսար-*
*կուին՝ վասն որոյ զայս ասացեալ է: Քանզի սա էր*
*զօրավար և յառաջակայ հրեշտակական զօրութեանցն,*
*իսկ «համբարձեալ զձեռս իւր ընդդէմ Տեառն»՝ ան-*
*կաւ, այսինքն է ընդդիմանալ Աստուծոյ բաջաղե-*
*ցաւ և ընդվզեցաւ, այսինքն է հպարտացաւ առաջի*
*Տեառն ամենակալի, և «ընթացեալ առաջի նորա*
*թշնամանօք»: Քանզի դարձաւ ի չար ճանապարհս,*
*որովք թշնամանի Աստուած իբրև զբարերար. և զի*
*չար ոչ է նմա հաճոյ, և յայս յանդգնեցաւ թան-*
*ձրութեամբ վահանի իւրոյ. այսինքն է փախչելով*
*հարեալ: Քանզի ի պատերազմի՝ որք հարեալ լինին*
*և փախուցեալ, զվահանսն զուստվք արկանեն. բայց*
*նա թէպէտև հարեալ՝ տակաւին խստասիրտ կայ,*
*ուստի անուանեաց զնա թանձրութեամբ վահանի*
*իւրոյ: Այլ և «ծածկէ զերեսս իւր ճարպով իւրով».*
*այսինքն է լիութեամբ իւրով. քանզի թէպէտ և*
*յղփանայ չարեօք մեղաւորացն, համբառնալ զերեսս* 662
*իւր առաջի արարչին ոչ կարէ: Սա «արար երկայ-*
*րի յազդեր իւրում», քանզի թէպէտ և բանիւք հա-*
*մարձակութեամբ արար զերկայրին յազդեր, և կամ*
*թէ «պարարտութեամբ»՝ որպէս և Սիւմաքոս գը-*
*րեաց զերկոսին, ուստի բանսարկուն և երկոքումբ*
*ազդէ, ցանկութեամբք և գեղխութեամբք: Իսկ Յովբ*
*ոչ ամբարձ զձեռս իւր ընդդէմ Տեառն, և վասն*
*իւրոյ արդարութեանն՝ հանդերձ ստացուածովքն և*
*զմարմինն իւր ետ, և ոչ ընդվզեցաւ առաջի Տեառն*
*ամենակալի. քանզի զիա՞րդ մարթ էր նմա ընդվզել,*
*որ ասէրն, թէ «Տէր ետ և Տէր էառ. որպէս կամք*
*եղեն Տեառն՝ այնպէս և եղև»: Եւ ոչ «ընթացաւ ա-*

ռաջի նորա թշնամանօք»․ վասն այսորիկ էած ի վե-
րայ, «եղիցի անուն տեառն օրհնեալ»։ «Եւ զթան-
ձրութիւն վահանի» ոչ ունի զթիկամբք․ քանզի ոչ
իսկ էր խստասիրտ․ և ոչ «ծածկեաց զերեսս իւր ճար-
պով իւրով», վասն զի ոչ երբէք գտանի նա վստա-
հացեալ ի լիութիւն կենացս։ Այլ և «երկայրի ոչ
արար յազդեր իւրում», քանզի զի՞րդ առնէ երկ-
այրի յազդեր իւրում, որ զամենայն ցանգութիւնս
663 արհամարհեաց։ Ապա ընդունայն էած ի համեմա-
տութիւն զՅովբ՝ բանսարկուին և առն ամպարշտի,
զոր անիծանէր ըստ կարգիս, կարծելով եթէ հա-
սանիցեն նմա անէծք։

«Բնակեսցէ ի քաղաքս աւերեալս, և մտցէ ի
տունս անբնակեալս․ զոր նոքա պատրաստեցին՝ այլք
տարցին[1]։ Մի՛ մեծասցի և մի՛ մնասցեն ինչք նորա,
և մի՛ արկցէ յերկիր ստուեր, և մի՛ ապրեսցէ ի խա-
ւարէ։ Զբողբոջ նորա թառամեցուսցէ հողմ, թօթա-
փեսցի ծաղիկ նորա»։ Իսկ Յովբ զանապատ տեղիսն
վասն ախտիցն հարկաւորիւր խնդրել, և անբնակ
ունել զտունն․ քանզի օտարք էին որ յափշտակեցին
զստացուածս նորա․ և զշառաւեղ զուստերաց և ըզ-
դստերաց կորուսեալ՝ զրկեալ էր ի ծաղկէ։ Իսկ ու-
րեմն յայտնապէս զնա առակէր Եղիփազ, քանզի
ոտն իսկ հարկանէր և լուծանէր զճգնողն․ վասն ո-
րոյ և ըստ կարգիս առէ։

«Մի՛ հաւատասցէ՝[2] եթէ հանդարտիցէ․ քանզի
սնոտիք պատահեսցեն նմա», իսկ ապա և դու մի՛
հաւատար, իբրև թէ «յերկար պահեալ իցէ զհամբե-
րութիւն»։ Վասն է՞ր

«Կտրօն նորա տարաժամ հարցի, և շառաւեղ նորա
մի՛ բողխեսցէ։ Իբրև զխակակութն տարաժամ կթեսցի,
664 ցի, թօթափեսցի իբրև զծաղիկ ձիթենոյ»։ Վասն
զի ակն ունէր և յուսայր՝ թէ ի վերայ ներելոյն և

1. Վ․ կերիցեն։
2. Վ․ Մի՛ հանդարտեսցէ նմա։

*համբերութեան՝ յԱստուծոյ զհատուցումն ապակա֊
նութեան ընկալցի. և զկորօն նորա՝ այսինքն է ըղ֊
հունձս՝ տարաժամու ասէ. յայտ է թէ յառաջ քան
զժամանակ հատուցմանն ասէ։ «Եւ չառաւեղ նորա
մի՛ բղխեսցէ». այսինքն է, եթէ մի՛ լիցի ի լիու֊
թեան ոստ նորա և չառաւեղ նորա, և իբրև զխակ
տարաժամ կթեսցի, և իբրև զծաղիկ ձիթենւոյ թօ֊
թափեսցի։ Այսոքիւք յայտ առնէ եթէ յուսալով
մեծամեծս, և ակն ունել իբրու թէ ի ձեռին ունել,
վրիպեսցէ ի յուսոյն, և ակնկալութեան մի՛ պատա֊
հեսցէ։ Բայց զի ևս բռնագոյն մահու սպառնացի
Յոբայ՝ զայս դնէ առընթեր։*

*«Զի վկայութիւն ամպարշտի մահ է». զի որպէս
միանգամ իսկ ասացաք, եթէ բազումք յամպարըշ֊
տաց լիութեամբ մեռան։*

*«Հուր այրեսցէ զտունս կաշառառուաց»։ Եւ այս
իսկ ոչ ամենայն իրօք սովորութիւն է պատահել
կաշառառուաց, այլ և ոչ որ ի կարգիս գայ։*

*«Յղասցի զցաւս»։ Եւ զի՞նչ է ծնունդ յայնմանէ։
«Դիպեսցին նմա ունայնք. որովայն նորա կրեսցէ
զնենգութիւն»։ Կամ որ ի նենգութենէ է՝ զայն
կրեսցէ, և կամ զնենգութիւն իսկ, ընդունայնս կը֊
րելով որ ոչ ինչ լիցի նմա յայնմանէ օգուտ. զի ե֊* 665
*թէ զայս ամենայն կարծէր Եղիփազ՝ եթէ սաստ պա֊
տահեսցէ չարաց, ոչ բարիոք կարծէր և ոչ ճշմա֊
րիտ, քանզի բազում չարաց դատաստան ի հան֊
դերձեալ յաւիտենսն պահեցաւ։ Իսկ թէ վասն
հանդերձեալ հատուցմանցն ասէ, ընդունայն նախա֊
տէ զՅոբ, ընդունայնս դատապարտէր վասն վշտա֊
նալոյն։ Քանզի պայծառութիւնք կենաց ցանկու֊
թեան ծառայից առաւել ևս պատահեն. իսկ տրտ֊
մութիւնք՝ արդարոց։ Եւ զայս ոչ յանիրաւ սահմա֊
նեաց Աստուած, այլ յոյժ յիրաւի. քանզի (ոչ) եթէ
այսմ արժանի են արդարքս, որոյ լիութիւնքս նման
են տերևոց, և զօրութիւնս՝ ստուերի, և մեծու֊
թիւնքս՝ յարդի, և փառքս՝ ծխոյ. այլ արքայու֊*

*թեանն երկնից են արժանի և անապականութեան և անմահութեան և փառացն վերնոց՝ որոց վայելչութիւնն է ընդ հրեշտակս։ Վասն որոյ թէպէտ և այժմ քրտամբք աշխատեցին և բազում վշտաց պատահեցեն, ոչ մեղադրեցեն զգատաւորն, գիտելով եթէ փոքր նեղութեամբքս հասանեն փառացն հանդերձելոց՝ որ յայտնելոցն են ի մեզ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն, նմա փառք և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։*

## ԺԹ

666 *Կրկնեալ անդրէն Յովբայ ասէ. «Լուայ այդպիսի*
*ինչ բազում. մխիթարիչք չարեաց ամենեքին։ Իսկ*
*արդ մի՛ եթէ կա՞րգ ինչ իցէ բանից հողմոց, կամ*
*թէ թախանձիցէ՞ ոք զքեզ՝ զի տայցես պատասխա-*
*նի։ Եւ ես իբրև զձեզ խօսեցայց՝ եթէ հնազանդէր*
*անձն ձեր ընդ իմում անձին։ Արդ զկծեցուցից և*
*ես զձեզ բանիւք, շարժեցից և ես իբրև զձեզ զգը-*
*լուխ իմ։ Թերևս լիցի զօրութիւն ի բերան իմ, ըզ-*
*շարժել շրթանց իմոց ոչ խնայեցից։ Զի եթէ խօ-*
*սեցայց՝ ոչ փարատեսցեն ցաւք վիրաց իմոց, և ե-*
*թէ լռիցեմ՝ նուազագո՞յն ինչ վիրաւորիցիմ։ Այժմ*
*կոտորեալ արար զիս, փտեալ, ընդարմացեալ. և*
*բուռն հարեալ զինէն ի վկայութիւն եղեր ինձ։ Եւ*
*յարոյց ինձ զստութիւն իմ. քանզի արար ինձ*
*պատասխանի։ Բարկութեամբ վարեալ կործանեաց*
*զիս, կրճտեաց ի վերայ իմ զատամունս։ Նետք հի-*
*նից տեղացին ի վերայ իմ, տիգօք աչաց խաղաց ի*
*վերայ իմ։ Արագ երագ եհար զիս ի ծնօտս. միան-*
*գամայն ասպատակեցին ի վերայ իմ։ Քանզի մատ-*
*նեաց զիս Տէր ի ձեռս անիրաւին, և ի մէջ ամ-*
*պարշտաց ընկէց զիս։ Մինչդեռ ի խաղաղութեան*
667 *էի, քայքայեաց զիս. առեալ զվարսից իմոց փետ-*
*տեաց զիս։ Կացոյց զիս իբրև զդէտ, պատեցին զիս*

*տեգք։ Անխնայ խոցոտեցին զերիկամունս իմ, եհեղ յերկիր զմաղձ իմ, կործանեցին զիս հարուածք ի վերայ հարուածոց։ Յարձակեցան ի վերայ իմ զօրաւորք, կարեցին քուրձ ընդ մորթ իմ։ Զօրութիւն իմ յերկիր շիջաւ, խարշեցաւ փոր իմ ի լալոյ, և ի վերայ արտևանաց իմոց ստուերք մահու։ Անիրաւութիւն ինչ ոչ էր ի ձեռին իմում, աղօթք իմ սուրբ էին»։*

*Ամենայն առաքինութեանց հունձք բազում են, և կութք մեծապէս. և ամենայն գործք բարիք առատապէս ունին զհատուցմունս. ոչ վրիպի յուսոյ որ սրբապէս լինի Աստուծոյ զօրական, և ոչ սխալէ յակնկալութենէն՝ որ մտանէ հոգւոյն վարձկան, որպէս և պարտ է. այլ որպէս աստղ քան զաստղ պայծառագոյն է փառօք, նոյնպէս առաքինութիւն քան զառաքինութիւն վարձուք հատուցմանց։ Պայծառ է պարկեշտութիւն ամուսնութեամբ, բայց առաւել պայծառագոյն է ստ(աց)ուածն կուսութեան. սքանչելի է մեծութեամբ արդարութիւն, այլ անստացուածութեան պսակն ունի մեծապէս առաւելութիւն. բարձր է աշտարակ պահոց, բայց պիտոյ են նմա և աղօթք հանդերձ ողորմածութեամբ։ Զի յորժամ* 668
*զայս ևս նպաստ ինքեան առնուցու, հաստատուն է սահման վիճակին, և պտղալից է այգին, և իբրև զնաւ երեքառագաստեան կարէ արհամարհել զալիս աշխարհիս։ Որչափ և քննեսցէ ոք բանիւ՝ հիմն առաքինութեանց գտանէ զհամբերութիւն. զդոյն և խարիսխ պատուիրանաց, և աթոռ օրինաց, և սիւն հաւատոց, և աստիճան շնորհաց։ Քանզի այսուիկ եղև Աբրահամ հայր հեթանոսաց[1] և սիրելի Աստուծոյ, և Սահակ ըստ նմանութեան կերպարանաց Միածնին եղև պատարագ, և Յակոբ կրէր զգաւազանն փոխանակ խաչի, և որ փախուցեալն էր՝ դառնայր անդրէն լի մեծութեամբ։ Այսուիկ պատե-*

1. Վ. *հաւատոյ*։

բազմեալ և Յովբ՝ կանգնէր յաղթութեան նշանակ.
Թէպէտ բազումք և մեծամեծք էին նորա ընդդիմա-
մարտիկք, և մերկ գոլով՝ իբրև վառեալ ահագին
երևէր մարտնչողացն. Նա յերկրի վերայ կայր, և որք
զնայն խափանել կամէին ի վերայ օդոցն գլորէին.
Նախատողքն զգեցեալ էին զծիրանիս, և նա զվէրս.
669 այլ սակայն երկնային զօրութիւնքն զնա չքեղագոյն
տեսանէին. Նոցա մեծութիւնքն աճէին, և սորա աղքա-
տութիւնս յոլովէր. Նոցա յիշատակն այպնի ի մեծաց
և յաղքատաց, իսկ սա յետ բազում ազգաց՝ ի Թա-
գաւորաց խնդրի և ի քահանայից քարոզի, աղքատք
փառաւորեն և մեծամեծք սպասաւորեն, և ամենայն
ազգք ընդ Յովբայ իբրև ընդ հայելի արդարութեան
հային: Եւ զի՞նչ պարտ է բազում ինչ խօսել. կա-
մի՞ս ուսանել զոյժ համբերութեանն՝ յորում էր Յովբ.
երեք բարեկամք էին՝ որ նախատէին զՅովբ, առողջք
մարմնով, և զուարթք մտօք՝ վասն լիութեանն կենաց
աշխարհիս. որք և վաստակելով բանիւք զմիմեանս
հանգուցանէին. իսկ Յովբ միայն էր, և մարմինն
վիրաւորեալ էր, և անձամբ տրտմեալ էր. այլ սա-
կայն երկայնմտութեամբն լուծանէր զհզօրս, և համ-
բերութեամբն զջերմ և զատէպ ատէպ ճարտարաբա-
նութիւնս նախատողացն դադարեցուցանէր, որք ընդ-
ունայն յուսացեալ էին ի բարբաջմունս բանիցն:
Աւասիկ և այժմ զնոսա դադարեցուցանել կամեցեալ,
ուսի՛ր որպիսիս ինչ դնէ ընդդէմ նոցա:

«Կրկնեալ Յովբայ ասէ»: Քանզի ընգալեալ զյոր-
670 ձանս նախատողացն. ի բաց մերժեաց համարձակու-
թեամբ արդարութեանն:

«Լուայ բազում այդպիսիս ինչ»: Ընդունայն, ասէ,
վաստակիք, և ի զուր աշխատիք. քանզի ոչ եթէ
բազմութիւն բանից օգուտ առնէ լսողաց, այլ իմաս-
տութիւն ասողին. ոչ սահանք լեզուի, այլ զգաս-
տութիւն մտաց: «Լուայ այսպիսիս ինչ բազում»:
Քանզի ընդվայր բանիւք լի են հրապարակք և ժո-
ղովք արբեցողաց, որպէս ոչ պիտոյ են բանք նոցա,

*դոյնպէս և ոչ ձեր բանքդ համարեալ ինչ են ուղիղ՝*
*իմաստասիրաց։*
*«Բազում մխիթարիչք չարեաց»։ Մխիթարիչք*
*էք՝ այլ չարաչար. ոչ ոք ի բարիս մխիթարէ, այլ ա-*
*մենեքեան ի չարիս. ուսուցանէք, և խրատէք, և*
*հրաւիրէք, ոչ որպէս զի պարտ է փախչել ի փոր-*
*ձութեանց, այլ եթէ որպէս ընկալցին ի փորձա-*
*նաց։ Փորձութիւնք ոչ եթէ որպէս պարտ է դա-*
*դարեցուցանել զմրրիկն, այլ եթէ զիա՞րդ յարիցեն*
*խռովութիւնք վնասու ի խաղաղութենէ անտի։*
*«Իսկ արդ մի՛ եթէ կա՞րդ ինչ իցէ բանից հող-*
*մոց»։ Ոչ ի բարւոյն այլ ի չարէն, յորմէ դուք*
*այժմ ազդեալք՝ անկարգս խօսիք, և անվայելուչս*
*ճարտարաբանէք, և անդադարս պատրէք՝ յոչ ումե-* 671
*քէ հարկաւորեալք։*
*«Կամ թախանձիցէ՞ ոք զքեզ՝ զի տայցես պա-*
*տասխանի»։ Քանզի զիս նեղեն վէրքս և խոցեն*
*ցաւքս և տրտմեցուցանեն յիշատակք որդւոցն և*
*այլ բազում ինչ որ այսպէս փորձութիւնք ի վերայ*
*գան. և վասն այսորիկ խօսել հարկաւորիմ, և յոր-*
*դորիմ ի հեծել. այլ սակայն համբերութեամբ ըղ-*
*բանան յարժանիս յօրինեմ, և խառնեալ զհեծու-*
*թիւնս ընդ երկայնմտութիւն, առ ի յօգուտ լսո-*
*ղաց՝ վարդապետութեամբ խօսիմ։ Բայց դու ընդէ՞ր*
*նեղես և խօսիս ունելիս, և պատասխանես ընդու-*
*նայնս։*
*«Նա ես իբրև զձեզ խօսեցայց»։ Այսինքն է՝ ան-*
*մտաբանեցից, մանաւանդ թէ անիծից որպէս և*
*դուք։*
*«Եթէ հնազանդէր անձն ձեր ըստ իմում անձին»։*
*Զի էր եթէ դուք անգեալ էիք ի փորձութիւն փո-*
*խանակ իմ, զի և զձեր համբերութիւն տեսանէի,*
*զի փորձէի[1] եթէ սակաւ ինչ գո՞յր ի ձեզ համբե-*
*րութիւն. մանաւանդ զի գիտէիք դուք զՅովբայ*
*վշտակցութիւն։*

1. Վ. *ես փորձեալ զձեզ գտանէի սակաւահամբերս. յՕր. զի փորձ և եթէ։*

«Արդ զկծեցուցի՞ց և ես զձեզ բանիւք, չարժե-
ցի՞ց և ես իբրև զձեզ զգլուխ իմ»։ Զայս իբրև հար-
672 ցանելով ասացեալ է, և ոչ իբրև վիճելով։ Այսինքն
է թէ արդեւք զկծեցուցի՞ց զձեզ բանիւք, կամ չար-
ժեցի՞ց արդեօք զգլուխ իմ ի վերայ ձեր։ Ո՛չ ամե-
նևին։ Քանզի արդարոց վայել է զտառապանս զայ-
լոց զանձամբ առնուլ, և ոչ ոտն հարկանել, և ոչ
չարագոյն ծանրանալ, որպէս և դուք ծանրացեալ
էք ի վերայ փորձութեանցս իմոց. այլ և ցուցանէ
իսկ եթէ ոչ կամի զթուլանալ զցաւոցն իւրոց, և ոչ
կակղագոյն գտաւ առ ի մրցմունսն՝ ճգնօղն, որպէս
ըստ կարգիս ցուցանէ։

«Թերևս լիցի զօրութիւն ի բերան իմ»։ Յայտ է
թէ յԱստուծոյ։ «Զշարժել շրթանց իմոց ոչ խնայե-
ցից»։ Քանզի Յովբայ համարձակութիւնն զԱստու-
ծոյ փառաբանութիւն հանապազ ունի առ ինքեան.
թէպէտ և դուք չգիտէք զասացելոցս զօրութիւնն,
և կամ թէ գիտելով ի թշնամւոյն կողման լինիք՝
թողեալ զբարեկամութիւն։ Բայց սակայն ես ոչ
նուաղեցայց ի համարձակութենէս։

«Զի եթէ խօսեցայց՝ ոչ ցաւեսցեն վէրք իմ»։
Վասն զի զմեծամեծ հիւանդութիւնս բժշկեն բանք
արդարոց, թող թէ զփոքունս։

«Եւ եթէ լռիցեմ՝ նուազագո՞յն ինչ վիրաւորի-
673 ցիմ»։ Այսինքն է՝ եթէ ոչ է հնար թշնամւոյն ոչ
իւիք իրօք հրաժարել յարձակմանէ՝ որ ի ծածուկն
մարտնչի, և ոչ ի նենգութենէ դադարել. թէպէտ և
լռեցից և կամ դադարեցից ի բանիցս, այլ նա ոչ
դադարէ ի զինուց անտի. զոր և ըստ կարգիս ի վե-
րայ ածէ՝ ողբալով զզայրագնութիւն թշնամւոյն։

«Այժմ կոտորեալ արար զիս, փտեալ և ընդար-
մացեալ»։ Կոտորեալ վիրօքս, փտեալ թարախովքս,
և ընդարմացեալ ախտիւքս. քանզի տեսանելով վի-
րօքն զգովութիւն և այնչափ սաստիկ փորձութեամբքն
տեսանելով ի համբերութեան, իբրև զընդարմացեալ
և զյիմարեալ բամբասէին. զայս ասացեալ Յովբայ՝

ցուցանէ եթէ որչափ չահք էին նմա ի յարձակմա֊
նէ պատերազմողին. վասն զի ոչ գիտէ եթէ պսակէ՝
որովք կարծէն նենգել. առ որս ասէ ըստ կարգիս։
«Եւ բուռն հարեալ զինէն ի վկայութիւն եղեր
ինձ»։ Քանզի բուռն եհար ոչ միայն զընչից և սառա֊
ցուածոց, և զուստերաց և զդստերաց, այլ և զին֊
քենէ իսկ զՑովբայ՝ բուռն հարեալ ի մրցումն և ի
պատերազմ առեալ բանսարկուին. այլ սակայն այս 674
ի վկայութիւն եղև արդարոյն, քանզի վկայեցաւ
իսկ և ի թշնամեացն։ Ուստի և յետ սակաւ ժամուց,
զայս Աստուած խօսի ընդ նմա. «Կարծես եթէ այլ
ազգ ինչ խօսեցայ ընդ ձեզ, բայց եթէ զի երևես֊
ցիս արդար». բայց թերևս իբրև զաստուածազգեստ.
և զի ամենայն իրօք առ ի վկայութիւն նորա լինե֊
լոց էին ախտքն, զայս ակնարկէ. վասն զի զՔրիս֊
տոսէ նշանակէ յետ այսոցիկ՝ բանիւքս։
«Եւ յարոյց ինձ զստութիւն իմ»։ Յուդա, ասէ.
քանզի նա աշակերտ իմ էր և առաքեալ, իսկ սուտ
գտեալ՝ մատնիչ եղև։
«Քանզի արար ինձ ընդդէմ պատասխանի». յոր֊
ժամ ցաշակերտսն ասէր. եթէ «Ամէն ամէն ասեմ
ձեզ, թէ այսօր մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս».
և նա դէմ յանդիման իմ անամօթութեամբ համար֊
ձակեցաւ ասել. «Մի՞ եթէ ես իցեմ վարդապետ»։
«Բարկութեամբ վարեալ կործանեաց զիս»։ Որ
ի ձեռն նորա ազդեաց զմատնութիւնն, և ի ձեռն
Կայիափայ զխաչն, և ի ձեռն սպասաւորացն զապ֊
տակսն, սա կործանեաց զիս. այսինքն է՝ բազում և
չարաչար հարուածովք եհար զիս։
«Կրճտեաց ի վերայ իմ զատամունս»։ Ոչ ինչ 675
գտեալ յիս յայնցանէ զոր կամէրն գտանել, այլ և
թափեաց յիս զամենայն հնարագիտութիւնս իւր,
որպէս ցուցանէ իսկ որ ըստ կարգիս կայ։
«Նետք հինից նորա տեղացին ի վերայ իմ»։
Փարիսեցւոց և դպրաց և այլոց որք փորձէին զՅ֊
Յիսուս։

*«Տիգօք աչաց խաղաց ի վերայ իմ»: Տէգք ասին սուրք խոցոտիչք, յորմէ ոչ ինչ ընտրին շարժմունք աչաց բանսարկուին, որով ազգին ամենայն չարք՝ մանաւանդ կեղծաւորք, և իւրաքանչիւր ոք յամպարշտաց՝ իշխանքն Հրէից, որք ի ժամանակի խաչելութեանն՝ և գործովք և բանիւք յարձակէին ի վերայ Քրիստոսի:*

*«Արագ արագ եհար զիս ի ծնօտս»: Յայտնապէս ասէ զսպասաւորէն որ եհար զծնօտ Նորա:*

*«Միանգամայն ասպատակեցին ի վերայ իմ»: Որ ժողովեցան յապարանս Կայիափայ. վասն որոյ ասէ աւետարանիչն. «Եւ նոցա առեալ զՅիսուս տարան առ Կայիափայ քահանայապետ, ուր էին դպիրք և ծերք ժողովեալ»: Վասն որոյ և զայս աւասիկ ի վերայ էած. «Քահանայապետք և ամենայն ժողովն*
676 *խնդրէին սուտ վկայութիւն ի վերայ Յիսուսի, զի սպանցեն զնա». վասն զի ինքն իսկ Միածինն կամէր զայս կամօք Հօր. վասն մերոյ փրկութեան չարչարէր և ոչ հարկաւորէր ի մարդկեղէն զօրութենէն: Տես որպէս ցուցանէ զայս այսօքիւք որ ի կարգիս կայ:*

*«Քանզի մատնեաց զիս Տէր ի ձեռս անիրաւին, և ի մէջ ամպարշտաց ընգէց զիս: Մինչդեռ ի խաղաղութեան էի, քայքայեաց զիս. առեալ զվարսից իմոց փետտեաց զիս»: Զայս ասէ լինել ի Տեառնէ, յայտ է եթէ ի Հօրէ. վասն զի ոչ միայն իւրով կամօք, այլ և Հօր, քանզի մի են կամք Հօր և Որդւոյ, և որչափ ինչ կամեցաւ սքանչելագործութիւն առնել վասն մեր և չարչարիլ վասն մերոյ փրկութեան: Իսկ յորժամ այս այսպէս է, եկայք համեմատեսցուք զՅովբայ բանս և զՓրկչին՝ որ վասն մեր ասացան: «Քանզի մատնեաց զիս Տէր ի ձեռս անիրաւին», Կայիափայ՝ վասն զի նորա հարցեալ զնա՝ ասէր, թէ «Երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի, զի ասասցես մեզ՝ եթէ դո՞ւ իցես Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ»: Եւ*

պատահեաց պատասխանւոյն՝ որում ոչ էր արժա-
նի, այլ վասն երդմանն լուաւ զհարցուածոյն պա-
տասխանիս. «Այսուհետեւ տեսջիք զորդի մարդոյ 677
նստեալ ընդ աջմէ զօրութեանն, եւ զի գայցէ ընդ
ամպս երկնից». եւ զպատմուճանն իբրեւ ի վերայ
հայհոյչի պատառեաց: «Եւ ի մէջ ամպարշտաց
ընգէց զիս»: Ի նորա եւ յայլոց իշխանաց Հրէից:
Քանզի զիա՞րդ ոչ էին ամպարիշտք, որք զՊիղատոս
աղաղակէին, եթէ «զսա բարձ ի մէնջ եւ արձակեա
մեզ զԲարաբբա՝ որ ըմբռնեալ էր վասն ամբոխի ե-
ղելոյ ի քաղաքի, եւ վասն մահապարտութեան ար-
կեալ էր զնա ի բանտ», զոր եւ գտցես աւետարանա-
կան բանիւն գրեալ:
«Մինչդեռ ի խաղաղութեան էի քայքայեաց զիս.
առեալ զվարսից իմոց փետտեաց զիս»: Վարսս իւր
յիրաւի ասասցէ Քրիստոս իբրեւ զզարդ գլխոյ՝ զա-
ռաքեալսն, զի նոքօք էր ի խաղաղութեան. իսկ
վասն չարչարանացն թողեալ զՔրիստոս աշակեր-
տացն ցրեցան, եւ վասն այսորիկ ասէ. «Մինչդեռ
էի ի խաղաղութեան ցրեաց զիս, առեալ զվարսից
իմոց փետտեաց զիս»: Բայց այս ըստ որո՞ւմ օրի-
նակի եղեւ, ինքն Տէր ասաց ցառաքեալսն. «Ամե-
նեքեան դուք գայթագղելոց էք յինէն յայսմ գիշե-
րի». յայտնապէս այսուիկ կատարեցաւ, որ ասէ.
«առեալ զվարսից իմոց փետտեաց զիս»: Եւ դար-
ձեալ յետ այսորիկ առ ընթեր եդ. «Չի գրեալ է, 678
եթէ հարից զհովիւն եւ ցրուեսցին խաշինք հօտին»:
Իսկ ուրեմն այսու կատարեալ գտանի, եթէ «մինչ-
դեռ ի խաղաղութեան էի՝ ցրեաց»:
«Կացոյց զիս իբրեւ զդէտ». որոց արժան է նմա-
նել փրկչին եւ վարդապետի համբերութեամբ եւ չար-
չարանօք, յուսով բարեաց եւ հատուցմամբք փառաց.
որպէս եւ Պաւղոս ասէր, եթէ «Համբերութեամբ
ընթասցուք յառաջիկայ ասպարիսին, հայելով յա-
ռաջնորդն հաւատոց եւ ի կատարիչն Յիսուս. որ փո-
խանակ առաջիկայ ուրախութեանն՝ համբեր խաչի,

արհամարհեաց զամօթ, և նստաւ ընդ աջմէ աթո֊
ռոյն Աստուծոյ»․ և որ ըստ սոցին ի կարգի է։
«Պատեցին զիս տիգօք, յանխնայ խոցոտեցին զե֊
րիկամունս իմ»։ Պատեցան զնովաւ տիգօք դաան
զինուորաց, որք առեալ զնա յապարանիցն տարան
զնա ի տեղի կառափելոյ, և խոցոտեցին զերիկա֊
մունս նորա․ որք խոցեցին զկողս նորա յորժամ
փրկչական ջուրն և արիւն ելանէր ի նմանէ։
«Հեղին յերկիր զլեղի իմ», յորժամ խնդրեաց ի
նոցանէ ըմպել, և խառնեցին քացախ ընդ լեղի և
մատուցին նմա․ և վասն այսր խառնելոյ՝ իբրև զիւր
անուանեաց զլեղին, զոր իբրև ճաշակեաց՝ եթող ի
բաց վասն յոյժ դառնութեանն, զի ոչ ոք կարէր
679 ըմպել, հարկաւորեցաւ հեղուլ ի գետին․ ուստի և
այս առ ի յամբաստանութիւն Հրէիցն է գրեալ․ զի
մատուցանէին նմա ըմպելի՝ զոր ոչ ոք կարէր ըմպել։
«Կործանեցին զիս հարուածովք ի վերայ հարուա֊
ծոց»։ Քանզի ոչ եթէ միադիմի ինչ էին չարչա֊
րանք Քրիստոսի, քանզի ազգի ազգի չարչարանք
եկեալ էին ի վերայ նորա ի Հրէից անտի, կափանք
և ապտակք․ քանզի տանջեցին զնա յառաջագոյն
մտրակօք, և յետ այսորիկ թքանէին ընդ երեսս նո֊
րա, և աստի անտի հարկանէին զկզակս նորա, և
եղեգամբ զգլուխ նորա ծեծէին, և այլ որչափ ինչ
իմանային․ և յետ այնր ամենայնի հանին ի խաչ,
և այնպէս ևս ոչ դադարէին, և ազգի ազգի հարուածք
գային ի նոցանէ․ և կործանեցին, ասէ,ածելով
հարուածս ի վերայ հարուածոց․ և զաշակերտացն
զչարչարանս զանձամբ առնոյր, քանզի ոչ միայն
զՅուդա ի մատնութիւն գրգռեցին, այլ և զՊետրոս
յուրացութիւն բռնադատեցին։
«Յարձակեցան ի վերայ իմ զօրաւորք, կարեցին
քուրձ ընդ մորթ իմ»։ Աստ բռնաւորս անուանեաց՝
որք չարութեամբն էին բռնաւորք․ որպէս էին այ֊
նոքիկ զորոց Դաւիթն ասէր․ «Զի՞ պարծի ի չարու֊
680 թեան հզօր»․ սոքա կարեցին քուրձ ընդ մորթ

*Տեառն, զոր ածին ի վերայ տէրունական մարմնոյն*
*տանջանս բազմադիմիս։*
*«Զօրութիւն իմ չիջաւ յերկիր»։ Բարւոք եդ առ*
*ընթեր՝ եթէ «յերկիր», այսինքն է՝ ի մարմին. քան-*
*զի մեռեալ մարմնովն խաղաղութեամբ կայր ի մէջ*
*նոցա, մինչև ի ժամանակ յարութեանն ոչ ինչ ազ-*
*դելով. զի ցուցցի եթէ ճշմարտութեամբ առ յանձն*
*զվասն մեր մահն։*
*«Խարշեցաւ փոր իմ ի լալոյ»։ Փոր իւր զախ-*
*տակցութիւնն կոչեաց. վասն զի զմարս առ ի սէր*
*և առ ի գութ փոր իւր շարժէ, և զԱստուած*
*առ ի մեր խնայումն՝ ախտակցութիւն։ Իսկ խարշէր*
*փոր ի լալոյ՝ վշտակից կամք փրկչին, քանզի ողբայր*
*զՀրէիցն զմերժումն և զկորուստ ազգին Աբրաամու։*
*«Եւ ի վերայ արտևանաց իմոց ստուերք մահու»։*
*Ոչ մահ՝ այլ ստուերք մահու, քանզի մեռանէր փրր-*
*կիչն մեր մարմնով. իսկ ի վերայ արտևանանց ըս-*
*տուեր մահու ունէր, որպէս և քնով. ուստի և հայ-*
*րապետն Յակոբ մարգարէանալով զվասն մեր նորա*
*մահն՝ աւասիկ օրհնութեամբ զայս բարբառէր. «Ի*
*զաւակէ որդեակ իմ ելեր բազմեցար, ննջեցեր իբ-*
*րև զառեւծ, իբրև զկորիւն առեւծու»։ Եւ արդ՝ ո՞վ*
*իցէ, որ յարուցանիցէ զնա. քանզի ոչ ինչ էր նմա* 681
*պիտոյ՝ որ յարուցանիցէ, որ զամենայնն յարուցա-*
*նէր. բայց ինքն կամօք իւրովք յարոյց զինքն։*
*«Անիրաւութիւն ինչ ոչ էր ի ձեռին իմում»։*
*Քանզի այս է վասն որոյ ասացեալ է յաստուածա-*
*շունչ գիրս. «Որ ոչ արար անիրաւութիւն և ոչ գը-*
*տաւ նենգութիւն ի բերան նորա»։*
*«Աղօթք իմ սուրբ էին»։ Վասն զի սուրբ էր ի*
*արտմտութենէ և ի բարկութենէ. և յայտնի էր զի*
*վասն Հրէիցն՝ որ խաչէին զնա՝ աղօթէր. «Հայր*
*թող սոցա. զի ոչ գիտեն զի՞նչ գործեն»։ Իսկ ու-*
*րեմն մարգարէ էր Յովբ և աստուածազգեաց՝ որ*
*տուգութեամբ բանիւ կարէր մեզ ցուցանել զՔրիս-*
*տոսի չարչարանսն, իբրև յանդիման տեսանելով.*

վասն այսորիկ իբրև յիւրոց դիմաց ասաց, զի ցուց-
ցէ նախնեաց նոցա, որչափ մարթ էր մարդկան
քննել. և մեզ ապա զդոյն ցուցանէ։ Քանզի ոչ եթէ
պարծելով ասէր զայս արդարն, այլ զի զբարեկամսն
և զայլ ամենայն ազգս, որ առ ի յապա են, ածցէ
առ ի նմանել. զոր իբրև զբարի կնիք եթող մեզ
բանիւ զսուրբ աղօթսն, մխիթարելով իբրև զհաւա-
682 տարիմս, և խրատելով զամենայն բարեպաշտս ի
սրբութիւն աղօթից. և այնպէս պահեսցեն զնոսա
որպէս և Պաւղոսն ասէր. «Կամիմ աղօթել մարդ-
կանս, յամենայն տեղւոջ համբառնալով զսուրբ ձեռս
առանց բարկութեան և երկմտութեան». քանզի այս
աղօթք են սուրբ, յորժամ ձեռք յագահութենէ և
յամենայն աղտոց սուրբ իցեն։ Քանզի զի՞րդ կա-
րասցեն մեզ նշանակել արդարք, բայց եթէ ներքին
մարդն ազատ ի բարկութենէ, և ոչ թաւալի ընդ
երկմտութիւնս՝ աղօթելով. զի մի՛ բաջաղեսցի ի ժա-
մանակին՝ յորում մանաւանդ առաւել պիտոյ է ըզ-
գաստութիւն։ Վասն զի ընդ Աստուծոյ իսկ խօ-
սիմք, և ի մեծ թագաւորն մերձենամք, որ լուա-
նայ զաղտս մեր և սրբէ զապականութիւն մեր.
և պարտ է մեզ մերժել զերկմտութիւնս մեր, եթէ
կամիմք հասանել՝ զոր խնդրեմքն. և զաչս մեր պի-
տոյ է առ նա ուղղել, ուստի և զխնդրուածսն առ-
նուլ ունիմք ակն։ Մի՛ եթէ յորժամ զդատաւոր
ոք աղաչիցէ և կամ զթագաւոր աղերսեսցէ, և կամ
Տեառն բարեխօսութիւն մատուցանիցէ, և կամ ըզ-
683 բարեկամ ողոքիցէ, զդէմս յե՞տս դարձուցանէ, և
կամ զերեսս ի կո՞ղմն շրջիցէ և կամօք ընդ ա՞յլ
հայիցի։ Ո՞չ զի թէ զայս առնիցէ, բարկացուցանէ
զայն զոր աղաչել կամի, և վրիպէ ի խնդրուածոցն
իւրմէ, և թշնամի դառնայ ի նմանէն։ Ուստի պարտ
է մեզ զաչս մտաց մերոց աղօթիւք ընդ Աստուած
նայեցուցանել, և անմոլար սրբութեամբ և առանց
հեղգութեան և կարճմտութեան հայել ընդ Աստուած
Հայր, և Որդի, և սուրբ Հոգի, այժմ և միշտ և
յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# Ի

«Երկիր, մի՛ ծածկեր զարիւն մարմնոյ իմոյ, և
մի՛ լիցի տեղի աղաղակի իմոյ։ Եւ արդ ահա յեր-
կինս է վկայ իմ, և իրաւագէտն իմ ի բարձունս։
Հասցեն խնդրուածք իմ առ Տէր, և յանդիման նո-
րա կաթեցուսցէ ակն իմ։ Եղիցի յանդիմանութիւն
առն առաջի Տեառն, և որդւոյ մարդոյ առ ընկերի
իւրում։ Ամք թուով հասին. ընդ ճանապարհ ան-
դարձ գնացից։ Հողմավար կորնչիմ, կարօտիմ գե-
րեզմանի՝ և ոչ հասանեմ։ Տառապիմ աշխատեալ՝ և
զի՞նչ գործեցից։ Գողացան օտարք զստացուածս իմ.
684 ո՞վ է նա ընդ ձեռին իմում կապեսցի։ Զի զսիրտ(ս)
իւրեանց թաքուցին յիմաստութենէ, վասն այսորիկ
մի՛ բարձրացուսցես զնոսա։ Ի մասին իւրում պատ-
մեսցէ զչարութիւնս. աչք իմ ի վերայ որդւոց հա-
լեցան. եդիր զիս բամբասանս ազգաց, եղէ նոցա
ծաղր։ Շլացան ի բարկութենէ աչք իմ, պաշարեալ
եմ մեծապէս յամենեցունց։ Զարմանք կալան զճշ-
մարիտս ի վերայ այսոցիկ, արդար ի վերայ անօ-
րինի յարիցէ։ Կալցի հաւատարիմն զիւր ճանա-
պարհն, սուրբն ձեռօք առցէ քաջալերութիւն։ Բայց
աղէ դուք եկայք յարեցարուք ամենեքեան, քանզի
ոչ գտանեմ ի ձեզ ճշմարտութիւն։ Աւուրք իմ ան-
ցին շառաչով, պայթեցին երակք սրտի իմոյ։ Զգիշեր՝
տիւ եդին, լոյս մերձեալ յերեսաց խաւարի։ Զի
եթէ համբերից՝ դժոխք են տուն իմ, ի միգի տա-
րածեալ են անկողինք իմ։ Զմահ կոչեցի ինձ հայր,
մայր և քոյր ինձ՝ զերր։ Արդ ո՞ւր է յոյս իմ, կամ
թէ զբարութիւնս իմ տեսեա՞լ իցեմ։ Կամ թէ ընդ
իս ի դժո՞խս իջանիցեն, կամ թէ միանգամայն ի
հո՞ղ իջանիցեմք»։
685 Բարւոք առաջնորդս մեզ շնորհեաց Աստուած զար-
դարս՝ առ ի յառաքինութիւն. և այգեգործս կա-
ցոյց ոգւոց մերոց զաստուածազգեստեալսն, և փու-

*թացուցիչս կարգեաց մեզ զընթացեալսն և զյաղթողս։ Քանզի ո՞վ է որ տեսանէ զԱբրաամ, և ոչ պատրաստի բանալ զտաղաւար իւր, և ընդ առաջ ելանել օտարաց, և լուանալ զոտս և դնէ առաջի սեղան, և ոչ ինքն սպասաւորէ։ Եւ զի նոր ինչ է երևելի ի տան նորա՝ սպասելով թէ երբ ինքն օտարընդունել եղիցի Աստուծոյ, և բարեկամ կոչեսցի արարչին, և երբ հայրապետ կոչեսցի, ոչ մարմնաւոր՝ այլ հոգևոր վիճակին։ Եւ ո՞վ ոք տեսանելով զՅովսէփ, ոչ համարձակապէս յանդիմանեսցէ զամենայն կին անվայելուչ, թէպէտ և տիկին իցէ և կամ թէ ի մեծութեան իցէ, և կամ թէ ի լիութեան իցէ, և կամ թէ առաւելագոյն իցէ քան զամենայն իշխանութիւնս երկրի. նա զիւր նախանձ ոչ թողացուցանէ, և ոչ զմիտսն իգացուցանէ, և զքաջութիւնս իւր ոչ մատնէ, ցանկայ կապիլ վասն*
686 *օրինաց, և վասն արդարութեան մտանել ի բանտ. և չղթայից ակն ունել իբրև պսակի։ Քանզի ո՞վ է որ ոչ գիտէ, թէ ամենայն որ այսպիսի է, ոչ միայն Եգիպտոսի՝ այլ և երկնից թագաւորութեանն հաւատարիմ գտանիմ։ Ո՞ զայնչափ և զայնպիսի ճգնողն տեսանելով, ոչ երանէ զհրաժարումն ընչից, և զմերկացումն ստացուածոց, որով յորժամ կամիցի եթէ աղքատանայ՝ յայնժամ մեծատուն համարի զինքն. յորժամ ընդ բազում փորձութիւնս մարտընչիցի՝ յայնժամ մեծապէս տեսանէ աճեալ զառաքինութիւնն։ Իսկ եթէ ընդ զրպարտիչս և ընդ անամօթս և ընդ ամպարիշտս կռուեսցի, առ վերին դատաւորն հայի, և ի վերին զօրութիւնն ապաւինի, և զերկնաւոր ջատագովն աղաչէ։ Կամի՞ս ուսանել եթէ որչափ էր վստահացեալ Յովբ ի ճգունսն, և որչափ յօրանայ իմաստասիրութեամբ վիրօքն. լո՛ւր որպիսի բարբառէր այժմ լիս և գեղեցիկս, իբրև զճգնող և զսքանչելի մարգարէն. և (զ)փրկչին դէմս*
687 *կերպարանեալ՝ ի տէրունական չարչարանացն յիւր դէմս փոխէ։*

«Երկիր, մի՛ ծածկեր զարիւն մարմնոյ իմոյ, և
մի՛ լիցի տեղի աղաղակի իմոյ»։ Աքանչելի է և
այժմ զօրութիւն բանի մեծ ճգնողիս. միանգամայն
իսկ իբրև աղաչելով առ Աստուած և հրամայելով եր-
կրիս՝ ասէ, մի՛ ծածկեր արեամբ մարմնոյ իմոյ։ Որո՞վ
արեամբ. որ կաթէր ի վիրաց նորա, որ սահէր ի
մարմնոյն, յորժամ հալէրն ազգի ազգի ախտիւքն.
այնու մի՛ ծածկեր, և մի՛ մոռացեալ լիցին ճգունքն
Յովբայ, և մի՛ ծածկեսցին քրտունքն աշխատու-
թեամբ՝ զոր քրտնեցայ վասն առաքինութեանց, ա-
մենայն համբերութեամբք աշխատեցայ. հրապարա-
կատես եղիցին վէրք արդարոյն, զի և այլք սրբես-
ցին առ ի նախանձ նմանութեանն այնորիկ։

«Եւ մի՛ լիցի տեղի աղաղակի իմոյ»։ Յայտ է
թէ ունելով զնա ի վերայ երկրի. քանզի աղօթեմ
ամա ելանել ընդ օդս և հասանել յերկինս, և տե-
սանել զնա ի մէջ հրեշտակաց, և երևել ընդ վերին
զօրութիւնսն, ուր զդատաւորն ունիմ և զվկայն
խնդրեմ։

«Եւ արդ ահա յերկինս է վկայ իմ, և իրաւա-
գէտն իմ ի բարձունս»։ Զոր ոչ ոք կարէ հաւանե-
ցուցանել և ոչ ինքեան վիճակին դնել, եթէ ոչ ու-
նիցի գործակից զօրէնս։ «Յերկինս է վկայ իմ»։ 688
Ո՛չ եթէ վասն ընչից, զի ոչ ինչ է նա վարձուց
կարօտ, որ ոչ երկնչի ի թշնամութենէ, և ոչ ակն
առնու աշխարհական սիրոյ։ «Եւ իրաւագէտն իմ ի
բարձունս»։ Որ հանդերձ գործովք՝ և զբանս և ըզ-
խորհրդոց շարժմունս գիտէ, որ զանմոռաց յիշա-
տակս վասն մեր յառաջ բերէ իբրև ի գրոց։

«Հասցեն խնդրուածք իմ առ Տէր»։ Քանզի ե-
թէ անդր հասցեն աղօթք իմ, գլորին թշնամիքն,
հաստատի արդարն, և որոգայթն փշրի, և զերծեալ
ազատութեամբ թռչի ճնճղուկն, և հալածիչքն գըլ-
խարկեալ լինին, և՛ հալածեալն զուարճացեալ։

«Եւ յանդիման նորա կաթեցուցէ ակն իմ»։
Զգուշութեամբ ասացեալ թէ յանդիման նորա. յայտ

է թէ Աստուծոյ։ Եւ յոյժ յիրաւի առընթեր եդ,
քանզի յանդիման մարդկանս արտասուել որ յա-
ղօթան կայ՝ կարի անօգուտ է. քանզի թէպէտ
և կարծիս զգաստութեան զանձամբ արկանեն, այլ
կարի անմտութիւն է մեզ ի մարդկանէս զփառս առ-
նուլ. այլ առաջի Նորա հեղցուք զարտասուսն մեր.
քանզի որչափ ակն մեր կաթեցուսցէ աղօթիւք ար-
689 տասուս առաջի Տեառն, նոյնչափ հալի և լուծանի
նենգաւորն, և թագաւորն ձգի ի վշտակցութիւն.
քանզի արտասուքն լուացիչ լինին ոգւոց և մարմնոց,
զամենայն աղտ ողողէ, և զամենայն ներկուածս սրբէ,
և սպիտակագոյն քան զձիւն ցուցանէ զարտասուօղն։
Եւ ապա երևեցուցանելով եթէ ոչ ինչ կամի ար-
դարն իբրև թագուցանել յԱստուծոյ, յիրաւի էած
զայս ի վերայ։
«Եղիցի յանդիմանութիւն առն առաջի Տեառն.
և որդւոյ մարդոյ (առ) ընգերի իւրում»։ Աստ յայտ-
նապէս յառաջագոյն բարբառեալ եցոյց եթէ Քրիս-
տոս լինելոց է մեզ դատաւոր։ Այլ փառօքն Հօր
նստի յայնժամ դատաստանի, որպէս և ինքն Տէր ա-
սէր։ Եւ վասն այսորիկ ասէր. «Եղիցի յանդիմա-
նութիւն առն առաջի Տեառն». յայտ է եթէ Հօր
և որդւոյ մարդոյ, այսինքն է եթէ առ որդւոյ մար-
դոյ։ Քանզի Տէր աստ զՀայր անուանեաց, իսկ որ-
դի մարդոյ՝ զԲանն Աստուած, որ վասն մեր մար-
մնացաւ ի սրբոյ կուսէն։ Իսկ զընկերն վասն այնո-
րիկ առ ընթեր եդ, քանզի վասն Տեառն Հօր՝ որ
վասն մեր մարմնացաւ Որդին, և նստաւ ընդ աջմէ
Նորա, զի հաւասար էր պատուով թագաւորութեանն,
զոր յիրաւի և պատշաճ է ասել ընկեր իսկ, վասն
690 զի հարկ է յանդիմանել և կամ յանդիմանիլ առա-
ջի Նորա՝ իբրև առաջի դատաւորի. յիրաւի ասէ լի-
նել յանդիմանութիւն առն. այսինքն է առն՝ զոր
աղաչեն և աղօթեն առ նա, զի յանդիմանեսցեն,
և մի յանդիմանեսցին. զի ամբաստան լիցի զբան-
սարկուէն՝ եթէ ընդունայն պատերազմեցաւ ընդ նը-

մա, և մի ի նմանէն ամբաստանեալ լիցի՝ եթէ նո֊
րա մասն և բաժին եղև։
«Ամք թուով հասին»։ Այսինքն է՝ թէ ոչ ընդու֊
նայնս ինչ աղօթեմ զայս, այլ վասն զի պատահեաց
վախճան կենացս, մերձ է կործանումն կենացս այ֊
սոցիկ. և որ փութապէս թուին ի մարդկանէ ամքս՝
ի վախճան հասին։
«Ընդ ճանապարհ անդարձ գնացից»։ Ցայն՝ վասն
որոյ Դաւիթն ասէր. «Ահաւասիկ ես երթամ զճա֊
նապարհ ամենայն մարդոց. անտի այսրէն դառնալ
չէ հնար մարդոյ»։ Վկայէ իսկ և ինքն մարգարէն
վասն որդւոյն մեռելոյ այսպէս ասելով. «Ես եր֊
թայց առ նա, բայց նա առ իս ո՛չ դարձցի»։ Իսկ
վասն զի գնալոց եմք ընդ այն ճանապարհ, ուստի
այսրէն դառնալ չէ հնար. յառաջեսցուք և պատ֊
րաստեսցուք մեզ թոշակ՝ զառաքինութիւնս. քանզի
այսու ոչ քաղցիցուք և ոչ ծարաւեսցուք և ոչ ե֊
ղիցուք մերկանդամք, և ոչ եղիցուք զրկեալ ի փա֊ 691
ռաց և ի պատուոյ ի հանդերձեալ յաւիտենէն։ Այլ
և զի՞նչ յաւել առ ի ցոյց մեզ. վասն է՞ր արդարք
ցանգան հրաժարել յայսց կենաց, և աղօթեն ելա֊
նել աստի՝ որոց գլխաւոր է մարգարէս այս։
«Հողմավար կորնչիմ. կարօտիմ գերեզմանի՝ և
ոչ հասանեմ»։ Կորնչիմ ի հողմոյ. յորմէ՞. յաւելորդ
ընդունայնութենէս՝ որ չարժէ յանարժան ցանկու֊
թիւնս, և արէ յառժամանակեան վայելչութիւնս,
ուստի լինին որոգայթք ոգւոց ապականիչք։ Վասն
այսորիկ կարօտիմ գերեզմանի. զի ելանել կամիմ
յաշխարհէ մարմնոյս, զորով պատեալ են բազում
պատերազմունք ցանգութեան աշխարհիս, մինչև ե֊
ղիցի ժամանակ յարութեան։ «Կարօտիմ գերեզմա֊
նի՝ այլ սակայն ո՛չ հասանեմ»։ Քանզի եթէ ոչ նա
հանցէ յաշխարհէս որ էածն, ոչ ոք կարասցէ զմեզ
հանել աստի. այլ և ոչ մեք իսկ կարեմք հանել ըզ֊
մեզ. ոչ ոք կարէ գնալ աստի մինչև ոչ նա կոչիցէ,
եթէ ոչ որ կապեացն և լուծցէ, զի դարձեալ կա֊

պեսցէ. ոչ իւիք քակի հոգին ի մարմնոյն։ Զայս ա-
սացեալ Յովբայ, ոչ զի համարակաց չարեօք նե-
692 ղեալ էր, այլ զի իւրովք ախտիւքն վշտացեալ էր.
և վասն այսորիկ յիրաւի աղօթիւք խնդրէ զհրա-
ժարումն յաշխարհէս, որպէս ըստ կարգիս ցուցանէ։
«Տառապիմ աշխատեալ և զի՞նչ գործեցից»։ Տա-
ռապիմ աշխատեալ. վասն է՞ր. քանզի զգալ մա-
հուն աղօթելով խնդրէր. իսկ աղաչէր, զի աշխատէր
փորձութեամբքն, վասն զի ոչ ինչ գիտէր զխիղճ
մտաց, ըստ արժանի փորձութեանցն որ ի թշնամւոյն
հասին. և վասն այսորիկ ասէր, թէ զի՞նչ գործե-
ցից. ապա ի վերայ ածէ։
«Գողացան օտարք զստացուածս իմ»։ Օտարս ա-
նուանեաց զդևս, իբրև զնենգաւորս և զթշնամիս,
վասն զի բնութեամբ իսկ օտարք են ազգիս մերոյ։
Իսկ գողանալ նոցա զստացուածս վասն այսորիկ ա-
սաց, վասն զի ոչ իւրեանց կամօք յափշտակեցին
զստացուածսն Յովբայ, այլ գողութեամբ բանիւք
առ Աստուած ստեցին, յորժամ սոցա գլխաւոր բան-
սարկուն ասէր ցնա. «Բայց ոչ, աղէ առաքեա՛ ըզ-
ձեռն քո և արկ զամենայնիւ որ ինչ ունիցի. եթէ
ոչ յերեսս իսկ օրհնեսցէ զքեզ»։ Իսկ Աստուած գի-
տելով զգողութիւն բանից նորա, հրամայէր նմա՝ զի
693 տացէ Յովբայ կանգնել զպայծառ նշան յաղթու-
թեանն։ Քանզի իբրև զյաղթօղ իսկ համարձակեցաւ
ասել զայս որ ի կարգիս կայ։
«Ո՞վ է նա, ընդ ձեռին իմում կապեսցի»։ Ըն-
դէ՞ր ասէ զաղտուկ կռուի ընդ իս. ընդէ՞ր ի ծածուկ
դարանանայ. «կապեսցի ընդ ձեռին իմում», զի դա-
դարեսցէ ի նենգելոյ յայլոց՝ իբրև զմիանգամ կա-
պեա՛լ. և մի՛ լիցի նմա ի տանջանս և ի հարուածս
լինել ընդ արդարոցս, վասն զի յոյժ չար է. և զար-
դարոց բարիս ի բացեայ ոչ կամի տեսանել, թող
թէ ի մօտոյ։ Վասն զի ոչ մի պատերազմ էր ընդ
Յովբայ, այլ բազում այսովք չարութեան, ոչ գի-
տելով եթէ որովք պատերազմին՝ այնու օգուտ առ-

նեն սմա, և նենգեցելոցն ի նոցանէ առիթք պա-
կելոյ լինին. և վասն այսորիկ ի վերայ էած։

«Զի զսիրտս նոցա թաքուցեր յիմաստութենէ»։
Օգուտ է մեզ յորժամ թշնամիքն մեր անմիտ են,
և զրկեալք ի գիտութենէ. վասն որոյ Պաւղոս ասէ.
«Զիմաստութիւն խօսիմք զԱստուծոյ՝ որ ծածկեալ
էր յաւիտեանցն յառաջին յազգացն, զոր ոչ ոք յիշ-
խանաց յաւիտենիս այսորիկ գիտաց. զի եթէ գի-
տացեալ էր ոչ արդեօք զՏէր փառաց խաչէին»։ 694

«Վասն այսորիկ մի բարձրացուցես զնոսա»։
Վասն այսորիկ. վասն որո՞յ. այլ որ մեզ օգուտն է.
վասն որոյ զճշմարտութեան գիտութիւնն ի նոցանէն
թաքոյց, յորմէհետէ ցանկացեալք չարին՝ սկսան
մեզ նենգել և հայհոյել զարարիչն։ Այլ դարձեալ ի
չար դիւաց անտի դարձուցանէ զբանս ի գլխաւորն
նոցա։

«Ի մասինն իւրում պատմեսցէ զչարութիւնս»։
Մասն նորա են որք ընդ նմա չարութեամբ ապըս-
տամբեցին, որոց պատմեսցէ զչարութիւնս. զի ու-
սուսցէ չարացն զևս չարութիւնս, զի ինքն գլխաւոր
է չարութեանց. և զայս ասաց արդարն վասն անե-
րևոյթ թշնամւոյն. և դարձոյց զբանս յայնմանէ՝
յայս որք եղեն ստացուածոց նորա գողութիւնք յօ-
տարաց։

«Աչք իմ ի վերայ որդւոց հալեցան»։ Ոչ միայն
իբրև ի վերայ մեռելոց, այլ քանզի եղեն անթաղք,
յիրաւի ողբայր։

«Եդիր զիս ի հաչակումն ազգաց»։ Քանզի
ախտքն Յովբայ ամենեցուն խիկ է հաչակեալ, և վասն
սաստիկ հարուածոցն զարմանալի էին։

«Եղէ նոցա ծաղր»։ Աներևոյթ թշնամեացն, որք 695
ծաղր առնէին զարդարն, ոչ միայն զի ի վերայ աղ-
բեաց նստի, այլ զի և բարեկամքն նախատէին. և
այնչափ թշնամանէին վասն ընդունայն սրտմտու-
թեան իւրեանց ազդեցութեամբ բանսարկուին։

«Շլացան ի բարկութենէ աչք իմ»։ Վասն էր.

*զի «պաշարեալ եմ մեծապէս յամենեցունց» միանգամայն, ի ծառայից և ի բարեկամաց և (ի) կնոջէ, որ եղեն ամանք աներևոյթ թշնամեացն։*

*«Զարմանք կալան զճշմարիտս ի վերայ այսոցիկ»։ Որչափ երկայնամտութեամբ տարաւ հանդիսատեան, և կամ՛ որչափ համբերութիւն եցոյց ճգնողն մըրցմամբքն։*

*«Արդար ի վերայ անօրինի յարիցէ»։ Քանզի զայս աղօթեն ճշմարիտք և սպասաւորք ճշմարտութեան, և զօրականք և հրեշտակք և մարդիկ, զի մի՛ ամպարիշտ յարիցէ ի վերայ արդարոյն, այլ զի արդարն յարիցէ ի վերայ ամպարշտին։*

*«Կալցի հաւատարիմն զիւր ճանապարհն»։ Զի ոչ խափանեսցէ և ոչ դիցէ որոգայթ։*

696 *«Սուրբն ձեռօք առցէ քաջալերութիւն»։ Տեսանելով զի առընթեր կայ նորա յերկնից օգնականն. և զայս ասացեալ արդարոյն, իբրև թէ պատահեալ իսկ աղօթիցն՝ սպառնայ թշնամեացն. զոր ըստ կարգիս ցուցանէ։*

*«Բայց աղէ դուք եկայք յարեցարուք ամենեքեան, քանզի ոչ գտանեմ ի ձեզ ճշմարտութիւն»։ Ամենեքին յարեցարուք, այսինքն է՝ միմեանց օգնական՝ լերուք, և պնդեալ եկեսջիք ի կռիւ ի վերայ իմ. զի գիտաց թէ մի զհազարս հալածէ և երկուք զբիւրս շարժեսցեն. վասն զի անօգուտ է բազմութիւն, մանաւանդ յորժամ ստութեամբ վարին. քանզի ի ձեզ ճշմարտութիւն ինչ ոչ տեսանեմ, և վասն այսորիկ համարձակութեամբ կոչեմ զձեզ ամենեսեան առ ի պատերազմ։ Այլ պարտ է զարմանալ ընդ պայծառութիւն բանիցն Յովբայ, զի յետ այնչափ ոտն հարկանելոյ փորձողացն, մինչև մեք գիտացաք թէ որչափ չարչարեցաւ, սակայն նա ի կամացն իւրոց ոչ թուլացաւ, և ոչ մատնեաց ըզհամբերութիւնն, որով ահագին էր թշնամեացն. այլ զիւր ցաւսն ի պատմութիւն արկանէ։*

697 *«Աւուրք իմ շարաւով անցին, պայթեցին երակք*

արտի իմոյ»։ Յայտ է թէ ի վշտացն և ի հեծութեանցն։

«Զգիշեր՝ ի տիւ եղին»։ Այսինքն է՝ թէ ընդ մի համար եղեն ինձ գիշեր և տիւ. զի քուն ի գիշերի ոչ գտանեմ, այլ և ի տուէ այնմ ոչ պատահեմ, որ սովորութիւն է լինել մարդկանս, կամ հոգք գործոյ, կամ սփոփանք ի բարեկամաց, կամ պատրաստութիւնք կերակրոց, և կամ այլ ինչ որ այսոցիկ նման են։

«Լոյս մերձեալ յերեսաց խաւարի»։ Քանզի ոչ ինչ ունիմ ընտրութիւն խաւարի և լուսոյ. բայց մերձեալ է լոյս, որոց լինի ի խաւարէ ահիւ և բաջաղմամբ, և կամ ի դէմս խաւարի՝ զմահ անուանէ։ Քանզի առ սա մերձ է լոյս առընթերակայ կենացս. քանզի սակաւ ինչ է ընդ մէջ մահու և ընդ այժմու կենացս։ Եւ վասն այսորիկ ի վերայ էած։

«Զի եթէ համբերից՝ դժոխք են տուն իմ, ի մի-
գի տարածեալ են անկողինք իմ»։ Վասն զի փոքր
ինչ ներելով, յոյս վախճանեալ տեսանեմք զկեանս
մեր. քանզի և Սիմաքոս փոխանակ համբերելոյ
«ներել» գրեաց։ Մինչ զի և տուն մեզ զդժոխս ա- 698
սաց։ «Եւ ի միգի տարածեալ են անկողինք իմ»։
Յայտ է թէ ի խաւարի, յորժամ արգելումք ի ներքս ի գերեզման։ Բայց ուստի եղև մեզ այս, և կամ վասն որո՞յ իրաց, ոչ հրամայեաց մեզ Յովբ առանց գիտելոյ թողուլ, այլ պատմեաց մեզ զԱդամայ զպատուիրանազանցութիւնն, թէ զիա՞րդ նա ի ձեռն պատուիրանազանցութեանն զմահ ընկալաւ. և ի նորա դէմս առնու այսուիկ որ ի կարգիս կայ։

«Զմահ կոչեցի ինձ հայր, մայր և քոյր ինձ՝ զերր»։ Կերեալ յայնմ փայտէ, վասն որոյ Աստուած սահմանեաց, թէ «Յորում աւուր ուտիցէք ի նմին աւուր մեռջիք». վասն որոյ լուաւ, եթէ «Հող էիր և ի հող դարձիր»։ Զի այնպէս մայր և քոյր զերր կոչեաց, զապականութիւնն ի կաւի և զթարախն որ ի նմանէ. վասն այսորիկ ի վերայ ածէ։

«Արդ ո՞ւր ևս է յոյս իմ»։ Քանզի ո՞ւր իսկ է յոյս մարդոյ որոյ վախճանն այսպէս տկարութեամբ լինի։ «Կամ զբարութիւնս իմ տեսանեցե՞մ»։ Յորժամ աստի գնասցուք՝ ասասցուք, քանզի ցուցանէ իսկ որ ի կարգիս կայ։

«Կամ թէ ընդ իս ի դժո՞խս իջանիցեն. կամ թէ
699 միանգամայն ի հո՞ղ իջանիցեմք»։ Վասն է՞ր իսկ չի-
նածս չինեմք, կամ ընդէ՞ր պաստառակալ անգողնոցաց
և զանազան հանդերձից հոգամք, և ագարակ ընդ
ագարակ խառնեմք, և զտնանգն խեղդեմք և զաղ-
քատն կափեմք, և զմեծութիւնն աճեցուցանել կա-
միմք, որք ոչ ընդ մեզ գնան։ Եւ կամ ընդէ՞ր ոչ
տամք զականջս մեր լսել անսուտ պատգամացն, և
ընդէ՞ր ոչ հաւատամք օրինաց դատաւորին, և ոչ
հաւանիմք ասողին, թէ «Մի՛ գանձէք ձեզ գանձս
յերկրի՝ ուր ցեց և ուտիճ ապականեն, և ուր գողք
ական հատանեն և գողանան. բայց գանձեցէք ձեզ
գանձս յերկինս, ուր ոչ ցեց և ոչ ուտիճ ապակա-
նեն, և ուր ոչ գողք ական հատանեն և գողանան».
քանզի պահեն զայն գանձս մեր հրեշտակք, մանա-
ւանդ թէ Տէր հրեշտակացն. նմա փառք՝ Հօր և Որ-
դւոյ և սրբոյ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս
յաւիտենից. ամէն։

## ԻԱ.

Կրկնեալ անդրէն Բաղդադայ Սիքէացոյ ասէ.
«Մինչև ցե՞րբ ոչ դադարիցես, հանդարտեա՝ զի
և մեք խօսեսցուք։ Ընդէ՞ր իբրև զչորքոտանիս լը-
ռեալ եմք առաջի քո, և դու միեալ ես բարկու-
700 թեամբ։ Իսկ արդ եթէ դու մեռանիցիս՝ անչէ՞ն
մնասցէ առ ի ներքոյ երկնից, և կամ թէ լերինք ի
հիմանէ տապալիցի՞ն։ Եւ լոյս ամպարշտաց շիջանի-
ցի՞. և ոչ պատահիցէ նոցա բոց։ Եւ լոյս նորա խա-
ւար ի յարկի իւրում, և ճրագ ի վերայ նորա շիջցի։

Որսացեն յետինք զինչս նորա. սխալեալ են խոր-
հուրդք նորա։ Անկցի ոտն նորա յորոգայթ, և չա-
ղեսցի ի թակարդի։ Եկեսցեն ի վերայ նորա որո-
գայթք, զօրացուսցէ ի վերայ նորա զծարաւիս։ Ձի
թաքուցեալ են յերկրի տոռունք նորա, և կալանք
նորա (շուրջանակի) ի վերայ շաւղաց (նորա)։ Սա-
տակեսցեն զնա ցաւք շուրջանակի, բազումք զոտիւք
նորա պատեսցեն ի նեղութեան սովոյ։ Պատրաս-
տեալ է նմա կործանումն ահագին, կերիցին կինք
ոտից նորա։ Կերիցէ զգեղեցկութիւն նորա մահ տա-
րաժամ, վարեսցի բժշկութիւն յարկաց նորա. հաս-
ցէ նմա տագնապաւ պատուհաս արքունի։ Բնակես-
ցէ (ի) յարկի նորա ի գիշերի իւրում. ցրեսցին
վայելչութիւնք նորա ծծմբով։ Ի ներքուստ արմատք
նորա ցամաքեսցին, և ի վերուստ անկցին հունձք
նորա։ Յիշատակ նորա կորիցէ յերկրէ, և ոչ գտցի
անուն նորա առ երեսօք արտաքնովք։ Մերժեսցեն
զնա ի լուսոյ ի խաւար, և մի եղիցի նմա ծանօթ 701
ի ժողովրդեան իւրում. և ոչ ապրեալ ի ներքոյ եր-
կնից տուն նորա, այլ ի նորայսն կեցցեն օտարք։
Հեծե(ծես)ցին ի վերայ (նորա) յետինք, զառաջինսն
կալան զարմանք, թէ ա՞յս են տունք անիրաւաց,
և ա՞յս տեղի այնոցիկ որ զՏէր ոչ ճանաչեցին»։

Բարիոք է մարդկան յիշատակ մահու և վասն ամենայն իրաց օգտակար, զի հանապազ հայելով յելս մարմնոյ, ամենևին մի ծառայեսցուք առժամանակեայ ցանկութեանցս, որք ապականեն զոգիս։ Այլ բովանդակեսցուք զմիտս յելս աշխարհիս այսորիկ. և հասանել փութասցուք յերկնից վայելչութիւնն, զի այսպէս ոչ միայն ճգնողք լինիմք, այլ և յաղթողք երևիմք աներևոյթ թշնամեացն։ Եւ նշան յաղթութեան կանգնեսցուք, համբերութեամբ տարեալ յարձակմանց նոցա. մինչև ինքեանք յամօթ եղիցին ի համբերութենէն մերմէ, և իմացեալք ըզյաղթութիւնն՝ ինքեանք ի փախուստ դարձցին։ Այլ և յոյժ զղջասցին, թէ ընդէ՞ր ի սկզբանէ մարտնչել

*կամեցաւ ընդ մեզ. և կամ է՞ր մերկացան առ ի
մրցել զմեզ, և բռնաւորք կարծեցեալ՝ տկարք երե-
702 ւեցան։ Իսկ եթէ ոչ հաւատաս՝ տարացոյց առ ըզ-
Յովբ իբրև զանանց արձան։ Քանզի սա ընդ յա-
փըշտակել զմեծութիւնն՝ առ ոտս հարկանէր զյա-
փըշտակիչսն, և ընդ մաշել մարմնոցն Նորա հիւան-
դութեամբք, ի ձեռն բարիոք իմաստասիրութեան
տանջէր զայնոսիկ որք խնդային ընդ հիւանդութիւնն
Նորա։ Ոչ ողբայր զի զրկեալ էր յառողջութենէն, և
ո՛չ զանկանելն ի թագաւորութենէն, և ոչ զի մեր-
ժեցաւն ի փառաց. այլ և տեսանելով անթաղս զդաս
որդւոցն և դստերաց, ոչ կոչեաց լալկանս, և ոչ ա-
սաց՝ վայ զինև. և զայտս ոչ պատառեաց, և ոչ
այնպէս ինչ ասաց՝ զոր սովորութիւն է ասել տըրտ-
մելոց. և ոչ զԱստուծոյ զվասն Նորա զնախախնա-
մութիւնսն անգոսնեաց։ Այլ և ամենևին ոչ դադա-
րեաց ի փառաբանելոյ և գոհանալոյ. և տարացոյց
վասն այսորիկ եղիցին Նորա իսկ բանքս. «Որպէս
Տեառն կամք եղեն այնպէս և կատարեցաւ. եղիցի
անուն Տեառն օրհնեալ յաւիտեանս»։ Զի որպէս
թէ այլ բարիս ընգալեալ, և ոչ եթէ զոր ունէր՝ կո-
րուսեալ, այնպէս փառաբանէր զԱստուած։ Բայց
զայս իմաստասիրել Նմա յիրաւի ուսուցանէր արհա-
703 մարհանք աշխարհիս այսորիկ։ Քանզի միշտ լաւա-
գոյն համարէր զմահ քան զկեանս զայս, և ամբաս-
տանելով իսկ զայսմանէ ոչ դադարէր, այլ և բանս
ծախէր վասն այսորիկ։ Իսկ բարեկամքն Յովբայ,
իբրև նետիւք հարեալ լինէին ի Յովբայ, վասն զի
էին երկրասէրք և զբանս իմաստասիրին վէրս հա-
մարէին լսելեաց իւրեանց. և տարացոյց այսորիկ ե-
ղիցին բանք պատմութեանցս որ այժմ վասն Յովբայ։*

*«Կրկնեալ Բաղդադոյ Սաւքեցւոյ ասէ»։ Դար-
ձեալ ասէ թէ կրկնեալ. վասն զի առեալ իմն է ան-
մտին ի բանիցն իմաստնոյն, և բամբասէ զնա իբրև
թէ ոչ յարժանիս ճարտարաբանեալ իցէ զասա-
ցեալս»։*

«Մինչև ցե՞րբ ոչ դադարիցես, հանդարտեա՝ զի
և մեք խօսեսցուք. ընդէ՞ր իբրև զչորքոտանիս լռեալ
եմք առաջի քո»: Որպէս երևի, չգիտէ Բաղդադ
զՅովբայ՝ թէ ուստի՞ խօսիցի, և կամ թէ ուստի՞
ունիցի զմատակարարութիւն բանից, և ուստի՞ ու-
նիցի զօրութիւն բանից. և յորպիսի՛ ինչ կամաց
յորդորեալ՝ ճգնօղն չդադարէ ի կռուելոյ: Այլ որ-
չափ բազումս տեսանէ զընդդիմամարտիկսն, դոյն-
չափ զօրանայ ի վերայ նոցա. որչափ յաճախ տե-
սանէ զզրպարտիչսն, այնչափ նորոգի առ ի պատաս- 704
խանիսն վասն ճշմարտութեան. ոչ միայն յորդո-
րեալ այլ և զօրացեալ ցուցանէ զճշմարտութիւնն:
Զայս Բաղդադ ոչ գիտէ, վասն այսորիկ ասէ. «Մին-
չև յե՞րբ ոչ դադարիցես»: Պարտ է ասել Յովբայ,
և կամ թէ նա չասաց՝ մեք փոխանակ նորա ասա-
ցուք. մինչև հոգին մատակարարէ, մինչև աղբեւրս
բղխէ, մինչև իմաստութիւնն շնչէ ի ճշմա՛րիտ ա-
մանս, մինչև դուք իբրև փոկով տանջեսջիք բանիւքս:
Վասն զի ոչ իմանայք զԱստուծոյ իմաստութիւնն,
և ոչ ճանաչէք զանտեսութիւն նորա՝ որ լինի ի վե-
րայ արդարոց և մեղաւորաց:
«Հանդարտեա՛ զի և մեք խօսեսցուք»: Եւ ո՞ր լաւ
է. ձե՞ր խօսելդ՝ եթէ Յովբայ. ձեր ճարտարաբանու-
թիւնդ մեծապէս վնաս ունի, իսկ Յովբայ՝ անչափ
շահաւէր է բարեպաշտաց. ձեր բանքդ լուծանեն
զճգնօղս, իսկ Յովբ ոչ միայն գործովք քաջալերէ
զճգնօղս վասն բարեպաշտութեան, այլ և բանիւք
ողոքէ:
«Ընդէ՞ր իբրև զչորքոտանիս լռեալ եմք առաջի
քո»: Վասն զի անասնական ունիք զմիտս, և ընդ
երկիր գլխարկեալ էք. ոչ ինչ ամենևին ուղիղ իմա-
նայք՝ որպէս վայել է ճշմարիտ մարդկան. այլ նմա- 705
նեցայք այնմ զոր Դաւիթն ասաց. «Մարդ ի պա-
տուի էր և ոչ իմացաւ. հաւասարեաց անասնոց ան-
մտից և նմանեցաւ նոցա»: Իսկ Բաղդադու գիտա-
ցեալ եթէ այսու մարթի նմա պատասխանել, ի

թշնամանս դարձոյց, և ոչ ի ժամու սաստելոյն կար-
ծէր դադարեցուցանել զայն՝ որ յիրաւի խօսեցաւ. և
վասն այսորիկ զՅովբայ բանն որ ոչ առ ի յԱս-
տուած ասացեալ էր, այլ հակառակ դիմացողին, նա
զայն իբրև ընդդէմ Աստուծոյ ասացեալ առնու, և
այնուիկ թշնամանել զարդարն ոչ ամաչէ։
«Եւ, ասէ, դու մխեալ ես բարկութեամբ»։ Քան-
զի զայս ասացեալ էր Յովբայ յառաջագոյն բա-
նիւք, եթէ բարկութեամբ հարեր զիս. բայց եթէ
վասն որո՞յ ասէր, եցոյց որ ի կարգիս կայ։ «Կըր-
ճըտեաց ի վերայ իմ զատամունս իւր, նետք հինից
նորա ի վերայ իմ»։ Զայս Յովբ ոչ ասէր զԱստու-
ծոյ, վասն զի բարեպաշտ էր. այլ վասն ընդդիմա-
ցողին ասէր, որ վասն անչափ անօրէնութեան՝ սաս-
տիկ բարկութեամբ գայր ի վերայ արդարոյն, և զա-
706 տամունս իւր կրճտէր ի վերայ ճգնողին. վասն զի
ոչ (ետ) նմա յաղթահարել զինքն. և զի ոչ թուղա-
ցաւ մարտնչել ընդ նմա։ Վասն որոյ և Դաւիթ ա-
սէր, եթէ «Մեղաւոր տեսցէ և բարկասցի, զատա-
մունս իւր կրճտեսցէ և հալեսցի»։ Այլ Բաղդադ ան-
ամօթութեամբ զրպարտէ, և լրբանօք բամբասէ։
Ցուցանէ այս իսկ զոր ի վերայս ածէ։
«Իսկ արդ եթէ դու մեռանիցիս՝ անչէ՞ն մնայ-
ցէ առ ի ներքոյ երկնից, և կամ թէ լերինք ի հիմանէ
տապալեսցի՞ն»։ Բայց Յովբ զայս ոչ ածէր զմտաւ,
ոչ միայն վասն իւր, այլ և վասն ամենայն ազգիս
մարդկան, իբրև զփոքր մասնէ զարարածոց Աստու-
ծոյ։ Բազում անգամ գտցես զնա զի ասէ զայս իւ-
րովք բանիւք. կամ մի եթէ այս բանք ո՞չ իցեն
Յովբայ, եթէ «Այր կանանցածին սակաւակեաց և
լի բարկութեամբ, որ իբրև զծաղիկ ծաղկեալ՝ թօ-
թափեցաւ, խոյս ետ իբրև զստուեր և մի կացցէ»։
Բայց սակայն և այսպէս բազում անգամ ի համար
տանի մարդասէրն ազգիս մերում. և վասն այսորիկ
707 Յովբ զայս ի վերայ ածէ ասացելոցս. «Ո՞չ ապաքէն
և այնմ համար առնիցես, և նմա արարեր մտանել

ի դատաստան առաջի քո»։ Բայց Բաղդադու ոչ էր արժան այսու բանիւք և ոչ որ ըստ կարգիս կայ՝ ոտն հարկանել։

«Եւ լոյս ամպարշտաց շիջանիցի՞, և ոչ պատահիցէ նոցա բոց»։ Այսինքն է, ոչ ծագեսցէ նոցա բոց լուսաւոր։ Ուստի և Թէոդոտոն փոխանակ պատահելոյ՝ «ոչ ծագեսցէ» ասէ. իսկ Սիմաքոս գրեաց՝ թէ «ոչ երևեսցի»։ Զայս ասէ Բաղդադ, իբրև թէ զամենայն մեղաւորաց պատահարս ողբասցէ, բայց ոչ ըստ նմին էին կամք նորա, այլ վասն Յովբայ միայնոյ ասէր. վասն այսորիկ իբրև ի միոյ վերայ շրջէր զդէմս բանիցս։

«Եւ լոյս նորա խաւար ի յարկի իւրում»։ Վասն զի արդարև Յովբ խաւար համարէր զլոյսն (ի) յարկի իւրում, նեղեալ ի բազում վշտացն որ պատեալ էին զնովաւ։

«Եւ ճրագ ի վերայ նորա շիջցի»։ Զդաս որ-
դւոցն յիշեցուցանէ. քանզի Յովբայ շիջեալք եղեն
իբրև զճրագ. և յիրաւի ասէ, վասն զի ժառան-
գորդք էին ստացուածոց, և ամենայն ազգի սպա- 708
սաւորաց։

«Որսասցեն յետինք զինչս նորա»։ Այսուիկ յայտնապէս ողբայ զյափշտակեալ ինչս արդարոյն։

«Սխալեալ են խորհուրդք նորա»։ Վասն զի սաստիկ փութով արդարութեանն հոգք տարաւ և իբրև զանօրէն կրէր զախտն, որպէս կարծէին նոքա որք ոչ գիտէին զմրցմունս արդարոյն։

«Անգեալ է ոտն նորա յորոգայթ, և շաղեսցի ի թակարդի»։ Վասն զի բազում ժամանակաւ էր եղեալ ի վիշտսն և ի հիւանդութիւնս, և ոչ ևս էր ելեալ անտի՝ իբրև շաղեալ ի թակարդի։

«Եկեսցեն ի վերայ նորա որոգայթք»։ Յաւելուած չարեաց ապառնալեաց, որպէս եցոյց աւասիկ ըստ կարգիս։

«Զօրացուսցէ ի վերայ նորա զծարաւիս»։ Զնոսա՝ վասն որոյ Դաւիթն ասէր. «Եւ ընթացան ի

ծարաւս իւրեանց, խորհեցան մերժել զպատիւ իմ»։
Այլ սակայն և այպանելով՝ ոչ կարացին զօրել ար-
դարոյն. ի զուր իսկ սպառնացաւ նմա, զյարձակումն
709 նոցա։ Ընդունայնս ասէ և որ ըստ կարգիս կայ։
«Զի թաքուցեալ են[1] յերկրի տոռունք Նորա. կա-
լանք Նորա շուրջանակի ի վերայ շաւղաց Նորա»։
Ճշմարիտ է այս, քանզի թաքուցանէ յերկրի զտո-
ռունն՝ որով կապէ զպատրեալսն, այսինքն է, թէ
ըստ երկրային իմաստիցս և ըստ ցանկութեան եր-
կրայնոցս։ Եւ զկալանս Նորա արասցէ բանսարկուն
շուրջանակի զշաւղօք Նորա. այսինքն, թէ շուրջ ըզ-
մարդկային շաւղօք. յամենայն կողմանց կամեցեալ
որսալ և ըմբռնել զնոսա. զարդարն՝ վասն հպար-
տութեան, և զմեղաւորն՝ վասն յուսահատութեան,
զաղքատն՝ վասն տրտնջման, և զմեծատունն՝ վասն
անյագութեան։ Ուստի և Դաւիթ մարգարէութեամբ
սաղմոսերգէր. «Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց,
և շուրջ շաւղօք իմովք եդին ինձ գայթակղութիւն»։
Այլ զառաջինս արդար ասելով Բաղդադու՝ երկրոր-
դօքս ասէ, որովք զՅովբ անիծանէ, որում ոչ է
հնար անգանել ընդ անիծիւք Նորա։
710 «Սատակեսցեն զնա ցաւք, բազումք զոտիւք Նո-
րա պատեսցին ի նեղութեան սովոյ»։ Այսինքն է՝
առ նա. քանզի այս է զոտիւք Նորա, զի մօտ ե-
ղեալ զոտիւք Նորա՝ զամենայն վիշտս Նորա տեսցեն։
«Պատրաստեալ է նմա կործանումն ահագին»։
Այս ամենայն վայել է ի վերայ ամպարշտաց, այլ
Յովբայ այս ինչ ոչ է պատշաճ, քանզի զնա ցաւք
ոչ կորուսին, այլ և զօրաւոր ճգնող ցուցին զնա, և
զարդարութիւն Նորա կրկնակի ցուցին։ «Եւ եկին
բազումք և պատեցին զոտիւք Նորա ի նեղութեան
սովոյ»։ Այլ եկելոցն պարտ է զանձինս ողբալ և ոչ
զարդարն. քանզի նա վասն համբերութեանն՝ պսա-
կաց և երանութեանց արժանի էր. ոչ էր նմա պա-

1. յՕր. Թաքուցանեն։

տրաստեալ աՀագին կործանումն, զի նա զայլ գլո-
րեալս յարուցանէր ի ձեռն իւրոյ իմաստասիրու-
թեանն։ Բայց մի՛տ դիր, որպիսի՛ ինչ ամացելոցս և
այլ առընթեր եդ Բաղդադ։
«Կերիցին կինք ոտից նորա. կերիցէ մահ տարա-
ժամ զգեղեցկութիւն նորա, վայրեսցի բժշկութիւն
յարկաց նորա. հասցէ նմա տագնապաւ պատուհաս
արքունի. բնակեսցէ ի յարկի նորա ի գիշերի իւ- 711
րում»։ Քանզի այս ըստ տեսանելեաց ոչ արդարև
պատահէ ամպարշտաց։ Քանզի բազումք յամպարըշ-
տաց, որք ի լիութեան են, ոչ ուտին կինք ոտից
նորա[1]. վասն զի չարեօք լիութեան ունի զատի
քաղաքավարութիւնս։ Եւ ոչ «մահ տարաժամ եկեսցէ
ի վերայ գեղեցկութեան նոցա», զի տեսանեմք զբա-
զում ամպարիշտս ի լիութեան ծերացեալս. այլ և
ոչ զամենայն ամպարիշտս տեսանեմք, զի հասեալ է
ի վերայ նոցա պատուհաս արքունի։ «Եւ ոչ բժշկու-
թիւն վայրեսցի յարկաց նորա», յայտ է թէ յայժ-
մու կենացս և յատի վայելչութեննէս։ Իսկ ուրեմն
յայտնապէս բարբաջէր Բաղդադ զայս ասելով, որ
ոչ է սովորութիւն ամենայն իրօք պատահել ամպա-
րըշտաց։ Իսկ եթէ վասն իմանալեացս ասացեալ է
նորա ի վերայ ամպարշտաց, զի որ ինչ այժմ կար-
ծեցեալ է նոցա առաքինութիւն, «տարաժամ մահու
կործանեսցի». քանզի տարաժամ է մահ ի մեղաց և
յանհաւատութենէ. իսկ ի հանդերձեալ յաւիտենին՝
չառաւեղք նոցա կերիցին։ Վասն զի և այն ամպա-
րիշտք են, և աներևոյթ եղիցի գեղեցկութիւն նոցա՝ 712
վաղվաղակի մահու ապականեալ. և բժշկութիւն
յարկս իւրեանց ոչ ընկալցին, և հասցէ ի վերայ
նոցա տագնապաւ պատուհաս արքունի. վասն զի
ամենայն անօրէնութիւնք նոցա ելանեն առ Աս-
տուած ի մեծ թագաւորն և յօրէնսդիր։ «Եւ բնա-
կեսցեն իբրև ի գիշերի յարկի իւրեանց», քանզի ե-

1. Վ. կինք՝ զծունքն և զարմունկն ասէ։

*լանելոց են ի խաւարն արտաքին։ Բարիոք և ճշմարտութեամբ ասացեալ է, այլ ի Յովբայ այս ամենայն օտար է. քանզի ոչ հայհոյէ յԱստուած, և ոչ հասանէ նմա տագնապաւ պատուհաս արքունի, զի ոչ առանց գոհութեան է զարարչէն. և ոչ եղիցին կերեալ կինք քաղաքավարութեան նորա, և ոչ գեղեցկութիւն առաքինութեանց նորա ապականեսցի անհաւատութեամբ մահու, և մի աղօթից նորա բժշկութիւն՝ վայրեսցի յարկաց նորա, և մի ընկալցի զանտի յարկս նորա խաւար և գիշեր, քանզի մինչև ի մեծութեանն էր՝ արդարագործութիւնս առնէր, և մերկացեալ ի մեծութենէն՝ ևս առաւել պայծա-*
713 *ռացոյց զիւր արդարութիւնն ի ձեռն համբերութեանն։ Բայց մեք և ըստ կարգիս միտ դիցուք, զի ցուցցեն բանքս եթէ ամպարշտաց միայն վայել են այսպիսի բանք՝ և ոչ Յովբայ։*

*« Ցրեսցին վայելչութիւնք նորա ծծմբով »։ Քանզի այս պատահեաց մեղուցելոցն յերկրին Սոդովմայ և Գոմորայ. քանզի որ ինչ ուրեք պատահէ ամպարշտաց, այսմ պարտ է ակն ունել և այլոց ամպարշտաց, կամ յայսմ աշխարհի և կամ ի հանդերձելումն։*

*« Ի ներքուստ արմատք նորա ցամաքեսցին. և ի վերուստ անգցին հունձք նորա »։ Քանզի յամենայն կողմանց եկեսցեն ի վերայ ամպարշտաց կորուստ, և յերկնից և յերկրէ. վասն զի ամենայն արարածոց արարիչ է զոր նոքայն ցասուցանեն։*

*« Յիշատակ նորա կորիցէ յերկրէ, և ոչ գտցի անուն նորա առ երեսօք արտաքնովք »։ Յայտ է թէ նոցա՝ որք յայնմ խաւարի բնակելոց են, զորս հրամայեաց տանել, որ զհարսանիսն կատարէր՝ որոյ մտեալ էր աղտեղի հանդերձիւք, և ասէ. «Կապեցէք*
714 *զգորա զոտս և զձեռս և հանէք ի խաւարն արտաքին, անդ եղիցի լալ աչաց և կրճել ատամանց. քանզի բազումք են կոչեցեալք և սակաւք են ընտրեալք »։ Առ նոցա երեսօքն և ամպարիշտն, քան-*

զի առ նոսա է և ընդ նոսին տանջի։ Եւ ոչ գտցի անուն նոցա, քանզի հանեալք լինին բարուք յերկրէն արդարոց, և առ նոսա տանին, որոց անուանքըն չիջեալ են իսպառ։ Վասն որոյ և Դաւիթ այլուր զի երգէր քնարաւն. «Զանուանս նոցա ջնջեցեր յաւիտեանս յաւիտենից»։

«Մերժեսցեն զնոսա ի լուսոյ ի խաւար». քանզի յայժմու լուսոյս հանեալ լինին ի խաւարն արտաքին։

«Եւ մի՛ եղիցի նմա ծանօթ ի ժողովրդեան իւրում». քանզի ի մէջ այլազգեաց միայն ինքն
զգեցեալ աղտեղիս մտանէր։ «Եւ ոչ ապրեալ ի ներ֊
քոյ երկնից տուն նորա». քանզի ոչ եթէ այնպէս
ինչ վարէր, եթէ զտուն իւր ապրեցուցանէր։ Քան֊
զի ոչ պահեաց զայն՝ զոր Աստուած վկայեաց վասն
Աբրահամու՝ թէ պահեաց. զի գիտէր եթէ կարգե֊
լոց էր զորդիս իւր և զտուն յետ իւր. որպէս զի
պահեսցեն զճանապարհս Տեառն գործել զարդարու֊
թիւնս նորա և զիրաւունս, մինչև ածցէ Տէր Ա֊ 715
տուած ի վերայ Աբրահամու զամենայն զոր խօսեցաւ
ընդ նմա։

«Այլ ի նորայն կացցեն օտարք»։ Քանզի ամենեցուն են պատրաստեալ բարիքն հանդերձեալ յաւիտենին։ Եթէ գնալ կամեսցին ընդ ճանապարհն Աստուծոյ, ամենեցուն պատրաստեալ են անդ օթեւանք. եթէ կամիցին արթունք լինել, բացցեն որք ոչ գնան ընդ ճանապարհս նորա։ Վասն այսորիկ ասացեալ է եթէ և ի նորայն կեցցեն օտարք»։ Այսինքն եթէ յամպարշտացն կեցցեն՝ որք գնան ընդ ճանապարհս նորա, և կամ որոց չէ գնացեալ, այլ դեռ ևս գնալ կամիցին։

«Հեծեծեսցեն ի վերայ նորա յետինք. զառաջինսն կալան զարմանք»։ Յետինս անուանեաց՝ որք ի ձեռն ապաշխարութեան մտին ի վարձ ի մետասաներորդ ժամու. և յիրաւի հեծեն ի վերայ ամպարշտաց, եթէ ընդէ՞ր և նոքա ոչ կամեցան հասանել փրկութեան ի ձեռն բարի ապաշխարութեան։

*«Իսկ զառաջինսն ընկալան զարմանք», որք ի սկըզ-
բանէ գործեցին զպատուիրանս Աստուծոյ. վասն ամ-
պարշտացն կալաւ զնոսա զարմանք, իբրև թէ զիա՞րդ
և ոչ ի վախճան ժամանակիս հաւանեցան պատուի-
րանաց Աստուծոյ։*

716 *«Թէ ա՞յս են տունք անիրաւաց». խաւարն և գե-
հենն, և այլ ինչ է որ սպառնացեալ է չարաց ի
հանդերձեալ յաւիտենին։*

*«Եւ ա՞յս տեղի այնոցիկ՝ որ զՏէր ոչ ճանաչիցեն»։
Ո՞ր և կամ ո՞րպէս զնա ոչ ընկալան, յայտնապէս
Միածինն եցոյց մեզ. «Երթայք յինէն անիծեալք՝
ի հուրն յաւիտենից, որ պատրաստեալ է բանսար-
կուին և ամենայն հրեշտակաց նորա։ Եթէ քաղ-
ցեայ, և ոչ ետուք ինձ ուտել. ծարաւեցի, և ոչ
արբուցէք զիս». և որ ըստ սմին ի կարգիս կայ։
Բայց դու մի՛ թերահաւատեր, եթէ զայս Բաղդադ
կարէր իմանալ և կամ ասել. քանզի ամենեցուն
բնական օրէնսն յայտնի առնէ զԱստուծոյ դատաս-
տանն. ամենեքին յորժամ բնական օրինօքն ուղիղ
վարեսցին, գիտեն եթէ զի՞նչ արդարոց մնայ, և
կամ զի՞նչ մեղաւորաց. ուստի և այսպիսի յանցու-
ցելոցն ոչ գոյ պատասխանատուութիւն առաջի մեծի
և ահագին դատաւորին։ Բայց Բաղդադ յոյժ և ա-
ռաւել բամբասանաց և անգոսնելոյ արժանի է, զի
զայս գիտելով վասն ամպարշտացն, զՅովբ ընդ նո-
սին անօրէնութեամբ խառնէ. և նման է այնոցիկ՝
որք այժմ զպոռնիկսն պարկեշտս անուանեն, և զար-
դարս՝ արծաթասէրս, և զխոնարհս՝ կեղծաւորս, և
717 զհեզս՝ հեգնողս։ Բայց մեք բարեացն բարիս ասաս-
ցուք, և բարեբանելով զարդարսն՝ զլեզուս մեր սըր-
բեսցուք, և մաքրեսցուք զսիրտս մեր, միանգամայն
զմարմինս և զոգիս մեր և զտաճար հոգւոց մերոց
նախանձաւորութեամբ արդարոցն օծցուք, և որ
խնդայ ընդ պատիւ ծառայից իւրոց զԱստուած՝ փա-
ռաւորեսցուք. նմա փառք յաւիտեանս յաւիտենից.
ամէն։*

## ԻԲ

Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ. «Մինչև ցե՞րբ
աշխատ առնէք զանձն իմ, և խախտէք զիս բանիւք.
բայց գիտասջիք զի Տէր արար ընդ իս այսպէս:
Թամբասէք զիս՝ և ոչ ամաչէք յարձակեալ ի վերայ
իմ նախատանօք: Այո՛, արդարև ես մոլորեցայ. և
յիս հանգուցեալ է մոլորութիւն, խօսել բան զոր չէ
արժան. և բանք իմ մոլորեալ են՝ և ոչ են ի դէպ
ժամանակի: Թողցուք զայդ որ յիմ վերայ մեծա-
բանեալ էք, և յարձակեալ էք ի վերայ իմ նախա-
տանօք: Գիտասջիք՝ զի Տէր է որ խռովեցոյցն, և
ամուրս ի վերայ իմ բարձրացոյց: Եւ ահա ծաղր
լինիմ նախատանօք, և ոչ խօսեցայց. աղաղակեցից՝
և ոչ ուստեք իցէ դատաստան: Շուրջ պատեալ եմ,
և ոչ կարացից անցանել. և ի վերայ երեսաց իմոց
խաւար եդ: Մերկացոյց յինէն զփառս, վերացոյց
զպսակն ի գլխոյ իմմէ: Պարուրեաց շուրջ զինև՝ և 718
գնացի, եհատ իբրև զծառ զյոյս իմ. և չարաչար
բարկութեամբ վարեցաւ ընդ իս, համարեցաւ զիս
իբրև զթշնամի: Միանգամայն հասին ի վերայ իմ
հէնք նորա, զճանապարհս իմ պատեցին դարանա-
կալք: Հեռի եղեն յինէն եղբարք իմ, ծանեան զօ-
տարս քան զիս: Բարեկամք իմ անողորմք եղեն, ան-
գոսնեցին զիս մերձաւորք իմ, և ծանօթք իմ մոռա-
ցան զանուն իմ: Դրացիք տան իմոյ և աղախնայք
իմ օտար համարեցան զիս, այլազգի թուէի առաջի
նոցա: Զծառայ իմ կոչեցի՝ և ոչ լուաւ, բերան իմ
աղաչէր և աղերսէր զկին իմ: Կոչէի ողոքանօք զոր-
դիս հարճից իմոց, և նոքա յաւիտեան ուրացան զիս.
յորժամ յառնեմ, բամբասեն զիս: Գարշեցան յինէն
ծանօթք իմ, և զորս ես սիրէի՝ յարեան ի վերայ
իմ: Փտեցան մարմինք իմ ընդ մորթով իմով, և
զոսկերս իմ ունիմ յատամունս»:

Զի ոչ եթէ կրիցէ ոք ջուր ի ծովէ բազում դու-

լիւք, կարծիցէ սպառել զնա, և ոչ բազում լեզուօք
ոք կարիցէ սպառել զգովութիւն սրբոց։ Թէպէտ և
յամենայն աւուրս ասիցէ, որպէս ոք զի զլեառն հա֊
տանիցէ զլայն, և զքարինս կոփիցէ, և զվէմս տա֊
719 շիցէ առ ի շինուած տանց, կամ ի պատրաստու֊
թիւն տաճարաց, և ոչ ոք կարիցէ սպառել, դոյն֊
պէս և միոյ արդարոյ վարք լայն և բարձր՝ բարի գոր֊
ծովք և վարուք, լեզուօք վարդապետաց բրեալք,
քարինս առաքինութեանց բախեն, ուստի և ներքին
տունս մեր յօրինի և հոգւոցս լինի բարւոք տաճար։
Եւ մի տարացոյց ի բազմաց առ զՅովբ. մանաւանդ
թէ մին ի վեր է քան զբազումս։ Քանզի սա ի մէնջ
այսչափ ժամանակս բրեալ ոչ նուազեաց առ ի մա֊
տակարարել մեզ զնիւթս, ուստի տունս համբերու֊
թեան և տաճարս իմաստութեան կանգնել կարասցուք
անձանց մերոց։ Քանզի զի՞նչ պարտ է մեզ ասել.
թէ զիա՞րդ երկայնմտութեամբ համբեր(էր)[1] և այլոց
յարձակմանց բանսարկուին, այլ և աղքատ ոչ համա֊
րէր զինքն՝ մերկացեալ ի մեծութենէն, այլ և յոր֊
դւոցն մեկնեալ՝ իբրև զհայր որդւոց պերճանայր,
և ընդ մարմնոյն մաշել վիրօք գրկընդխառն թշնա֊
մոյն լինէր, յորժամ բարեկամքն նախատէին զնա.
բայց սակայն նա ոչ վաստակէր ի փառաբանելոյ
զԱստուած. և զի նոքա բամբասէին՝ նա ոչ անդրէն
բամբասէր, այլ յանդիմանելով հեզապէս՝ մարգա֊
րէութիւնս խառնէր ընդ յանդիմանութիւնսն, և կըր֊
720 կնակի օգտեցուցանել կամէր զյանդիմանիչսն իւր
արդարն, և ուսուցանէր նոցա զգիտութիւնս վասն
հանդերձելոցն, եթէ որում մասին արժանի լինին
բամբասիչքն, և կամ որում ի զուր բամբասեալք.
զի զայն գիտելով թողցեն զբամբասելն, և ի փառա֊
բանել խոկասցին։ Եւ այսմ յանդիմանութիւն եղիցի
որ ի սմանէ ասացաւ ցԲաղդադ, և ի ձեռն Բաղդա֊
դու ցայլսն, որովք ի սկզբանէ սակաւ մի յանդի֊

1. Վ. համբերէր։

մանեաց և կշտամբեաց, եթէ պարտ էր օծանել և
յորդորել զճգնօղն, բայց դուք լքուցանէք: Եւ ի վե-
րայ ածէ զՔրիստոսի չարչարանսն, որ եղեն վասն
ազգի մարդկան. և ոչ ընդունայնս ինչ, այլ առ ի
ցոյցս՝ եթէ վասն այսորիկ արդարք վասն առաքի-
նութեանց բազում և մեծամեծ վիշտս կրեն, և վասն
բարեպաշտութեան բազում անգամ ճգնին, զի նմա-
նօղք եղիցին Տեառն ըստ ուժոյ իւրեանց: Բայց
արդ եկայք միտ դիք ասացելոցս Յովբայ որ ըստ
կարգիս կայ:

«Կրկնեալ անդրէն Յովբայ ասէ»: Բայց եթէ
զի՞նչ է կրկնելս, բաւականութեամբ յառաջագոյն ա-
սացաք. իբրև ըմբշաց նմանեցուցաք զնա և զբարե- 721
կամսն իւր, այլ նոքա անմտութեամբ ասէին: Բայց
Յովբ և զայս վերին իմաստութեամբն գործէր, զի
բուռն հարկանէ զյառաջաբանէն Բաղդադայ՝ զոր
չարաչարն ասացեալ է, որ ասէ թէ մինչև ցե՞րբ ոչ
դադարիցես: Իսկ սա միանգամայն և զհարցումն
ելոյծ, և սակաւ մի սաստեաց, և նմանս նորին այս-
պէս սկսաւ ասել յառաջաբանելով:

«Մինչև ցե՞րբ աշխատ առնէք զանձն իմ, և խախ-
տէք զիս բանիւք»: Այսինքն է՝ թէ մինչև ցայն-
ժամ ոչ դադարեցից ի բանից, մինչև դուք բամբա-
սէք և հայհոյութիւնս կարկատէք. զոր պարտ էր
պսակել և յաղթութեան նշանս մատուցանել: Եւ
զրպարտէք յետ յաղթութեանն զյաղթօղ ճգնօղս, և
աշխատէք աւելորդ բանիւք, և ընդունայն բանիւք
խախտէք զզօրութիւն իմ: «Մինչև ցե՞րբ աշխատ
առնէք զանձն իմ»: Քանզի ոչ ինչ է պէտք ինձ
յորժամ աշխատի մարմինս և ոչ ինչ համարիմ ըզ-
ցաւսս, և ոչ հոգ տանիմ մարմնոյս յորժամ մաշես-
ցի և ծորեսցի կաւեղէնսս: Մի՛ խռովեցուցանէք զո- 722
գիս, մի՛ պղտորէք զմիտս. քանզի մինչ սա առողջ
է՝ վիրաւորեմ զթշնամին և յաղթեմ ճգնողութեամբ,
և ի վշտաց ոչ երկնչիմ: Բայց դուք խախտէք զիս բա-
նիւք, հատանելով զյոյս պսակաց, և ընկրկէք զըն-
թացս՝ իբրև թէ ոչ ուղիղ ընթանամ:

«Բայց միայն գիտասջիք զի Տէր արար ընդ իս
այսպէս»։ Ոչ վասն մեղաց արար զայս արդարոյն,
և ոչ հատուցումն ըստ չար գործոց. բայց Տէր ին-
քնին կամի լինել հանդիսատես արդարոյն և բան-
սարկուին. և զսորա գոյժ զօրութեան կամի առնել
հրապարակատես, և զնորա տկարութիւնն յանդի-
մանել։

«Բամբասէք զիս՝ և ոչ ամաչէք յարձակեալ ի
վերայ իմ»։ Ո՞չ գիտէք զի այժմ զօրագոյն եմ, և
առաւել և պատուական այժմ երևիմ ողջախոհաց.
այժմ ատեանս Յովբայ թէպէտև յերկրի է և ի
վերայ աղբեացն նստի, ահագին երևի՝ որք ուղղու-
թեամբ կամին տեսանել. քանզի այժմ պատեալ են
զնովաւ հրեշտակք, այժմ սպասաւոր ոչ երևելիս՝
այլ աներևոյթս ստացեալ է։ Բայց դուք չարախօ-
սէք զինէն զամենայն ոգւոց աչս՝ զամօթ ի բաց
723 մերժեալ. և ոչ միայն զի ի վերայ բարեկամիս զայ-
րացեալք էք, այլ և ընդդէմ Աստուծոյ, որ էած
զիս յայս մրցումն և ի ճգունս, ոչ զի ի ձէնջ բամ-
բասեցայց, այլ զի յամենեցունց զարմանալի եղէց։

«Այո, արդարև ես մոլորեցայ և յիս հանգուցեալ
է մոլորութիւն, խօսել բան զոր ոչ է արժան. և
բանք իմ մոլորեալ են՝ և ոչ են ի դէպ ժամանակի»։
Բայց ոչ այնպէս որպէս դուք կարծէք. ոչ մոլորի
այն որ յԱստուծոյն վկայեցաւ, իբրև զճշմարիտ.
ոչ ինչ արտաքոյ քան զիրաւունս խօսի, որ ի վերին
իմաստութենէն ազդեալ է. ոչ ինչ անարժանս խօ-
սի, որ եղեալ է զօրական ի ձեռանէ արարչին։
Բայց սակայն թէպէտ և այդպէս կարծէք, խրա-
տել պարտ էր և ոչ նախատել, մխիթարել և ոչ
բամբասել. և ոչ զայս առնել՝ զոր դուք յանամօ-
թութենէ գործէք։

«Թողցուք զայդ որ յիմ վերայ մեծաբանեալ էք
և յարձակեալ էք ի վերայ իմ նախատանօք»։ Ըն-
դէ՞ր մեծաբանեալ էք ի վերայ առն՝ որ իւրովի առ-
724 նու յանձն զխոնարհութիւն. և ընդէ՞ր յարձակեալ

էք ի վերայ անգելոյս, ընդէ՞ր նախատէք զսա՝ ո֊
րում պարտ էր լինել ձեզ ախտակից, և աղօթս
առնել ի վերայ։ Այլ համարեաց թէ ի վերայ իմ
մեծարանէք, իսկ ի վերայ Աստուծոյ ընդէ՞ր. քան֊
զի ի նմանէն են խնամք ի վերայ իմ։

«Գիտասջի՛ք՝ զի Տէր է որ խռովեցոյցն, և ա֊
մուրս ի վերայ իմ բարձրացոյց»։ Բամբասէք զՅոբ
իբրև թէ ընդունայն խօսիցի, իբրև թէ բարբաջիցէ
բանիւք, և կամ խռովեալ է մտօք և կամ բա֊
նիւք, և վասն այսորիկ ի վերայ արդարութեան ան֊
ձին վկայէ. զոր որպէս ասէք՝ թէ չէ ստացեալ։
«Արդ գիտասջի՛ք՝ զի Տէր է որ խռովեցոյցն զիս»։
Զայս խռովութիւն՝ որ ոչ է խռովութիւն, զոր դուք
կարծէք եթէ խռովութիւն իցէ. քանզի ես ոչ ինձէն,
այլ հայելով յԱստուած և ի վկայութիւն Նորա, այս֊
պիսիս ասեմ վասն իմ. քանզի Նա անուանեաց զիս
ճշմարիտ, անարատ, արդար, աստուածապաշտ։ Ուս֊
տի և ի մեծ ճգնութիւն մատնեաց զիս վասն մեծամեծ
վկայութեանցն, բայց ոչ եթող զիս մերկ, այլ ամուրս
ի վերայ իմ բարձրացոյց։ Մեծ և բարձր պարիսպ 725
ինձ շնորհեաց զհամբերութիւն, զորոյ զամրութիւնն
ոչ կարեն քակել թշնամիքն, և ոչ բազում մեքե֊
նայիւք կործանել, թէպէտ և բազում իրօք փորձե֊
ցին։ Բայց յօրինէ զայս ի վերայ իմ, զի արձան
կանգնեսցէ զիս այնմիկ՝ որ կամելով՝ զձեռամբ իւր
ածցէ զամենայն թշնամիսն աներևոյթս։ Քանզի ոչ
ևս կոչէր ճշմարիտ, անարատ և արդար զՅոբ,
զերկրային ամանն, զկաւեղէն պատկերն, եթէ ոչ
էր Նորա զնմանութիւն և զկերպարանս բերեալ զայ֊
նորիկ՝ վասն որոյ Դաւիթն ասէր, եթէ «Ճշմար֊
տութիւն յերկրէ բուսաւ»։ Բայց ինքն Տէր արդար՝
և զարդարութիւն սիրեաց։ Իսկ Եսայի ասէ. «Զա֊
նօրէնութիւն ոչ գործեաց և ոչ գտաւ նենգութիւն
ի բերան Նորա»։ Որչափ ինչ թուել կամիմ՝ եղև ի
վերայ Յովբայ. բայց նշանակէ զնորա չարչարանս։
Վասն զի ինքն որդիքն Հրէից ոչ կարէին զայն ա֊

ծել ի վերայ նորա, այլ կամօք և թողացուցանելով
Որդւոյն, որ կամեցաւ իւրով չարչարանօք փրկել
726 զամենայն ազգս մարդկան. դոյնպէս լինէր և Հօր
կամօք։ Յիրաւի ուրեմն ասէ իբրև թէ ի Նմանէն
եկեալ ի վերայ նորա։

«Եւ ահա ծիծաղիմ նախատանօք, և ոչ խօսե֊
ցայց»։ Քանզի ծաղր առնէր Քրիստոս ի վերայ
խաչին զնախատողսն իւր, որք ասէին ցնա. «Թէ
Որդի ես Աստուծոյ էջ ի խաչէդ». և նա ոչ ինչ ա֊
սէր ցնոսա։

«Աղաղակեցից՝ և ոչ ուստեք իցէ դատաստան»։
Եւ այս նորա է՝ որ ասէր ցսպասաւորն որ զնա ապ֊
տակէր. «Եթէ չար ինչ խօսեցայ վկայեա՛ վասն
չարին. իսկ եթէ բարի՝ ընդէ՞ր հարկանես զիս»։
Դատաստանն ոչ էր ճշմարիտ, յայտ է թէ և ոչ
արդար. քանզի թէպէտ և բազումք էին դատաւորք,
այլ ոչ ոք ճշմարտութեամբ խօսէր։

«Շուրջ պատեալ եմ, և ոչ կարացից անցանել»։
Վասն զի շուրջ պատեալ էին զՏէր դասք զօրակա֊
նացն Պիղատոս(ի) և ժողովուրդք հրէիցն՝ յետ հրա֊
մանին Պիղատոսի։ Ոմանք թքանէին ընդ երեսս,
ոմանք կափէին, ոմանք հարկանէին։ Բայց ոչ ան֊
ցանէր ընդ մէջ շուրջ պատելոյ ժողովրդեանն. այ֊
սինքն է, թէ ոչ ելանէր և ոչ փախչէր, թէպէտ և
727 չորացուցանել կարէր զձեռս հարկանողացն, և խնուլ
զբերանս այնոցիկ՝ որք թքանէին ընդ երեսս նորա,
և կտրել զաջ՝ որք կափէին զնա. և զայս առնելով
կարէր ելանել ընդ մէջ նոցա, որք տեսանէին զնա
և որք ոչ տեսանէին։

«Եւ ի վերայ երեսաց իմոց խաւար եդ»։ Յոր֊
ժամ ի վեց ժամէ մինչև ցինն ժամն մտեալ ի խա֊
ւարի եհան զտիւն, զի մի՛ զարարչին երեսս մերկան֊
դամս տեսցէ արարածս։

«Մերկացոյց յինէն զփառս իմ»։ Քանզի պարտ
էր կատարել բանին մարգարէութեանն Եսայեայ.
«Տեսաք զնա, և ոչ գոյր տեսիլ և ոչ գեղեցկու֊

թիւն. զի տեսիլ նորա անարգ էր և նուազեալ քան զամենայն որդիս մարդկան»։

«Վերացոյց զպսակն ի գլխոյ իմմէ»։ Զի կարասցեն գնել զպսակ նոր ի փշոց։

«Պարուրեաց շուրջ զինև՝ և գնացի»։ Յորժամ աշակերտքն որ շուրջ զՔրիստոսիւ էին ցրուեցան, իսկ նորա մատնեալ զինքն այնոցիկ որք ըմբռնեցին զնա՝ գնաց։

«Եհատ իբրև զծառ զյոյս իմ»։ Ոչ ասաց թէ արմատաքի խլեաց, այլ եթէ եհատ. քանզի ծառ յորժամ կտրի ի բնէն, բազում այլ ծառս բղխէ յարմատոյն յետ կտրելոյն։ Բայց սակայն Քրիստոսի խաչեցեալ, թէպէտ և բազում անգամ յառաջագոյն ասացեալ էր աշակերտացն վասն յարութեանն իւրոյ, հատաւ բազմաց յոյս վասն նորա. քանզի պղտորեալք վասն չարչարանաց նորա՝ յուսահատեցան վասն փրկչին. ցուցանէ իսկ և կղէովպաս ասելով, եթէ «Մեք այսպէս ակն ունէաք, եթէ սա է որ փրկելոցն իցէ զԻսրայէլ». ուստի և սաստեալ լինի ի փրկչէն. իբրև թէ մինչ յայնչափ յանյուսութիւն եհաս, յորժամ ասէր ցնա, եթէ «Ո անմիտք և ծանրասիրտք առ ի հաւատալ ամենայնի զոր խօսեցան մարգարէքն». և ցուցանելով իբրև թէ ոչ էր պարտ յուսահատել վասն նորա յուսոյն, ի վերայ ածէ. «Ո՞չ զայս պարտ էր կրել Քրիստոսի, և ապա մտանել ի փառս իւր»։ 728

«Եւ չարաչար բարկութեամբ վարեցաւ ընդ իս»։ Պարտաւորութեամբն Ադամայ. քանզի նորա եկն հատուցանել զպարտսն հնոյն Ադամայ. և վասն այսորիկ ի վերայ էած։

«Համարեցաւ զիս իբրև զթշնամի»։ Յայտ է թէ զպատուիրանազանցին զպարտիս յինէն պահանջեաց։

«Միանգամայն հասին ի վերայ իմ հէնք նորա»։
Եւ պատրաստեցան ի վերայ իմ ճանապարհօք իմովք։ Քանզի ոչ ինչ էր տեսիլ փորձութեանց որում ոչ համբերեաց յայնժամ Փրկիչն, թուղացուցանելով 729

*և կամելով Հօր. վասն որոյ փորձութիւնք նորա ա-սին, որ ի Հրէիցն եկին ի վերայ նորա, զոր պա-տրաստէին յամենայն ճանապարհս Քրիստոսի. կամե-լով գտանել պատճառս կամ բանի կամ գործոյ:*

*«Պատեցան զինև դարանակալք»: Թերևս նոքա՝ վասն որոյ այսպէս գրեալ է յաւետարանական պատ-մութեանն Ղուկայ, եթէ «Սպասելով առաքեցին դարանակալս՝ կեղծաւորեալք իբրև զարդարս. զի կարասցեն որսալ զնա բանիւք»: Ընդէ՞ր պատեցին զիս ասէ, այսինքն է՝ դարանեցան, վասն զի կա-մէին զնա յարդարութենէն և յանաչառութենէ որ-սալ բանիւք և ասէին, եթէ «Վարդապետ գիտեմք զի ուղղութեամբ խօսիս, և ուսուցանես, և ոչ ու-մեք առնուս ակն, այլ ճշմարտութեամբ ուսուցանես զճանապարհն Աստուծոյ. պա՞րտ է մեզ հարկս տալ կայսեր թէ ոչ»:*

*«Հեռի եղեն յինէն եղբարք իմ, ծանեան զօտարս քան զիս»: Եւ զայս վկայեն աւետարանական շը-նորհքն, զի ճշմարտութեամբ վասն Տեառն ասա-*
730 *ցեալ է. քանզի ասէ իսկ Յովհաննէս, եթէ «Եղ-*
*բարք իւր ոչ հաւատային ի նա». յորժամ ասէին*
*ցնա, եթէ «Երթ ի Հրէաստան զի և աշակերտք քո*
*տեսցեն զնշանս՝ զոր առնես. քանզի ոչ ոք է որ ի*
*ծածուկ գործիցէ, և կամիցի զինքն համարձակու-*
*թեամբ ցուցանել. իսկ եթէ զայս առնես յայտնեա՛*
*զքեզ աշխարհի»: Զայս ասէին, զի ոչ գիտէին զզօ-*
*րութիւն նորա, և «զօտարս ճանաչեն քան զնա»,*
*յայտ է թէ զՀրեայս. այսինքն է՝ թէ զնոցայսն խոր-*
*հէին. ուստի պարտ էր զարմանալ զնմանէն՝ նոքա*
*անգոսնէին:*

*«Բարեկամք իմ անողորմք եղեն»: Բարեկամս իւր ասէ՝ զորս ինքն սիրէր, զորդիս Հրէիցն. քան-զի այնչափ սիրէր զնոսա վասն ազգակցութեանն Աբրահամու, մինչև ցքանանացին ասէր. «Ոչ բարիոք է առնուլ զհաց որդւոց և ընկենուլ շանց»: «Նոքա անողորմք եղեն», քանզի Պիղատոս հրամայեաց ար-ձակել զնա և նոքա խաչել հարկաւորեցին:*

«Անգոսնեցին զիս մերձաւորք իմ, և որք ճանա-
չէին զանուն իմ՝ մոռացան զիս»: Զաշակերտսն իւր
և զՊետրոս ակնարկէ, վասն զի էր նա քան զամե-
նեսին մերձաւոր, մինչև ամենեքին փախեան, և նա
միայն երթայր զհետ. այլ և զանուն Տեառն նա 731
յայտնապէս ճանաչէր. ո՞չ ընդ ամենեսին ընդ աշա-
կերտսն հարցեալ, եթէ «Դուք զո՞ ասէք զինէն», սա
յառաջագոյն քան զամենեսին բարբառեցաւ, եթէ
«Դու ես որդի Աստուծոյ կենդանւոյ»:

«Դրացիք տան իմոյ և աղախնայք օտար համարե-
ցան զիս, այլազգի թուէի առաջի նոցա»: Աղա-
խնայս իւր յիրաւի կոչէ զժողովարանն նոցա, և տուն՝
զառաջին պատուիրանն, և դրացիս նորա զփարիսա-
ցիս և զդպիրս, վասն զի էին մերձաւորք վասն գը-
րոյն. սոքա օտար և այլազգի համարեցան զՔրիս-
տոս, յորժամ Շամրտացի անուանեցին զնա:

«Զծառայ իմ կոչէի և ոչ լուաւ»: Յայտնապէս
զՅուդայէ ասէ. քանզի յիրաւի (ծառայ) անուանի.
վասն զի ժողովեալ ընդ աշակերտսն առ ի սպա-
սաւորութիւն նորա, վասն այսորիկ կոչեաց զնա ա-
սելով. «Յուդա համբուրելո՞վ եկիր մատնել զորդի
մարդոյ». բայց ոչ լուաւ Քրիստոսի, կամեցեալ նո-
րա ուղղել զչար ծառայն:

«Բերան իմ աղաչէր և աղերսէի զկին իմ»: ԶԵ-
րուսաղէմէ ասէ, զոր խօսեալ էր ինքեան վասն օ-
րինաց պաշտամանն. քանզի զնա բազում անգամ 732
աղաչեաց զի ապրեսցի, և բազում անգամ աղեր-
սեաց զի դարձցի. մինչ զի և ասէր վասն նորա.
«Երուսաղէմ, Երուսաղէմ, որ սպաներ զմարգարէս,
և քարկոծեցեր զառաքեալսն ի քեզ, քանիցս ան-
գամ կամեցայ ժողովել զորդիս քո, որպէս և հաւ զի
ժողովէ զձագս իւր, և ոչ կամեցարուք»:

«Կոչէի աղաչանօք զորդիս հարճից իմոց»: Որ-
պէս զաղախնայսն իմացաք զժողովարանն Հրէից,
դոյնպէս և զհարճսն. և որպէս զդրացիսն՝ զդպիրսն
և զփարիսացիս ասացաք վասն գրոյն, դոյնպէս և որ-

դիս, զի վասն Նորա և վասն այլոյ Հրէական ժողո-
վըրդեանն ի ձեռն Եսայեայ մարգարէի բարբառեցաւ,
թէ «Որդիս ծնայ և բարձրացուցի, և նոքա զիս
անարգեցին». և ստէպ կոչեցի զնոսա, ողքալով և
սաստելով և մխիթարելով և խրատելով։
«Եւ նոքա յաւիտեան մերժեցին զիս». ցՊի-
ղատոս բարբառեալ վասն Նորա. «Ոչ զոք ունիմք թա-
գաւոր բաց ի կայսերէ»։
«Յորժամ յառնեմ, բամբասեն զիս»։ Եւ ո՞ ոք
733 կարիցէ լինել յերկրայս, եթէ չիցէ մարգարէու-
թիւնս վասն Քրիստոսի։ Քանզի ոչ արդարև պատ-
շաճ և վայելուչ աստ ի վերայ Յովբայ. բայց ի վե-
րայ Քրիստոսի յայտնապէս է մարգարէութիւնս.
քանզի յետ յարութեանն այսպիսի ինչ վասն Նորա
խօսեցեալ գտանի, եթէ «Գիշերի եկին աշակերտք
Նորա և գողացան մինչ մեք ի քուն էաք». զորոյ
զամբաստանութիւն յիրաւի ձգելով, զայս ի կարգի
եդ։
«Գարշեցան յինէն ծանօթք իմ, և զորս ես սի-
րէի՝ յարեան ի վերայ իմ»։ Քանզի գիտէին իսկ
զՔրիստոս որդիքն Հրէիցն, օրինացն ցուցանելով
զնա և մարգարէիցն վկայելով վասն Նորա ի սկըզ-
բանէ. ուստի և զՏէր այսպէս գտանես բարբառեալ
վասն Նոցա, եթէ «Եւ զիս ճանաչէք և գիտէք ուս-
տի եմ». և դարձեալ, «Մի՛ կարծէք եթէ ես ամ-
բաստան ինչ լինիմ զձէնջ առ Հօր. բայց է որ ամ-
բաստանիցէ զձէնջ, Մովսէս՝ յոր դուքն յուսացեալ
էք. զի եթէ հաւատացեալ էր ձեր Մովսէսի՝ և ինձ
հաւատայիք. քանզի վասն իմ գրեաց Նա»։ Որչափ
սիրեաց զնոսա՝ ցուցանեն իսկ և այս տէրունական
բանք. «Ոչ առ ոք եկի՝ բայց միայն առ ոչխարս
734 կորուսեալս տան Իսրայելի»։ Այլ և զաղօթս՝ որ
վասն Նոցա մատոյց ի վերայ խաչին. իսկ նոքա
գարշեցան, և զառ ի Նմանէ խրատս ոչ ընկալան,
և յարեան ի վերայ Նորա մինչև ի մահ մարտու-
ցեալք ընդ Նմա։

«Փտեցան մարմինք իմ ընդ մորթով, և զոսկերս
իմ ունի յատամունս»: Այսոքիւք իմացիր ասել
զտէրունական խորհուրդն. քանզի մորթ Նորա յի-
րաւի անուանեսցի ամենայն ազգ մարդկան, մանա-
ւանդ եկեղեցիք և որ ի նոցանէ ժողովուրդք են: Ի
սոսա և վասն սոցա մարմինք Քրիստոսի ոչ նեխե-
լով, քանզի ոչ ետես մարմին Նորա զապականու-
թիւն. այլ վասն իջանելոյն Նորա յերկնից առ ի
չարչարանս՝ իբրև թէ բաշխեալ եղև ի կերակուր
բարեպաշտաց: Քանզի ոչ ասէ նեխութիւն ապակա-
նութեան, այլ վասն կերակրոյն ասէ, զի եղև կա-
կուղ, և ատամանց մերոց դիւրաւ ըմբռնելի: Քան-
զի ոչ կարէաք ունել զմարմին Աստուծոյ, եթէ ոչ
Նորա զայս կամեցեալ էր վասն մերձենալոյ մերոյ
և ճաշակելոյ զմարմին Նորա: Քանզի ցուցանէ իսկ 735
որ ի կարգիս կայ: «Եւ զոսկերս իմ ունիք յատա-
մունս»: Ցո՛ր ատամունս, յայտ է թէ յայն՝ որով
ճաշակեն զխորհուրդն տէրունական, որ ոչ կարէին
ունել զմարմինն Քրիստոսի, եթէ ոչ Նորա կամօք
զիւր մարմինն իբրև թէ եփեալ այնու բանիւք զոր
բարբառեցաւ յորժամ զխորհրդական ընթրիսն կա-
տարէր ի Սիոնն, օրհնեաց և ետ ի կերակուր որ
ունէին զնա: Որ կամիցի ճշմարտութեամբ վայելել
և հաղորդ լինել թագաւորական ընթրեացն և խոր-
հըրդոյ հարսանեացն, և համարձակութեամբ փափկա-
նալ, հալեսցեն զմարմինս իւրեանց և մեռեալք ե-
ղիցին աշխարհիս այսորիկ, և մատուսցեն զմարմինս
իւրեանց կենդանի պատարագս, սուրբս և հաճոյս
Աստուծոյ, և յամենայն չար ցանկութեանց անազ-
դելիք եղիցին: Քանզի այնու եղիցի զօրական Հօր
և աշակերտ Քրիստոսի և պաշտօնեայ Հոգւոյն. Նմա
փառք այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից: 736

## ԻԳ

«Ողորմեցարուք ինձ, ողորմեցարուք ինձ, ո՛ բարեկամք, զի ձեռն Տեառն մխեցաւ յիս։ Ընդէ՞ր հալածէք դուք զիս իբրև զՏէր, և մարմնովք իմովք չիցե՞ք յագեալ։ Ո՜ տայր ինձ գրել զբանս իմ, և հանել զսոսա ի մատեան յաւիտեան, գրչաւ երկաթեաւ և կապարեաւ, կամ ի վէմս քանդակեալ։ Քանզի գիտեմ զի մշտնջենաւոր է որ լուծանելոցն է զիս։ Ցերկրէ յարուցանել զմորթ իմ որ կրեաց զայս ամենայն։ Ի Տեառնէ վճարեցաւ ինձ այս. զոր ես անձին իմում իրագէտ եմ, զոր ակն իմ ետես՝ և ոչ այլ ոք. ամենայն ինչ վախճանեցաւ ի ծոց իմ։ Ապա թէ ասիցէք, զի՞նչ խօսեսցուք առաջի նորա, և արմատ բանի գտցուք ի նմա. երկերուք և դուք ի ծածկելոյ։ Զի բարկութիւն ի վերայ անօրինաց եկեսցէ, և ապա գիտասցեն թէ ուր է նիւթ նոցա»։

Զընդունայն մեծութենէս բազմաց է փոյթ. և
վասն պատուոյ, փառաց և երկրային հարստութեան֊
ցըս ամենայն մարդկանս է հոգ. որոց անուանքն
737 բարիոք են, բայց իրքն ոչ ամենևին. որոց ստա֊
ցուածքն աւելորդ են, և վայելքն ապականացու.
զոր ժողովել աշխատութեամբ է, և պահել անհնա֊
րին. որոյ ծաղիկն գեղեցիկ է, այլ ընդ չօշափելն
թառամի. որոյ օրհնութիւն բանիւք է, իսկ իրօք
անէծք։ Իսկ արդարք զայսմանէ ոչ փոյթ առնեն և
ոչ հոգ տանին. այլ թէ զիա՞րդ ինքեանք զօրականք
եղիցին արարչին, և կամ թէ զիա՞րդ խառնեսցին
ընդ գունդս հրեշտակաց, և կամ զիա՞րդ ի ձմեռ֊
նային կենացս հասցեն ի նաւահանգիստն խաղաղու֊
թեան, կամ թէ զիա՞րդ յաղթիցեն որ ազգի ազգի
ախտիւք մարտնչի ընդ նմա։ Որոց եկայք և մեք
ամենայն փութով նմանեսցուք, և համբերութեամբ
փշրեսցուք զամենայն հնարագիտութիւն աներևոյթ

թշնամոյն. Թէպէտ և ոք վարձկան եղեալ նորա,
կամեսցի նախատել զմեզ իբրև զմեղաւորս, մեք եր֊
կայնմտութեամբ անսասասցուք նոցա, նմանեալք Յով֊
բայ: «Ճշմարտութեամբ գիտեմ եթէ այդ այդպէս է.
քանզի զիա՞րդ եղիցի մարդ արդար առաջի Տեառն»:
Եւ բանս եղիցի մեզ առ ի խոստովանութիւն, և 738
նախատողացն եղիցի առ ի յիշատակ զղջի և դար֊
ձի: Զի լսելով եթէ ամենայն մարդիկ ընդ մեղօք
են, ոմանք ընդ մեծիւ և ոմանք ընդ փոքու, խոցին
բանիւ և հարկանին խղճիւ, և ընթացեալ խնդրես֊
ցեն բժիշկ՝ զոր մեք խնդրեմք. քանզի եթէ դար֊
ձեալ ոմանք կամեսցին կողոպտել զհամբերութիւն
մեր, ողբալով զաղքատութիւն մեր՝ յորում եմք, և
կամ թէ զտկարութիւն մեր երկեցուցանել, և կամ
ի փորձութեանցս մերոց յուսահատեսցեն, ընդ ո֊
րում մեք մրցիմք, ասասցուք և մեք առ նոսա.
«Եթէ զբարիսն ընկալաք ի ձեռանէ Տեառն, չա֊
րեացս զիա՞րդ ոչ համբերիցեմք»: Եւ բանն լինի
մեզ գովութիւն և պատարագ հաճոյ Աստուծոյ՝ քան
զխոյս և զուարակս: Իսկ զնոսա արասցէ ի կարօ֊
տութեան, և ակն կալցին տանջանաց, վասն զի նմա
կամեցան ծառայել՝ որ ոչ դադարէ ձուլել զփորձու֊
թիւնս, ջեռուցանելով զթագաւորական ոսկին, և
սրբելով զզահեկանս նորա: Իսկ եթէ ստամբակք 739
հպարտ և ամբարտաւանք դիպեսցին, որք մեծարա֊
նելով ձգտեսցին ընդ մեզ, մեք խոնարհս խօսեսցուք
ընդ նոսա՝ յորժամ հայհոյեսցեն զմեզ: Բայց զի՞
արդեօք ունիցին խոնարհութեան բանքն ի ներքոյ
ինքեան զյիշատակս Աստուծոյ արարչի մերոյ: Քան֊
զի այնպէս կարասցուք առ ի զգաստութիւն ածել
միանգամայն, և զարթուցանել յօգուտս, ասելով
զոր այժմ Յովբ ասէր ցայնոսիկ որ բազում ա֊
ւուրց սրէին զսրտմտութիւնս իւրեանց ի վերայ
նորա:

«Ողորմեցարուք ինձ, ողորմեցարուք ինձ, ո՛ բա֊
րեկամք, զի ձեռն Տեառն մխեցաւ յիս»: Ողորմե֊

*ցարուք ինձ, զի դուք ողորմութեան արժանի լինիջիք.
և զգութս ձեր ինձ փոխ տուք, զի և դուք անդրէն
գտջիք ի պիտոյ ժամանակի։ Ողորմեցարուք ինձ,
ողորմեցարուք, վասն զի մարմինս աշխատեալ է ցա-
740 ւովք, և հոգիքս ձերովք բանիւք. քանզի ձեր նա-
խատանքդ կարի սաստիկ չարագոյն են քան զոր-
դունսս. նոցա ատամունք ոչ հանապազ ցցեալ են,
բայց ձեր բանքդ ոչ դադարեն ի խոցոտելոյ զմիտս
իմ։ Ողորմեցարուք ինձ, ողորմեցարուք, ո՛ բարե-
կամք։ Քանզի բարեկամաց ողորմել պարտ է և ոչ
նախատել, ախտակից լինել խոցելոյն և ոչ խոցոտել,
ձեռն տալ անգելոյն յերկիր և ոչ կոխել և առա-
թուր հարկանել՝ որ կամիցին յառնել։ «Քանզի
ձեռն Տեառն մխեցաւ յիս»։ Քանզի ոչ այսչափ կա-
րէր զօրանալ թշնամին, և ոչ ձեռն կարէր արկա-
նել բանսարկուն զմարմնովք արդարոյն, եթէ ոչ յԱս-
տուծոյ առեալ էր հրաման։ «Ձեռն Տեառն մխե-
ցաւ յիս»։ Այն որ զայս ասաց ցթշնամին, եթէ
«Ահաւասիկ տամ զնա ի ձեռս քո, բայց միայն զոգի
նորա պահեսցես դու»։
«Ընդէ՞ր հալածէք դուք զիս իբրև զՏէր, և մար-
741 մնովք իմովք չիցէ՞ք յագեալ»։ Քանզի հալածէ ըզ-
Յովբ Տէր առ ի մրցմունս փորձանաց, որպէս և
դուք. այլ նա ի կեանս, իսկ դուք ի մահ։ Նա սահ-
մանեաց՝ եթէ յոգի ճգնողին մի՛ մերձանայցես։ Ահա
զնչան յաղթութեան պահէ ինձ, և զպսակն յաղթու-
թեան պատրաստէ ինձ. ահա զմրցմունս և զտեղի
հանդիսի կամի դադարեցուցանել վշտակցելով իմոյ
ճգնութեանս։ Բայց դուք մարմնովք իմովք չիցէք
յագեալ, այլ կամելով նորոգել զմրցմունս իմ և ըզ-
պատերազմ, չարաչար բանիւք հարկանէք զիս. այլ
և յիշելով զանողորմ բանս ձեր՝ մարտնչիմ առանց
վհատելոյ. այլ և զառաջիկայ զճգունս իմ կամիմ
ցուցանել ազգաց՝ որ առ յապա լինելոց են։
«Ո՞ տայր ինձ գրել զբանս իմ, և հանել զստա ի
մատեան յաւիտեան, գրչաւ երկաթեաւ և կապա-*

րեաւ ի վէմս քանդակեալ»։ Առ ի վկայութիւն, զի
կացցեն ազգաց առ ի բարի ցոյց մարտք համբերու- 742
թեանն Յովբայ. զի պատմութիւնք իմոց փորձու-
թեանցս, առ[1] ի հաստատութիւն եղիցին այլոց ար-
դարոց։ Եւ զայս ասէր Յովբ առ ի վերին երեւս
բանից, բայց ըստ ներքին մտաց այլ իմանայր, ուս-
տի և զդէմս Քրիստոսի նմանեցուցանելով առակէր,
զոր այսպէս քննելով զբանս՝ գիտասցուք։
«Ողորմեցարուք ինձ, ողորմեցարուք, ո՛ բարե-
կամք»։ Եւ զայս առ որդիս Հրէիցն ասէր, զի բա-
րեկամս զնոսա վասն զաւակին Աբրահամու ասէր,
թէպէտ և ինքեանք զինքեանս ի թշնամութիւն դար-
ձուցին վասն անունկնդրութեան։ Վասն որոյ և ասէ
ցնոսա. «Ողորմեցարուք ինձ, ողորմեցարուք»։ Զի
լուիցեն բանից նորա և մատիցեն առ փրկիչն, զի
մի՛ ընդունայն եղիցի գալուստ փրկչին, և մի՛ մոլո-
րեսցին ի հովուէն ոչխարք Իսրայելի։ Եւ մի՛ զար-
մանար եթէ աղերսելով և ողոքելով եմոյծ զդէմսն
Քրիստոսի ճառ մարգարէութեանս. վասն զի և Պաւ-
ղոս ասէր, թէ «Աղաչեմ հաճեցարուք վասն Քրիս- 743
տոսի ընդ Աստուծոյ». և զի՞նչ եդ առ ընթեր այ-
սոցիկ. «Որ ոչն գիտէր զմեղս, նա վասն մեր մեղս
արար»։ Զոր և լուր իսկ ըստ որում օրինակի և
Յովբ ասաց. «Եթէ ձեռն Տեառն մխեցաւ յիս»։
Զհօրէ ասէր. քանզի լուար իսկ, եթէ նա արար
զնա վասն մեր մեղս, զայն որ ոչն գիտէր մեղս. ոչ
փոխեալ ի մեղս, այլ հաճոյ թուեցաւ զի զմեր մեղս
բարձցէ։ Իսկ թէ վասն է՞ր, ցուցանեն մեզ որ ըստ
կարգիս կայ. «Զի մեք նովաւ եղիցուք արդարու-
թիւն Աստուծոյ»։ Նոյնպէս և անէծք եղև, զի կա-
մեցաւ բառնալ զօրէնս անիծից։ Եւ դարձեալ լուր
Պաւղոսի՝ զոր գրէ առ Գաղատացիս. «Քրիստոս
գնեաց զմեզ յանիծիցն յօրինաց, լեալ վասն մեր
անէծք. զի գրեալ է, թէ անիծեալ ամենայն՝ որ կա-

1. յՕր. այլ։

խեալ է զփայտէ զի ի հեթանոսս օրհնութիւն Ա-
բրահամու եղիցի ի Քրիստոս Յիսուս»։
«Ընդէ՞ր հալածէք դուք զիս իբրև զՏէր, և մար-
մնով իմով չիցէք յագեալ»։ Քանզի Հայր, ասէ,
փութացուցանէ զիս վասն մարդկան չարչարիլ, յոր
և ես իսկ փութացեալ եմ. այլ նա վասն այնորիկ
744 փութացուցանէ, զի փրկութիւն եղիցի մահս իմ ազ-
գի մարդկան, և սպանեալ իբրև զգառն՝ եղէց կե-
րակուր խորհրդոյ. բայց դուք մարմնովք իմովք ոչ
կամիք յագենալ, և ոչ վայելել ի սմա։
«Ո՞ տայր ինձ գրել զբանս իմ, և հանել ի մա-
տեան յաւիտեան, գրչաւ երկաթեաւ և կապարեաւ
քանդակեալ ի վէմս առ ի վկայութիւն»։ Զամենայն
իսկ բանս իմ կամիմ թէ գրեսցին՝ զոր բաւեն լսել
մարդիկ, բայց առաւել ևս զայն՝ որովք բողոքէին
ձեզ. «Եթէ ոչ ուտիցէք ի մարմնոյ իմոյ և արբջիք
յարենէ իմմէ՝ ոչ ունիք կեանս յանձինս ձեր»։ Զայս
և որ այսպիսիք ինչ են, «Ո՞ տայր ինձ գրել զբանս
իմ և հանել զսոսա ի մատեան յաւիտեան»։ Զի նա
ասաց և ցիսայի, եթէ «Ա՛ռ դու քեզ հատած մի
նոր մեծ, և գրեա՛ ի նմա գրչաւ մարդոյ»։ Կամիմ
զի գրեսցին, այլ գրչաւ երկաթեաւ և կապարեաւ.
զի զերկաթոյն սրութիւն և զերագութիւն ունիցի
գրողն, և զկապարոյն զներկուած գրոյն, զի հանա-
745 պազ մնասցեն գրեալքն. քանզի այսպիսի է բնու-
թիւն կապարեայ գրոյն։ Դոյնպէս և աւետարանա-
կան գրիչն որով գրեալ են բանքն տէրունական. և
ազդող իբրև զսուր՝ որ մնայ ի միտս մարդկան, յորս
միանգամ գրի։ Այլ զի՞նչ և առընթեր եդ։
«Եւ ի վէմս քանդակեալ առ ի վկայութիւն»։
Քանզի վէմք են սիրտք Հրէից, վասն անզգայու-
թեան և թանձրութեան և խստութեան սրտի, այլ
սակայն և ի նոսա կամի գրել փրկիչն զբանս իւր՝
առ ի վկայութիւն ինքեան, զի մի՛ կարասցեն ասել,
եթէ ոչ լուաք վասն այնորիկ ո՛չ առաք ի միտ. զի
նա ասացէ վասն նոցա. «Եթէ ոչ էր իմ եկեալ և
խօսեցեալ ընդ նոսա, ոչ ունէին մեղս»։

*«Քանզի գիտեմ զի մշտնջենաւոր է որ լուծանե֊
լոցն է զիս, ի վերայ երկրի յարիցէ մորթ իմ որ
կրելոցն է զայս ամենայն»։ Վասն այսորիկ ասէ,
թէ գրէին բանքս իմ առ ի յապա ազգս. զի յետ
չարչարանացն և զյարութիւնն ուսանէին։ «Քանզի
գիտեմ զի մշտնջենաւոր է». այսինքն է, հանա֊
պազորդ և յաւիտենական՝ որ լուծանելոցն է զիս։* 746
*Քանզի Նորա կամօք առ ժամանակ մի լուծանիմ ի
վերայ երկրի. այսինքն է՝ քակտիմ. զբաժանումն
զհոգւոց և զմարմնոց ասէ։ Եւ դարձեալ ասէ. «Ի
վերայ երկրի յարիցէ մորթ իմ, որ կրելոցն է զայս
ամենայն»։ Յայտ է թէ մարմինն՝ որ զճգունս չար֊
չարանացն ընդունէր։*

*«Ի Տեառնէ վճարեցաւ ինձ այս. զոր ես անձին
իմում իրագէտ եմ»։ Ոչ մարդկան և ոչ աներևոյթ
թշնամեացն զօրութեամբ կարէր վճարել խորհուրդն
Հրէից, այլ հաճելով Հօր։ Քանզի թէպէտ և Նոքա
ձեռնարկէին՝ ոչ վճարէր և ոչ վախճանէր, եթէ ոչ
Հօր կամօք էր վճարեալ։ «Զոր ես անձին իմում
իրագէտ եմ»։ Զայս կամեցեալ և յառաջագոյն սահ֊
մանեալ. «և ոչ այլ ուրուք գիտացեալ բայց միայն
իմոյ ականս», յայտ է թէ Հոգւոյն. քանզի Հայր
կամի, և Որդի ազդէ, և Հոգի իբրև զգործակից յա֊
ռաջագոյն գիտէ. քանզի այս է գաղտնի և թաքու֊
ցեալ խորհուրդն յաւիտենից։*

*«Ամենայն ինչ վախճանեցաւ ի ծոց իմ»։ Քանզի* 747
*ոչ ինչ թողի զոր պարտ էր առնել վասն ազգի մարդ֊
կան. այլ և ընդունայն ինչ ոչ արարի և ոչ գործե֊
ցի, և ոչ յանձն առի, և ոչ յեղելոց ինչ յինէն ա֊
նօգուտ գրեցաւ. վասն այսորիկ պահի ինձ որ եղև
վասն մարդկան փրկութեանս. ուստի և հրամայեցի
օր ըստ օրէ կատարել հաւատարմաց զխորհուրդն առ
ի յիշատակ իմոց չարչարանաց։*

*«Ապա թէ ասիցէք, զի՞նչ խօսեցուք առաջի Նո֊
րա, և արմատ բանի գտցուք ի նմա. երկերուք և
դուք ի ծածկելոյ»։ Յայտնապէս ասացեալ է զայս՝*

ազդեալ ի մարգարէական հոգւոյ, վասն փարիսա-
ցւոց և դպրաց և վասն այլոց իշխանաց ժողովըր-
դեանն Հրէից: Քանզի խնդրէին ասել ինչ ընդդէմ
նորա, և «արմատ բանի», այսինքն է պատճառս
պարսաւանաց և կամ յանդիմանութեանց կամէին
գտանել վասն նորա, կամ ի խօսից կամ ի գործոց
նորա, այլ զի՞նչ ասէ առ նոսա. «Երկերուք և դուք
ի ծածկելոց»: Քանզի եթէ մերկացուցից զծած-
կեալս ձեր, և յայտնեցից զգաղտնիս, ոչ միայն
վասն բանից այլ և վասն խորհրդոց բազում տան-
ջանաց պարտաւոր գտջիք, զոր ոչ ի հեռուստ պա-
հանջելոց էք:

«Զի բարկութիւն ի վերայ անիրաւաց եկեսցէ,
748 և ապա գիտասցեն թէ ուր է նիւթ նոցա»: Եւ ո՞
էր այնպէս անօրէն՝ որպէս և ժողովուրդն հրէից,
որք ընդ անօրէնս խաչեցին զօրինադիրն, և ընդ ա-
ւազակս սպանին որ քարոզէր զանստացուածութիւն:
Իսկ եկն ի վերայ նոցա բարկութիւն քաղաքին այ-
րեցելոյ և տաճարին կործանեցելոյ, և չիջաւ պատիւ
նոցա: Եւ յայնժամ գիտացին թէ ո՞ւր է նիւթ ըն-
դունայն քաղաքավարութեան, և կեղծաւորութեամբ
արդարութիւն նոցա, և հպարտութիւն հեգնութեան
նոցա: Բայց սակայն զասացեալսս մարթի առնուլ ի
վերայ ամենայն ամպարշտի և անօրինի. քանզի գա-
լոց է և ի նոցա վերայ բարկութիւն, եթէ ոչ յա-
ռաջագոյն հաշտեցուսցեն զինքեանս ընդ դատաւորին
ի ձեռն ապաշխարութեան, զի յորժամ եկեսցէ բար-
կութիւն, գիտասցեն թէ ո՞ւր է նիւթ նոցա. քանզի
թէպէտ և ստացուածք ուրեք իցեն և կամ փառք
կամ զօրութիւնք, և կամ թէ այլ ինչ որ ի վերայ
երկրի չարութեամբ ժողովեալ է, ոչ կարասցեն օգ-
նութեամբ կալ առ նմա ի ժամանակի բարկութեանն
749 և տանջանաց. այլ ընդդէմ գտցի նոցա. քանզի
խոցոտիցեն և մարտնչիցին և յանդիմանիցեն ըզ-
մարդն գործք իւր: Քանզի եթէ որկորստութեամբ
և կամ արբեցութեամբ, կամ հպարտութեամբ, կամ

*անյագութեամբ, և կամ թէ այլ իւիք չարութեամբ
վարեցաւ, ամաչեցեալ լինի գործօղն, աճիւ և եր֊
կիւղիւ կապեալ ի չար հր(ե)շտակաց և ի վրէժխնդիր
գործոց, և գլխարկեալ. և ոչ կարասցէ հայել ընդ֊
դէմ դատաւորին. և խցեալ բերանով ոչ ինչ կա֊
րասցէ տալ պատասխանի։ Յայնժամ լիցի լալ աչաց
և կրճել ատամանց, յայնժամ ոգին հայելով ի սահ֊
մանեալ տեղիս տանջանացն, հանապազ հեծէ և ան֊
մխիթարս ողբայ։ Յորմէ մեք զերծուսցուք զանձինս
մեր, և զազատութիւն ի տանջանացն առանց հեղ֊
գութեան գնեսցուք, և խոկասցուք ի վարս պատուի֊
րանացն։ Յայնժամ և խարիսխն հաստատուն կաց֊
ցէ, և պսակն շքեղ և վայելուչ եղիցի, և ասասցէ
ցմեզ Քրիստոս. «Եթէ ոք սիրէ զիս զպատուիրանս
իմ պահեսցէ, և Հայր իմ սիրեսցէ զնա. եկեսցուք 750
առ նա և օթևանս արասցուք առ նմա»։ Ուր Հայր
և Որդի՝ անդ է սուրբ Հոգին, նմա փառք այժմ և
միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։*

## ԻԴ

*Կրկնեալ անդրէն Սոփփարայ Մինեցւոյ ասէ. «Ոչ
այդպէս կարծէի խօսել քեզ ընդդէմ մեր զայս.
ո՞չ ապաքէն իմաստնագոյնք իցէք քան զիս։ Խրա֊
տու ակնածութեան իմոյ լուայց, և ոգի իմաստու֊
թեան արասցէ ինձ պատասխանի։ Մի՛ եթէ զայդ
յայսմ հետէ՞ գիտացեր. այլ յորմէհետէ եդաւ մարդ
ի վերայ երկրի։ Զի ուրախութիւն ամպարշտաց բե֊
կումն անհնարին, և խնդութիւն անօրինաց՝ կո֊
րուստ։ Եթէ ելանիցեն յերկինս պատարագք նորա,
և զոհք նորա յամպս մերձեսցին։ Յորժամ համարիցի
թէ հաստատեալ իցէ՝ յայնժամ ի սպառ կորիցէ; և
որ գիտէին (զնա՝) ասասցեն թէ ո՞ւր է։ Իբրև զերազ
թռուցեալ ոչ գտցի, թռեաւ իբրև զտեսիլ գիշերա֊
կան։ Ակն որ հայեցաւ ի նա՝ ոչ յաւելցի, և ոչ ծա֊*

*նիցէ զնա տեղի իւր։ Զօրդիս նորա սատակեսցեն
վատթարք. ձեռք նորա բորբոքեսցին ցաւովք։ Ոս-
751 կերք նորա յագեցան մանկութեամբ նորա, և ընդ
նմին ի հող ննջեսցեն։ Եթէ քաղցրասցի ի բերան
նորա չարութիւն՝ թաքուսցէ զայն ի ներքոյ լեզուի
իւրոյ։ Մի խնայեսցէ և մի թողցէ զնա. և ժողո-
վեսցէ զնա ի մէջ կոկորդի իւրոյ. և մի կարասցէ
օգնել անձին իւրում. լեղի իժի ի փորի իւրում։
Մեծութիւն անիրաւութեամբ ժողովեալ՝ փսխեսցի,
ի տանէ նորա կորզեսցէ (զնա) հրեշտակ. զսրտ-
մտութիւն վիշապաց ծծեսցէ, սպանցէ զնա լեզու օձի։
Մի տեսցէ զկիթ արօտականաց, և մի զարօտս մե-
ղու և իւղոյ։ Ի զուր և ի տարապարտուց վաստա-
կեցաւ ի մեծութիւն՝ ուստի ոչ ճաշակեսցէ, իբրև
զխիստ ինչ զանծամ և զանկլանելի։ Զի զբազում
տկարաց զտունս խորտակեաց, և զյարկս յափշտա-
կեաց և ոչ հաստատեաց։ Զիք փրկութիւն ստացուա-
ծոց նորա, ի ցանկութեան իւրում ոչ ապրեսցի, և
մի լիցին մթերք կերակրոց նորա։ Վասն այսորիկ
մի ծաղկեսցեն բարութիւնք նորա. յորժամ համա-
752 րեսցի թէ ահա լցեալ իցէ՝ նեղեսցի։ Ամենայն տագ-
նապ հասցէ ի վերայ նորա, թէ զիարդ լնուցու ո-
րովայն նորա։ Առաքեսցէ ի վերայ նորա զսրտմտու-
թիւն բարկութեան, արկցէ զնովաւ ցաւս և մի ա-
պրեսցի ի ձեռանէ երկաթոյ։ Խոցոտեսցէ զնա ա-
ղեղն պղնձի, անցցէ ընդ մարմին նորա նետ։ Ա-
տեղք շրջեսցին ի յարկս նորա՝ արհաւիրք ի վերայ
նորա։ Ամենայն խաւար նմա մնասցէ, կերիցէ զնա
հուր անշէջ։ Զարչարեսցէ եկամուտ զտուն նորա.
յայտնեսցեն երկինք զանօրէնութիւն նորա. յարիցէ
ի վերայ նորա երկիր։ Քակտեսցէ կորուստ զտուն
նորա ի սպառ, հասցէ ի վերայ նորա օր բարկութեան։
Այս բաժին է մարդոյ ամպարշտի առ ի Տեառնէ,
և այս ստացուածք ընչից նորա յայցելուէն »։*

*Երկիր յորժամ բրի՝ ծաղիկս բերէ (և) պտուղ.
իսկ խոկալ յօրէնս՝ զառաքինութիւնս բերէ։ Վասն*

որոյ փութապէս վարիլ օրինօք ցանկալի է, ոչ բա-
նիւք կերպարանել՝ այլ ճշմարտիւ գործել, ոչ ընդու-
նայն զաստուածային բանսն լեզուօք թաւալեցուցա- 753
նել, այլ հաստատել վարուք և գործովք կնքել։
Քանզի որպէս գիտութիւն պերճացուցանէ զընթեռ-
նուլն, նոյնպէս և զգիտութիւն ազդողութիւն պայ-
ծառացուցանէ։ Քանզի զի՞նչ օգուտ է եթէ ունիցի
ոք անդաստան և սերմանիցէ ոչ. կամ զի՞նչ շահք են
յայգւոյ՝ զորոյ զունջսն ոչ բրեն, և զորթն ոչ յատա-
նեն, և զողկոյզն ոչ ուղղեն. ընդունայն և ձիավարժն
պերճանայ՝ յորժամ ոչ վարժէ զձիսն։ Քանզի յոր-
ժամ հունձք եկեսցեն՝ յանդիմանին որք ոչ սերմա-
նեցին. յորժամ կութք հասցեն՝ ամաչեն որք ան-
փոյթ արարին զայգւոյն։ Այլ և յորժամ ասպարէզ
առաջի կայ, որք ոչ կրթեցին զձիսն՝ առանց պսա-
կաց ելցեն ի հանդիսէ անտի։ Բայց Յովբ ոչ էր
այսպիսի, այլ ի սկզբանէ վառեալ էր առաքինու-
թեամբք, ի սկզբանէ կրթեալ էր ի ճգունսն բարե-
պաշտութեամբքն։ Մինչդեռ ի մեծութեանն էր և ի
լիութեան, յամենայն աւուրս յարուցեալ պատա-
րագս մատուցանէր։ Մինչչև ծագեալ էր երևելի լու-
սոյս, նա առ իմանալի լոյսն հասանէր, և յանկող-
նէն ընթանայր բարեբանելով առ տուիչ քնոյն. և ի
տուընջեան գործոյն երթայր առ արարիչ տուըն- 754
ջեանն։ Բայց զտուողն ոչ յետ հեռի ժամանակաց
կթեաց, այլ փորձութեանցն ի վերայ եկելոց, նա
անշարժ եկաց, և իբրև զվէմ հաստատուն՝ զերեք-
կրկնակի զալիս ծովուն ի բաց մերժեաց։ Աշխատէր
թշնամին մրցելով ընդ նա, և մարտնչելով վաստակէր
բանսարկուն. բազում և ազգի ազգի վէրս առնլով ի
նմանէն, և համբերութեամբք արդարոյն իբրև երկ-
սայրի սրով խոցոտեալ՝ ակամայ փախչել հարկաւո-
րիւր։ Նմին պատահէին և որ ի նմանէն վարձեալ եղեն
ամանքն։ Քանիցս անգամ Եղիփազու կամելով ճար-
տարաբանել, համարձակութեամբ արդարոյն խնոյր
բերան նորա։ Քանիցս անգամ զԲաղդատու խրոխ-

*տանալն դադարեցոյց, կարգաւորութեամբ խօսելով
ճշմարիտ զօրականն արդարութեանն. այլ և Սով֊
փար իսկ աւասիկ յառաջաբանէս առաջի դնէ զյաղ֊
թութիւնն: Բայց գիտասցուք տակաւին քննելով
զբանս նորա:*

*«Կրկնեալ անդրէն Սովփարայ Մինացւոյ ասէ»:
Զի՞մրդ կրկնելով անդրէն ընդ Յովբայ ասէ Սով֊
755 փար: Ուսիր՝ քանզի ոչ եգիտ բան զորմէ բուռն
հարկանէր պարսաւանօք. ապա զբանիցն համարձա֊
կութիւն բամբասեաց. և ի վկայս առնու զբարե֊
կամսն և զընկերսն իւր: Քանզի ասէ.*

*«Ոչ այդպէս կարծէի խօսել քեզ ընդդէմ մեր
զայդ»: Այսինքն է, թէ ոչ այդչափ համարձակու֊
թեամբ, և ոչ առանց իրիք ակնածելոյ կարծէի ըզ֊
քէն թէ պատասխանեսցես: Այլ կարծէի, կամ թէ
վասն վիրացն թուլասցիս, և կամ թէ վասն բարե֊
կամացն տեղի տայցես բանից մերոց, և հարկաւո֊
րեալ խոնարհեսցիս: Զի եթէ զայս գիտացեալ (էի)[1]
ի սկզբանէ, ոչ մարտնչէի ընդ քեզ բանիւք, քանզի
առանց հաւանութեան ճարտարաբանես, և ոչ սա֊
կաւ ինչ աշխատի, որ պատասխանէ քեզ: Զայս ա֊
սացեալ Սովփարայ ցՅովբ, ի բարեկամսն կոյս դառ֊
նայ, վկայս կամեցեալ զնոսա առնուլ, վասն համար֊
ձակութեանն Յովբայ: Եւ վասն այսորիկ ի վերայ
էած:*

*«Ո՞չ ապաքէն իմաստնագոյն իցէ քան զիս»: Ո՞չ
իմանայք զՅովբայ խրոխտանս, քանզի ոչ տայ տե֊
ղի՝ այդչափ ի ձէնջ յանդիմանեալ, այլ խրոխտալով
և ջերմութեամբ պատասխանէ, և ոչ առնու յանձն
756 զխրատ ձեր: Այլ և ոչ ի յանդիմանութենէ ամաչէ.
բայց ես ոչ այսպէս, այլ զի՞նչ:*

*«Խրատու ակնածութեան իմոյ լուայց»: Վասն զի
մեծ շահ ունի ամաչել ի խրատողաց: Եւ եթէ որ֊
պիսի՞, լուր:*

1. Յաւելեալ ըստ Վ.:

«Եւ ոգի իմաստութեան արասցէ ինձ պատասխանի»։ Վասն զի տամ զականջս իմ առ ի յուղղութիւն և ի խրատ։ «Եւ ոգի իմաստութեան», յայտ է թէ հանճարոյ, «տացէ ինձ պատասխանի», ուսուցանելով և իմաստնացուցանելով. և ծանուցանել զայն՝ զոր Յովբ ոչ կարծէ գիտել։

«Միթէ զայդ յայսմ հետէ՞ զգացեր»։ Այսինքն է՝ ի սկզբանէ, քանզի Սիմաքոս «յաւիտենից» գըրեաց։

«Յորմէ հետէ եդաւ մարդ ի վերայ երկրի»։ Զայս զոր Յովբ իբրև զանգէտ այժմիկ նախատեաց, քանզի մանաւանդ ի կարգէ աստի ցուցանէ։

«Զի ուրախութիւն ամպարշտաց բեկումն անհնա-
րին և խնդութիւն անօրինաց կորուստ»։ Անա-
մօթութեամբ ասաց յայսմ ի տեղ Սովփար, և յայտ
թշնամանելով զՅովբ, և վասն այսորիկ հանդերձ
այլովք բարեկամօք ոտն հարկանելով առակէր զնա։
Վասն զի ի սկզբանէ յորմէհետէ եղև ազգ մարդ-
կանս՝ ուրախութիւն և ցնծութիւն ընդ գլորումն
ամպարշտաց և ընդ կորուստ անօրինաց, ընդ որս 757
և զՅովբ կամէր, որպէս և ըստ կարգիս ցուցանէ։
Քանզի ի բազում դիմաց զբանս ի մի դէմս արկա-
նէ Սովփար. զի այսու ցուցանէ, եթէ ի վերայ Յով-
բայ պատշաճեն ասացեալքս։

«Եթէ ելանիցեն յերկինս պատարագք նորա, և զոհք նորա յամպս մերձեսցին։ Յորժամ համարիցի թէ հաստատեալ իցէ՝ յայնժամ ի սպառ կորիցէ, և որ գիտէին զնա՝ ասասցեն թէ ո՞ւր է. և իբրև զերազ թռուցեալ ոչ գտցի, թռեաւ իբրև զտեսիլ գիշերական»։ Ընդունայն պարծէր, ասէ, արդարութեամբ, ուստի պարծէր՝ եթէ ելանիցեն նորա պատարագք յերկինս, և զոհք նորա մինչև յամպս հասանէին։ Քանզի ամպարիշտն յորժամ կարծիցէ եթէ հաստատեալ իցէ՝ ի սպառ կորնչի, և ընդ այնչափ յեղափոխմամբ անգանի՝ մինչև ի ծանօթից անծանօթ լինի։ Եւ նման է «երազոյ թռուցելոյ և

տեսլեան գիշերոյ», և այսպէս անամօթութեամբ
Սովփարու թշնամանեալ զՅովբ, առաւել ևս ի կար-
գիս բամբասէ զնա։
«Ակն[illegible]ր հայեցաւ ի նա՝ ոչ յաւելցէ, և ոչ ծա-
նիցէ զնա տեղի իւր։ Զորդիս նորա սատակեսցեն
վատթարք․ ձեռք նորա բորբոքեսցին ցաւովք»։ Զայս
թէպէտ և առանց դիմաց ասէ Սովփար վասն ամե-
758 նայն ամպարշտաց, այլ յայտնապէս զՅովբայ առա-
կէ յամենայն ստացուածս․ վասն զի և այլոց բարե-
կամաց նորա և ծանօթից ակն արհամարհելով զնա
անտես առնէր, թէպէտ և ի սկզբանէ տեսեալ էր
զնա, այլ ոչ ևս յաւելուին տեսանել զնա, և «տեղի
իւր», այսինքն է՝ որք ի տեղւոյ նորա և յաշխար-
հէ նորա էին, ոչ ևս ծանիցեն զնա, հայելով ընդ
մեծութիւն վշտացն ընդարմանային։
«Զորդիս նորա սատակեսցեն վատթարք»։ Թե-
րևս զայս զդևսն անուանէր Սովփար․ քանզի կարի
վատթարագոյնք էին քան զմարդիկ, վասն անկմանն
ի վերուստ․ քանզի նոքա շարժեցին և կործանեցին
զապարանսն՝ յորում մեռան որդիքն Յովբայ։
«Ձեռք նորա բորբոքեսցին ցաւովք»։ Յորժամ
քերէր խեցեաւ զվէրս իւր․ միտ դիր զիա՞րդ բամ-
բասանօք ըստ կարգիս զկծեցուցանէ զնա։
«Ոսկերք նորա յագեցան մանկութեամբ իւրով, և
ընդ նմին ի հող ննջեսցեն»։ Քանզի Յովբայ ոս-
կերսն ապականէր նեխութեամբ մարմնոյն՝ որ ի
նմանէն ելանէր ապականութիւն, և մաշէր զգեղեց-
կութիւն մանկութեանն Յովբայ։ «Եւ ընդ նմին ի
հող ննջէր»։ Կաւեցեալ թարախովն և աղբոյն յո-
759 րոյ վերայ ննջէրն Յովբ։ Բայց որպիսի ինչ ածէ ի
վերայ նորա և ըստ կարգիս՝ միտ դիցուք, զի զար-
մասցուք ընդ ճգունսն, զոր մեծ ճգնողն ճգնէր, համ-
դերձ այլովք չարչարանօք, որ պատեալ էին զնո-
վաւ, և ընդ բարեկամացն (ա)նա(մօ)թութեան կը-
ռուէր։
«Թէ քաղցրասցի ի բերան նորա չարութիւն՝ թա-

*քուսցէ զայն ի ներքոյ լեզուի իւրոյ։ Խնայեսցէ ի*
*նա, և մի՛ թողցէ զնա, և ժողովեսցէ զնա ի մէջ կո֊*
*կորդի իւրոյ. և մի՛ կարասցէ օգնել նմա»։ Ցայսմ*
*ի տեղ բամբասէ զՅովբ, իբրև թէ զչարութիւն իւր*
*բանիւք իւրովք քաղցրացուցանէ, այսինքն է, ծած֊*
*կէ և թագուցանէ զնա լեզուաւն, որովք զինքն երե֊*
*ւեցուցանէր, և «խնայէ ի նա» ոչ ի բաց ընկենլով. «և*
*ժողովէ», այսինքն է՝ արգելու ի մէջ կոկորդի իւրոյ,*
*և ի մէջ բանից իւրոց՝ զոր բղխէր ի կոկորդէ իւր֊*
*մէ. և այնպէս ոչ կարասցէ օգնել ինքեան. այլ ո֊*
*րովք ախտանայր՝ իբրև զամբարիշտ երևէր և յան֊*
*դիմանէր, ընդունայնս կամելով թաքուցանել՝ որ ոչ*
*մարթի ծածկել, քանզի զայս ասել կամեցեալ Սով֊*
*փարու՝ առաւել ևս եցոյց ի կարգէ աստի։*
*«Լեղի իժի ի փորի իւրում»։ Լեղի իժի զթոյնս*
*չարութեանն կոչէ, քանզի որպէս թոյնք իժի ար֊*
*կեալ ի փոր, ոչ կարեն մնանիլ ի բազում ժամս,*
*քանզի սպանանէ զնա որ ի փորն արկ, և այնպէս* 760
*յայտնի լինի և ամենեցուն գիտելի, զոյնպէս առնէ*
*և թոյնք չարութեան, որ թագուցանեն զնա. վասն*
*որոյ և ի վերայ էած։*
*«Մեծութիւն անիրաւութեամբ ժողովեալ՝ փսխես֊*
*ցի, ի տանէ նորա կորզեսցէ զնա հրշտակ. զսրտմը֊*
*տութիւն վիշապաց ծծեսցէ, սպանցէ զնա լեզու օձի։*
*Մի՛ տեսցէ զկիթ արօտականաց, և մի՛ զարօտս մե֊*
*ղու և իւղոյ»։ Զի դարձուցանել չէ հնար առանց*
*վնասու, այլ յախտից փորոյ լինի. և վասն այսորիկ*
*զամպարիշտս կարծէր բամբասել Սովփար, այլ յըս֊*
*տակութեամբ ոչ էին նորայն կամք, ոչ Բաղդադու*
*և ոչ Եղիփազու. քանզի զայն ասեն վասն անօրի֊*
*նացն, որ ոչ արդարև ըստ ամենայն իրաց պատահէ,*
*զի բազումք՝ որ անիրաւութեամբ մեծացան՝ չայե֊*
*կան եղև նոցա յաժամանակեայ կեանս։ Այլ Յով֊*
*բայ ակնարկեն, վասն զի ի ժամուն նա էր մերկա֊*
*ցեալ ի մեծութենէ. բայց ոչ որ զամ մի տրտմու֊*
*թիւն հասանէ արդարև վասն ամպարշտութեան հա֊*

սանէ, քանզի ամբարշտաց հատուցումն յապա յա-
ւիտեանն պահի, յայնժամ փոխի այժմու ժողովեալ
761 մեծութիւնս անիրաւութեամբ, մեծաւ աղաղակաւ
և յոյժ կորստեամբ ոգւոց՝ յորժամ պահանջի ի դա-
տաստանի որ ժողովեցան անիրաւութեամբ։

«Յայնժամ կործեսցէ զնա ի տանէ նորա հրեշ-
տակ»։ Ո՞ր. որ զմարդիկ առնու առ ի տանջանս. մի
յայնցանէ զորոց ասէր Քրիստոս առակաւ, վասն
զգեցելոյն աղտեղի հանդերձ. «Կապեցէք զոտս և
զձեռս դորա և ընկեցէք զդա ի խաւարն արտաքին»։

«Յայնժամ ծծեսցէ ամբարիշտն զարտմութիւն վի-
շապաց»։ Այսպէս լսեսցուք որպէս լսել օգուտ է
կամեցողաց զօգուտ։ Քանզի ամբարիշտն և անօրէնն
ծծէ զարտմութիւն զիմանալի վիշապին, վասն ո-
րոյ Դաւիթ ասաց, թէ «Ի վերայ իժից և քարբից
գնասցես դու, առ ոտն կոխեսցես զառեւծն և զվի-
շապ»։ Ամբարիշտքն և անօրէնք ծծեսցեն զարտմը-
տութիւն նոցա, ապաւինեալք ի նոսա և եղեալք
բաժնոյն նոցա։ Վկայէ իսկ և Տէր վասն այսպի-
սեացն ասելով. «Երթայք անիծեալք ի հուրն յա-
ւիտենից՝ որ պատրաստեալ է սատանայի և հրեշ-
տակաց նորա»։ Զնոսա «սպանանէ և լեզու օձի», որ
ի սկզբանէ ընդրկեաց զԱդամ և զԵւայն, և այժմ
762 զմեղաւորս ընդրկելով ո՛չ դադարէ, քանզի ուսուցա-
ցանէ զնոսա ի չար գործս վայելել. վասն որոյ զան-
ցանէ զԱստուծոյ զպատուիրանօք և զաստուածային
օրինօք։

«Նոքա ոչ տեսցեն զկիթ արօտականաց և ոչ ըզ-
մեղու և զիւղոյ». յայտ է թէ ի հանդերձեալ յա-
ւիտենին։ Քանզի ոչ կարասցեն վայելել յայնժամ
որով այժմ պերճանան։ Պատշաճէ ի վերայ իւրա-
քանչիւր զոր Տէրն ասէր. «Անմիտ յայսմ գիշերի
զոգիդ ի քէն ի բաց պահանջեն. զոր պատրաստե-
ցերդ՝ ո՞ւմ եղիցի»։ Յոյժ յիրաւի պատշաճէ եթէ
այսպէս իմասցուք՝ որ ի կարգիս գայ։

«Ի զուր և ի տարապարտուց վաստակեցաւ ի մե-

ծութիւն՝ ուստի ոչ ճաշակեսցէ»։ Քանզի զի՞նչ օ-
գուտ է ի մեծվայելչութենէ տան յորմէ կաթիցէ
ոսկի, և ինքն թաղելոց է ի խոնարհ քան զերկս
կանգունս։ Իսկ զի՞նչ օգուտ է ի բազում զգես-
տուց և ի պէսպէս արկանելեաց՝ որ յորդանցն է
մերկանալոց։ Իսկ զի՞նչ օգուտ է յոսկի մատանեաց
և ի մարգարտեայ զարդուց և ի թագաւորական
պսակաց, որ լուծանելոց է և ի հող խառնելոց։ Դո-
վին մտօք իմացիր որ ի կարգիս կայ. զիա՞րդ չա- 763
րաց աշխատանքն սնոտիկք են և անօգուտ։

«Իբրև զխիտ ինչ զանծամ և զանկլանելի»։
Քանզի որ զխիտն ծամէ, այսինքն է զհաստատունն
և զանթուլանալին, ի զուր փշրէ զատամունսն և ըն-
դունայն ծախէ զժամսն, ոչ կարացեալ կլանել. նոյն-
պէս որ անիրաւութեամբ զմեծութիւն ժողովէ, և
զայլ պայծառութիւնս երկրիս անիրաւութեամբ գան-
ձէ, ընդունայն աշխատի և ի զուր գանձէ, քանզի
ոչ ինչ կարէ շահել յայնմանէ։

«Զի զբազում տկարաց տունս խորտակեաց, և
զյարկս յափշտակեաց և ոչ հաստատեաց։ Չի՞ք
փրկութիւն ստացուածոց Նորա»։ Զի արդար դատա-
ւորն ոչ առնու յանձն. որ խորտակէ զյարկս տկա-
րաց, զոր պարտ էր հաստատել. և զայլոց կեանս
յափշտակել, զոր պարտ էր կանգնել և հաստատել.
և «ոչ փրկութիւն ստանալ ի ստացուածս Նոցա»,
վասն զի յոյժ անօրէնութեամբ և անչափ ամպա-
րըշտութեամբ գանձեաց զստացուածսն։

«Ի ցանկութեան իւրում՝ ոչ ապրեսցի»։ Վասն
զի և Դաւիթ իսկ ասէր, եթէ «ցանկութիւն մեղա-
ւորաց կորիցէ»։

«Եւ մի՛ լիցին մթերք կերակրոց Նոցա»։ Վասն
զի ոչ գոհանալով ուտէ և ոչ օրհնութեամբ ճաշակէ,
և ոչ աղքատքն հաղորդեն սեղանոյ Նորա. «ոչ եղիցի 764
Նորա մթերք», վասն որոյ Դաւիթ ասէր. «Եղիցին
Մնացուածք առն խաղաղարարի»։ Բայց զի ոչ է ամ-
բարշտաց այսպէս մնացուածք, դարձեալ ինքն ի վե-

րայ ածէ. «Մնացորդք ամբարշտաց կորիցեն»։ Սոցին նմանք են որ ի կարգիս կան։

«Վասն այսորիկ մի՛ ծաղկեսցեն բարութիւնք նորա։ Ցաղագս որո՞յ. վասն զի չար արմատս ընկալան և անօրէն պտուղս ստացան։

«Յորժամ համարիցի թէ ահա լցեալ իցէ՝ նեղեսցի»։ Այսինքն է, թէ ի հասանել պտղոյն ապականեսցի։ Այլ՝ զայս որպէս բազում իսկ անգամ ասացաք, ոչ այնչափ ինչ առ ի բամբասանս զամբարիշտս և ոչ բնաւ զանօրէնս կամին ասելով, որչափ եթէ զՅովբայ զհամբերութիւնն լուծցեն։ Իսկ վասն զի պատահեալ տրտմութեանցն երկայնամտութեամբ տարաւ ճգնողն, ակն ունելով բարեացն՝ որ ի համբերութենէն է, սպառնան նմա իբրև թէ առ յապայքն չարագոյն են քան զհասեալսն։

«Ամենայն տագնապ հասցէ ի վերայ նորա, թէ
զի՞արդ լնուցու որովայն նորա»։ Վասն զի ոչ ևս է
լցեալ որովայնն Յովբայ, յայտ է թէ ոգւոց, այլ
765 դեռ ևս տոկայ առ ի ճգունս և ընդ փորձանաց կը-
ռուի։ Զի՞նչ սպառնայ թէ ի՞ւ լցցի որովայն նորա.
եկ միտ դիր. քանզի այլ հասանել ասէ ի վերայ
Յովբայն, թող զայն՝ որ անցինն ընդ նա. և աւասիկ
այսպէս բանիւք սպառնայ։

«Առաքեսցէ ի վերայ նորա զսրտմտութիւն բարկութեան, արկցէ զնովաւ ցաւս»։ Այսինքն է, թացցէ զնա ցաւովք. քանզի Թէոդիտոն «տեղասցէ» ասէ. իսկ Ակիւղաս՝ «անձրևեսցէ» ասէ, և Սիմաքոս՝ «ցօղեսցէ» գրեաց. զի յայտ արասցեն զբանս. այլ զի՞նչ են ցաւքն միտ դիցուք։

«Եւ մի՛ ապրեսցէ ի ձեռանէ երկաթոյ. խոցեսցէ զնա աղեղն պղնձի, անցցէ ընդ մարմին նորա նետ։ Փայլատակունք շրջեսցին յարկս նորա, արհաւիրք ի վերայ նորա. ամենայն խաւար նմա Մնացէ, կերիցէ զնա հուր անշէջ»։ Յովբ ընդ այսոքիւք չէր անգեալ, քանզի բանսարկուն արգելեալ էր ի սպանանելոյ զնա. ուստի ոչ երկաթ և ոչ պղինձ և ոչ այլ

*նետ կարաց ձգել ի վերայ նորա՝ ի ձեռն վարձկա-
նաց իւրոց։ Այլ և ոչ փայլատակունս և ոչ խաւար
տարաժամու ած ի վերայ նորա, և ոչ հուր վառե-
ցաւ ի վերայ նորա, այսինքն է՝ որ ոչ յերկրէ լու-* 766
*ցանի, քանզի ոչ ինչ ունէր իշխանութիւն ի վերայ
նորա չարժել զերկնից արհաւիրս։ Բայց սակայն և
զայս սպառնայր լինել ի վերայ Յոփբայ՝ Սոփար,
յամենայն կողմանց կամեցեալ սարսեցուցանել զճըգ-
նօղն։ Իսկ Յոփբ ոչ ասէր եթէ զիա՞րդ կամ ուստի՞
պատահեցի նմա այս, քանզի վստահ էր յարդա-
րութիւնն իւր. միտ դի՛ր նա զի՞նչ եդ առընթեր։*
*«Զարչարեսցէ եկամուտ զտուն նորա»։ Այսինքն
է թէ օտար եկամուտ, որում ոչ ակն ունի, զայս
անցս անցուսցէ ընդ տուն նորա, և ընդունայն վըս-
տահ է յարդարութիւն իւր, զի ոչ իսկ են ճշմարիտ,
այլ կեղծօք են։ Վասն որոյ թէպէտ և ոչ մարդկան
են դիւրաւ յանդիմանելի, այլ սակայն ի տարերցս
յանդիմանեսցին։ Վասն զի Սոփար զայս ակնար-
կէր բանիւք իւրովք։*
*«Յայտնեսցեն երկինք զանօրէնութիւնս նորա.
յարիցէ ի վերայ նորա երկիր. քակտեսցէ կորուստ
զտուն նորա ի սպառ, հասցէ ի վերայ նորա օր բար-
կութեան։ Այս բաժին է մարդոյ ամպարշտի առ ի
Տեառնէ, և այս ստացուածք ընչից նորա յայցելուէն»։* 767
*Բայց ոչ այս պատշաճի ի վերայ Յոփբայ. այլ
չար ասեն զբարւոյ՝ որք զանարատն և զճշմարիտն և
զարդարն իբրև զանիրաւ և զչար նախատէին. այլ
վասն զի զամբարշտի դէմս արկ ի վերայ Սոփար
և զայսպէսս բարբառի վասն նորա, մեզ առ ի յօ-
գուտս եղիցին ասացեալքն, քանզի ոչ ինչ ընդու-
նայնս հրամայեաց Հոգին Աստուծոյ գրել զայս և մեծ
մասն դնել գրոցս. այլ վասն զի առ ի յօգուտս լինի
լսողացս, եթէ ոք ոչ գիտելով կարդասցէ։ Զի նոքա ի
հասարակաց թշնամւոյն սրեալք նախատէին. բայց
ի նոցանէն ասացեալք վասն ամբարշտաց, թէպէտ
և ոչ պատշաճէին ի վերայ Յոփբայ, այլ սակայն մեզ*

*ահագին թուեսցի, և հրաժարեսցուք յայսմանէ, գի-*
*տելով զի չարութիւն յամենեցունց ողբալի է, և առ*
*համարակ ի բարեաց և ի չարեաց, և ի թշնամեաց*
*ամբաստանելի է, և ամենեքին խոստանան թէ վը-*
*րէժխնդրութիւն մեղաց կայ։ Իսկ մեք փախիցուք ի*
*չար պտղոյ մեղաց. վասն զի և տարերց թշնամի*
768 *առնէ զմարդն, մինչև «երկինք յայտնեն զանօրէ-*
*նութիւնս նորա, և երկիր յառնէ ի վերայ նորա»։*
*Եւ յոյժ յիրաւի, վասն զի ծանրութիւն թուի տա-*
*րերց կեանք ամբարշտաց, և հրամայեալ են օրինօք*
*ի վայելչութիւն նոցա, այնչափ և այնպիսիքն, վասն*
*զի է ըստ նմանութեանն Աստուծոյ։ Իսկ նոքա ոչ*
*այնպէս վարեցան, այլ և զպատիւ պատկերին աղ-*
*տեղեցին, և զվայելչութիւնն չարութեամբ և անօ-*
*րէնութեամբ կրեցին. վասն որոյ և «քակտեսցէ կո-*
*րուստ զտուն նորա իսպառ». հանցէ զամենայն ինչս*
*նորա, որ այժմ ընդունայնութեամբ և անօրէնու-*
*թեամբ կորիցեն. և «օր բարկութեան գայ ի վերայ*
*նորա». այն՝ զորմէ Պաւղոսն ասէր ցամպարիշտն և*
*ցանօրէնս. «գանձես անձին քում զբարկութիւն յա-*
*ւուր բարկութեան և արդար դատաւորութեանն Ա-*
*ստուծոյ, որ հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործս*
*իւրեանց, որք համբերութեամբն են ի գործս բարու-*
*թեան, և զփառս, և զպատիւ, և զանեղծութիւն խըն-*
*դրեն՝ զկեանսն յաւիտենից։ Իսկ որք ապստամբք ի*
769 *ճշմարտութենէ անտի են, և զհետ երթեալ զանիրա-*
*ւութեան՝ բարկութիւն և սրտմտութիւն, նեղութիւն*
*և անձկութիւն ի վերայ ամենայնի՝ որ գործէ զչար»։*
*«Քանզի այս է բաժին մարդոյ ամպարշտի ի Տեառ-*
*նէ, և այս ստացուածք ընչից նորա յայցելուէն»։ Որ*
*այցելութեամբ տեսանէ զամենայն գործս մեր. որում*
*փառք Հօր, և Որդւոյ, և Հոգւոյդ սրբոյ, այժմ և*
*միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։*

**Կատարեցան աստ բանք Իսիքիոսի։**

Ցիշատակարան գրչի

Յամի եօթնհարիւրերորդի քառասներ
որդի ութերորդի թուականութեանս հայոց·
[illegible]

770

Այլ վասն թերութեան տառից յայտ լիցի ընթեր-
ցողաց, զի բանքս Խոսքրովի մինչև ցա՞յս վայր սպա-
ռեցան, և թէ այս մինչև ցա՞յս վայր միայն եղեւ
քննեալ ի Նմանէ, և թէ ի թարգմանութենէ թե-
րին մնացեա՞լ եղեւ, չէ յայտ։ Այդ բովանդակ գը-
րոցն Ցովբայ մեկնութեան թէ ոք փափագէ, խըն-
դրեսցէ զժողովածոյ մեկնիչն զարարեալն ի վարդա-
պետէն Վանականէ Տաւուշեցւոյ։

Այդ զՆարեկացւոյն Գրիգորի բանսն որ յՈվ է
դայն է խօսեալ, և սուղ ինչ յԽոսքրովի բանիցս՝
գրեալ յայլոյ ումեքէ, մատոյց մեզ ի ձիր շնորհի
քահանայ ոմն Կարապետ անուն. և մեր զթերին
լցեալ ընծայեցաք զկնի եկելոցդ։ Եւ հայցեմք յիշել
ի մեղաց թողութիւն զառաջին և զվերջին աշխա-
տաւորս և ստացօղս, և դուք ի նոյն միջիք բարի
Քրիստոսի Աստուծոյ մերոյ՝ որ է աւրհնեալ յա(ւի-
տեան)։

*Յաւելուած Ա.*

# Ի ՀԱՒԱՔՄԱՆԷ ՎԱՆԱԿԱՆԻ

Դթ «ԵՐԿՆԵԱԼ *անդրէն Ցոփայ ասէ»: Եղիփազ ա-*
*սաց՝ թէ ոգի յիմաստութենէ տայ ինձ պատասխանի.*
*Նոյնպէս և Սոփար ինքն սկսաւ պատմել զանցս ա-*
*ղէտի ամբարշտաց ընդ որս կարգէր և զՅոբ. այլ*
98ա *քաջ Նահատակն և ախոյեանն ժուժկալողաց ոչ առ-*
*նու յանձն զի մի կորուսցէ ստուգութիւնն, այլ որ-*
*պէս և խնդրեաց տայ զպատասխանին:*

Դթ *«Լուարուք, լուարուք բանից իմոց»: Մի վարկ-*
*պարազի միայն ի լսելիս, այլ և ի միտ առէք:*

*«Երանի՜ թէ մի՜ լինէր ի ձէնջ այդ մխիթարութիւն»: Ոչ մխիթարութեան են բանք, այլ տանջարութեան, և այս թշնամւոյ է յաւէտ քան բարեկամի:*

*«Ներեցէք ինձ և ես խօսեցայց»: Ոչ սաստիկ իբրև զձերդ՝ այլ ճշմարիտ ըստ Աստուծոյ:*

*«Եթէ ոչ այպանիցէք զբանիւք իմովք»: Իսկ ըզ-բան սատ յայտնի արար զբարս նոցա, թէ այպանողք են քան իրաւաբան:*

*«Իսկ արդ չև իմ կշտամբանքս ի մարդկանէ ինչ են»: Քանզի ոչ ոք ի մարդկանէ ծանեաւ զիս անիրաւել կամ մեղանչել ումեք. այսպիսի բանք Տեառն մերոյ է առ Հրեայսն. «Ո՞ ոք յանդիմանեսցէ զիս վասն մեղաց»:*

*«Եւ կամ ընդէ՞ր ոչ բարկանայցեմ»: Այլ հեզօրէն խօսիմ, զի խաղաղասէր կամքն Աստուծոյ յիս հանգուցեալ է, իսկ խռովարարն ի ձեզ բուննեալ՝ մարտնչի ընդ իս. սոյնպէս և Տէրն ասէ. «Դուք ի հօրէ սատանայէ էք»:*

*«Հայեցեալ ընդ իս զարմանայք, եդեալ ձեռն ի ծնօտի»: Որպէս թէ միայն իցեմ ի վիշտս յորում ոչ ոք եղև ի մարդկանէ. կամ թէ ծածուկքն յիս*

չարութիւն վիրօ՞քս ծանիցի. ըստ այսմ և Պիղա֊ 98բ
տոս զարմացեալ ասէր վասն Տեառն՝ թէ «արդա֊
րև այնչափ վա՞ղ մեռաւ»։

«Թէ յուշ լիցի ինձ տագնապեցայց»։ Թէպէտ
տագնապեցայց մարմնոյս ցաւօք, բայց թէ յուշ լիցի
ի խղճէ մտաց իմոց թէ ամպարշտեցի երբեք, ապա
առաւել տագնապիմ։

«Քանզի ունին ցաւք զմարմինս իմ»։ Ի պատ֊
ճառս կարծեացդ ձերոց. զայս ասացեալ պատմէ ըզ֊
բարեկեցութիւն ամբարշտաց՝ ժամանակեայ, և կո֊
րուստն՝ յաւիտենական։

«Ընդէ՞ր բնաւ ամբարիշտք կենդանի իցեն»։ Ցայմ
կենցաղի որ ձեզդ երևի։

«Հնացեալք և ի մեծութեան են»։ Հինօրեայք
ժամանակաւ և զառամացեալ մեղօք. սակայն յայս֊
պիսի մեծութեան են զոր յաջորդս ցուցանէ։

«Սերմանք նոցա ըստ միտս, և որդիք նոցա ա֊
ռաջի (աչաց)»։ Սերմանումն ոչ միայն զանդաստա֊ ԴԹ
նաց ասէ, այլ և ըստ բնութեան ի ծնունդս գալ և
զարգանալ։

«Տունք նոցա յաջողեալք»։ Ի շինուածս երևելիս
և ի մթերս զանազան ստացուածոց։

«Երկիւղ և ոչ ուստեք»։ Ցաւարառուաց կամ ի
գողաց և յայլ ևս պատահմանց։

«Եւ տանջանք ի Տեառնէ չեն ի վերայ (նոցա)»։
Չի երկայնամիտ լինի վասն երկուց իրաց. մի զի
զղջասցին և ապրեսցին, և միւս՝ թէ անհաւանք
մնասցեն, անպատասխանիք լիցին։

«Արջառ նոցա ոչ ստալեաց ի ծննդենէն»։ Վասն 99ա
զի առանց զլանալոյ տայ Աստուած զամենայն, որ֊
պէս ասաց. «Զի՞նչ առնելոց էր և ոչ արարի խա֊
ղայեղի»։

«Ապրեցաւ յղի նոցա՝ (և ոչ վրիպեցաւ)»։ Ի
հասարակաց ամբարշտելն մարդկան։ Կորոյս ընդ
նոսա, բայց ի մասնաւորն ոչ առնէ այնպէս։

«Կան իբրև զխաշինս յաւիտենականս»։ Անմտու֊

Դբ թեամբ այնպէս համարին։ Ի դարսն Նոյի և Ղով-
Աւ տայ ընդ մարդկան կորեան։ Իսկ ամբարիշտք յաւի-
տեանկան համարին զինքեանս և զանասունս իւրեանց։
Դբ «Մանկունք (Նոցա) խաղան առաջի աչաց»։ Փան-
դամբ և ծնծղայիւք, քանզի ոչ միայն զհարկաւո-
րացն ունին զլրումն, այլ և յաւելորդ խրախճանու-
թիւն։

«Կատարեցին ի բարութեան (զկեանս իւրեանց, հանգստեամբ ննջեցին ի դժոխս)»։ Յոյս անձանց վարկան զայժմու կեանքս, և ի ամին կատարեալ չգտանին ուրեք ի միջի։

«Եւ ասէ ցՏէր. ի բաց կաց (յինէն, զճանապարհս քո ճանաչել ոչ կամիմ)»։ Պատճառս ամբարշտութեան արարեալ զպարգևսն Աստուծոյ՝ անձին կամօք հրաժարէ ի գիտութեան ճանապարհէ օրինացն զոր ուսուցանեն արարածք. այլ և զոր Մովսէս և մարգարէքն և աւետարան. ասէ ի սրտի իւրում, բամ, չիք Աստուած, կամ թէ ոչ տեսանէ զայս Տէր. զոր անմտաց տեսեալ ելուեալ ասեն։

«Զի՞նչ օգուտ է կամ շահ զի ծառայեսցուք (նմա)» պատուիրանին պահպանութեամբ։ «Եւ հանդիպեսա-
99բ ցուք նմա» նուիրօք և աղօթիւք։ Ասել և զայս, թէ «ի ձեռս նոցա էին բարութիւնք». իսկ Աստուած հայի որ են չարութիւնք. և ոչ հաստուցանէ երբեակի։ Այսոցիկ իմաստնաբար պատասխանէ յաջորդօք։

«Սակայն ճրագ ամբարշտաց շիջցի», այսինքն լոյս աչաց և լուսաւորացդ. այլ և յոյս նորա զի ի զգալիս է՝ խափանին սոքա ի մահու նորա, զի ի խաւար գնալոց է։

«Եւ եկեսցէ ի վերայ (նոցա) կործանումն»։ Ոչ միայն հասարակաց մահուն՝ այլ և յոքունց պատահմանց. և այսոքիկ յեղակարծոյ ժամու. յորժամ առիցեն խաղաղութիւն և շինութիւն է, յայնժամ հասցէ ի վերայ նոցա կործանումն ըստ յաջորդիս։

«Երկունք կալցին զնոսա ի բարկութենէ»։ Որպէս երկն յղոյ անկարծ հասցէ ի վերայ նոցա բար-

կութիւնն զի որդիք բարկութեան են։

«Եւ եղիցին նոքա իբրև գյարդ (առաջի հողմոյ), և իբրև զփոշի զոր տարաւ մրրիկ»։ Այսու օրինակաւ զամենեսեան անյայտ լինել նշանակէ։

«Սպառեսցեն զորդիս ինչք նորա»։ Կամ ի պակասութենէ ընչիցն, և կամ մեծամեծք սպառեն յինքեան չոպե(ա)լ զինչսն. է զի մինչ կենդանիք իցեն վասն մթերիցն սպառին որդիքն։

«Հատուսցէ նմա Աստուած և ծանիցէ», թէ գոյ հատուցումն ամբարիշտ և չար գործոց։

«Տեսցեն աչք նորա զհատուցումն, ի Տեառնէ մի
ապրեսցի»։ Նախ ասաց թէ չեն տանջանք ըստ այ- 100ա
լոց կարծեաց, իսկ աստ ցուցանէ թէ և յետ աստի
պատժոցս մի ապրեսցի ի Տեառնէ։

«Զի կամք նորա ի տան, և զթիւ ամաց նորա բաժ(անեսցեն)»։ Ըստ թուոյ ամաց և ամսոց և աւուրց աստ բաժանի նմա հատուցումն, և առաւելն ի հանդերձեալն, ուր մեծատունն կաթոյ ջրոյ կարօտանայր. ուստի զգուշասցուք և մեք։

«Ո՞չ ապաքէն Տէր է որ ուսուցանէ զհանճար և զգիտութիւն»։ Որ յԱստուծոյ օրինացն օտար է, անբաժ է յիմաստից։

«Զի ինքն քննէ զիմաստունս»։ Խորք նորա անյայտ են. թէ վասն է՞ր ներէ ամբարշտաց և զառածելոց։ Զի ո՞ գիտաց զմիտս Տեառն. այլ և ինքն առնէ ընտրութիւն. քանզի ոչ եթէ յաւիտեան են կեանք նոցա յայսպիսի վայելումնս։

«Զի այնպիսին մեռցի ի սաստկութենէ անզգամ(ութեան իւրում, ամենևին) բարեկեցիկն և յաջողեալն». և մի ապրեսցի զկնի վճարմանն ի բարկութենէ Աստուծոյ, և դուք զի՞րդ կարծէք զժամանակեանս անվտանգ և մնացականս։

«Փոր նոցա լի է ճարպով, եւ ուղեղ (նորա չճեսցէ)»։ Սոնքացեալ ի պարարմանէ խորտկաց եւ յըղփութենէ ըմպելեաց։

«Սակայն նա վախճանեսցի իբրու ոչինչ կերեալ ի

*բարկութենէ)»: Մերձ յօրհասն մօտացունք լինի ա-
մենայն հիւթք հեշտալիք յաչաց նորա. եւ ի զա-
100բ տանել ի մարմնոյ նորա յոգւոյն զղջումն լինի. անըմ-
պերելի վասն խղճի մտացն, թէ ընդէ՞ր բարի վարկաւ
զոր սնոտի անուանեաց Սողոմոն, եւ իբր զոչ կերեալ
համարի:*

*«Առ հասարակ ննջեսցեն յերկրի»: Ըստ աւետարանին ննջեցին եւ ի քուն մտին. «եւ յերկրի», վասն զի յերկրաւորս էր միտումն նոցա, ցրուե(ա)ցին մերձ ի դժոխս:*

*«Նրր ծածկեաց զնոսա»: Զի խաւարին են գործք նոցա ի վերայ երկրի, ի մահուն ծածկեաց զնոսա խաւար, որ չօշափեսցեն փոխանակ լուսոյ:*

*«Եւ արդ գիտեմ՝ թէ յանդգնութեամբ հասեալ էք ի վերայ իմ»: Յորժամ եցոյց վասն կատարածի ամբարշտաց, ապա յանդիմանէ զնոսա, զի խոցոտէին զնա բանիւք, բայց ոչ զայրացմամբ այլ հանդարտութեամբ:*

*«Արդ ասիցէ՞ ոք. ո՞ւր է տուն իշխանին, եւ ո՞ւր է յարկ բնակութեան (ամբարշտաց)»: Զիս տակաւին կենդանի տեսանէք, եւ գոհութեամբ յուսոյ ակնկալու. բայց որք յայտնի անուամբ եւ գործօք ամբարիշտ էին, թէպէտ հարցանէք, ոչ երեւի իշխանութիւն եւ յիշատակ նոցա: Վասն որոյ «հարցէք զանցաւոր(ս) ճանապարհ(ի)», թէ ոյք լուեալ կամ տեսեալ իցէ որ այժմ չերեւին:*

*«Եւ զնշանս նոցա (մի օտարացուցանէք)»: Զնշան
պատահմանցն մի՛ թագուցանէք այժմու ամբարշտացս
եւ սոցա նոյն առաջի կայ. դարձեալ հարցէք զայ-
նոսիկ որ յաստուածային կտակացն եւ յօրինացն
յաջ եւ յահեակ խոտորեալ իցեն, վասն զի նշան հա-
101ա տուցման նոցա յայտնի է: Այլ ասեմք եւ զայս, թէ
ամենեքեան իբրեւ ի ճանապարհի եմք. եւ վասն խո-
տորման իւիք հարց եւ փորձ է լինելոց:*

*«Զի յօր բարկութեան ստիպի չարն». այնպիսին փութապէս ածէ իւր զփոխադարձն եւ հարկաւ վարի ի կորուստ անգիւտ:*

*«Եւ ո՞ պատմեսցէ յանդիման Նորա զճանապարհս (Նորա)»։ Անդ չգտանի ոք ի մարդկանէ յանդիմանիչ Նորա. որպէս զիս դուք յանդիմանէք իբրեւ զմի ի նոցանէ կարծեցեալ. սակայն զնոսա անաչառն ընկալցի առեան։*

*«Եւ զոր ինչ ինքն գործեաց ո՞ հատուսցէ Նմա»։ Ի մարդկանէ ոչ է հատուցումն նոցա, այլ ճշմարիտ* Դբ
*քննողէն հատուցումն լինելոց է. ոչ միայն կատարման գործոյ, այլ եւ շարժման խորհրդոց։*

*«Եւ ինքն ի գերեզմանս գնաց, եւ ի տապանի տքնեցաւ, եւ քաղցրացան Նմա (խիճք հեղեղատի)»։ Յայտնի է վասն ամբարշտաց, զի թէպէտեւ ահա-* Աւ
*գին երեւին՝ ի գերեզմանի եդան, իբրեւ զմի յետ-* Դբ
*նոց, որպէս ասէ Եսայի ի դիմաց դժոխոց. եւ դու* Աւ
*իբրեւ զմեզ համ(ար)եցար. եւ զի անպտուղք են որպէս* Դբ
*խիճ ի բարի սերմանց, քաղցրացոյց զնոսա ի դառնութեան հատուցմանց։ Բայց մի՛ ոք մեղադիր լիցի յառ-* Աւ
*նուլ զասացեալս վասն Տեառն մերոյ, թէ երբեմն ի չարսն եւ երբեմն ի Տէրն փոխխես։ Քանզի պտուղ նաան ծածկեալ է դաժան նիւթով, եւ նոյնպէս ընկոյզ, եւ արմաւ ի փշատեսակ տերեւոյ, զի մի վնասեսցի ի սերմանաքաղ թռչնոց։ Արդ զգործ բարե-* Դբ
*րարութեան Փրկչին ո՞ կարասցէ պատմել, զի ոչ ինչ* 101բ
*մեղուցեալ ըստ մարգարէին. եւ ինքն իսկ ասէ. «Ո՞ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց»։ Այլ ի գերեզմանաց ազատն եւ ի մեղաց, ըստ վկայութեան մարգարէին, եւ անքուն եղեւ զի ոչ ննջէ բանն որ պահէն* Աւ
*զԻսրայէլ. և զոր ազդեաց կանխաւ՝ վասն ինքեան լցոյց։ Այլ ասէ վասն այսր գերեզմանի զայն զոլ, վասն որոյ ասէ Եսայի առ Սոմնաս. «Այր դու զի՞ եկեալ ես աստ, եւ զի՞ արարեր քեզ յարկ ի վիմիդ», յորում չեղեւ արժանի գնել ըստ բանի նոյն մարգարէի. եւ մնաց տեղիս այս անխնամ ի յաւուրս գերութեան եւ լըցեալ եղեւ ի խճէ հեղեղաց. զոր առեալ ի ստացուած Արեմաթացին Յովսէփ ի պարտէզ, եւ գտեալ ըզգերեզման, պեղէ զխիճն ինքեան պատրաստելով,*

յորում եղաւ Տէրն մեր ի նոր գերեզմանի։

«Եւ զհետ նորա ամենայն մարդ գնասցէ»։ Զհետ ամբարշտաց. «եւ յառաջ՝ քան զնա անթիւք». որք նման են գործոց նոցա. իսկ զկնի Տեառն մերոյ որք մահակից եւ գերեզմանակից եղեն, եւ նախ քան ըզգալուստն նորա, որք ի խորհուրդ թաղման նորա կան եւ պահին յուսով յարութեան նորա որպէս Աբէլ, Նոյ եւ Աբրահամ։

«Եւ զիա՞րդ մխիթարէք զիս սնոտիք»։ Դուք ի սնոտիս բերանաբաց եղեալ. այլ դուք կամիք մխիթարել զիս. իսկ ես մեծագոյն եւ աներեւելի յու-
102ա սով ակն ունիմ մխիթարիլ, եւ զայն ախորժեմ զոր ասէ առաքեալ. «Մխիթարեն զմեզ յամենայն նեղութիւնս մեր»։

«Եւ ինձ ձեօք դադարելն ոչ ինչ է»։ Թէպէտ բանսարկուն շարժեաց զձեզ ընդդէմ իմ, զի լռեցուսցէ ի ճշմարտախօսութենէս, սակայն խօսեցայց եւ ոչ սուտ արարից զբանս սրբոյն Աստուծոյ. եւ Տէր մեր ոչ ծածկեաց զճշմարտութիւնն ասելով. «Իմ թագաւորութիւնս չէ յայսմ աշխարհէ», եւ թէ «զճշմարիտն ասեմ ձեզ՝ լաւ է ինձ երթալ զի Հոգին սուրբ եեկսցէ առ ձեզ»։ Եւ առաքեալ ասէ. «Խօսեցարուք զճշմարտութիւն իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում»։

Յաւելուած Բ

## ՀԱՏՈՒԱԾՔ

# ԻՍԻՔԻՈՍԻ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ

# Ի ԿԱԹՈՂԻԿԷ ԹՂԹՈՅ

«Զի անողորմ դատաստան լինելոց է»... (Յակ. Բ. 13)։

Հիւսիքոսի։ Որպէս ձէթ օծեալ զնահատակսն ու- Լ
զորկ առնէ, եւ զձեռս հակառակորդացն լպրծէ առ
ի չլինել կարող ըմբռնելոյ, այսպէս եւ ողորմութիւն
զորս ի նմա կրօնաւորին եւ յհնուն՝ զօրացուցանէ,
եւ զդեւքն խոտորեցուցանէ ի նոցանէ եւ փախստա-
կանս առնէ։

«Բայց զլեզու մարդկան ոչ ոք կարէ հնազանդել»...
(Յակ. Գ. 8)։

Իսիքոսի։ Որպէս սուսերն պատրաստ է ի հատա- ԽԴ
նել, յորժամ սրեալ լինի, եւ արագ ի սպանութիւն,
այսպէս եւ լեզու դժնդակ, նա թէ առանձինն լռէ՝
տանջի. իսկ եւս չարագոյն լինի յորժամ ի չար զըր-
պարտութիւն չարժի, դաւաճանել ումեք եւ մատնել
առ նախանձու։

«Սրբեցէք զձեռս մեղաւորք... եւ բարձրացուսցէ
զձեզ» (Յակ. Դ. 8-10)։

Իսիքոսի քահանայի։ Երանեալ է այր որ առաջի ԾԴ
Աստուծոյ խոնարհեալ է, ըստ որում ասէ Յակով-
բոս. «Խոնարհեցարուք յանդիման Տեառն եւ բար-
ձրացուսցէ զձեզ», յորժամ այսպէս խոնարհիմք՝ թէ
դեւք դաւ դնեն մեզ, թէ մարդիկ ատելիք՝ Աստուած

փրկիչ է, պահէ զմեզ. միայն զաւրէնս նորա մի՛ մոռասցուք, եւ մի՛ ձանձրասցուք ի նեղութեանցն, որպէս եւ Դաւիթ էր որ ասաց. «Տես զխոնարհութիւն իմ եւ զվաստակ իմ զի զաւրէնս քո ես ոչ մոռացայ»:

«Այսուհետեւ մեծատունք լացէք... կերակուր ցեցոյ» (Յակ. Ե. 2):

ԾԸ Իսիքոսի: Նախ ասէ զտանջանսն վասն մարդասիրութեանն, զի ապաշխարեալք՝ սպառնալեացն արտաքոյ գտցին:

«Երեսք Տեառն ի վերայ չարագործաց» (Ա. Պետր. Գ. 12):

Ծ Իսիքոսի: Ընդէ՞ր մի դիտմանն հայեցուածն ի դառնութիւն եւ ի քաղցրութիւն որոշի, քանզի զապաշխարողսն ընդունի եւ որք անզեղջ մնան ի մեղս՝ տանջէ ի կենդանեաց երկիրն զյիշատակ նոցա ոչ կենդանացուցեալ:

«Եւ զհրեշտակս որ ոչ պահեցին»... (Յուդ. 6):

Իսիքոսի քահանայի: Ո՞ կարասցէ վերահասու լինել մարդասիրութեանն նորա կամ ո՞վ պատմեսցէ ըզճշմարտութիւն նորա կամ ո՞ խնդրեսցէ զողորմութիւն եւ զճշմարտութիւն նորա. ի ճշմարտութենէ անտի ի հրեշտակս մեղուցեալս ոչ խնայեաց, իսկ յաղագս մարդասիրութեանն զպոռնիկս եւ զմաքսաւորս յարքայութիւնն եմոյծ:

Յաւելուած Գ.

## ՀԻՍԻՔՈՍԻ ՔԱՀԱՆԱՅԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

# ՅԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ

# ԵՒ Ի ՄԻՇՏ ԿՈՅՍՆ ՄԱՐԻԱՄ

ԱՄԵՆԱՅՆ *յիշատակ արդարոցն ամենահռչակե-*
*լի է, եւ ամենայն տօնախմբութիւն աստուածասի-*
*րաց բարեփառ. քանզի ամենեքին վասն բարեպաշ-*
*տութեան հաճոյացան, ամենեքեան յաղագս ճշմա-*
*րիտ խոստովանութեան ընկալան զտանջանս, ամե-*
*նեքեան վասն անմահութեան պսակացն ահագունիւքն*
*խաղացին*[1]*: Իսկ մերձակայ տօնիս՝ այժմ առաւել փա-* 25ա
*ռաւոր՝ քանզի զկուսի տօնախմբութիւնս պարունա-*
*կեալ ունի, որ այնպէս մաքրութեամբ գերազանցեաց*
*զամենեքումբք, որպէս զի զնոյն իսկ զԱստուած կա-*
*մաւորաբար ընդունել, տարեալ ի նմանէ անեղաբար:*
*Առ որ ի մերձակայիս ի հրեշտակապետացն Գաբ-*
*րիէլ գոչեաց ընդ առաջինն. «Ուրախ լեր բերկրեալ*
*Տէր ընդ քեզ. քանզի յղասցիս եւ ծնցիս որդի եւ*
*կոչեսցես զանուն նորա Էմմանուէլ»: Խնդութեան ըն-*
*կիզքն իսկոյն առ նա ի Գաբրիէլէ լինի աւետարա-*
*նութիւնն: Քանզի առաջին կոյսն ի վարկի յանց-*
*մանն*[2] *պարփակեալ գոյր տրտմութեամբք, եւ բազ-*
*մութիւնք առ ի նմանէ հառաչանացն չառաւեղէին,*
*եւ վասն նորա ամենայն կանայք ի ցաւս, եւ վասն*
*նորա ամենայն ծնունդ դառնութեան: Իսկ երկրորդ*
*կոյսս ի ձեռն յորջորջման, իդի զամենայն տրտմու-*

1. Ցն. զուարճացան վտանգօք:
2. Բն. ի վարկից անցմանն: Ցն. վճռով՝ որ վասն յանցմանն:

կան իրս ի բաց մերժեաց, եւ զամենայն ծնունդս
աղբերց տրտմութեան եխից. եւ զվհատութեան կա-
նանց որ ի մանկածնութեան էր ի բաց ցնդեաց (զամ-
պըն)[1], եւ զխնդութեանն լոյս փայլատակեցոյց զհա-
մացեղիւքն։ Լուեալ ի Գաբրիելէ՝ ուրախ լեր բեր-
կրեալ Տէր ընդ քե(զ), ոչ լռութեամբ ընկալաւ զող-
25բ ջոյնն. եւ զայսպիսի լուեալ զձայն, եւ զհրեշտակա-
պետն տեսեալ, ըստ իւր յօժարութեանն մերձակայ,
եւ բանից նորա վասն ծննդեանն, սոսկացեալ խոր-
հըրդով, այսպիսի ինչ առ հրեշտակապետն թերեւս
ուրեք յառաջ բերէր բանս։ Զամենայն հրաշափառա-
բար ասելով, օտար ինչ ի քեզ տեսանեմ այսօր. եւ
զայդ, եթէ զիա՞րդ համարձակեցար ամբարհաւաճա-
բար (զայլ)[2] ի վերայ խօսեցեալ կուսիս. եւ զքարո-
զութիւնդ ասել անհաւատալի բանից քոց։ Քանզի
ասես առանց սերման ծնանել մանուկ, եւ առանց
ամուսնութեան յղանալ ասես, առանց հանդիպելոյ
մերձաւորութեան առն՝ պտղաբերել մանուկ յար-
գանդէ։

Ո՞[3] ետես եւ կամ ո՞վ լուաւ, թէ անդաստան ան-
երկրագործելի ծաղկեցուցանէ հասկս. եւ կամ ոչ
տնգեալ յերկրի[4] այգի՝ չառաւեղացուցանէ գինի ա-
ռանց այգւոյ[5]. եւ գետ առանց աղբեր յառաջագայիլ։
Զոր ոչ ոք յաւիտենից կամ ականջօք[6] լուաւ կամ
ինքնատես եղեւ[7], զիա՞րդ հաւատացից ի կարգալդ[8]
քո առ իս։

1. Ցաւելաք ըստ յն.։
2. Ցաւելաք ըստ յն.։
3. Աստէն սկսանին Ա եւ Բ օր. զճառն Իսիքիոսի ընդ խորագրաւ յԱւետիս եւ ի ծնունդ Մարիամու Աստուածածնին՝ ընծայելով Երանելւոյն Պրոկղի եպիսկոպոսապետի Կ. Պոլսի. այլ սկզբնաւորութիւն ճառիս «Ծագեցաւ այսօր արեգակն» է Գրիգոր Սքանչելագործի։
4. Ա եւ Բ օր. չունին յերկրի։
5. Ա օր. մշակի։
6. Բ օր. յականջս։
7. Ա եւ Բ օր. այօք եռես։
8. Բ օր. ի կատարեալդ։

Արդ զի՞նչ եւ Գաբրիէլ առ նա անհաւատ եղեալ։
Զոր ուսայն՝ ասացից, եւ զոր լուայն՝ պատմեմ[1]։
«Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ, եւ զօրութիւն բարձ- 25գ
րելոյն հովան(ի) լիցի[2] ի վերայ քո. վասն որոյ[3] եւ
որ ծնանելոցն է ի քէն սուրբ է եւ որդի բարձրե-
լոյ[4] կոչեսցի»։ Որպէս յառաջ քան զքեզ գոլով, որ-
պէս յառաջ քան զամենայն արարածս, որպէս ստեղ-
ծիչ եւ արարիչ ամենայնի, որպէս յաւիտենից հայր[5],
որպէս աշխարհի ծնօղ[6], որպէս ամենեցուն հաստիչ[7],
որպէս հրեշտակաց դասուցն[8] արարօղ, որպէս մարդ-
կութեանս հաստիչ[9], որպէս կորուսելոց փրկիչ։ Ոչ ինչ
աւելի քան զայս պատմել կարեմ, քանզի ոչ եթէ
զզիարդն ասել հրամայեցայ[10], ով կոյս[11], այլ զաւե-
տարանութիւնս բերել առ քեզ[12]։
Արդ սքանչացիր հանդերձ ինեւ ընդ խորհուրդդ,
եւ աներկեւաբար ընկալ զաւետարանեալդ[13] քեզ։
Իսկ նա ասէ. «կամ[14] աղախին Տեառն, ահա եղի-
ցի ինձ ըստ բանի քում»։ Արդ աշակերտեսցուք եւ
մեք հրեշտակական բանիցն[15], զհետ[16] Գաբրիէլի, յա-
ղագս տէրունական ծննդեանն, ճանապարհորդեսցուք

1. Ա օր. ասեմ. Բ օր. խաւսիմ։
2. Ա օր. եղիցի։
3. Ա օր. վասն զի։
4. Ա օր. Աստուծոյ է։
5. Ա եւ Բ օր. յաւելումն եւ նորոգիչ։
6. Ա եւ Բ օր. յաւելումն եւ գոյացուցիչ։
7. Ա եւ Բ օր. յաւելումն որպէս քան զերկինս նախագոյ։
8. Ա եւ Բ օր. դատաւոր եւ դատապետ։
9. Ա եւ Բ օր. ստեղծիչ։
10. Բն. հրամայեցաւ։
11. Բն. ողկոյզ։
12. Բն. այլ աւետարանութեամբ սրբեալ առ քեզ իրս։
13. Ա օր. եւ յն. զաւետարանեալսդ։ Բ օր. անյերկուաբար ընկալ զաւետարանեալդ։
14. Ա օր. ահա կամ աղախին Տեառն, եղիցի։ Բ օր. ահաւա-սիկ.... եղիցի։
15. Բ օր. բանին։
16. Բն բառ հետ, ուղղեցաք ըստ ՃՃ., յն. չունի զհետ։

ի շաւիղս[1] նորա, որպէս եւ նա աստուածարելովն[2]
անհետազօտաբար, զծննդեանն զօրութիւն ի մո-
գուցն[3] բարեպաշտեալ ուսցուք, մանաւանդ թէ խը-
րատեսցուք, որք ի խնդիր գոլով մանկանն, առաջ-
26ա նորդելով[4] աստեղն[5], ոչ ասացին զհարցեալսն[6]. Զի-
ա՞րդ եղեւ աստուածային սաղմնաւորութիւնն[7], զիա՞րդ
անսերմն[8] արգանդն, զիա՞րդ անապական ծնունդն,
զիա՞րդ յետ երկանց ի կոյս մայր[9], զիա՞րդ տարեօք[10]
որ յառաջն էր, զիա՞րդ ընդ ժամանակաւ՝ անժամա-
նակն[11], զիա՞րդ տարաւ արգանդն զանտանելի[12] բը-
նութիւնն, զիա՞րդ եղեւ մարմին՝ առանց յեղման՝
անմարմինն[13], զիա՞րդ Աստուած բանն՝ ի կուսականն
թափեալ զինքն[14] արգանդի բարեհամբաւապէս, եւ[15]
ըստ ծառայի կերպարանի[16] անճառապէս մարմնացաւ,
զիա՞րդ կատարեալ տղայ[17], զիա՞րդ որ կերակրէ զա-
մենայն՝ ի ստինս[18] դիի, զիա՞րդ որ պարունակէ զա-
մենայնս՝[19] ի գիրկս պարունակի, զիա՞րդ հայր հան-
դերձելոյ աշխարհին՝ ի գիրկս[20] տղայ, զիա՞րդ որ ի

1. Բն. շաւղի, ուղղեցաք ըստ Ձձ., յն. զհետ շաւղաց։
2. Բն. աստուածաբարելով, յն. Ἐκθειάζω.
3. Ա օր. ընդ մոգուցն, Բ. օր. մոգուցն։
4. Բ. օր. առաջնորդութեամբ։
5. Ա. օր. աստեղքն։
6. Ա եւ Բ օր. ասացին ինչ զհարցեալսն։
7. Ա եւ Բ օր. սաղմնաւորութիւնն,
8. Ա եւ Բ օր. եւ անսերմն իսկ էր։
9. Ա. օր. կոյս մնայր, Բ. օր. մնայ կոյս։
10. Բն. տարերքք, Բ. օր. ընդ տարերք, ուղղեցաք ըստ Ա. օր. եւ յն.։
11. Բն. ժամանակս անժամանակ, ուղղեցաք ըստ Ա. օր. յն. ի ժամանակս։
12. Ա եւ Բ օր. զանտանելին, չունին բնութիւնն,
13. Ա եւ Բ օր. զիա՞րդ եղեւ առանց յեղման մարմինն,
14. Ա. օր. չունի զինքն եւ բարեհամբաւապէս,
15. Ա. օր. զիա՞րդ Տէրն։ Բ. օր. չունի եւ,
16. Ա. օր. կերպի։ Ա եւ Բ օր. չունին անճառապէս,
17. Ա. օր. կատարեալն տղայացաւ։
18. Ա. օր. ստնդի է, Բ. օր. դիէ։
19. Ա. եւ Բ օր. որ զամենայն պարունակեալ ունի միանգամայն
20. Ա օր. տղայանայ, Բ. օր. տղայ գոլով։

վերն է՝ ի խոնարհ գտանի[1], զի՞րդ որ յերկինս է՝ նոյն եւ ի վերայ երկրի, զիա՞րդ ի խանձարուրս[2] որ քրովբէական կառացն է կառավար, զիա՞րդ որ[3] ի ծոց Հօր, եւ ի մօրի[4], զիա՞րդ ի խանձարուրս[5] որ հանէ զկապեալսն քաջութեամբ, եւ այլն ամենայն, զոր մի ըստ միոջէ ասե(լ)ն սոսկալի է։ Արդ[6] հանդերձ պատարագօք լռութեամբ հասեալ յայրն, յետ հարցմանն՝ Աստուծոյ եւ Թագաւորին մերոյ ըղ- 26բ
վայելուչ[7] մատուցեալ զպաշտօն, առ բերողն այնուհետև դարձան խնդութեամբ և սիրելադարձութեամբ[8], նախապատուղ[9] աստուածածանօթութեան ցուցան[10] ի հեթանոսաց, որով[11] հեթանոսք նախանձաւորք եղեն։ Իսկ հրեայք անդարձք, մանաւանդ թէ[12] խտապարանոցք գոլով, ոչ զարեգակնն արդարութեան՝ յիւրեանց տեղիս երեւեալ՝ ի ճանաչումն փութացան գալ[13] և խմանալ որք ի հեռուստ ի յաստեղէն առաջնորդեցան։ Բայց ես, ով սիրելիք, առ յօժարութիւն լսելութեան աստուածային բանիցն հայելով, և առ գովասիրութեան[14] պատմողացն, ի լասիրութենէ ձեր-

1. Ա եւ Բ օր. գտաւ։
2. Ա օր. յաւելու պատի։
3. Բն. եւ։
4. Ա. օր. յաւելու եղեալ։ Բ. օր. կայ։
5. Ա. օր. յաւելու պատի։
6. Բն. այդ, ուղղեցաք ըստ Բ. օր.։
7. Ա. օր. զվայելուչն մատուցանել զպաշտօնն առբերելով։
8. Բն. սիրելի արդարութեան։
9. Բն. նախապատուղ։
10. Ա. օր. ցուցաւ։
11. Ա. օր. որոց, չունի հեթանոսք։ Բ. օր. որոյ... նախանձաեոյզք։
12. Բն. երէ որպէս, ուղղեցաք ըստ ԾԾ. եւ յն.։
13. Բն. գոլ նմանեալ եւ որք, ուղղեցաք ըստ Ա. օր., յն. արեգակըն արդարութեան՝ ի տեղիս իւրեանց երեւեալ՝ ի ճանաչումն փութացան, նմանեալ այնոցիկ որ։ Բ. օր. գալ, եւ նմանեալ որք ի հեռուստ ճանապարհորդութենէ աստեղըն։
14. Ա եւ Բ օր. եւ որ առ գովութիւն ի պատմողաց՝ ի լսասիրելութենէ, յն. եւ առ սէր գործականն։

մէ յաղթեալք[1], թէպէտեւ անուսումն ոք եմ և անբաւանդակ[2], սակայն յորդորիմ ի վարդապետութեան ջան, սիրով շնորհաց ձերոց զուարճանալով[3]: Քանզի դուք՝ որպէս բազմահնարագէտ աշակերտք՝ շնորհէք առողաց ինչ[4]. դուք զուղղիչն՝ որպէս նաւաստիք[5] յարմարէք. դուք զլեզուս եւս քեզ ունիք աղօթիւք[6]:

Ո՞վ ոք նախանձաւորութեան ձերում պատմել ինչ արժանաւորաբար[7] կարասցէ. ո՞վ ոք ընդդէմ հեթանոսաց զձեր առելութիւնն ճառեսցէ. ո՞վ ոք ընդդէմ հերձուածողաց տարածել զձեզ յանդգնութիւնդ[8].
26գ ո՞վ ոք զձերդ առ Հրեայս զԹշնամութիւն զրուցատրել: Քանզի զարշելի են արդարեւ[9] ընդ այլսն Հրեայք, այլ ոչ իւիք քաղցենալով եւ[10] ծառաւելով, բայց անպարտ սպանմամբք. ոչ[11] իւիք այնպէս խընդալով՝ որպէս ի գուբս ընկենլով[12] զմարգարէս, եւ ընդ ատակս երկրի քարշել եւ քարկոծել զարդարս, սրովք խոցեալ[13] եւ բաժանեալ սղոցօք զբարեպաշտութեան քարոզիչս[14], զոտիցն կորել զբարեպաշտից եւ զձեռաց մատունս, եւ միշտ զձեռան արիւնաթա-

1. Ա. օր. յաղթահարեալ:

2. Ա. օր. չունի եւ անբաւանդակ սակայն յորդորիմ, յն. չունի թէպէտ... անբաւանդակ: Բ. օր. որք են անբաւականն:

3. Ա. օր. վայելչանալով, յն. փոխեստիւք ձերով զուարճանալով: Բ. օր. վայելչանալ:

4. Ա եւ Բ օր. առողին:

5. Յն. նաւ ունիք: Ա. օր. նաւակատիկ: Բ. օր. զուղղիչն որպէս նաւակատիք յարմարեալք: Յն. ὦς επιβάται ρυθμίζετε.

6. Յն. դուք զլեզուս յոշքեղաւք ունիք աղօթիւք: Ուղղեցաք ըստ Ա եւ Բ օր. եւ յն. Բ. օր. յար աղաւթիւք:

7. Ա եւ Բ օր. նախանձաւորութեան ձերում պատմել արժանաւորապէս կարիցէ:

8. Ա եւ Բ օր. չունին ով ոք ընդդէմ հերձուածողաց... յանդգնութիւն. յն. զընդդէմ հերձուածոց յայտնի արասցէ զյանդգնութիւն:

9. Յն. արդ եւ ընդ այլ են:

10. Ա. օր. կամ: Բ. օր. եւ կամ:

11. Բ. օր. զի ոչ այնպէս այլով իւիք խնդալ:

12. Ա եւ Բ օր. ընկենուլ:

13. Բ օր. խոցել եւ բաժանել:

14. Բ օր. քարոզսն:

*թախ ունին[1], որ առ ի բուծումն[2] են գործարան֊*
*քըն[3], հանապազորդ ի բաց բարձմամբք արդարոցն[4]։*
*Որք այնքան[5] անբարշտութեամբ վարեցան, համար֊*
*ձակագոյնս ընդդէմ Փրկչին մերոյ, որպէս ամե֊*
*նեւին ի մերձակայումն յայտնապէս աղաղակել առ*
*նա. «Մեք[6] գիտեմք, ընդ Մովսէսի խօսեցաւ Աստուած,*
*զսա ո՛չ գիտեմք ուստի է»։ Ո՜վ յանդուգն իրաց,*
*ով ատելութեան որ առ Հրեայսն է, որ վաստակի*
*ի փախչելն. քանզի որչափ իցէ նոցա ի գարշութե֊*
*նէն փախչել կամիմ այնքանիցս ինձ յայտնապէս հան֊*
*դիպիմ կամ մարգարէիցն մեղադրելով բանիցն, կամ*
*օրինաց հեգենայիւք թշնամանելով, եւ առ[7] ոտն կո֊*
*խելով զերկրպագելի աւետարանսն, այնպէս զի աս֊*
*տուածային գրեանք նոր իմն կասկած ի ներքս ա֊*
*ծին. որք զանամօթ բարբառն յաղագս ամենեցունց 27ա*
*Տեառնն յառաջաբերելով ասեն[8] յանդգնաբար, զոր*
*եւ լուայք իսկ. «Մովսէսի խօսեցաւ Աստուած, զսա*
*ոչ գիտեմք ուստի է[9]»։ Ով յայտնի անվարժութեան*
*եւ անխրատութեան[10]. ով ծածկեալ լեզուագարու֊*
*թեան[11] աւազակացն. ով կոյր[12] ընդդիմութեան*
*բանից. քանզի յորժամ Հերովդէս տեղեկանայր ի*

1. Ա. օր. ունելով։ Բ. օր. ունել։
2. Բն. եւ Բ օր. ի բուծումն. յն. յօգնութիւն են գործարանքն։
3. Բն. գործարանօք։
4. Բն. պակասէր արդարոցն, յաւելաք ըստ Ա եւ Բ օր. եւ յն.։
5. Ա եւ Բ օր. այնչափ։
6. Ա եւ Բ օր. չունին Մեք գիտեմք... ով յայտնի անվարժու֊թեանն։
7. Բն. եւ կամ երկրպագելի գոլով աւետարանացն, զընդդէմսն խոստովանելով զնոսա աստուածային գրուածս ի ներքոյ երեսաց մերոց երկրածինք, ուղղեցաք ըստ յունին, թուի սխալ թարգմանութիւն ὑποφία կասկած բառին, ստուգաբանելով ὑπο ի ներքոյ, եւ ὄψις երես։
8. Բն. ասեմ, ուղղեցաք ըստ յն.։
9. Ա եւ Բ օր. չունին Ով յանդուգն... ուստի է։
10. Բն. անտխրութեան։ Բ. օր անխրախութեան։ Յն. Ով յայտնի անպատկառութեան։
11. Ա եւ Բ օր. լեզու արդարութեան։
12. Ա եւ Բ օր. կայր. Բ. օր. ընդդէմ։

նոցանէ, եթէ «ուր Քրիստոսն ծնանիցի», համարձակագոյն ասէին. «ի Բեթղեհէմ Հրէաստանի», եւ զմարգարէութեան ցուցանէին կոչումն, եւ զմեծասացն[1] վկայ ածէին։ Եւ դարձեալ, յորժամ կամէին ասէին, եթէ «Մարգարէ մեծ յարուցեալ է յԻսրայելի». եւ այժմ[2] ծածկեալ երեսօք[3] աղաղակէին. «Ընդ Մովսէսի խօսեցաւ Աստուած, զսա ոչ գիտեմք[4] ուստի է[5]»։ Արդարեւ ոչ ծանեան եւ ոչ իմացան, այլ[6] խաւարաւ գնան. արդարեւ այս[7] ժողովուրդ յիմար եւ ոչ իմաստուն։ Ցիրաւի գոչէր եւ Քրիստոս. «Փող[8] հարաք ձեզ եւ ոչ կաքաւեցայք, ողբացաք եւ ոչ լացէք եւ ոչ կոծեցարուք»։ Զի՞րդ ոք առ[9] այդպէս ընդդէմ նոցա ճակատեսցի, անմը-
27բ տերիմ կամս[10]։ Ո՞վ զվիճող նոցա թշնամանութիւնն[11] յանդիմանեսցէ, այնչափ իւիք զնոսա[12] սքանչելագործութեամբք[13] դողացոյց Քրիստոս, զանդամալոյծս ջլելով[14], զբորոտս սրբելով, զչարչարեալսն ողջացուցանելով, զդիւահարս բժշկելով, զարտեւանունս աչացն բանալով, զմեռեալս նոցա յարուցանելով ի գերեզմանաց[15] որպէս ի քնոյ, զջուրն ի գինի դարձու-

1. ՑՆ. եւ վկայ ածէին զմեկնիչն (որ ասաց). Մարգարէ մեծ յարուցեալ...։ Խառնակ թուի ասա ԲՆ., յն. չունի Եւ դարձեալ յորժամ կամէին ասէին։
2. ԲՆ. պակասէր այժմ։
3. Բ. օր. յերեսս աղաղակեցին։
4. ԲՆ. զի ոչ գիտեաք։
5. Ա եւ Բ օր. իցէ։
6. ԲՆ. պակասէր այլ, եղաք ըստ Ա. օր.։
7. Ա եւ Բ օր. այժմ։
8. Ա եւ Բ օր. չունին փող հարաք ձեզ եւ ոչ կաքաւեցայք եւ ոչ լացէք։
9. Ա. օր. չունի առ։
10. Ա եւ Բ օր. չունին անմտերիմ կամս։
11. Ա եւ Բ օր. թշնամութիւն։
12. Ա. օր. առ նոցա սքանչելագործութեամբքն եղոյց Քրիստոս։ Բ. օր. այնչափ իւիք զնոսա զսքանչելագործութեամբ դող եղոյց Քրիստոս։
13. ԲՆ. սքանչելագործութիւնք։
14. ԲՆ. ջաղելով։
15. Ա եւ Բ օր. չունին ի գերեզմանաց որպէս ի քնոյ։

ցանելով, եւ այլ բազում ինչ[1] պարզեւելով, զոր
գործ է[2] մի ըստ միոջէ ասել։ Եւ հաւատոց[3] ի նո-
սա ոչ երբեք եւ ոչ սուղ ինչ գիտ։ Արդ եղիցի[4],
եթէ մեզ ոչ հաւանիս, ով Հրեայդ, զմեծ սաղմոսեր-
գողն ընթերցիր[5], բա՛ց[6] որ առ քեզ կան դրուակք[7],
մի՛ ընդունիր[8] զՊետրոս եւ զՊաւղոս եւ[9] զաւետա-
րանիչսն, եւ լուր զի՛նչ Մովսէս ասէ[10] յօրէնսն. «Մար-
գարէ յարուսցէ ձեզ Տէր Աստուած յեղբարց ձերոց
իբրեւ զիս, նմա լուիջիք»։ Տես զի՛նչ մարգարէանա-
լով[11] գոչէ Եսայայ. «Ահա կոյս յղասցի եւ ծնցի
որդի, եւ կոչեսցեն զանուն Նորա Էմմանուէլ»։ Լուր
եւ Երեմիայի զմեծամեծսն աղաղակելով. «Սա Ա-
տուած մեր, ոչ համարեսցի այլ առ[12] սա. սա Ա-
տուած մեր»։ Եւ փոքր ինչ իջանելով ասէ. «Յետ
այսորիկ յերկրի երեւեցաւ, ընդ մարդկան շրջեցաւ»։ 27գ
Նա եւս դարձեալ[13] զինչ եւ Զաքարիաս նշանակէ[14].
«Ահա այր, եւ արեւելք անուն Նորա, եւ բժշկութիւն
ի թեւս Նորա»։ Եւ զբանս զայս տեսատես կինն,
յետ բազում ամաց բժշկեալ, հանդերձ եւ այլօք բազ-
մօք հաստատեաց, կնքեաց, մերձաւորութեամբ քղան-
ցիցն ընկալեալ զբժշկութիւն[15]։ Զնզիկիէլ եւս՝ զայրն

1. Ա եւ Բ օր. բազում։
2. Ա եւ Բ օր. գործէր մի ըստ միոջէ, Բ. օր. ասելով։
3. Ա. օր. եւ հաւատային ի նա ոչ։ Բ. օր եւ հաւատաց ի նոսա։
4. Ա եւ Բ օր. չունին եղիցի։
5. Բն. սաղմոսին երգողն ընթերցիր. ուղղեցաք ըստ Ա. օր.։ Բ. օր. ի մեծն սաղմոսերգուն ընթրայ։ Յն. ընթերցի՛ր զմեկնիչս մեր։
6. Բն. Ա եւ Բ օր. բայց, ուղղեցաք ըստ յն. բա՛ց զոր առ քեզ կան մատեանս։ Ա. օր չունի։
7. Ա. օր. դրուատք, յն. դրուագս։
8. Յն. եւ մի արհամարհեր պարզաբար։
9. Ա եւ Բ օր. յաւելուն մերժեա։
10. Ա եւ Բ օր. գրեաց։
11. Ա եւ Բ օր. ասէ մարգարէութիւնն յԵսայեայ։
12. Ա. օր. եւ առ սա փոքր ինչ։ Բ. օր. ըստ որում ոչ ոք համարեցի։ Այլ եւ առ այլս փոքր ինչ զիջանելով։
13. Բն. Նայեաց Տէր մերձեալ։ Յն. նայեաց դարձեալ։
14. Ա. օր. նշանակեաց. Բ. օր. նշանակեաց ասելով։
15. Ա եւ Բ օր. չունին։ Եւ զբանս... զբժշկութիւն։

ցանկութեանց՝[1] բանասիրաբար ընթերցիր, եւթէ զի՞-
րդ իմն[2] այս դուռն Տեառն ասի[3], եւ մտցէ[4] եւ
ելցէ, եւ եղիցի դուռնն փակեալ առաջնորդին[5]։ Իսկ
Դանիէլ, «Հայէի, ասէ, եւ ահա[6] ընդ ամպս երկնից
որպէս[7] որդի մարդոյ գայր»։ Առընթեր կայ[8] Յակով-
բայ, եւ զի՞նչ ասէ ի մէջ օրհնութեանցն՝ ուսիր.
«Ոչ պակասեսցէ իշխան Յուդայ, եւ ոչ առաջնորդ[9]
յերանաց նորա, մինչեւ եկեսցէ՝[10] որոյ իւրն է, եւ
նա է ակնկալութիւն ազգաց»[11]։ Հպեցիր եւ ի քնար
Հոգւոյն, եւ տես զի՞նչ Դաւիթ ստուգաբան[12] երգեաց.
Մայր Սիոնի[13] ասի՝ մարդ, եւ մարդ եղեւ ի նմա, եւ
ինքն հիմնեցոյց զնա բարձրեալն։ Քանզի կոյս է
28ա մայրն, եւ յետ ծննդեանն մնաց[14] կուսութեանն կնիք.
զոր սրբութիւն[15] եդ ի վերայ անշարժ պահելով։ Դար-
ձեալ տես զի՞նչ ասէ Դաւիթ. «Ծագեսցի յաւուրս
նորա արդարութիւն եւ բազում խաղաղութիւն»,
եւ որ ի կարգին է։ «Եւ տիրեսցէ[16] ի ծովէ մինչեւ
ի ծով, ի գետոց[17] մինչեւ ի ծագս տիեզերաց»։ Մի՞
թէ զայսոսիկ ըստ մերո՞ց[18] վարդապետաց,[19] որք նա-
խազգեցոյց. միթէ յաշակերտա՞ցն ոք Փրկչին[20] ի տախ-

1. Բ. օր. ցանկալի։
2. Ա եւ Բ օր. ումն։
3. Ա եւ Բ օր. է։
4. Ա եւ Բ օր. յաւելուն ընդ դա։
5. Ա եւ Բ օր. փակեալ կացցէ. չունին եւ յն. առաջնորդին։
6. Բն. չունի ասէ, եւ ահա։
7. Ա եւ Բ օր. իբրեւ։
8. Յն. Առընթերակայ չէր։
9. Բ. օր. պետ։
10. Ա եւ Բ օր. յաւելուն այն։
11. Ա եւ Բ օր. հեթանոսաց։
12. Ա եւ Բ օր. ստուգաբար։
13. Ա եւ Բ օր. Սիոնի։
14. Բ. օր. մնաց կոյս, զկուսութեանն կնիք պահեաց ողջ։
15. Բ. օր. սրբութեամբ։
16. Ա եւ Բ օր. տիրեսցէ։
17. Բ. օր. ի չերանց։
18. Ա եւ Բ օր. ի մերո՞ց։
19. Ա եւ Բ օր. չունին որք... յաշակերտացն։
20. Ա. օր. զփրկչեն։ Բ. օր. զփրկիչն մեր։

տակի եւ կամ ի քարտէս[1] այսպիսի ինչ շարագրեաց. ո՞չ[2] ապաքէն որքանիք յաղագս Նորա քարոզեցին յառաջագոյն ի թլփատութեանն, եւ զայսոսիկ գոչեցին որդիք եւ թոռունք Աբրահամու: Եւ եթէ սոցա ոչ հաւանիս հաւատալ[3], պատկառեաց գոնեայ[4] ի դիւաց, որք աղաղակէին եւ ասէին[5]. «Զի՞ կայ մեր եւ քո Յիսուս[6] որդի Աստուծոյ կենդանւոյ[7]»: Ամաչեաց ի խոստովանութենէն հրեշտակաց եւ մարդկան, եւ դիւաց եւ ամենայն արարածոց՝ որ վասն Քրիստոսի բոլորեցունց Տեառնն: Իսկ եթէ զսոսա եւս խորես, ընկալ զՀօր վկայութիւնն յերկնուստ[8] ի վերայ Նորա որոտացեալ[9]. «Դա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ, որում փառք յաւիտեանս[10], ամէն:

1. Ա եւ Բ օր. ի քարտիսի:
2. Ա. եւ Բ օր. չունին ոչ ապաքէն... Աբրահամու:
3. Ա եւ Բ օր. չունին հաւատալ:
4. Ա եւ Բ օր. չունին գոնեայ:
5. Ա եւ Բ օր. չունին եւ ասէին:
6. Ա եւ Բ օր. չունին Յիսուս:
7. Ա եւ Բ օր. չունին կենդանւոյ:
8. Բ. օր. չունի յերկնուստ:
9. Բ. օր. ասացեալ:
10. Ա. օր. յաւելու յաւիտենից. Բ. օր. վայել է փառք եւ պատիւ:

Յաւելուած Դ.

## ՍՏԵՓ. ՍԻՒՆԵՑԻՈՑ ՄԵԿՆ. ՅՈԲԱՑ

### Ի Հաւաքմանէ Վանականի

2բ Եւ էր սա յազգէ Աբրահամու երրորդ կամ չորրորդ յԷսաւայ, ... եւ զի թէպէտ էր Մովսէս հինգերորդ ի Յակոբայ, յաղագս բազմակեցութեան եհաս յաւուրս նորա՝ թուի թէ յելն յԵգիպտոսէ: Իսկ զշարագրութիւն նորա ոմանք Մովսէսի ասեն գրեալ եւ ոմանք Սողոմոնի, եւ այլք Եզրի, եւ կէսք Երեմեայի. բայց աւելի կարծիս Սողոմոնի գոյ, զի զՄովսէս եւ զԵզրաս ոչ գտանեմք այսու նշանագրաւս շարագրեալ...: Բայց ում եւ իցէ նկարագրեալ ոչ է կարեւոր մեզ գրել. բայց զայս գիտեմք զի աստուա-

## ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՍԿԻԶԲՆ ՅՈԲԱՅ

ԱՅՐ մի էր յօծ, եւ 'ի պարարտ յերկրէ, յօսիտ աշխարհի, որում անուն էր Յոբ: Յազգէն Աբրահամու էր երանելի նահապետն, երրորդ կամ չորրորդ յԷսաւայ, եղեւ 'ի ժամանակս Մովսէսի: Քանզի թէպէտ եւ էր Մովսէս հինգերորդ 'ի Յակոբայ, սակայն յաղագս բազմակեցութեանն իւրոյ Յոբ, եհաս 'ի ժամանակս Մովսէսի: Թուի թէ եւ յելս որդւոցն Իսրայէլի յԵգիպտոսէ. այդ յաղագս ազգահամարութեան եւ ժամանակացն: Իսկ յաղագս շարագրելոյ զնահատակութիւն սորա ոմանք զՄովսէս մարգարէ ասեն թէ գրեաց զպատմութիւնն Յոբայ, եւ այլք թէ Սողոմոն գրեաց, եւ այլք դարձեալ զԵզրէ ասեն որ զամենայն զհին կտակարանսն յետ գերութեանն աւանդեաց ժողովրդեան. նոյնպէս եւ զՅոբայն: Իսկ ինձ կարծի Սողոմոն գոլ, վասն զի նկարագիրդ առակական է, որպէս եւ ամենայն շարագիրքն Սողոմոնի: Եւ այլք դարձեալ զԵրեմիայէ ասեն թէ գրեաց: Իսկ զՄովսէս, եւ զԵրեմիաս եւ զԵզր, ոչ գտանեմ նկարագրովս այսու վարել: Բայց թէ նոցա՞ է եւ թէ այլոյ ուրուք ոչ է հարկ գիտել, այլ զայս գիտեմք զի աստուածազգեաց արանց գրեալ է զպատմութիւնս. ապա թէ ոչ ուստի՞ յիշէր առաքեալն զնահատակութիւնս նորա որ ասէ, «զհամբերութիւն Յոբայ

ծաշունչ արանց է գրեալ զպատմութիւնս, եթէ ոչ առաքեալ զխորդ ուսուցանէր. «Զհամբերութիւն Յոբայ լուարուք եւ զկատարումն Տեառն տեսէք». եւ դարձեալ Եզեկիէլ յիշէ, «Յազգի յորոյ վերայ ածիցէ Աստուած չարիս եւ ի միջի նոցա իցեն Յոբ եւ Նոյ եւ Դանիէլ, զանձինս իւրեանց միայն ապրեցուցանեն»:

«Այր մի էր յԱւսիտ աշխարհէ» Ա. 1:

Աշխարհ մեծ է մօտ յԵմաթ, եւ քաղաք փոքրիկ 3ա
է ի նմա՝ անուն Յաւսիտ, նախագահ լեալ արաբացւոցն. թէպէտեւ ի գիրս Դամասկոս կոչի. բայց տեղին՝ յորում նստէր ի հարուածսն, և գերեզմանն՝ այժմ յԱրաբիա է:

«Ճշմարիտ»: Վասն ոչ գտանելոյ ի նմա սուտութիւն: 3բ
«Աստուածապաշտ»: Գոյ հնար լինել արդար և 4ա
անարատ և ոչ աստուածապաշտ որպէս բազումք ի հեթանոսաց:

«Եղեւ իբրեւ օրս այս» Ա. 6:

լուարուք եւ զկատարումն Տեառն տեսէք»: Եւ Եզեկիէլ ի մարգարէանալն յիշեաց ընդ Նոյի եւ ընդ Դանիէլի, «ազգ մի, ասէ, յորոյ վերայ ածեմ ես զայս ինչ չարիս, թէ եւ են 'ի միջի նոցա Յոբ եւ Նոյ եւ Դանիէլ, զանձինս իւրեանց միայն ապրեցուցեն»: Բայց զգերեզմանն Յոբայ այժմ յԱրաբիայ ցուցանեն, եւ զտեղին յորում նստէր 'ի հարուածսն: Եւ էր այրն Յոբ ճշմարիտ՝ վասն ոչ գտանելոյ 'ի նմա ստութիւն: Աստուածապաշտ՝ քանզի հնարաւոր է լինել արդար, անարատ, որպէս բազումք եղեն 'ի հեթանոսաց, այլ ոչ աստուածապաշտ: «Եւ իբրեւ եղեւ օրս այս, եւ ահա եկին հրեշտակք կալ առաջի Տեառն. եկն եւ սատանայ ընդ նոսա»: Աստուած անտանելի է բնութեամբ, անորակ եւ անքանակ, եւ տեղեաւ ոչ պարփակի, այլ առ ամենեսեան, եւ հուպ յամենեսեան 'ի սուրբսն որպէս պարտ է տանել նոցա, եւ յանսուրբս ըստ նոցին արժանեացն. եւ հրամայէ սրբոցն անճառ ձայնիւ. այսինքն գիտութեամբ սպասաւորել հաճոյիցն իւրոց, որպէս առնէին եւ առնեն հրեշտակք եւ մարդիկ նմանք մարգարէիցն եւ առաքելոցն: Իսկ չարին հրաման տալ ասի՝ թոյլ տալն, զի առանց այսմ անհնար է նոցա գործել ինչ կամ վնասել զոք հոգւով կամ մարմնով: Գալ ասի ընդ հրեշտակս առաջի Տեառն, վասն զի ոչ է տեղի տեսանե-

8բ Օր մի եղեւ յորժամ զխորհուրդն սատանայի յա-
ղագս Յոբայ ետես Տէր և թողացոյց նմա։

«Եկին հրեշտակք Աստուծոյ կալ առաջի Տեառն»
Ա. 6։

9ա Աստուած անտեսանելի է բնութեամբ, և տեղեաւ
ոչ պարփակի. հուպ է յամենեսեան ի սուրբս՝ որպէս
արժան է սրբոցն, և յանսուրբս՝ ըստ արժանեացն.
հրամայէ սրբոց իմանալի գիտութեամբ սպասել զհա-
ճոյսն իւր. իսկ չարին թոյլ տայ, զի անհնար է նմա գոր-
ծել ինչ առանց թոյլութեան. թէպէտ ոչ ելանէ ի վերա-
գոյնսն, այլ զի ոչ է տեղի որ թաքչի յամենատես գի-
տութենէն Աստուծոյ։ Գայ ասի նմա եւ դեգերել։

«Ահա տուեալ զամենայն» Ա. 12։

11ա Զի ցուցցի սատանայի պարտիլ ի մարդոյ հողեղի-
նէ։ Կարծիք (են) եթէ ի ձեռն հրեշտակի լինէր հար-
ցումն, որպէս ի Զաքարիա մարգարէ, որ ասէ հը-
րեշտակն ցսատանայ. սաստեսցէ ի քեզ որ ընտրեացն
զԵրուսաղէմ։ Նոյնպէս ի Կաթողիկէն յաղագս Մով-
սիսեան մարմնոյն ասէր Միքայէլ ցսատանայ. սաս-
տեսցէ ի քեզ Տէր. նոյնպէս եւ աստ իմանալի է։

լի կամ անտեսանելի որ թաքչի 'ի նմանէն, եւ 'ի նախախնամա-
կան գիտութենէն Աստուծոյ։ Արդ՝ թէ դարձեալ 'ի վերնագոյն տե-
ղիսն ոչ ելանէ, ուր հրեշտակքն, եւ քերովբէքն, եւ սերովբէքն, սա-
կայն յորում տեղւոջ և է, ոչ կարէ թաքչել յաստուածային տե-
սութենէն։ Առաջի Տեառն ասի գալ, եւ դեգերել ճեալ, թերեւս թոյլ
տացէ փորձութիւնս ածել 'ի վերայ մարդկան. զի թերեւս փորձա-
նօքն կարասցէ վրիպեցուցանել, եւ ընկենուլ յաստուածպաշտու-
թենէ։ Արդ՝ կամէր կորուսանել զերանելին փորձանօք, եւ ոչ կա-
րաց. վասն զի ոչ էր թողացուցեալ Աստուծոյ։ Գիտէր եւ ամենա-
գէտն զխորհուրդս չարին, հրաման ետ ածել 'ի վերայ Յոբայ զփոր-
ձութիւնն, զի ցուցցի հանդէս նահատակին։ Եւ գիտացեալ բանսար-
կուին թէ թոյլ ետ նմա փորձել զՅոբ, փորձեաց զնա նախ ար-
տաքին ստացուածովքն, կորստեամբ ուստերացն եւ դստերացն, եւ
ապա մարմնոյն զանազան եւ զազիր չարչարանօքն։ Եւ զայս ա-
մենայն այսպէս իմացուք զոր այլա.....*)

* Աստէն յօրինակին չորս եւ կէս սիւնք դատարկ թո-
ղեալ են։

Եւ լինի հարցումն եւ պատասխանի ոչ մարդկային
ձայնիւ, այլ որպէս պարտ է անմարմնոյ ընդ ան-
մարմինս խօսել, այսինքն իմանալեօք:

«Իսկ նա հայեցեալ ընդ նա ասէ» Բ. 10:
Բարկութեամբ պատասխանեաց. երեսք սպասաւոր 21բ
եւ հայելի է սրտի. եւ զցասումն շարժել ի ներքս
անդ ի հայեցուածսն յայտ առնէ:

Ոմանք հարցմամբ ընթեռնուն. «Առիւծ եւ գո- 33ա
չիւն մատակ առիւծու եւ պերճութիւն վիշապաց չի-
ջա՞ւ» Գ. 10: Եթէ սրտմտութիւն եւ ախտ եւ ամ-
բարտաւանութիւն յոգոյ քո չիջա՞ւ, որ կերակուր է
սատանայի, որ առակի ի մրջիւնառիւծն՝ սատակեալ
լինի:

«Ի վերայ կարկառի քարանց ննջեսցէ» Ը. 17:
Որպէս սերմն անկեալ ի ժողով քարանց հեղձնու, 49բ
եւ կամ բուսեալ վաղվաղակի չորանայ, այնպէս եւ
կեանք ամբարշտաց:

«Եւ ընդդէմ աստեղաց կնքէ» Թ. 7:
Կնքեաց թէ յայսմհետէ հոգիք ի ձեռին Աստու- 52ա
ծոյ են. մինչ ի լրումն տնտեսութեանն կարծիս երկիւ-
ղի էր ի հրեշտակսն, վասն անկման բանսարկուին.
կնքեալ զկարծիսն՝ ելոյծ զերկիւղն:

«Նետք հինից նորա» ԺԶ. 10:
Նետք՝ հարուածքն, եւ հէնք աւազակաց՝ դեւք բան- 81բ
սարկուին:

«Խաչեցաւ փոր իմ ի լալոյ» ԺԶ. 10:
Իսկ խարշել զվշտակցութեամբ, ողբայր զմերժումն 82բ
եւ զկորուստ ազգին Աբրահամու:

«Զօրացուցէ ի վերայ նորա զծարաւիս» ԺԸ. 10։
87ա Զնոսա՝ վասն որոյ Դաւիթն ասէ, ընթացան ի ծա-
րաւս իւրեանց, զի ծարաւի են ըմբել զարիւն մար-
դոյ դեւքն։

«Զքար եւ զխաւար եւ զստուերս մահու, եւ ըզ-
խրամ հեղեղատի ի փոշոյ» ԻԸ. 4։
119ա Քար՝ ակն պատուական. խաւար՝ մարգարիտ, զի
ի ծածուկ կայ որպէս ի խաւարի, զի ի խորս երկրի
թաքուցեալ են. իսկ ի խրամէ հատ ոսկէքար, եւ
ժողովեալ փոշէհող, արկեալ ի քրեա, աւելորդն հալ-
մամբ հրոյն իջանէ որպէս հեղեղ։

«Երկիր՝ եւ ի նմանէ ելցէ հաց, եւ ի ներքոյ նորա
որպէս հուր շրջեցաւ» ԻԸ. 5։
119բ Իսկ հուր զգարնանային ջերմութիւնն՝ որով ընձիւ-
ղին բոյսք. իսկ առ ի միտս՝ արգանդ սրբոյ կուսին.
եւ հաց մարմին տէրունական, եւ հուր նոյն Աստուած
բանն։

«Տեղի շափիւղայի քարինք նորա եւ հող նորա
ոսկի» ԻԸ 6։
119բ Ի ճառս աստ ըստ յառաջնումն իմացիս վա-
սըն ականց բանի։ Իսկ մտաւորն զզօրաւոր մա-
սունս առաքինութեան հոգւոյն սրբոյ Աստուածածնին,
որպէս Երեմիա ասէ. Սրբեցան Նազովրացիք առա-
ւել քան զձիւն եւ աւելի քան զկաթն ընտրեցան։
Իսկ հող ոսկի՝ մարմնոյն սրբութիւն, որպէս ասէ.
Սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ։

«Շաւիղ է զոր ոչ ծանեաւ թռչուն» ԻԸ 7։
120ա Զտնօրէնութիւն փրկչին մերոյ ոչ ծանեաւ օդա-
յին դեւն իշխանութեանց։

«Ոչ անց ի նա առիւծ» ԻԸ 8։
120բ Եւ ոչ սատանայ կարաց երեւեցուցանել զհետս ի
տնօրէնութիւն փրկչին։

«Որք պատէին խարշափուն բանջարով, որոց բան-
ջար խոկ էր կերակուր» Լ. 4։
Զխարշափունն այլք աղիմայ թարգմանեցին եւ 127բ
կէսք գերիոն. եւ է սա բանջար աղէհամ, որ յուտելն
լցուցանէ զտեղի հացի. եւ այսպէս կային ի տնկուտ
վայրս թաքուցեալ, որ ի սաստիկ հնչմանէ հողմոյ
ձայն արձակիւր ի յոստոցն, եւ ապա ելանէին ի
խնդիր այնմ բանջարոյ։

«Եղբայր եղէ համբարուայ» Լ. 29։
Յուշկապարիկ՝ կամ հաւ է քաղցրաձայն անապա- 131ա
տաւէր, կամ դեւ մարդատեսիլ. ջայլամն՝ ոմանք
գիշտըրմուղն անուանեն...։ Ի մտանել արեգականն՝
գազանք եւ սողունք նէղէին զնա։

«Ի մանկութենէ սնուցի իբրեւ զհայր»... ԼԱ. 18։
Յորովայնէ՝ եւ յարգանդէ կատարելոյն գործ ան- 133բ
հնար երեւի, յայտ է թէ վարդապետութեամբ բանի
իբրեւ զհայր, եւ որոց ուսումն որպէս որովայն մօր
եղեալ՝ սնանէին։

«Եթէ ուրախ եղէ ի բազում մեծութեան եկելոյ
ինձ. թէ ի վերայ անթուոց եղի զձեռն իմ» ԼԱ. 25։
Թէպէտ մեծատուն էր արդարն, սակայն զանթիւ 133բ
եւ զանչափ ցանկութիւն հալածէր ի գործոց իւրոց.
խրատէ եւ զայլս ոչ յուսալ ի թաղումն ոսկւոյ եւ
յականց բազմութիւն։

«Բարկացաւ Եղիուս Բարքիելի Բուզացւոյ, յազգա-
կանութենէ Արամայ՝ աշխարհին Աւստացւոց» ԼԲ. 2։
Յառաջ ոչ արար յիշատակ պատմագիրն սը- 136ա
մա ի գալ բարեկամացն, կամ թէ չէր սա ի բարե-
կամաց արդարոյն, կամ թէ երբ եկին, սա մօտ կայր
որպէս ազգական եւ զաւառային նորա. թուի թէ
մերձաւոր ընտանի էր ի թոռանցն Եսաւայ։ «Բար-
կացաւ Յոբայ յոյժ զի երեւեցոյց զանձն արդար ա-

ռաջի Տեառն», իբրեւ թէ կարի համարձակ իցէ: Ո՞ արդարանայ առաջի Տեառն:

«Երիս ճանապարհս ընդ առն» Լգ. 29:

142ա Աստուածային խրատն երեքպատիկ է. հեռանալ ի չարութենէ, ստանալ զառաքինութիւն, խոստումն աւետեաց հանդերձելոց:



# ՑԱՆԿ

## ԲԱՆԻՑ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ

## ՑԻՇԱՏԱԿԵԼՈՑ ՑԻՍՈՒՔԻՈՍԷ

*Նուրբ թիւքն նշանակեն զհամար գրչագրին*

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

## ԿԱՐԵՒՈՐ

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԼԻՔ |
|---|---|---|---|
| Ը | 18 | սւարբ | սուրբ |
| 147 | 10 | նորա | սորա |
| 166ա | 7 | զայր ի սկզբան ի ստու- գութեամբ | զայս իսկ զբանի ստու- գութեամբ |
| 169 | 11 | ուր | որ |
| 172 | 4 | ճնճղուկ. ոչ ունի | ճնճղուկ. քանզի ճնճղուկ ոչ ունի |
| 173 | 12 | աաւասիկ | աւասիկ |
| 203 | 2 | մա.... | մա(հաբերս) |
| 209 | 5 | որդւոյն | որդւոցն |
| 221 | 5 | զանարատութիւն | զանարատութիւնն |
| 231 | 8 | վկայութիւն | վկայութիւնն |
| 236 | 1 | եթէ. | եթէ, |
| 262 | 1 | զվնասս | զվնա՛սս |
| 265 | 1 | պնդութեանն | պնդութեան |
| 270 | 3 | յայտնին | յայտնեն |
| 300 | 11 | վասն այնորիկ | վասն այսորիկ |
| 305 | 1 | փոփոխելով | փոխելով |
| 307 | 1 | այլ գործովք | այլ եւ գործովք |
| 317 | 1 | կարգեաց, | կարգեաց, եւ |
| 323 | 11 | ցոյց տէր | ցոյց ինձ տէր |
| 325 | 4 | զանէծան | զանէծս |
| 341 | 1 | ոչ դադարեցի | եւ դադարեցի |
| 358 | 5 | ոգւով | ոգւովք |
| 378 | 12 | Որդւոյն | Որդւոյ |
| 391 | 9 | որպէս ի կանանց | որպէս մի ի կանանց |
| 403 | 9 | գտանի ի փորձ | գտանի փորձ |
| 425 | 6 | ստէպ փորձանքս | ստէպ ստէպ փորձանքս |
| 435 | 12 | ի քեզ | եւ ի քեզ |
| 437 | 11 | կային ինձ | կայ ինձ |
| 448 | 1 | գիտես | գիտեսդ |
| 485 | 1 | սրբոյն | սրբոցն |
| 486 | 10 | ի միասին | ի մասին |
| 488 | 3 | բան ի հազար բանի | բանի հազար բան |
| 493 | 13 | ըստ | եւ ըստ |
| 495 | 1 | զամենայն | զամենայնն |
| 520 | 5 | ես | եւս |

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԼԻՔ |
|---|---|---|---|
| 521 | 6 | *թողեալ է* | *թողեալ* |
| 525 | 12 | *յայլ* | *յայն* |
| 528 | 7 | *սուրհանդակ* | *սուրհանդակն* |
| 558 | 8 | *ընթանան* | *ընթացան* |
| 575 | 1 | *զպսակն* | *զնպատակն* |
| 575 | 6 | *գործոց* | *գործով* |
| 576 | 15 | *գիտեցէք* | *գիտիցէք* |
| 607 | 7 | *եղեցին* | *եղիցին* |
| 614 | 12 | *քո պակասեցայ* | *քո ես պակասեցայ* |
| 618 | 3 | *աշխարհս* | *աշխարհ* |
| 641 | 15 | *գործով* | *գործումն* |
| 664 | 4 | *ապականութեան* | *ապականութիւն* |
| 670 | 3 | *Ընդունայն* | *Ընդունայնս* |
| 682 | 14 | *զաղտս* | *զաղտ* |
| 702 | 3 | *ոտս* | *ոտն* |
| 707 | 14 | *շրջէր* | *շրջէ* |
| 715 | 20 | *ընկալան* | *կալան* |
| 718 | 19 | *կարծիցէ* | *կարիցէ* |
| 750 | 3 | *սուրբ* | *եւ սուրբ* |
| 760 | 16 | *Յովբայ* | *զՅովբայ* |
| 763 | 1 | *որ* | *եւ որ* |
| 763 | 5 | *զատամունսն* | *զատամունս* |

